# ԿԻՐԱԿՈՍԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

## ԳԱՆՁԱԿԵՑՒՈՅ

# ՀԱՄԱՌՕՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Ի ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԷ ՑԱՒՈՒՐՍ ԻՒՐ

ԼՈՒՍԱԲԱՆԵԱԼ








ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ

1865

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Յետ Վարդանայ վարդապետի դասել 'ի տպագիր շարակարգի Պատմչաց մերոց՝ չիք արդարև ճահագոյն ոք քան զԿիրակոս [1], առաջնոյն ըստ բազում գլխոց և դիպաց յարակից և հաւասար, ընտանութեամբ, ուսմամբ, աշակերտութեամբ և կենացն իսկ պարագայութեամբ, այսինքն է Թուականաւ ծննդեանն և մահուան. որպէս և նոյն ինքն Վարդան կոչէ զնա համշիրակ իւր, և օժանդակ ինձ յամենայնի, և այլուր 'ի պատմութեան [2], հարազատն մեր Կիրակոս վարդապետն հօրն համանման, այսինքն Վանականայ վարդապետի մեծի. և այլ ևս գործական և արգասիք բանք, յորոց և նշանակեցաք 'ի յառաջաբանի պատմութեան Վարդանայ [3]. որոց փոխարէն ինքն և Կիրակոս՝ գովութեամբ և մեծարանօք յիշէ զնա ուսումնակից և համշիրակ « հարազատն մեր Վարդան . . . որոյ բանք արժանի » էին ընդ միմեանս ». և այլուր սքանչելի վարդապետ: Հաւանեալ եմ թէ սա առաւել արդար գտանի 'ի գովելն ըզՎարդան, քան նա 'ի մեծարելն զԿիրակոս և հանել ձգել 'ի հօրն համանմանութիւն. յոր ոչ միայն ոչ տեսանեմ ժա-

1 Եւ 'ի գրչագիրս գրեաթէ միշտ երկոքին սոքա զոյգ գտանին ընդօրինակեալք. որպէս և առ մեզ չիք օրինակ Կիրակոսի պատմչի առանց Վարդանայն:

2 Վարդան. էջ 146:

3 Վ. էջ Դ:

մնացեալ զնա, այլ և բազում ասպարիզօք բացակացեալ. նաև քան զիւր իսկ ժամանակն. բայց այս թերևս զի չունիմք 'ի ձեռին ապացոյց գիտութեան և հանճարոյ Կիրակոսի՝ բաց 'ի գրոցս պատմութենէ, որ ոչ նրբութեամբ բանից և ոչ ընտրութեամբ բառից յաստիճան հօրն և եղբայրակցին Հնգադասիլ արժանացի ըստ մեզ:

Թէպէտ և զայլ ինչ գրուածոյ չունիմք զսորա համբաւ, և ՚ի քաղաքավարութենէ կենացն և զկատարածին, սայն և ոչ սակաւ ծանօթս ինքնին զանձնէն ընծայէ 'ի մատենի աստ յայսմիկ պատմագրութեան. յորում և հաւաստէ նախ զթիւ ամաց կենացն, քառասնամեայ՝ աւելի կամ պակաս զինքն ասելով յամի 1241 (ՈՂ), որով յայտնի ժամանակ ծննդեանն 'ի սկիզբն ԺԳ դարու, իսկ մահուանն վկայի լինել զուգաթիւ ընդ Վարդանայ՝ յամի 1272 (ՉԻԱ), անցեալ զեօթանասնամենիւք: Վկայէ և զհայրենեացն 'ի Գանձակայ լինել (66), յորմէ նշանաւոր վարդապետքն ԺԲ դարուն՝ Սարկաւագ և այլք զորս յիշէն անդ, և որ զկնի (107) մեծ վարդապետն Մխիթար Գոշ, շինող և առաջնորդ Գետկայ վանաց. ուր և զառաջինն աշակերտեալ սնաւ և ուսաւ հեղինակս մեր (115) յառաջնորդութեան Մարտիրոսի՝ յաջորդին Մխիթարայ, որպէս կարգ բանիցն ցուցանէ. նա զի և սորա վախճանեալ յամին 1213 (115) 'ի ծերութեան հասակի, անդէպ երևի Կիրակոսի իբր երեքտասանամենի աշակերտիլ նմա, որպէս կամին ցուցանել բանք պատմութեան մերոյ՝ զոր յետոյ ուրեմն յիշելոց եմք: Թուի թէ անդստին 'ի Գետիկ յարեալ էր Կիրակոս 'ի Վանական վարդապետ՝ յընտիրն աշակերտաց Մխիթարայ. և զհետ նորա գնացեալ, և «բազում ժամանակս կացեալ առ նմա »'ի վարժս կրթութեան» 'ի սահմանս Տաւուշն բերդի, յանապատի անդ՝ զոր ստացաւ իւր բնակութիւն» (113), որ և շինեալ վանօրով միաբանակեցից և եկեղեցեօք՝ Խորանաշատ կոչեցաւ. և յաւերել տեղւոյն 'ի Ճէլալէտտինայ հինից (129) փոխադրեցաւ յանապատն և 'ի քարայրս որ 'ի հարաւոյ Տաւուշ բերդի. ուրանօր նստէր ընդ վարդապետին և 'ի հասանել աստպատակի Թաթարաց, յորոց և գերի վարեցաւ ընդ նմին և զատուցաւ 'ի վարդապետէն իւրմէ, և ապա գաղտագողի փախստեամբ զերծեալ՝ եկն անդրէն յառաջին վայր սննդեան իւրոյ 'ի Գետիկ՝ 'ի կիսաւեր եղեալն 'ի Թաթարաց, որպէս պատմէ ինքնին զայսոսիկ մի ըստ միո-

ջէ, (129–135)։ Իսկ եթէ որքան ժամանակս եկաց անդէն և կամ ուր յետոյ գնաց և ուր հաստատեաց զբնակութիւն իւր, որոյ վանից միաբան էր կամ հայր, և զինչ ինչ գործեաց կամ գրեաց՝ կամ որպէս եղև վախճան նորա, չեհաս առ մեզ այսր ամենայնի յիշատակ, բայց միայն թուական ժամանակի մահուանն՝ զոր յիշեցաք։ Այլ հռչակ անուանն՝ իբրու միոյ 'ի չորից ընտրելագոյն աշակերտաց Վանականի և կոչիլն 'ի Վարդանայ՝ Բարունեաց պետ[1], և բանք ինչ իւր վասն գրելոյ գիր զգուշութեան ընդդէմ Դաւթի Մոլորեցուցչի, որպէս գրէրն և Վանական, տան կարծել եթէ և ինքն Կիրակոս առաջնորդ կամ տեսուչ կարգեալ էր ուխտի ուրեք վանաց կամ եկեղեցւոյ, զի իշխանութեամբ իմն գրէր սաստիւ և բանադրանօք (194). Նոյն դարձեալ նշմարի և 'ի բանէ պատասխանատուութեան արևելեան վարդապետաց առ արևմտեայս՝ վասն խնդրոյ Հաւատոց հարցելոյ 'ի Հռովմայ։ Հաւանագոյն թուի 'ի միում վանորէից Աղուանից հռչակելոցն անդ յայնմ դարու՝ կեցեալ զվերջին ամս կենացն, մանաւանդ թէ յանապատ տեղիս. և զայս կարծեցուցանէ միւս բան Վարդանայ առ նա ինքն Կիրակոս գրեալ 'ի վերջաբանի մեկնութեան Երգոց Երգոյն յամի 1265, կոչելով զուսումնակիցն «մշակ մորենեաց և աղտաղտ անբուսաբեր վայրաց»։

Միակ ծանօթ և առ մեզ հասեալ գրաւոր երկասիրութիւն Կիրակոսի է մատեանս այս Պատմութեան, զոր անուանէ նա կամ ընդօրինակողքն «Համառօտ պատմութիւնք ժամանակաց 'ի սրբոյն Գրիգորէ մինչև 'ի յետին աւուրս բացացեալ». այսինքն ժամանակագիր Թուականաւ համարեալ. և արդարև սկսեալ զպատմութիւնն 'ի Ս. Գրիգորէ յետ լուսաւորութեանն Հայոց և երթալոյն 'ի Հռովմ, համառօտիւ պատմէ զկարգս և զարարս յաջորդաց նորին կաթողիկոսաց և զթագաւորաց Հայոց և զիշխանաց ըստ ժամանակին կացելոց, և զաշխարհակալաց և զթագաւորաց դրացեաց կամ իշխողաց մերոյ աշխարհիս, մինչև ցիւր ժամանակս կամ ցելս Թաթարաց յարևելից. և յետ այնորիկ ընդ գործս նոցին Նետողաց յաշխարհս մեր՝ յերկարագոյն բանիւք վիպելով հասուցանէ ցամ Տեառն 1265, և լռէ սուղ

1 Ի յառաջաբանի մեկնութեան Երգոց երգոյն։

ինչ յառաջ քան զՎարդան պատմիչ, զոր և վասն այսո֊րիկ չկարէ դասել 'ի շարս պատմագրաց Հայոց (Կ). իսկ ինքն Վարդան Թուի իսկ տեսեալ և յակն արկեալ զայս գործ ընկերակցին, որպէս ասէն. « Ի ՈՁԵ Թուականէն Հայոց մինչև յ'ՉԺԴ... զոր ինչ արարին ազգն Նետողաց.... գրեալ են մանրամասնաբար փառաւորեալ հայրն մեր Վա֊նական վարդապետ և հարազատն մեր Կիրակոս վարդա֊պետ, հօրն համանման, զոր մեք ոչ համարձակեցաք ե֊րեքկնել կամ բազմաբանել... պատկառելով 'ի գրողացն պատուոյ »:

Պատմութիւն Թաթարաց արշաւանին 'ի Հայս, կամ լաւ ևս յարևելեան Հայս՝ որ Աղուանք կոչէին յայնժամ, այս իսկ է գլխաւոր նպատակի պատմչին, որպէս և ծանուցա֊նէ (121), գլուխ կարգեալ, « Թէ որպէս ել Թաթարն ապա֊
» կանել զաշխարհս ամենայն: Ամենայն բանք պատմու֊
» թեանս մերոյ և նախաշաւիղ որ մինչև ցայսօր (ցամն 1225)
» էր վասն ազգիս այսորիկ, զոր չնորհօքն Քրիստոսի հան֊
» դերձեալ եմք ճառել. կարծեմք թէ յոլով ևս զնոյնս պատ֊
» մեսցեն. և ամենեքեան նուազեալ գտանին յարժանա֊
» ւորութենէն. զի յաճախեն քան զպատմութիւնս չարիքն՝ որ
» եկին կալան զաշխարհս ամենայն [1] »: Բայց թէպէտ և զայս նպատակ ունի պատմիչն, այլ գրեալն զԹաթարաց չառաւելու քանակաւ քան զկէս բովանդակ գրոց պատմու֊թեանն, որ և ինքնին չէ մեծ. հետևելով և յայսմ յոլովից 'ի մերոց պատմչաց, որոց զիւրեանց ժամանակի դէպսն կա֊մելով ճառագրել՝ յամենան 'ի նախակարգութիւն անցիցն յառաջագոյն անցելոց, կամ 'ի բովանդակութիւն տոհմային պատմութեան, և քան զխոստացեալն իւրեանց և քան զա֊կընկալութիւն մեր՝ կարճառօտս կտորեն զբուն դէպսն. այլ գուցէ մերս այս՝ որպէս և իւր ընկերակից՝ պատկառ֊կալով 'ի մեծէ վարդապետէն իւրեանց Վանականայ՝ ոչ իշ֊խեաց երկրորդել զամենայն զնորա պատմեալսն, այլ յա֊ւէտ զթողեալսն առ՞'ի նմանէ հաւաքեաց: Ես զի զիւրոց հայրենի սահմանաց զդէպսն գրէր, որպէս կանխեցաք նը֊շանակել, և տեղիքն յայնժամ յանուն Աղուանից աշ֊

1 Այսպիսի ինչ իմաստ խառնէ և Վարդան յետ վերոյեդեալ յի֊շատակութեան գրուածոց Վա֊նականայ և Կիրակոսի: Տես 'ի նորին պատմութեան, յէջ 147:

խարհի կոչէին, զայս մասն պատմութեան զոր Երկրորդ Հատուած կոչէ (96), սկսանի համառօտութեամբ պատմութեան եկեղեցական և քաղաքական աթոռակալաց Աղուանից. յորմէ և ձև գրոցն հաւաստի յերկուս տրոհիլ Հատածս. բայց զի 'ի սկզբան ոչ յիշէ զայդ և ոչ 'ի խորագրին էր նշանակեալ, և մեք ոչ իշխեցաք մեզէն վերակարգել կամ աստանօր տրոհել, այլ որպէս գրչագիրքն ունէին՝ զառաջին մասն անընդհատ առանց գլխակարգութեան շարայարեցաք. և երկրորդին սկիզբն ոչ 'ի նշանակեալ հատածիդ եդաք, այլ ուստի գլխակարգութիւնքն սկսանէին, և ուր ինքնին իսկ հեղինակն նորով յառաջաբանութեամբ ծանուցանէ՝ զի ոչ ևս զառ յայլոցն նախագրելոց հաւաքածոյս՝ այլ զիւր իսկ ականջալուրս և ականատեսս պատմել ունի այնուհետև։

Ժամանակ ձեռնարկութեան գործոյս լեալ է յամի 1241, որպէս երկիցս նշանակէ հեղինակն (39 և 151), այլ և զօր սկսանելոյ գրուածն (5) որ է 19 մայիսի, զի յայնմ աւուր հանդիպի տօն Հոգեգալստեան այնր ամի. և յայսց բանից ստուգի՝ 'ի նմին իսկ ամի իբր յեօթնամսեայ ժամանակի գրեալ զբովանդակ պատմեալսն և զեղեալսն մինչև ցնոյն ցայն ամ, յորում և առ վայր մի դադարեցուցեալ թուի զգործն, և ապա մի ըստ միոջէ ըստ իրացն յամբոկ ելանելոյ՝ շարայարեալ ժամանակագրաբար զանցս քսան և հնգից վերջնոց ամաց, 'ի 1241 ամէ ցամն 1265, յորում աւարտ պատմութեան կամ գրոցս՝ առանց նշանակի վերջաբանութեան. կամ զի եղեալ էր 'ի մտի նշանակել և զօր յետ այնր դէպս՝ եթէ յերկարակեաց լինէր՝ և գտանէր պատեհ ժամանակի և հանգստեան, և կամ թէ և գրեաց ինչ աւարտաբանութիւն և չեհաս առ մեզ[1]։

Այսուհետև զկենաց և զգործոյ մատենագրին ըստ արտաքին կերպարանաց. յանդիման արասցուք համառօտիւ և զտեսութիւնս մեր զարժէից և զոճոյ գրուածոյն։ Ոչ ինչ

1 Ոմն յընդօրինակողաց պատմութեանն թուղթս դատարկ թողլով 'ի վերջն ազդ առնէ. «Ով եղբարք, եօթն թուղթս պարապ թողի, զի օրինակն չկայր. ապա » թէ զօրինակն գտանես՝ զպակասն լցուցանես. բայց աղէկ » հաշուես զի պարապար զայս և » թուղթ պարապ չի թողուս»։ Համարեր ուրեմն իբր եօթն թղթովք պակասել, և թուղթք նորա սուղ ինչ փոքր են քան զմեր տպագրիս։

երկբայիմ զի համօրէն բանասիրաց, մանաւանդ որ ժամանակիս բազմախոյզ որեարն է անցիցն անցելոց 'ի հին և 'ի միջին ժամանակս, ցանկալի և պիտանի իցէ Երկրորդ Հատածն պատմութեան Կիւրակոսի, և այնչափ առաւել, որչափ զի այժմ չունիմք 'ի ձեռին ոչ զՎանականի, ոչ զԳրիգորի ուրումն Երիցու, և ոչ զայլոյ մերազնէի կամ զծանօթից մերձաւորաց և ականատեսից ստուգաբան պատմութիւնս գործոց ազգին այնորիկ, որ յ'ԺԳ դարու երևեցաւ յետ այլոցն՝ կերպարանափոխ առնել զքաղաքական կրօնս գրեաթէ բոլորումն Ասիոյ, յելիցն արեւու 'ի բացաձիգ ծովէն Ճենաց՝ մինչև 'ի ծովն արևմտից 'ի Մէջերկրեայ: Եւ յայսմ թերևս կանխեցին քան զմեզ յառաջադէմքն յամենայնի Եւրոպէացի բանասէրք՝ պատուադիր և օգտաշահ լինել, քաղելով 'ի բանից պատմչիս ըստ իւրեանց պիտոյից և առաջարկեալ երկասիրութեանցն, մինչև գրեաթէ զողջոյն իսկ զերկրորդն Հատած թարգմանել հանդերձ ծանօթաբանութեամբ 'ի փռանկ լեզու և հրատարակել տպագրութեամբ 'ի Բարիզ՝ հայագիտին և լեզուիս մերոյ անդ այժմս վարժապետի՝ տեառն Եդուարդայ Տիւլորիէ [1], և յառաջ քան զնա մասամբ Մ. Պրոսէ: Ընդ պատմութեանն նշանաւոր և պատուական է յաչս լեզուաքննաց հաւաքումն մողոլ բառից (էջ 149): Իսկ մեզ ընդ նոցին պիտանի են և որ ինչ այլ զկողմանց արևելից կամ զԱղուանից Հայոց պատմէ ականատես գոլով, զդէպս մեծի կիսոյ ԺԳ դարու, և զկրօնական ինչ յիշատակս, որպէս խնդիրն բղխման Հոգւոյն Սրբոյ, և որ սակս այնր գեղեցիկ դաւանութիւնք Վանականի և այլոյ, Թուղթն կանոնական Կոստանդեայ կաթողիկոսի, այլովք հանդերձ. որք ընծայեն մեզ փաստս կարեւորս 'ի գիտութիւն և 'ի հիւսուած եկեղեցականս պատմութեան: Եւ այսոքիկ դարձեալ պատուականագոյնք են ընծային՝ արժանահաւատ և ստուգապատում ցուցանելով զգրիչն՝ յիւրոց իսկ բանից և 'ի վկայութենէ ուսումնակցին:

Սակայն ոչ կարեմ զայս այսպէս հաւատալ և ասել զերկարժամանակեայ պատմելոցն յառաջնում հատածին, յորում բազում ուրեք թերացեալ երևի հեղինակս 'ի քաջադատութենէ, և դիւրահաւան, մանաւանդ յիւրս հրա-

1 Les Mongols d'après les historiens arméniens. Premier fascicule. Extraits de Guiragos. Paris, Imprimerie imperiale, 1858:

չմլեալ՝ որք ուրեք հրէշաւորս անգամ կերպարանին . եւ ոչ սակաւ ուրեք մատն լինին տարապայման ազգանախանձու-թեանն , եթէ ներեսցի ինձ ձայնդ , որպէս 'ի պատմելն զՑովհաննէ Գառնեցւոյ ։ Այնու ոգւով եւ մեծամեծս կո-տորէ 'ի ջատագովութիւն իւրայոցն՝ ըստ կարծեցեալ յաջո-ղելն նմա բաղդին կամ առթին ։ Ապաշաւանաց եւս է զի սո-վին մոլութեամբ զառանցեալ զոյգ ընդ կանխակալոյ ատան-դութեան՝ բազում ուրեք մարտնչի ընդ ճշմարտութեան , մերթ ընդհարկանելով ընդ Ցոյնս (որպէս յէջ 53 , 57 ; 70 եւ այլն) եւ մերթ ընդ իւրսն իսկ յանզգաստից . մինչեւ զսըր-բոյ եւ զմեծոգւոյ առն Ներսիսի Լամբրոնացւոյ հաւատալ կեղծաւորութեան բասրելի (76) . եւ յանախագոյն եւս ընդ հաւանողս տիեզերական ժողովոյն Քաղկեդոնի , գրեաթէ 'ի սովորականն իւրոցն համախոհից անկեալ յերկբանու-թիւն , զժողովն երգիծանելով եւ զհաւատս ժողովոյն այ-լուր պանծանօք հռչակելով , որպէս յերկարաբան դաւանու-թեանն (էջ 187–192) թէ իւր իցէ յօրինածն եւ թէ այլոյ վար-դապետի , զի յօժար հաւանութեամբ ընդունի , որպէս եւ զբղխումն Ս . Հոգւոյն 'ի Հօրէ եւ յՈրդւոյ , նազաբանելով իսկ թէ «ընդունելի է յեկեղեցիս Հայաստանեայց եւ յօգիս Կիւրակոսի » ։

Ամենայնիւ այսոքիւք եւ քննողական ընտրութեամբն ըս-տորեւ գտանի[1] քան զուսումնակիցն իւր Վարդան , եւ նը-ւազեալ 'ի հետամտութենէ նորին 'ի գիրս եւ 'ի բաղդատու-թիւն բանից պատմչաց . յորոց է զի եւ զսխալ առեալ գրէ , որպէս 'ի պատմութեան Գրիգորի Վկայասիրի (55) ։ Այլ եւ յոճ բանից լեզուին եւ իմաստից նուաստագոյն է . զի ոչ նրբութիւն եւ ազդուութիւն է չարաբանութեանն , եւ ոչ ի-մաստից վսեմութիւն կամ յանկարծական ինչ սլացք եւ գե-ղեցիկ առածք , որպէս է հանդիպել առ միւսոյն ։ Թէպէտ ունել ունի եւ անպաճոյճ հարթութիւն եւ պարզութիւն պատմածոյն զիւր յարգ , յստակութեամբն եւ անկնճիռ բացայայտութեամբն , միանգամայն եւ հեռի գոլով 'ի հե-տեւակութենէ յետնոցն քան զինքն պատմագրաց ։

Արժան է աստանօր յաւելուլ յիրաւունս Կիւրակոսի եւ զհանգամանս գաղափարաց գրոց պատմութեանն 'ի մեր ձեռս

1 Թէ ոչ Թեթեւամտութեանն տայ եւ ոչ կարի նրբութեան 'ի Ճահ գրեցի եւ 'ի յառաջաբանին գլխա-տառիւք զանուն իւր յօդել . գուցէ զի անմտաց մնասցէ այն 'ի չժամանելն առ վերջաբանն ։

հասելոց, որք երեք միայն էին, և ոչ մին 'ի նոցանէ հին կամ զգաստ գրչութիւն, որպիսիք էին առ մեզ օրինակքն Վարդանայ պատմութեանն, այլ սոքա նօտրագիրք ժէ դա-րու, բազմասխալք և Թերաքանք. վասն որոյ հարկ համա-րեցաք ուրեք Թողուլ որպէս և էրն և ուրեք ուղղել զյայտ-նի վրիպակս՝ որպէս անկն էր լինել, և զԹերի բառն յաւե-լուլ նօտրացի դրոշմելով, կամ 'ի փակագծի ամփոփելով զԹերին՝ զոր առաք 'ի Գ օրինակէ. և է սա անսեԹեւեԹ տը-պագիրն փոքրագիր յՕսկանայ տէր Գրիգորեան Յովհան-նիսեանց, ընծայեալ 'ի լոյս յամի 1858 'ի Մոսկուա[1] առանց ինչ բնաւ ծանօԹուԹեան զսկզբնագիր գրոցն. որով՝ Թէ-պէտ և բազում ուրեք ընտիր քան զմերսն երեւեցաւ նորա օրինակն, այլ ոչ կարացաք համօրէն վստահ լինել, ոչ գի-տելով զչափ հաւատարմուԹեանն կամ զուղղագրուԹեան զոր արժանն իցէ համարեալ վարել յիւրում տպագրին. վասն որոյ և ուրեք 'ի ստորեւ 'ի լուսանցս գրոցս նշանակե-ցաք զտարաձայնուԹիւն սորա 'ի մերոցս, որպէս և զմերոց օրինակաց 'ի նորայոյն, կամ զսխալ սոցա. նշանակելով որպէս 'ի Վարդանայ պատմուԹեանն, 00, և իմանալով զա-մենայն օրինակսն, իսկ զմին և զերկուս՝ յանուանէ նշանա-կելով Ա կամ Բ կամ Գ. 0։

Իսկ 'ի բացայայտուԹիւն կամ յիմացուած և յորոշումն բանիցն պատմելոց կամ յուղղուԹիւն՝ յաւելաք ծանօԹու-Թիւնս՝ ոչ յաճախս և երկարս, այլ և բազում ուրեք հրա-ւիրեցաք զընԹերցօղն 'ի պատմագիրս Վարդանայ, նշանա-կելով զէջս նորին գրոց[2], զտպագրեալն առ 'ի մէնջ երկե-մաւ յառաջ (1862). քանզի բազում ինչ զնոյն մի գործ և դէպ՝ պատմեն երկոքին սոքա, և մեզ ծանր Թուեցաւ կրկ-նել զնոյն և նման բան՝ յետ սակաւ ինչ յերկրորդումս յայսմիկ մատենի պատմուԹեան. ակն ունելով Թէ և ըն-ԹերցասէրՔ գրոցս Կիրակոսի՝ ոչ անտիրաք գտցին և Վար-դանայ, նա և կանխաւ զնոյն առ ձեռն ունիցին, զուցէ Թէ և 'ի մի տուփ կազմեալ ամփոփիցին երկոքին մատեանքս, որպէս զատանին զուգահաւասք 'ի դրչագիրս։ Եւ եԹէ դէպ

1 Խորագիր տպագրելին է. Պատ-մութիւն Հայոց արարեալ Կիրա-կոսի վարդապետի Գանձակեցւոյ. 'ի լոյս ընծայեաց Օսկան Տէր-Գրիգորեան Յովհաննիսեանց Ն-բեանցի. 'ի Մոսկուա, 'ի տպարա-նի Արեւելեան լեզուաց Ճեմա-րանի տեարց Լազարեանց։

2 Դնելով Վ. (Վարդան) և առ-նելն զԹիւ էջին։

ես լինիցի և յետ այսորիկ զայլ պատմիչ մերձաւոր և զնոյնաքան 'ի լոյս ընծայել՝ համարձակիմք աստուածին ծանուցանել թէ այսու օրինակաւ և 'ի նոսին վարեսցուք, առ 'ի կարճել զյաճախութիւն կամ զերկրորդումն բանից։ Մանաւանդ զի և ոչ օրինակագիր և ճարտարահիւս արանց են բանք ցանկալիք և ներկուռք, յորս ախորժ է մտաց ինքնաբեր դեգերումն և ներումն. իսկ 'ի սոսին, ստիպիմք խոստովանել և զայս, զի բազում անգամ տաղտուկ և զզուանս գայ մեզ ժամավաճառն իսկ լինել 'ի քննութիւն և յընտրութիւն անոճ և անյաջ բանից և բաղայից, որքան և սիրողք իցեմք տոհմային պատմութեան և պատմչի. որոց սիրողացն մեզ նմանեաց՝ ընծայեմք աւադիկ որպիսի ինչ են սոքա. զաւելին կամ զնուազ վարկի թողեալ 'ի կամս և 'ի ճաշակ նոցին ընթերցանելեաց, որպէս և զմեր բանքս։

Դարձ առնելով միւսանգամ 'ի հեղինակ մատենիս, զի չկամիմք լռել որ ինչ զնմանէն, հարկ է համարել զնա, ըստ իւրոց ինչ բանից, հմուտ կամ գիտակ թուրք կամ պարսիկ լեզուի, կամ թէ և նորամուտ թաթար բարբառոյն, յոր սակս և փոխանակ գրագրի և թարգմանի կալեալ պահէին զնա 'ի գերելն ընդ Վանականայ վարդապետին իւրոյ (132). քանզի 'ի Գանձակայ գոլով ծննդեամբ և քաղաքին 'ի գաւառուց հեռէ անկեալ ընդ արաբացի և պարսիկ իշխանօք՝ լեզու նոցին հասարակեալ էր 'ի նմին։ Իսկ զայլոց հմտութեանց նորին չունիմք հաւաստիս առ ձեռն, չունելով իսկ զնորա զայլ գրաւոր վաստակ, որպէս կանխեցաքս ասել. այլ յաւելցուք աստանօր զկարծեցեալսն ինչ կամ զոչ հեռիս 'ի կարծեաց. յորս միակ նորուն իսկ անուամբ յիշատակեալ է համառօտ պատմութիւնն այն վարուց կամ տեսլեան Մխիթարայ Գօշի, որ գտաւ 'ի գիրս մի Յայսմաւուրաց 'ի Սեւան կղզւոջ, և 'ի բանասիրէ ումեմն վարդապետէ[1] ընդօրինակեալ հասուցաւ մեզ. և որոյ սկիզբն էր ԺԱ գլուխ Բ Հատածի պատմագրութեանս (106), ապա Միւսն այն պատմութիւն սքանչելի վարդապետին Մխիթարայ, զոր և արարաք Յաւելուած գրոցս. 'ի վերջաբանին ընթեռնուս ըզպատճառս և զանուն հեղինակիս, որ և զոյգ պատմելեացն յօդուածոյ թուի, դէթ ըստ մասին. զի որպէս ցուցաք 'ի

1 Պօղոս վարդապետ Պետրոսեան։

ակզբանն՝ չէր մարթ Կիրակոսի պատանեկի ականատես և ականջալուր լինել այնց իրաց, և ոչ աշակերտել վարդապետի իւրումն վարդապետի. այլ և ծաղրագոյն պատճառ Գօշ կոչման Մխիթարայ անհամաձայն գտանի պատմելոցն 'ի մերոյս յայսմ իսկ պատմութեան մատենի (114–5). ապա այլոյ ուրուք գրեալ և վերագրեալ է զայդ յանուն Պատմագրիս, խառնելով 'ի նորա գրածսն. զոր մեք 'ի գրոտանս բանասիրաց և յանկորուստ մնացուած աւանդական զրուցաց՝ հաճեցաք չտեմարանել յամբարս տպագրութեան, անխորժելով և ընդ տեղագրական ինչ ծանօթս սահմանաց Գետկայ և Ճապոտիկն գեղջ, զորմէ տեսցես 'ի կարգին։

Միւս գրուած մեծ և կարևոր են Յայսմաւուրք Կիրակոսի Արևելցւոյ, որ ոչ լոկով անուամբն և հայրենեացն կոչմամբ մերձաւոր գտանի մերումս, այլ գոգջիր և կենացն ժամանակաւ. զի յօրինեալ է դորա զգիրս Յայսմաւուրացդ յամի 1269 և 'ի վաթսներորդի վեցերորդի ամի կենաց իւրոց. այլ 'ի Սիս քաղաքի Թագաւորութեան Կիլիկեցւոց։ Եւ զի ոչ այլ ոք՝ և ոչ մեք ասեմք Գանձակեցւոյն[1] զգործս զայս. այլ առ հանդիպակցութեան անուանն և ժամանակին և աշխարհին՝ ոչ խղճեցաք յիշումն առնել առ տեղեաւս. մինչև ապագայն ցուցցէ մեզ ստուգիւ զվարս Արևելցւոյդ յորոյ անուն գտանին և բանք խրատականք և Թուղթք. և յոմանց շփոթմամբ նոյն կարծին ընդ այլոյ ևս Կիրակոսի Երզնկացւոյ՝ յետնագունի հարուստ ժամանակաւ։

1 Մանաւանդ զի ոչ բազում ամօք յառաջ քան զժամանակ երկասիրութեն Արևելցւոյդ՝ մեծն Վանական՝ վարդապետն Կիրակոսի, շարժեալ 'ի խնդրոյ Ջալալ-դօլայ իշխանի Խաչենոյ՝ պատուիրեալ էր տեառն Խաչայէլի ումեմն, և սորա աւարտեալ զգիրսն Յայսմաւուրաց. ապա անդէպ էր մերոյս Կիրակոսի Գանձակեցւոյ զնոյն գիրս յօրինել։

## ՀԱՄԱՌՕՏ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ ԺԱՄԱՆԱԿԱՑ

## Ի ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԷ ՄԻՆՉԵՒ Ի ՅԵՏԻՆ ԱՒՈՒՐՍ ԹՈՒԱԾԵԱԼ

---

Կիրք՝ որ 'ի բնութեան մարդկան յայտնի, հաստատեալ է խնամօք յարարչէն, քննասէր լինել իրաց ինչ անցելոց կամ հանդերձեալն լինելոյ.

Իսկ այսմ ոչ է հնար այլազգ հասու լինել կամ իմանալ, բայց թէ բազում աշխատութեամբ և յերկար ջանիւ,

Խուծիլ և մաշիլ տաժանմամբ և յոյժ վաստակօք. զի թերևս գտցէ ինչ պիտանացու՝ որ կարող իցէ լնուլ զփափագս ինչ խնդրողին ըղձից.

Ռաբունաբար երկօք և ոչ վարկպարազի անցանել[1] ընդ պատմութիւնս ժամանակաց ներքնոց և արտաքնոցն.

Ակնարկելով և ազդեցութեան հոգւոյն, որ կարող է իմաստնացուցանել զտգէտս և բանաւոր առնել զանբանս[2]։

Կարող և ձեռնհաս զնա հաւատալ, առանց երկմտութեան և թերութեան.

Որով և ամենայն ինչ ըստ կամաց նորա յօրինի և կազմի, երևոյթքս և աներևոյթքն։

Սրբապէս մտօք և անաչառութեամբ մատուցանել զունկն՝ վերին և ներքին աստուածայնոցն բանից և գրոց

1 ՕՕ. անցուցանել։ 2 Ա. Գ. զբանս։

պատմութեանց, որք կարող են հասուցանել զխնդրողն խնդրելոյն։

Քանզի և այս օրէնք աստուածայինք են, ցուցանել հարց որդւոց՝ զի ծանիցեն յազգ այլ, որպէս մարգարէն Դաւիթ հրամայէ. զի յայս խրատէր մեծն 'ի մարգարէս Մովսէս զորդիսն Իսրայէլի՝ խրատէր և ասէր. Խօկասցիս 'ի սոսա 'ի տուէ և 'ի գիշերի, 'ի նստել 'ի տան և 'ի գնալ 'ի ճանապարհ, 'ի ննջել և 'ի յառնել։ Այլ յայտնի որք յօժանդակ են և ձեռն տան՝ յոլովք են աստուածայնոց արանց, որք կենդանի արձան թողին զգիրսն յետ իւրեանց, յամենայն ազգաց։ Որպէս մեծն Եւսեբիոս զերկուս գիրսն եթող, զՔրոնիկոնն սկսեալ 'ի նախնոյն Ադամայ, զխժական անուանս նահապետայն՝ զոր գրեցին արտաքինքն, համեմատելով ընդ աստուածայնոց արանց պատմութիւնս. և բերեալ հասուցանէ մինչև 'ի գալուստն Քրիստոսի և այսր ընդ յոլովից ազգաց նահապետս և զթագաւորս։ Այլ զԵկեղեցւոյ պատմութիւնս, սկսեալ 'ի ծագմանէ արեգականն արդարութեան, զժամանակս թագաւորաց և զառաքելոց սրբոց քարոզութիւն, և թէ ո՛ 'ի նոցանէ զինչ գործեաց, և թէ յո՛ր կողմն չոգաւ իւրաքանչիւր ոք, և կամ թէ ո՛րպէս վկայեցին, և զեպիսկոպոսաց սրբոց և զերևելի արանց զգործ և զքաջութիւն, և բերեալ հասուցանէ մինչև յաւուրս մեծին Կոստանդիանոսի բարեպաշտի, և անդ դադարէ։

Այլ ապա մեծիմաստն Սոկրատէս կորովի բանիւք, սկսեալ 'ի սրբոյն Սեղբեստրոսէ Հռոմայ հայրապետէ և 'ի Կոստանդիանոսէ, և ածէ մինչև յաւուրս Թէոդոսու փոքու, զարարածս և զգործս իւրաքանչիւր թագաւորաց, և զեպիսկոպոսաց՝ զառաքինեաց և զվատթարաց, և զժողովելոց[1] բազմաց եղելոց, պիտանեաց և խոտանեաց, ընդարձակ և յաճախ պատմութեամբ աւարտէ։

Իսկ Հայոց ազգիս պատմագիրք յոլովք ցուցին աշխատութիւնս, որպէս սքանչելի և կորովամիտն Ագաթանգեղոս, որ թարգմանի Բարի–հրեշտակ. զոր եցոյց հրամանաւ մեծազօր և քաջ արքային Տրդատայ զհան-

1 Այսպէս յ'ՕՕ։

զամանս իրաց եղելոց առ Հայս 'ի ձեռն սրբոյն Գրիգորի պարթևի և խոստովանողին Քրիստոսի, զգործն նշանաց և արուեստից և զքանչելագործութեանց և զպատճառ լուսաւորութեան ազգիս Հայոց գեղեցիկ և պայծառ պատմութեամբ աւարտէ:

Իսկ զկնի նորա ամենահարուստն գիտութեամբ և մեծն իմաստութեամբ քան զյոլովս՝ սուրբ այրն Աստուծոյ Մովսէս Խորենացի, որ զՀայոց պատմութիւն շարագրեաց բազմահանճար և յոգնադրուատ բանիւք, և համառօտ պատմութեամբ և ընդարձակ մտօք 'ի նախնի մարդոյն սկսեալ զյոլովից ազանց իրս և զգործս և զարարս՝ բերեալ մինչև յաւուրս Տրդատայ և սրբոյն Գրիգորի, և անտի մինչև ցկատարումն սրբոյն Սահակայ Հայոց հայրապետին, և զողբս տասցեալ 'ի վերայ աշխարհին Հայոց՝ անդանօր դադարեցուցանէ:

Իսկ յետ նորա՝ սուրբն Եղիշէ, որ պատմէ զքաջութիւն Վարդանայ թոռին սրբոյն Սահակայ և ընկերաց նորին, որք յուսոյն Քրիստոսի զանձինս 'ի մահ եդին և պսակեցան 'ի Քրիստոսէ, և զարիական մահս սրբոց Յովսեփեանց, և զկամաւ տալ զանձինս 'ի կապանս արքունի նախարարացն Հայոց վասն յուսոյն որ 'ի Քրիստոս. և զհամբերող նահատակութիւն սրբոյն Խորենայ և Աբրահամու, զոր ստուգութեամբ ցուցանէ այրն Աստուծոյ սքանչելի:

Իսկ ապա Ղազար Փարպեցի ճարտասան, սկսեալ յաւուրցն սրբոյն Սահակայ, և զնոյն ոճ պատմէ: Իսկ զկնի նորա Փաւստոս Բիւզանդ, որ զեղեալ իրս պատմէ Հայոց աշխարհիս ընդ Պարսիկս և 'ի նոցանէ 'ի մերս. և Հերակլ 'ի Սեբիոսէ եպիսկոպոսէ ասացեալ[1]. և պատմութիւն առն սքանչելի Կորեան. և Խոսրով, և Ղևոնդ Երիցու պատմութիւնն՝ որ զոր ինչ գործեցին Մահմէտ և աթոռակալք նորա ընդ աշխարհս ամենայն, և առաւել ևս ընդ ազգս Հայոց. և Թովմայ վարդապետ տանն Արծրունեաց. և Շապուհ Բագրատունի. և տէր Յովհաննէս կաթուղիկոսն Հայոց. և Մովսէս

1 Այսինքն է Պատմութիւն արշաւանաց Հերակլի կայսեր 'ի Պարս, զոր գրեաց Սեբէոս եպիսկոպոս:

Կաղկանտուացի Աղուանից պատմագիր[1]. և Ուխտանէս եպիսկոպոս Ուռհայի, որ գրեաց զբաժանումն Վրաց և Հայոց 'ի ձեռն Կիւրոնի. և Ստեփաննոս մականուն Ասողիկ վարդապետ. և Արիստակէս վարդապետ կոչեցեալն Լաստիվերցի. և Մատթէոս վանաց երէց Ուռհայեցի. և Սամուէլ անուն քահանայ կաթուղիկէին Անւոյ. և ապա մեծ և հանճարեղ վարդապետ անուանեալն Վանական:

Որոց փոյթ եղև սոցա իւրաքանչիւր որքոցս՝ գրով թողուլ յիշատակս բարի զկնի եկելոց, յօգուտ լսողացն և 'ի վարձատրութիւն նոցին որքոց, անջինջ լինել յիշատակ մինչև 'ի յօրն Քրիստոսի: Իսկ մերս ձեռնարկութիւն մի ումեք յանդգնութիւն համարեսցի, այլ առաւել բարեացն նախանձոյ գործ. զի հարկանէն զմեզ միտք մեր ոչ տալ լռութեան այսպիսի աղէտ տարակուսանացն, զոր լուաք ականջօք մերովք, և տեսաք զի 'ի գլուխ ելին ամենայն որքոց մարգարէութիւնք՝ որ յառաջագոյն գուշակեցին վասն նեղութեանցն, որ հանդերձեալ էր լինել, և առ մեզ գործովք կատարեցաւ. զոր և ասաց փրկիչն մեր և Աստուած տէր Յիսուս Քրիստոս, եթէ Յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն 'ի թագաւորութեան վերայ. և այն ասէ սկիզբն է երկանց. յայտնութիւն որդւոյն կորստեան: Զոր երկնչիմք՝ մի գուցէ երևեսցի նա 'ի մերում ժամանակիս, զի գործք ամենայն որ գործին այժմ՝ զնոյն նշանակեն. սէր ցամաքեալ, անգթութիւն տիրեալ, աստուածպաշտութիւն նուազեալ, և անհաւատութիւնք բարձրացեալ, սեղանք և պատարագք լռեալք, քահանայք անողորմ 'ի սուր արկեալք, կանայք և մանկունք գերեալք, և արք դառնամահք լեալ: Զի զոր գուշակեաց այրն Աստուծոյ սուրբն Ներսէս վասն ազգին Նետողաց[2] և աւերման աշխարհիս Հայոց, այժմ կատարեցաւ յազգէն որ Թաթարն կոչի. զի բազում ազգ և ազինս ջնջեաց սա. զոր և յիւրում տեղւոջն պատմեսցուք, եթէ տէր կամեսցի:

1 Մովսէս Կաղանկատուացի (զի Կաղանկատուք կոչի հայրենի նորա աւանն) հաւանօրէն յ'Է դարու եկեաց: Բայց զպատմութիւն Աղուանից շարակարգեցին այլք յետ նորա:

2 Որ են այժմու Թաթարք:

Բայց իւրաքանչիւր ոք յառաջին աշխատասիրացն եգիտ տեղի ինչ բուռն հարկանելոյ, կամ թագաւոր երևելի, կամ նահապետութիւնք ազգացն յայտնի․ իսկ մերս յայսմ ամենայնէ թափուր եղեալ․ զի թագաւորութիւնն վաղ ուրեմն բարձեալ, Արշակունին և Բագրատունին, և իշխանք ոչ ուրեք երևեալ հայկազնի․ բայց թէ ուրեք ուրեք ղօղեալք յօտար աշխարհի ։ Բայց միայն մերոյս եղեալ առաջի զաւուրս շնորհ, և զխորհրդոյս գործութիւն, զի յայսմ աւուրս յորում ձեռնարկեցաք 'ի սմայ՝ տօն էր գալստեան ամենասուրբ Հոգւոյն 'ի վերնատունն 'ի դասս առաքելոց հրեղէն լեզուօք, հրաշազարդեալ զնոսա ընդ տիեզերս առաքեաց՝ կոչել զամենեսեան ուղղափառ աւետարանին 'ի կեանս անմահականս ։ Եւ մեք 'ի նոյն Հոգին վստահ եղեալ արկաք զանձինս յաշխատութիւնս՝ որ 'ի վեր է քան զկար մեր ։ Վասն որոյ աղաչեմք զկնի եկեալսդ, ոչ աղարտել զաշխատութիւնս մեր որպէս անուսմունք, և խնջել քթօք և յունօք պռստել․ այլ զիջանել եղբայրաբար, և ձեզ՝ թողուլ յիշատակ ապագայից․ զի Քրիստոսի աշակերտացն ամենայն ինչ հաւանութեամբ է, որպէս ուսանիմք 'ի գրոց ։ Այլ մեք բուռն հարցուք զիրէս զոր սկսաք և ցուցաք․ նախ զանուանս աթոռակալացն սրբոյն Գրիգորի, 'ի նմանէ սկսեալ մինչև առ մեզ սուղ ինչ համառօտիւք․ զի լիցի սա մեզ արձան գերեզմանի, ոչ ըստ նմանութեան Աբիսողոմ արքայի [1], այլ կենդանի, զի յիշեսցի 'ի սմա անուն Կիրակոսի ։

1 Ա․ Գ․ Աբիսողոման արձին ։ Տպագիրն Աբիսողոմեան փարին ։ — Հեղինակն ակնարկէ յանձահս յարձանն՝ զոր կանգնեաց Աբեսաղոմ յիւր անուն 'ի հովիտս Թագաւորաց ։ Բ Թագ․ ԺԸ․ 18 ։

## ՀԱՄԱՌՕՏ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԵՒ ՑՈՅՑՔ ԱՆՈՒԱՆ ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ

ԵՒ

## ՈՐՔ ՅԵՏ ՆՈՐԱ ՅԱՋՈՐԴԵՑԻՆ [1]



Ամենայն գովեստից արժանի և յիշատակաւ բարեաւ հռչակեալն հայրն մեր հոգևոր և ըստ աւետարանին ծնօղ սուրբն Գրիգորիոս՝ յետ լուսաւորելոյ նորա զՀայաստան աշխարհս աստուածգիտութեամբ, և ձեռնադրելոյ եպիսկոպոս աւելի քան զչորեքհարիւր և երեսուն, գնաց եղև նմա ընդ մեծի արքային Տրդատայ 'ի Հռոմ 'ի տեսութիւն նշխարաց սրբոց առաքելոցն Պետրոսի և Պօղոսի, և մեծ թագաւորին Կոստանդիանոսի և սուրբ հայրապետին Սեղբեստրոսի, դնել ուխտս և դաշինս 'ի մէջ իւրեանց: Ուր ընկալեալ մեծաւ պատուով Կոստանդիանոս և մեծ հայրապետն աշխարհամուտ դրան՝ մեծարանս արարեալ սրբոյն Գրիգորի, որպէս խոստովանողի և առաքելաշնորհ վկայի Քրիստոսի, տան նմա աթոռ հայրապետութեան որպէս աթոռակալի Պետրոսի [2]. տան և մասն ինչ 'ի նշխարաց առաքելոցն, և զահեակ ձեռն Անդրէի առաքելոյն, և այլ ընծայս բազումս, և յԵրուսաղէմ զտեղի խաչելու-

1 Ա. Գ. առաջնորդեցին:

2 Աթոռակալ Բարդողիմեայ առաքելակցին Պետրոսի:

թեանն Քրիստոսի զԳողգոթա, և զսուրբ Յակոբն, և տեղի մի պատարագի 'ի մնարս սուրբ Յարութեանն. և առեն կախեաց կանթեղ մի սուրբ Գրիգոր 'ի վերայ գերեզմանին Քրիստոսի. և խնդրեաց յԱստուծոյ աղօթիւք, առանց զգալի լուսոյ լուցանիլ 'ի սուրբ Պասեքի տօնին, որ լինի մինչև ցայսօր նշանն [1]: Այնպէս և զմեծն Տրդատ մեծարեալ որպէս վայել էր նորա քաջութեանն, արեամբն Քրիստոսի [2] և հաւատովն որ 'ի նա՝ դաշինս կռեալ անքակ ունել զսէրն 'ի մէջ երկուց ազգացս յետ նոցա: Եհարց Կոստանդիանոս զմեծն Գրիգոր. Ո՞րքան ուրախութիւն է առաջի հրեշտակաց 'ի գիւտ այսքան մոլորեալ ոչխարացն: Եւ պատասխանի ետ, Այո. բայց մի ոչխար համարին աղամայինքս առ վերնոց բազմութիւնս: Եւ կայսրն ասէ. Եւ փըրկեալքս մի վերջասցուք հանդիսանալ ընդ նոսա յեկաւորիլդ ձեր: Եւ հրամայեաց ամենայն քաղաքին խրախանալ զենմամբ խաշանց. և հրեայք և հեթանոսք որք մնացեալ էին յանհաւատութեանն՝ լուանային յօրհնութեան աղէն. սուրբն Գրիգոր և Սեղբեստրոս աղ օրհնեցին: Եւ ասէ սուրբն Գրիգոր ցհրեայսն. Դուք զթլփատութիւնն անթլփատ արարիք հակառակ օրինացն. և ասէ, անասնոցն՝ որք մատչին պատարագ Աստուծոյ, և կամ նուէր սրբոց կամ յիշատակ ննջեցելոց՝ առանց օրհնութեան աղի իբրև զզոհ հեթանոսաց է:

Եւ ապա եկեալ յաշխարհս մեր հոգևոր ցնծութեամբ և մեծաւ ուրախութեամբ յոգնապէս զարդարէին զաշխարհս մեր ամենայն քրիստոնէական կարգօք: Եւ 'ի կենդանութեան իւրում ձեռնադրեաց զորդի իւր զսուրբն Արիստակէս եպիսկոպոսապետ Հայոց և Վրաց և Աղուանից. և ինքն թուռն հարեալ զմիայնակեցութեան, զի ամենայնիւ պսակեսցի առաքելականաւ՝ հայրապետականաւ և միայնաւորականաւ, առաւել ընտանեցուցանէր զմարդն Աստուծոյ անզբաղապէս: Եւ յորժամ եկն Արիստակէս 'ի ժողովն Նի-

1 Եւ զայս իրս անշուշտ տեսէն որք տեսանեն:

2 Որպէս թէ 'ի բաժակ սուրբ խորհրդոյն թաթաւեալ և գրեալ իցեն դաշինքն, ըստ աւանդելոյ այլոց ևս մեծաքանից, որպիսի և հետևեալ բանքդ են:

կիայ, այնուհետև սուրբն Գրիգոր այլ ոչ ումեք երևե-
ցաւ. կեցեալ ժամանակս յոլովս՝ հանգեաւ 'ի Քրիս-
տոս, կալեալ զհայրապետութիւնն ամս երեսուն։ Իսկ
գտեալ զնա հովուացն վաղճանեալ՝ կարկառ քարի կու-
տեցին 'ի վերայ նորա. և յետոյ ազդեցութեամբ սուրբ
Հոգւոյն ոմն Գառնիկ այր ճգնաւոր և սուրբ տարեալ
հանգուցին 'ի Թորդան։ Իսկ յաւուրս Զենոնի կայ-
սերն տարան 'ի նշխարաց նորա և 'ի սրբոյն Հռիփսի-
մեանցն 'ի Կոստանդինուպօլիս[1]. և արարեալ տապան
արծաթի՝ եդին 'ի նմա զնշխարս սրբոյն. գրելով զիւ-
րաքանչիւր զանուանս 'ի վերայ, և եդին 'ի վերայ մար-
մարեայ տապանի, և կնքեցին մատանեաւ, և եկաց ժա-
մանակս յոլովս անյայտս՝ ոչ գիտելով ոք ուրեք է. բայց
զայս միայն՝ թէ սրբոց է։ Իսկ յաւուրս Վասլի կայսեր
և Աշոտի Բագրատունւոյ Հայոց թագաւորի յայտնի
եղև այսպէս։ Պատանի մի ըմբռնեալ յոգւոյ չարէ
մինչդեռ յաղօթս էր 'ի նմին եկեղեցւոջ՝ ուր կային
նշխարք սրբոց, վերացուցեալ դիւին զպատանին ընկէց
'ի վերայ սրբոցն, աղաղակէր և ասէր. Սուրբդ Գրի-
գոր լուսաւորիչ Հայոց՝ մի տանջեր զիս. և դու տիկին
Հռիփսիմէ եկիր տանջել զիս. և դու Գայիանէ տանջես
զիս։ Իսկ զայս աղաղակէր 'ի բազում ժամս. և լուեալ զայս
բազմութեանն ազդեցին թագաւորին. և հրամայեաց
բանալ զտապանն. և իբրև բացին, լոյս սաստիկ փայ-
լատակեաց 'ի նշխարաց սրբոց։ Իսկ հրամայեաց կայսրն
զմարմարիոնեայ տապանն ոսկւով պատել և գրել զա-
նուանս սրբոցն 'ի վերայ, զի ամենայն ոք գիտասցէ թէ
ո՛յր է տապանն։ Զայս ամենայն եկեալ ներքինի մի
պատմեաց թագաւորին Աշոտի. և նորա լուեալ ետ
փառս Աստուծոյ, և կարգեցին զօրն զայն տօն սրբոյն
Գրիգորի, որ 'ի վեցերորդ շաբաթու աղուհացիցն շա-
բաթ օրն կատարի, մինչև ցայսօր[2]։

Իսկ սուրբն Արիստակէս բարիոք հովուէր զհօտն որ
հաւատացաւ նմա. և յանդիմանէր անաչառութեամբ
զոչ եկեալսն յուղղութիւն։ Վասն որոյ Արքեղայոս
ոմն որ էր վերակացու կարգեալ Չորրորդն կոչեցեալ
Հայոց, յանդիմանեալ 'ի նմանէ վասն չար գործոց իւ-

1 Վ. 41։ 2 Վ. 85։

րոց՝ պատահեալ նմա 'ի Յոփայ գաւառին սպան զնա. և ինքն երկուցեալ 'ի Տրդատայ արքայէ՝ գնաց փախըստական 'ի Տարսոն Կիլիկեցւոց։ Զեօթն ամ կալեալ զեպիսկոպոսութիւն՝ մարտիրոսական մահուամբ փոխեցաւ 'ի Քրիստոս։ Եւ կացոյց փոխանակ 'ի հայրապետութեան աթոռ Տրդատ արքայն զերէց որդին սրբոյն Գրիգորի՝ զմեծն Վրթանէս, զեղբայր սրբոյն Արիստակիսի։

Եւ ինքն սիրեաց զվարս միայնակեցութեան որպէս զսէրն Գրիգոր. այնուհետև ընդ ժամանակս ժամանակս անյայտս լինէր՝ 'ի զօրաց իւրոց, քառասնօրեայ ժամանակս ձգեալ պահօք և աղօթիւք. և երթեալ զօրաց նորա ունել զթագաւորութիւն աղաչէին զնա։ Իսկ նա ոչ հաւանէր ասելով տիրանենգ զնոսա, և առ աչս մարդկան ունել զաստուածպաշտութիւն։ Եւ նոքա երդմունս արարեալ և մուրհակս կնքեալ սրբութեամբ ունել զքրիստոնէութիւն և միամտութեամբ ծառայել նմա, և նորա հաւանեալ կամաց նոցա դառնայ յաթոռն իւր, և ամենայն կարգաց և առաքինութեան ինքն լինէր օրինակ։ Իսկ նոքա տաղտկացեալք 'ի բարեպաշտութենէ նորա խորհեցան նենգութեամբ սպանանել զնա յորս՝ զբօսանաց աղագաւ. հարեալ նետիւ խոցեն զնա իբրև անգիտութեամբ. և տեսեալ թէ ոչ մեռանի յայնմանէ, տան նմա դեղ մահու. և այսպէս լուծին զնա 'ի կենցաղոյս, զայն որ թշնամիքն ոչ կարացին սպանանել զնա։ Որ հսկայաբար յաղթէր ամենայն թշնամեաց, որ անհնարին համարեալ ուժով, որ համբաւ քաջութեան նորա ելեալ էր ընդ ամենայն տիեզերս, զնա սպանին նենգութեամբ, և անձանց իւրեանց շիջուցին զբազմալոյս ջահն. այնպէս հանգեաւ բարեպաշտ և աստուածասէրն Տրդատիոս կալեալ զթագաւորութիւնն ամս յիսուն և վեց։

Իսկ մեծն Վրթանէս երթեալ առ Կոստանդին կայսրն՝ թագաւորեցուցանել զԽոսրով զորդի քաջին և առաքինւոյն Տրդատայ, զոր և արար իսկ. զօրս բազում տուեալ յօգնականութիւն նմա, ընդդէմ կալ պատերազմաց Պարսից արքային Շապհոյ։ Բայց Սանատրուկ որ [1] Աղուանից վերակացու կարգեալ էր 'ի

1 ՕՕ. յաւելուն «որ Պարսից արքային Աղուանից»։

Տրդատայ, իբրև լուաւ զմահ նորա, սպանանէ զսուրբն Գրիգորիս զորդին Վրթանիսի զեղբայր Յուսկանն կապեալ զնա ընդ ագի ամեհի ձիոյ 'ի դաշտի Վատնիանեան, և ինքն երթայ առ Շապուհ արքայն Պարսից: Այլ ընդունի զձև թագաւորութեանն, հատուածէ զաշխարհն Խոսրովայ. և Խոսրովու բաւական համարեալ զմնացեալ աշխարհն իւր, ոչինչ փոյթ զպատերազմաց արարեալ, այլ խաղաղական կենօք կացեալ հնազանդեալ մեծին Վրթանիսի՝ փոխէ զԱրտաշատ քաղաքն 'ի Դուին, և տնկէ անտառս կաղնեաց՝ տեղի զբօսանաց, և թագաւորեալ ամս ինն՝ վախճանի բարեպաշտութեամբ: Այլ թագաւորէ փոխանակ նորա որդի նորա:

Իսկ սուրբն Վրթանէս բարիոք կարգաւորութեամբ վարեաց զժամանակս կենաց իւրոց. Թէպէտ բազում անգամ կամեցան սպանանել զնա նախարարքն, այլ Աստուած ոչ ետ թոյլ այնպէս լինել, այլ խաղաղական մահուամբ փոխեցաւ առ Քրիստոս յոյսն ամենեցուն: Այլ թագաւորն Տիրան կացոյց փոխանորդ նորա զորդին զսուրբն Յուսիկ զեղբայր Գրիգորիսի Աղուանից կաթուղիկոսի: Բայց Տիրան ոչ ըստ իրաւանցն Աստուծոյ վարէր զթագաւորութիւնն՝ այլ չար գործովք. զոր յանդիմանէր սուրբն Յուսիկ անաչառութեամբ. իսկ Տիրան ատէր զնա, զոր և սպան զնա յետոյ այսպիսի պատճառաւ:

Եղև յետ մահուան Կոստանդնի որդւոյ մեծի Կոստանդիանոսի, թագաւորէ Հռոմայեցւոց ուրացողն Յուլիանոս, և առաքէ տախտակ մի որոյ վերայ նկարեալ էր զպատկերն սատանայի և մերձ առ նմա Յուլիանոսի և դնել զայն յեկեղեցին Հայոց, և Տիրան առ երկիւղի նորին առնէր զհրամայեալսն: Իսկ սուրբն Յուսիկ դիմադարձ եղեալ ոչ տայր թոյլ մուծանել յեկեղեցին, այլ առեալ 'ի ձեռաց նորա ընկէց յերկիր, և կոխան արարեալ ոտից իւրոց մանրեաց զնա. և բարկացեալ Տիրան հրամայեաց Ջաղոտիւք հարկանել զնա այնչափ մինչև մեռցի: Որ կալաւ զաթոռ եպիսկոպոսութեան զամս վեց: Իսկ Տիրան կոչէ զմեծ քորեպիսկոպոսն Դանիէլ ազգաւ ասորի՝ զոր կացուցեալ էր սրբոյն Գրիգորի տեսուչ գաւառաց, այր սուրբ և սքանչելի. և նորա եկեալ յանդիմանէ զնա սաստիկ անիծիւք վասն սպան-

ման սուրբ քահանայապետին Յուսկան։ Իսկ բարկացեալ թագաւորն հրամայէ խեղդել զնա, և կատարեցաւ սուրբն մարտիրոսական մահուամբ։ Իսկ յետ այնորիկ կացոյց Տիրան յաթոռ հայրապետութեան ըզՓառներսեհ ոմն, ոչ յազգէ սրբոյն Գրիգորի, այլ 'ի Տարօնոյ 'ի գեղջէն Աշտիշատայ, որ կալաւ զաթոռն ամս հինգ։ Իսկ Շապուհ արքայն Պարսից կոչէ զՏիրան առ ինքն խաբէութեամբ, և 'ի Ճանապարհին կուրացուցանէն զաչս նորա ածխով, վրէժխնդրութիւն յԱստուծոյ եկեալ անիրաւ մահուանցն, զոր արար նա ընդ Յուսիկ և ընդ Դանիէլ. յետոյ խեղդեաց զնա որդին իւր Արշակ. որ թագաւորեաց ամս երեքտասան։ Իսկ առնու զաթոռ թագաւորութեան հօր իւրոյ Արշակ, հրամանաւ Շապհոյ. և եկին առ նա ամենայն նախարարքն իւր, և ամենայն եպիսկոպոսունքն աշխարհին Հայոց, և խնդրէին 'ի նմանէ հայրապետ արժանաւոր 'ի ցեղէ սրբոյն Գրիգորի, և գտին մանուկ մի գեղեցիկ հասակաւ և բարիոք տեսանելով տեսառն, որում՝ անուն էր Ներսէս, որդի Աթանագինէի որդւոյ Յուսկանն. զի էին նորա երկու որդիք, անուն միոյն Պապ և միւսոյն Աթանագինէ, և մինչ կենդանի էր Յուսիկ ոչ ձեռնադրեաց զնոսա 'ի գործ ինչ եկեղեցւոյ, քանզի չէին արժանիք, և յետ մահուան նորա ձեռնադրեն զնոսա 'ի սարկաւագութիւն բռնութեամբ։ Իսկ նոքա՝ թողեալ զգործ եկեղեցւոյ, ուտելոյ և ըմպելոյ պարապեալք և փոխանակ սաղմոսից և երգոց հոգևորաց, գուսանօք և վարձանօք[1] և բոզիւք շատանային. և յաւուր միում նստեալ յեկեղեցւոջն ուտել և ըմպել կանամբք և մանկտիւք՝ հուր անկաւ յերկնից և այրեաց զերկոսեանն, նորանշան մահուամբ խայտառակեալք, և զաւուրս բազումս 'ի ներքս յեկեղեցւոջն մնացեալք, ոչ ոք իշխէր մտանել և հանել արտաքս զդիս նոցա։

Բայց սքանչելին Ներսէս արժանի էր կոչմանն որ կոչէին զնա, զի էր նա արդար և սուրբ. և էր նա զինուորեալ արքային Արշակայ, որ զսուսերն պողովատիկ նորա բարձեալ ունէր 'ի սպասու, որ և զանձն անարժան համարէր այնպիսւոյ պատուոյ։ Իսկ Արշակ արքայն

1 Այսպէս յՕՕ։

հրաման ետ ծերունի եպիսկոպոսին Փօստոսի ձեռնադրել զնա սարկաւագ. և ապա զօր բազում գումարեալ առաքէ զնա 'ի Կեսարիա ձեռնադրել զնա հայրապետ: Նա եկեալ անտի լուսաւորել զաշխարհս Հայոց զանազան կարգաւ՝ շինէր վանորայս և աղքատանոցս շինէր, և ժողովէր զուրուկս և զհալածս, և կարգէր դարմանս և ռոճիկս նոցա: Բայց Արշակ ոչ ըստ իրաւանցն Աստուծոյ վարէր զթագաւորութիւն, զի սպան նա զեղբօրորդին իւր զԳնել, և էառ զկինն նորա զՓառանձնեմ, անէծ զնա սուրբն Ներսէս, այլ և թշնամի [illegible] նմա Շապուհ արքայն Պարսից, և Վաղէս կայսրն Յունաց, որ յետ Յուլիանոսի[1] բարեպաշտի. և աղաչէ Արշակ զՆերսէս գնալ դեսպանութեան աղագաւ առ Վաղէս կայսրն. և գնաց սուրբն Ներսէս խաղաղութիւն առնել 'ի մէջ երկուց թագաւորաց: Բայց Վաղէս քանզի մոլորեալ էր յաղանդն Արիանոսի և Մակեդոնի, և հալածիչ էր ուղղափառաց, իբրև ետես զսուրբն Ներսէս և լուաւ թէ սքանչելագործ այր է, ասէ ցնա. Բժշկեա զորդի իմ. քանզի հիւանդ էր մերձ 'ի մահ: Ասէ սուրբն Ներսէս. Եթէ 'ի բաց կացցես յանհանճար աղանդոյդ, ես բժշկեցից զնա. և յանձն առ 'ի բաց կալ, և աղօթեալ յարեաւ մանուկն յախտէն, և Վաղէս դարձեալ 'ի նոյն հերձուածս դարձաւ, և իսկոյն մեռաւ մանուկն. և հրամայեաց աքսորել զսուրբն 'ի տեղի մի անբնակ, յորում ոչ գոյր բոյս դալարոյ, բայց միայն աւազ. և աղօթել սրբոյն բղխեաց աղբիւր քաղցրահամ, և ծովն ընկենոյր ձուկն և փայտս. և փայտն առանց հրոյ ինքնին լուցանիւր, և այնպէս կերակրեալ լինէին զինն ամիս:

Իսկ Արշակ իբրև ետես եթէ աքսորեցաւ սուրբն Ներսէս, սկսաւ գործել մեծամեծ չարիս. շինեաց քաղաք մի և անդ ժողովեաց զամենայն չարագործս, և ասաց ոչ լինել իրաւանց՝ որ ոք գործեսցէ զչարիս և անկցի անդ, և լցաւ քաղաքն անիրաւութեամբ, և անուանեաց Արշակաւան: Իսկ Վաղէս կայսրն չարաչար սատակեցաւ, զյաւիտենական գեհեննոյն աստէն բերելով զօրինակն, հրակէզ եղեալ. և առնու զթագն մեծն

1 Այսինքն է Յոբիանոս կամ Յովիանոս:

Թէոդոս հրամանաւ Գրատիանոսի. և ածեալ զսուրբն Ներսէս յաքսորանացն առ իւր պահէր մեծաւ պատուով մինչև 'ի հաւաքումն ժողովոյն հարիւր յիսնիցն՝ որ 'ի Կոստանդնուպօլիս[1] վասն հոգեմարտին Մակեդոնի. յորում էր Գրիգոր աստուածաբանն, և Գրիգոր Նիւսացին եղբայր սրբոյն Բարսեղի, և այլ բազում սուրբ հարք. և ապա առաքէ զսուրբն Ներսէս յաթոռն իւր: Նա տեսեալ զանիրաւ գործս Արշակայ անէծ զԱրշակաւանն. և անդէն սատակեցան բնակիչք նորա չարամահ, և անբնակ եղև քաղաքն բազմամարդ: Նա զԱրշակ կոչեաց Շապուհ, և եդ զնա 'ի բանդի անել. և ինքն ձեռօք իւրովք սպան զինքն, որ թագաւորեաց զամս երեսուն: Իսկ սուրբն Ներսէս աղաչեաց զմեծն Թէոդոս, և թագաւորեցոյց 'ի վերայ Հայոց ըզՊապ զորդի Արշակայ: Իսկ Պապ քանզի զաղրագործ էր և յանդիմանէր զնա սուրբն Ներսէս, ետ նմա դեղ մահու, և եբարձ զարդարն 'ի կենցաղոյս. և սուրբն 'ի մեռանելն իւրում կոչեաց զհօտ իւր և օրհնեաց զնոսա. և բազում ինչ մարգարէացաւ վասն ազգին Նետողացն և աւերման Հայոց աշխարհիս, և վասն Նեռին և նեղութեանցն՝ որ 'ի նմանէ ընդ ամենայն աշխարհս. և ապա հանգեաւ մարտիրոսական մահուամբ, արտօսր բազում թողեալ հօտին իւրոյ, կալեալ զհայրապետութիւնն ամս երեսուն և չորս[2]: Նա յաջորդէ զաթոռն Շահակ ոմն, ոչ 'ի նոյն ազգէ՝ այլ 'ի զաւակէ Աղբիանոսի 'ի Հարքայ 'ի Մանազկերտոյ, ամս չորիս:

Իսկ բարեպաշտն Թէոդոս՝ իբրև լուաւ զչարիսն զոր գործեաց Պապ, կորոյս զնա ըստ անզգամութեանն. որ թագաւորեաց ամս եօթն: Նա կացոյց մեծն Թէոդոս թագաւոր Հայոց զՎարազդատ ոմն, յազգէն Արշակունեաց՝ զայր զօրաւոր և ուժեղ: Նա յետ Շահակայ առնու զկաթուղիկոսութիւնն Զաւէն եղբայր նորա զամս չորիս: Իսկ Վարազդատ խորհեցաւ ապստամբել 'ի Թէոդոսէ և ձեռն տալ 'ի Պարսիկս. և հալածեաց զնա Մանուէլ և Մամիկոն եղբայր նորա՝[3] Մուշեղայ քաջի, սպարապետին Հայոց, զոր սպան Վարազդատ

1 Ամօք յառաջ քան զգումարումն ժողովոյն վախճանեալ էր Ս. Ներսէս:

2 Վ. 48:

3 Այսպէս յ'ՕՕ:

նենգութեամբ. երթեալ յաշխարհն Յունաց անդ վախճանեցաւ կալեալ զթագաւորութիւնն ամս չորս։ Եւ յետ Զաւենայ առնու զկաթողիկոսութիւն՝ Ասպուրակէս եղբայր նորա, Շահակայ և Զաւենայ, ամս հինգ։ Եւ կացուցանէ Մանուէլ յաթոռ թագաւորութեան զերկու որդիսն Պապայ, զԱրշակ և զՎաղարշակ, զոր փեսայացոյց ինքեան. որ թագաւորեցին ամս չորս։

Եւ ապա թագաւորքն Յունաց և Պարսից զաշխարհն Հայոց յերկու բաժանեցին. բաժնին Յունաց տիրէր Արշակ՝ հրամանաւ Արկադեայ և Ոնորեայ որդւոց մեծին Թէոդոսի. իսկ արքայն Պարսից Շապուհ կացոյց բաժնին իւրոյ թագաւոր՝ զԽոսրով ոմն՝ ՚ի նոյն ազգէ։ Եւ էր մարտ ՚ի մէջ Արշակայ և Խոսրովայ. քանզի իշխանքն որ էին ընդ Արշակայ՝ առեալ զգանձս նորա գնացին առ Խոսրով։ Իսկ Խոսրով յետ Ասպուրակիսի նստուցանէ զսուրբն Սահակ յաթոռ հայրապետութեան, զորդի մեծին Ներսէսի։ Եւ յաւուրս յայսոսիկ էր հայրապետ Կոստանդինուպոլսի զարմանալին և պայծառ ջահն եկեղեցւոյ սուրբն Յոհան Ոսկեբերան, որ լուսաւորէր զընդհանուր զեկեղեցիս Քրիստոսի վարդապետութեամբ բանիւն կենաց։ Սա զառաջինն յոմանց արհամարհեալ լինէր վասն ոչ խօսելոյ ՚ի բարբառն Յունաց. զի ՚ի հօրէ կողմանէ ասորի էր։ Սա յորմէ հետէ մկրտեցաւ՝ գինի ոչ էարբ և ոչ ծիծաղեցաւ, և ոչ երդուաւ, և ոչ երդմնեցոյց զոք, և ոչ նզովեաց զոք. և յորժամ աքսորէին զնա՝ եհար զձեռն յեկեղեցին և ասաց. Ողջ մնա սուրբ եկեղեցի բնակարան փառաց տեառն, և մի մոռանար զաշխատութիւնս իմ. քանզի ՚ի պարգևացն՝ զոր առի յԱստուծոյ՝ յաւելի ՚ի գանձս քո գիրք ութ հարիւր, և ճառք երկոտասան հազար[1]։ Սա եկաց հայրապետ հնգետասան ամ, և երեք ամ յաքսորանս, և մեռաւ ՚ի Կոմանա՝ յիսուն ամաց։ Եւ թագաւորեալ Խոսրով ամս հինգ, հանէ զնա արքայն Պարսից ՚ի թագաւորութենէ, և թագաւորեցուցանէ զՎռամշապուհ։ Իսկ սուրբն Սահակ պայծառացոյց զեկեղեցին Քրիստոսի առաւել քան զամենեսեան զանա-

1 Այսպէս գրի և ՚ի Յայսմաւուրս։

զան կարգօք առաքինութեան կանոնական օրինադրութեամբք. և 'ի ժամանակս սորա ծագեաց լոյս մեծ յաշխարհս Հայոց աստուածգիտութեան. քանզի երանելին Մեսրոպ եկեալ առ սուրբն Սահակ եթէ հնար ինչ իցէ ստեղծանել նշանագիր հայերէն լեզուի, և եգիտ զնա առաւել ևս այնմ փափաքող, քանզի ցայնվայր ոչ ունէին գիր Հայք, այլ յոյն և ասորի գրով վարէին և նշանագրաւ: Ապա ծանուցանեն զխորհուրդն Վռամշապուհոյ թագաւորին, և նա ասաց թէ Մինչ էի ես 'ի կողմանս Ասորւոց, ասաց ինձ ոմն եպիսկոպոս ասորի՝ Դանիէլ անուն, թէ ունիմ ես նշանագիր հայերէն լեզուի. և ես անփոյթ արարի առժամայն:

Ապա առաքեն զնախարար զոմն՝ Վրախճայ[1] անուն, առ Դանիէլն խնդրել 'ի նմանէ զնշանագիրսն. և նա առաքէ 'ի ձեռն Հաբելի երիցու: Ապա իբրև տեսին՝ ուրախ եղեն, և սկսան 'ի հայ լեզու փոխել զամենայն գիրս աստուածաշունչս. բայց հայեցեալ տեսին զի ոչ էր բաւական զամենայն սիղոբայսն ողջ ածել և զշաղկապս և զկապս և զբառս, և սկսան դարձեալ 'ի հոգ մտանել վասն այնորիկ. և իբրև թափեցան յամենայն հնարից մարդկային, ապաւինեցան յայն որ ամենայն ինչ հնարաւոր է նմա, աղօթիւք խնդրել 'ի տեառնէ, յանձն առեալ զպահոց պնդութիւն և զաղօթս: Իսկ այն որ զկամս երկիւղածաց իւրոց առնէ տէր և աղօթից նոցա լսէ, ոչ անտես արարեալ զբարի խնդրուածս, երևեալ Մեսրոպայ թաթ ձեռին հզօրին, գրելով 'ի վերայ վիմի, և ծանուցաւ ամենայն համանգամայնս. և յարուցեալ ստեղծ զգիրսն: Ապա ժողովեն այնուհետև մանկունս բազում, և ուսուցանեն զբովանդակ աշխարհս, և բաժանեն զմանկունս մատաղս և քաջուսմունս, փափկաձայնս և երկարոգիս, և կարգեն դըպրոցս երկուս[2] ասորերէն և յունարէն: Ապա ուսեալ մանկանցն այնոցիկ զամենայն իմաստութիւնս ներքինս և արտաքինս, եղեն թարգմանիչք ճշմարտութեան, և թարգմանեցին զամենայն գիրս հին և նոր կտակարանացն, սկսեալ առակացն Սողոմոնի բովանդակեցին զա-

1 Այն է Վահրիճ ըստ հնոց պատմչաց:

2 ՕՕ·· Երկարոգիս Է և կարգեն դպրոցս ասորերէն:

մնայն։ Սոքա ոչ միայն Թարգմանիչք, այլ և վարդապետք և ուսուցիչք և մարգարէք պատմողք ապագայից։ Սոքա լցեալք Հոգւովն սրբով, խօսողք լեզուաց ազգաց, Թարգմանողք և յայտածողք զբանս խրթինս, և խորային խօսից պարզ մեկնիչք։ Սոքա ամուր պարիսպք և սիւնք եկեղեցւոյ, աշտանակ լուսատուք, և ջահք բոբոքեալք ընդհանուր ծաւալելով ընդ ոլորտս տիեզերաց։ Սոքա աստուածաբանք բանին կենաց և արբուցիչք պապքեալ անձանց, զովացուցիչք տապոյ ջերմութեան բանսարկուին և ջեռացուցիչք ցրտոցն 'ի հաւատս։ Սոքա երգեցողք ծիծառնք, տատրակք քաղցրախօսք և ողջախոհք, սրբութեան սիրիչք և աղտեղութեան անարգիչք։ Սոքա մանկանց դաստիարակք, և երիտասարդացն բարի օրինակ, կուսանաց զարդք, ամուսնացելոց օրէն, ծերոց սփոփիչք, տկարաց մխիթարիչք, գլորելոց կանգնիչք, մեղաւորաց դարձուցիչք, հեղգացելոց խթան յարուցիչք, և ժրացելոց 'ի նոյն յօժարեցուցիչք, ուսման սիրիչք և ատեցողացն յանդիմանիչք։ Որոց վարդապետ և ուսուցիչ սուրբն Սահակ և Մեսրոպ. և գլխաւոր աշակերտացն սուրբն Յովսէփ, Յովհան[1] և Ղևոնդ, Սահակ, և Մովսէս քերթողն, և Մամբրէ վերծանողն՝ նորին եղբայր, Եզնակ և Կորիւն, սուրբն Եղիշէ, Դաւիթ անյաղթ փիլիսոփայ, և Յովհաննէս, տէր Աբրահամ, Արձան, Մուշէ, Արձան[2], Խոսրով, Ղազար, և յետոյ Ստեփաննոս Սիւնեաց եպիսկոպոս, և որ զգիրսն յարմարէր գեղեցիկ Հռոփանոս սամոսատցի և այլք բազումք, որոց ոմանք յեպիսկոպոսութեան աստիճանս հասին, և այլք առաջնորդք ժողովրդոցն կարգեալք, և 'ի սոցանէ ոմանք 'ի վերայ Թարգմանութեան և գիրս յինքեանց շարադրեցին, որպէս սքանչելին Մովսէս՝ զՀայոց պատմութիւնն 'ի խնդրոյ Սահակայ Բագրատունւոյ, և զպատմութիւն սրբուհւոյ Աստուածածնին և զպատկերի նորա 'ի խնդրոյ իշխանացն Արծրունեաց, և զՊէտքն 'ի խնդրոյ Թէոդոսի ումեմն[3], և զներբողեան սրբոց Հռիփսի-

1 Յովհանն Եկեղեցացին է. իսկ որ 'ի ստորև Յովհաննէսն՝ Թուի Մանդակունին։

2 Երկիցս գրի Արձան, Թերևս մին փոխանակ Աղանայ։

3 Պիտոյից գիրքն որպէս այժմս ասի, և 'ի վերջաբանին ուղղի առ Թէոդորոս ոմն աշակերտ։

մեռանիցն և զՍարգաւանն, և այլ ճառս և խօսս իմաստասիրականս։ Նա Կորիւն զպատմութիւն սրբոյն Մեսրոպայ և այլ ժամանակաց։ Նա Եղիշէ զպատմութիւն սրբոց Վարդանանց, և զգիրս կանոնացն, և այլ մեկնութիւնս գրոց, և զչարչարանացն փրկչին. և Ղազար՝ զգիրսն. և Եզնիկ խօսս յոլովս եթող յօգուտ լսողաց։ Նա Դաւիթ փիլիսոփայ զգիրսն սահմանաց և զեակաց և զմեկնութիւնն Արիստոտելի և ներածութեանց Պորփիւրի, և այլ հարցմունս և պատասխանիս, և ներբողեանս սրբոյ խաչին, և զծննդեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Նոյնպէս և Մամբրէ վերծանող ասաց ներբողեան յօրն արմաւենեաց, 'ի գալուստն Քրիստոսի յԵրուսաղէմ յաւանակաւ։ Նա յետոյ մեծն Ստեփաննոս Սիւնեաց եպիսկոպոս բազում մեկնութիւնս եթող սուրբ գրոց՝ Յոբայ և աւետարանացն, այլ և Դանիէլի և Եզեկիէլի, և զպատասխանիս թղթոյն Գերմանոսի պատրիարգին Կոստանդինուպօլսի[1]։ Արարին և երգս շարականաց քաղցր և գեղեցիկ եղանակաւ և մեծ խորհրդով, ծննդեանն Քրիստոսի և քառասնօրեայ գալստեանն 'ի տաճարն, մկրտութեանն և եկաւորութեան 'ի Բեթանիա և յԵրուսաղէմ, մեծի շաբաթու չարչարանացն, յարութեանն և համբարձմանն և Հոգւոյ գալստեան, խաչի, և եկեղեցւոյ, և այլ տօնից տէրունականաց, և ամենայն սրբոց, ապաշխարութեան և ամենայն ննջեցելոց. պէսպէս զանազանս և անթիւս, զոր մինչև ցայսօր պաշտի յեկեղեցիս Հայաստանեայց։ Իսկ սուրբ վարդապետն Մեսրոպ իբրև ելից զերկիրս Հայոց ուսմամբ և թարգմանութեամբ՝ յանձն առնէ զամենայն կաթողիկոսին Սահակայ, և ինքն գնացեալ յԱղուանս առնէ և նոցա նշանագիրս, ըստ տուելոյ նմա շնորհացն 'ի վերուստ։ Նա այսպէս զուարճացեալ զաշխարհս ամենայն անպայման խնդութեամբ թողեալ նոցա վարդապետս յիւրոց աշակերտաց, և անդի գնաց 'ի Վիրս. առնէ և նոցա գիրս, և թողեալ և նոցա վարդապետս, դառնայ ինքն 'ի Հայս, և գտեալ զմեծն Սահակ թարգմանութեան պարապեալ։ Իսկ թագաւորն Վռամշապուհ կալաւ զթագաւորութիւնն ամս քսան և մի. և վախճանի բարիոք։

1 Ստեփաննոս այս 300 ամաւ կրսեր է քան զթարգմանիչսն։

Սա դարձեալ Թագաւորէ եղբայր նորա Խոսրով ամ մի. և ապա Արտաշիր, և Արտաշէս Թագաւորէ յետ նորա[1]: Ընդ այն ժամանակս Թագաւորեաց Յունաց բարեպաշտն փոքր Թէոդոս, որդի Արկադեայ. և առաքէ սուրբն Սահակ զՄեսրոպ վարդապետն և զթուղթն իւր Թղթով առ Թէոդոս կայսր, զի հրաման տացէ այնոցիկ՝ որ ընդ իշխանութեամբ նորա իցեն, ուսանել զգիրս հայերէնս, և վերակացուք նոցա չտայցեն թոյլ ուսանել զգիրս Յունացն վասն նախանձու: Իսկ հեզն Թէոդոս մեղադրեաց զառաջինսն, թէ ընդէ՞ր յասորւոց և ոչ 'ի յունաց իմաստասիրաց որ 'ի մերում քաղաքիս՝ խնդրեցէք զգիրս. և պատմեաց Մեսրոպ եթէ կատարումն արուեստին 'ի շնորհաց Հոգւոյն եղև: Յայնժամ գոհացեալ զԱստուծոյ բարեպաշտ Թագաւորն՝ հրամայեաց պատուել զսուրբն Մեսրոպ իբրև զճշմարիտ և զիմաստուն վարդապետ: Սա և պատրիարգն Ատտիկոս և ամենայն ուխտ եկեղեցւոյն՝ հանդերձ Թագաւորաւն գրեցին զՄեսրոպ ընդ առաջին վարդապետս եկեղեցւոյ[2], ընդ Աթանասի և Գրիգորեանս, ընդ Բարսեղի և ընդ Յոհաննու Ոսկեբերանի. և զՎարդան արար ստրատելատ բարեպաշտն Թէոդոս. գրեցին և Թուղթս առ մեծն Սահակ՝ տալով նմա զպատիւ վեհագոյն. այլ և հրաման ետ յիշխանութեան իւրում ժողովել մանկունս մտավարժս ուսանել զգիրս, և դարմանք և ծախք յարքունուստ կարգեաց: Սա հրաման և յաշխարհին Հայոց շինել քաղաք 'ի Կարին գաւառի, և անուանել զնա Թէոդուպօլիս, որ այժմ կոչի Կարնոյ քաղաք: Սա եկեալ Մեսրոպայ՝ ուսոյց և զկէս ազգին որ ընդ իշխանութեամբ Թէոդոսի:—Իսկ Թագաւորն Հայոց՝ մանուկն Արտաշիր, էր զազրագործ և գիճասէր, որ ոչ միայն 'ի գիշերի, այլ և 'ի տուընջեան գործէր զգործս անարժանս, և խրատու սրբոյն Սահակայ ոչ լսէր. վասն որոյ տաղտկացան նախարարքն, և եկին առ սուրբն Սահակ, զի նովաւ ամբաստ լիցին Պարսից

1 Արտաշիր և Արտաշէս մի անձն է, որդին Վռամշապհոյ. բայց յառաջ քան զնա Շապուհ արքայորդի Պարսից, անուանեցաւ փոխանակ Հայոց Թագաւորի:

2 Վարդան՝ կոչէ Վարդապետաց վարդապետ. հնագոյն պատմիչք և աշակերտք սուրբ վարդապետին չափաւորագոյնս վարեն:

արքայէն, և ընկենուլ զնա յաթոռոյն: Իսկ սուրբն Սահակ ոչ առ յանձն ընկենուլ զգահն զայլոց. և նորա երթեալ առ արքայն Պարսից Վռամ՝ ընկեցին զնա յաթոռոյն, և զսուրբն Սահակ ևս որ ոչ հաւանեցաւ նոցա կամացն:

Յայսմ հետէ բարձաւ թագաւորութիւնն Արշակունեաց յետ Արտաշիրի, որ թագաւորեաց ամս վեց. և տևեաց թագաւորութիւնն Արշակունեաց 'ի Հայս՝ ամս հինգհարիւր վաթսուն և ութ: Դադարեաց և քահանայապետութիւնն յարժանաւոր ցեղէն սրբոյն Գրիգորի. զի թէպէտ և[1] եկաց սուրբն Սահակ և յետ այնորիկ ամս վեշտասան և լուսաւոր վարդապետութեամբն իւրով պայծառացոյց զաշխարհս, սակայն անարժան վերակացուք և պարսիկ մարզպանաւ որպէս զՎեհմիհրշապուհ փոխանակ Արտաշիրի թագաւորին, և զսոսխասէրն Սուրմակ փոխանակ սըրբոյն Սահակայ. որ եկաց ամ մի: Իսկ յետ Սուրմակայ Բրքիշոյ ասորի վատթար քան զնա, ամս երեք. և յետ նորա Շմուէլ ամս հինգ, ևս անպիտան: Իսկ սուրբն Սահակ աղօթից և վարդապետութեան պարապեալ. և ապա եկեալ ամենայն նախարարք Հայոց, անկանէին առաջի սրբոյն Սահակայ, զմեղանս յանձն առեալ խնդրէին թողութիւն 'ի նմանէ, և աղաչէին զնա դառնալ և ունել զաթոռ իւր. իսկ նա ոչ հաւանէր: Իբրև կարի ստիպէին՝ յայնժամ պատմեաց նոցա զտեսիլն զոր ետես եթէ 'ի տեառնէ եղև այդ, դադարել քահանայութեան 'ի ցեղէն սրբոյն Գրիգորի, և թագաւորութեան 'ի տանէն Արշակունեաց. և թէ մերձ յերևումն նեռին դարձեալ կանգնելոց է Աստուած զթագաւորութիւն Հայոց և զքահանայապետութիւն: Այս թոյլ ետուն նմա կալ ըստ իւրոց կամաց. և արքայն Պարսից զՎարդան մարզպան արարեալ Հայոց տայ զաշխարհս 'ի ձեռս նորա: Իսկ սուրբն Սահակ կալեալ զհայրապետութիւնն ամս յիսուն և մի, և փոխի խաղաղական մահուամբ 'ի կարգս հրեշտակաց: Տարեալ զաթոռն ցսուրբն Մեսրոպ. յոր և նա 'ի նոյն ամի ելից զկենցաղս յիշատակ բարի թողեալ ապագայից, 'ի սկըզ-

[1] ՕՕ. զի թէպէտ դեռ եկաց:

բան [1] առաջին Յազկերտին Պարսից արքային, որդւոյն Վռամայ Երկրորդի. և առնու զաթոռն սուրբն Յովսէփ աշակերտ նորա։ Իսկ Յազկերտ արքայ բռնադատէր զամենայն քրիստոնեայս ուրանալ զՔրիստոս, և դառնալ յօրէնս Մազդեզանց, որում ոչ հաւանեալ զօրացն Հայոց, դառնան ընդդէմ հրամանին, սպանանեն զմոգս և զմոգպետսն։ Իսկ Յազկերտ իբրև լուաւ զայն ամենայն, առաքէ զօրս բազումս պատերազմել ընդ զօրացն Հայոց, որոց գլխաւոր էր սուրբն Վարդան և ընկերք իւր. և Պարսից աւերեալ զաշխարհս խաղացուցանեն 'ի գերութիւն խրատու ուրացելոյն Վասակայ զմնացեալ նախարարսն, և զսուրբն Յովսէփ, զՍահակ և զՂեւոնդ և զընկերս նոցա, և տան 'ի կապանս արքունի։ Եւ յետ այնորիկ սպանանեն զսուրբն Յովսէփ և զընկերս նորին, և զնախարարսն արգելուն 'ի բանդ, մինչև յաւուրս Պերոզի արքայի, և ապա արձակեալք 'ի կապանաց խնամօքն Աստուծոյ, խոստովանութեան անուն ժառանգեալք դառնան յաշխարհս Հայոց։

Իսկ յետ մահուան բարեպաշտին Թէոդոսի կայսեր՝ առնու զթագաւորութիւնն Մարկիանոս՝ որ արար զժողովն Քաղկեդոնի, վեցհարիւր երեսուն և վեց եպիսկոպոսաց, 'ի քակտումն ուղղափառ հաւատոյ, որ ելից զտիեզերս մինչև ցայսօր հայհոյութեամբ նոցա (!)։ Յետ որոյն Յովսեփայ առնու զկաթուղիկոսութիւն տէր Գիւտ, ամս հնգետասան, որ խնդրեաց 'ի Դաւթէ փիլիսոփայէ զԲարձրացուցէքն։ Եւ ապա Յովհան Մանդակունի՝ զամս երկոտասան. սա բազում կարգաւորութիւնս եմոյծ յեկեղեցի, կարգեաց զքարոզս աղուհացիցն և զաղօթս նոցա, զերրորդ ժամին, և զվեցերորդ և զիններորդ ժամին, և զեկեղեցւոյ հիմնարկէքն, և ժամահարի, սկիհ և մաղզմայի, գիրք և կնունք [2], խաչօրհնէք և պսակ [3]։ Զայս ամենայն նորա կարգեալ է. այլ և առաջի Պերոզի արքայի համարձակութեամբ խոստովանեցաւ զՔրիստոս և ոչ երկեաւ 'ի սպառնալեաց նորա, որ հրապուրէր 'ի բաց կալ 'ի Քրիստոսէ և 'ի հաղորդութենէ Յունաց, և կատարեալ զամենայն առաքինութեամբ՝ փոխի 'ի Քրիստոս։

1 Այսինքն 'ի սկզբան կամ յառաջնումն ամի թագաւորութեան։

2 յՕՕ. [illegible]։

3 յՕՕ. [illegible]։

Իսկ յետ Մարկիանոսի թագաւորեաց Յունաց Լևոն մեծն, և Պերոզ Պարսից արքայն զՄանդնոս[1] մարզպան Հայոց արար ամս քսան։ Յայսոսիկ[2] Մովսէս Քերթողահայրն։ Ի նմին[3] ժամանակի պայծառացեալ յերկրի սքանչելի վարուք միայնաւորութեամբ սուրբ հայրն Թաթուլ հանդերձ Վարոսիւ եղբարբն իւրով, և Թումայիւ աշակերտիւ։ Իսկ յետ Յովհաննու Մանդակունւոյ առնու զկաթուղիկոսութիւն տէր Բաբկէն, ամս հինգ, յաւուրս Զենոնի կայսեր։ Բայց Զենոնս նզովեաց զժողովն Քաղկեդոնի[4], և երկոտասան գլուխ նզովից կարգեաց ընդդէմ նոցա։ Զսմանէ ասեն թէ յաձախ ուտէր միս, և յաւուր միում յանչափ ուտելոյն քացախեալ յորովայնի նորա կերակուրն, յայնմանէ տաղտկացեալ՝ օրէնս եդ յերկու շաբաթս բարեկենդանին ոչ ուտել միս, այլ պանիր. զոր պանիր-ուտան անուանեն մինչև ցայսօր։ Բայց թէ Յուլիանոս եկեալ 'ի Կոստանդինուպօլիս հրամայեաց յամենայն կերակուր վաձառոցն խառնել յարենէ զոհիցն. և սուրբն Թէոդորոս իմացոյց քրիստոնէից. և նոքա ասացին թէ մեզ չէ օրէն յայս երկու շաբաթս միս ուտել, այլ միայն պանիր։ Իսկ յաւուրս սորա երանելին Գառնիկ եգիտ զնշխարս սրբոյն Գրիգորի 'ի Մանեայ այրսն, և հանգուցին 'ի Թորթան։ Իսկ յետ Բաբգենայ առնու զկաթուղիկոսութիւնն տէր Սամուէլ, ամս հինգ։ Յայսոսիկ աւուրս պայծառանայր եկեղեցին սուրբն Սիմէոնիւ սիւնակեցաւն յԱղեքսանդրիա։ Իսկ Տիմոթէոս երէց ուղիղ հաւատով[5] և իմաստասէր, որ զամէն արուեստի գիրսն գրեաց հաւաքեալ զամենայն բանս աստուածային արանց ընդդէմ ամենայն հերձուածողաց։ Բայց Պերոզ արքայն Պարսից կարի անմարդի բարս ունէր, վասն որոյ սպանաւ 'ի Հեփթաղաց. և թագաւորէ Վաղարշ եղբայր նորա։ Սա զՎահան Մամիկոնեան զօրդին Հմայեկայ մարզպան կարգէ. այս Վահանս պսակեաց զեկեղեցի զանազան իրօք. այս Վահան զՄանս արգելական արար։ Ի սորա աւուրս էր Ղազար Փար-

1 Իմա զՄեծն Վահան Մամիկոնեան։

2 Իմա Յայսոսիկ աւուրս։

3 300. Նոյն ժամանակի։

4 Զգուշագոյնս ասէ Վարդան, 83։

5 Տիմոթէոս Կուզն մարմնով և ոչ ուղղագոյն մտօք։

պեցի Ճորտասան և պատմագիր: Այլ յետ Սամուէլի
առնու զկաթուղիկոսութիւն տէր Մուշէ, ամս ութ:
Այլ յետ Զենոնի կայսեր առնու զթագաւորութիւնն
Անաստաս, որ և սա ընդ Զենոնի յուղղափառս գրե֊
ցաւ (!), զի կամեցաւ ժողովս առնել ընդդէմ.... ժո֊
ղովոյն Քաղկեդոնի, հաստատեալ զուղղափառութիւն (!)
և դեղակուր եղեալ մեռաւ: Այլ թագաւորէ յետ նո֊
րա Յուստիանոս այր տգէտ և անաստուած, որ ելից
զերկիր արեամբ ուղղափառաց, զի եդ յաշտանակի ըղ֊
Քաղկեդոնին, և կոտորեալ հալածեաց զաստղսն մի
քնութիւն մարմնացելոյ Բանին: Յետ Վաղարշու Պար֊
սից արքային առնու զթագն Կաւատ, և ապա Ջամասպ,
և ապա Կաւատ: Այլ յետ Մուշէի առնու զկաթուղի֊
կոսութիւնն տէր Սահակ ամս եօթն. և ապա տէր
Քրիստափոր, ամս հինգ. և յետ նորա տէր Ղեւոնդ
ամս երկու: Արեգակն նուաղեցաւ յաւուրս սորա, և
սով սաստիկ եղև: Այլ ապա տէր Ներսէս, ամս ինն.
յաւուրս սորա Եզրաս Անգեղացի աշակերտ Մովսէսի
եպիսկոպոսի 'ի Բագրևանդայ բազմացոյց զդասս Ճար֊
տասանաց: Դաւնայ և Մամբրէ եղբայրն Մովսէսի 'ի
Հայս՝ զորմէ ասեն երկրորդ եղեալ փիլիսոփոս:

Յետ Յուստիանոսի առնու զթագաւորութիւն միւս
Յուստիանոս քուերորդի նորա: Սորա էր կին Թէոդո֊
րա ուղղափառ, և աղաչէր զայրն իւր հաստատել զուղ֊
ղափառութիւն (!). և նա թէպէտ կամէր՝ ոչ իշխեաց
յահէ երկաբնակացն, որք սպառնային նմա մահու: Այլ
առ սա եկեալ չարախորհ հրեայ մի ասաց, թէ պարտ
է զտեառնընդառաջն առնել ընդ ծննդեանն՝ զոր առ֊
նեն Յոյնքն, և ոչ ըստ յայտնութեան որ 'ի վեցն յուն֊
վարի, զի մինչև ցայն՝ առաքելական դրութեամբ[1] առ֊
նէին ամենայն քրիստոնեայք 'ի փետրվարի չորեքտա֊
սան. և կայսրն հաւանեալ բանից անօրինին և առաքէ
յԵրուսաղէմ այնպէս առնել: Իսկ Երուսաղէմացիքն
ոչ առին յանձն փոխել զաւանդութիւնս սուրբ հարցն,
որ մինչև ցայն օրն պահեալ էին. և հրամայէ կայսրն
զօրավարին բռնութեամբ առնել, և թէ ոք ընդդիմա֊
նայ՝ սպանանել. և ամենեքեան 'ի մահ դիմեցին յա֊

1 Հին աւանդութիւն, բայց ոչ ստուգի առաքելադիր լինել:

դադս ճշմարտութեան։ Իսկ մարդասէրն Աստուած ոչ եթող ընդ վայր զյուսացեալս իւր, այլ ահեղ սքանչելեօք զարհուրեցոյց զյանդգնեալսն. զի աջն աստուածային երեւեցաւ 'ի սուրբ մատրանն, այլ և նշան ահեղ և հրաշափայլ յերկինս՝ արիւնատեսակ, և զարհուրեալ յայնմանէ դադարեցին 'ի խնդրոյն։ Այլ 'ի գալ միւսում ամին նոյն խռովութիւնն յուզէր. զի հրաման ետ սաստիւ կորուսանել զընդդիմացողսն, և նոքա առ հասարակ պնդեցան 'ի մահ քան 'ի կեանս խղճիւ։ Այլ տեսեալ բարերարին Աստուծոյ զհաւատս մանկանն՝ այց արար հօտին իւրում. երեւեալ ամենասրբուհւոյ Աստուածածնին 'ի ծիրանի սեանն, ունելով 'ի գիրկս իւր զմանուկն Յիսուս, և ջուր բղխեալ 'ի սիւնէ անտի, և որք օծանէին 'ի ջրոյն յայն՝ բժշկէին յիւրեանց ցաւոցն. և այսպէս դադարեցին յունայն 'ի խնդրոյն։ Այլ 'ի ժամանակս Յուստինոսու խաւարեցաւ արեգակն ութեւտասն ամիս. երեք ժամ լոյս տայր օրն, և զայլն ոչ տիւ և ոչ գիշեր. և պտուղք տարւոյն այնորիկ ոչ հասան, և եղև ամենայն երկիր իբրև զգազամօրեայ հիւանդ. և եղև մարդամահ տարաժամ, որ բնաւ ոչ էր լեալ. առաջին օրն հինգ հազար[1], երկրորդ օրն տասն հազար, և երրորդ օրն եօթնևտասն հազար, և չորրորդ օրն ութեւտասն հազար. և թուեցին մինչև երեքհարիւր հազար, որք մեռանէին 'ի յօրն. 'ի մէջ ձեռացն բուշտ ելանէր և առ ժամայն մեռանէր. մտանէր մարդ 'ի տունն և տեսանէր զամենեսեան մեռեալ. և նեխեցաւ քաղաքն, զի ոչ կարէին թաղել զմեռեալս, և տարածեցաւ ընդ ամենայն տիեզերս։ Այլ բազում քաղաք անմարդ մնաց. բայց միայն Համն ապրեցան, զի ապաւինեցան 'ի գլուխն Յովհաննու Մկրտչի, որ կայր անդ։ Հաշտեցան ընդ միմեանս Յուստինոս և Խոսրով արքայն Պարսից, և ծաղկէր ուխտ քրիստոնէութեան ընդ ամենայն տիեզերս։ Իսկ Մահան Մամիկոնեան վախճանեցաւ բարիոք. յետ նորա եկաց Վարդ եղբայր նորա ամս երիս։ Այլ յետ նորա պարսիկք մարզպանք ամս չորս. և ապա Մժեժ Գնունի ամս երեսուն և չորս։ Իսկ յետ Ներսէսի առնու զկաթողիկոսութիւնն տէր Յով-

[1] ՕՕ. ոչ էր լեալ առաջին նորա. Երկրորդ օրն, և այլն։

հաննէս ամս հնգետասան. յաւուրս սորա մանկամահ աստրիկ եղև. սկսեալ յարևմտից և յԱստան Հայոց՝ նշան սքանչելի եղև, զի հուր բորբոքեալ այրէր զապարանս համանկարին պարսկի որ վերակացու էր յաշխարհիս։ Իբրև ոչ կարէին շիջուցանել՝ ապաւինէին 'ի խաչն Քրիստոսի, և աղաչէին զպաշտօնեայսն փութալ և տանել զխաչն. և իբրև մօտ եղև նշանն փրկական՝ առժամայն շիջաւ բոցն, և տեսեալ ամենայնք փառաւորէին զփրկիչն Քրիստոս, և գովէին զհաւատս քրիստոնէից. որ և հաւատաց երանելին Սախոժ և վկայութեամբ կատարեցաւ 'ի Քրիստոս։ Իսկ յետ Յովհաննիսի առնու զկաթուղիկոսութիւնն տէր Մովսէս. յառաջին ամին սորա՝ սուրբն Մանաճիհր որ անուանեցաւ Գրիգոր՝ ազգաւ տաճիկ[1], մարտիրոսութեամբ կատարեցաւ։

Իսկ յերրորդ ամին սորա լցեալ լինի 'ի ծննդենէն Քրիստոսի ամք հինգ հարիւր յիսուն և երեք, և բովանդակեցաւ կանոնք երկերիւրեկին, զոր կարգեաց իմաստասէրն Անդրէաս եղբայր Մանգնոսի եպիսկոպոսի, հրամանաւ Կոստանդիանոսի կայսեր, վասն լրմանց զատկաց և այլ տօնից. զի իբրև լցաւ երկերիւր ամն, լրումն զատկին մարտի քսանևհինգ էր. և սկզբանն՝ ապրիլի չորս. և զի ոչ 'ի սկիզբն կարացին գնալ, զի յետ քսանևհնգին՝ երեքտասան էր ապրիլի, և ինն լրմունք 'ի մէջ կային, և այնր աղագաւ սկսան շփոթել տօնք և ամենայն արհեստք տօմարականք։ Ապա հայրապետն Յովհաննէս ժողովեաց զիմաստունսն՝ որ էին 'ի ժամանակին, յորս էր և Աթանաս 'ի վանաց Սուրբ Կարապետին, և կարգեցին թուական Հայոց՝ որով ուղղեցին զզատիկն Հայոց, և այլովք հանդերձ. բայց ոչ կարացեալ կալ 'ի ճշմարտութեան անսխալ զամն ինն։ Իսկ 'ի տասներորդ թուականին՝ Իսաս ոմն անուն աղեքսանդրացի, այր կորովի և իմաստուն, իբրև ետես զայնպիսի շփոթումն՝ որ յամենայն եկեղեցիս, ձայն արկեալ հաւաքեաց զամենայն իմաստունս՝ որ յամենայն ազգաց. զԱքդէ 'ի Գամրաց[2], զՓիլոնէս 'ի Հրէաստա-

1 Այլք Ռոժիկ ասեն։

2 Տպ. զԳիրգան յԱսորւոց, զՃեոգոս 'ի Յունաց։

նէ, զՅոհան յԱյրարատոյ, և այլ արս երեսուն և վեց իւր նմանիս, և այլ բազմութեամբ. և յառաջ վարեալ զարուեստն Անդրէասի, հինգ հարիւր երեսուն և երկու այլ, 'ի նոյն դարձաւ. ապա կարգեցին զանտարակուսելի զօրինակն, որ հինգհարիւրեակ անուանի, բազում իմաստ և անսխալ գլուխ եդեալ բոլորին 'զշրջապտիլի, զի իբրև աւարտի հինգ հարիւր երեսուն և երկու ամն՝ դարձեալ 'ի նոյն դառնայ: Այլ սկսան ուղղել տօնք և արուեստք իրողութեան. բայց Իրոն ամն 'ի դրան Յուստինիանոսի (զոր) ոչ կոչեցին 'ի ժողովն, քամահանս վարկաւ անձին իւրում: Իբրև տարաւ Իլոգս իմաստասէրն զօրինակն առ Թագաւորն, սկսաւ Իրոն քննել ըզմասունս հնգեկի և վեցեկի, որ ոչ երբէք լեալ էր. զի հնգեակ և վեցեակ՝ մասունքն են, միոյն արեգական և միւսն լուսնի. այլ նա զհակառակն արար, փոխեաց զապրիլի եօթնևտասան՝ վեշտասան, և զվեցն՝ 'ի հինգ. այն վեշտասանն չբերէ ինչ սխալ. այն վեց եղեալ՝ իննսուն և հինգ՝ կիրակի ածէ մեզ. և այն հինգ՝ նոցա շաբաթ, ըստ Իրոնի գործելեացն. և ըստ Հրէայսն առնեն զզատիկն, և 'ի սուրբ ժողովոյն՝ Նիկիայ անկանին նզովքն, որք օրինադրեցին ոչ առնել զատիկ ընդ խաչահանունըն: Իսկ մեք 'ի միւս կիրակէն տամք և զերծանիմք 'ի նզովից. զի Հայք ոչ ընկալան զԹիւր օրինակն, որպէս և ոչ[1] զժողովն Քաղկեդոնի, ընդ իշխանութեամբ Պարսից գոլով. զի յետ ութ ամի երևեցաւ եղծումն իրացն:

Իսկ յետ Մեժեժայ մարզպանք պարսիկք Հայոց տիրեն ամս երեսուն և վեց: Ընդ ժամանակս ընդ այն վաղճանի եպիսկոպոսն Վրաց, և եկեալ առ տէր Մովսէս, զի տացէ նոցա եպիսկոպոս, և նա ձեռնադրեալ զոմն փակակալ իւրոյ եկեղեցւոյն Կիւրոն անուն՝ տայ նոցա, հաւատացեալ 'ի նա՝ եթէ պահեսցէ զսէր և ըզմիաբանութիւն առ աթոռ սրբոյն Գրիգորի. զի մինչև ցայնվայր 'ի Հայոց առնուին Վիրք ձեռնադրութիւն: Այս Կիւրոն յետ վաղճանելոյն Մովսէսի՝ 'ի բաց քեցեցաւ 'ի դաւանութենէ ուղղափառ հաւատոյ (!) Քրիստոսի, և զՔաղկեդոնի դաւանութիւն խոստովանե-

1 Ոչ ամենեքին այդպէս ծանեան զԹիւր և զուղիղ:

ցաւ. զի 'ի մանկութենէ խմորեալ էր յաշխարհին Յունաց՝ յաղանդն (!), և 'ի ծածուկ ունէր զչարութիւնն որպէս հուր ընդ յարդիւ թագուցեալ, բայց ոչ իշխէր յայտնել 'ի կենդանութեան Մովսէսի։ Զերեսուն ամ կալեալ զհայրապետութիւնն տէր Մովսէս՝ վախճանի, և տայ զտեղապահութիւնն աթոռոյն 'ի Վրթանէս քերթողն։ Իբրև ետես զթերութիւնն Կիւրիոնի Մովսէս Յուրտաւայ[1] եպիսկոպոսն, ազդառնէ Վրթանիսի, զի թերևս կարասցէ օգնել ինչ մոլորեալ մտացն Կիւրոնի. առ որ բազում անգամ գրեաց աղաչանօք 'ի բաց կալ յանհանճար աղանդէն. իսկ ոչ միայն թէ ոչ հաւանեցաւ գրելոցն, այլ և հալածեաց զՄովսէս եպիսկոպոսն։ Իբրև յաջորդեաց յետ Մովսէսի տէր Աբրահամ 'ի կաթուղիկոսութեան աթոռ, նոյնպէս և նա գրեաց երկիցս և երիցս թուղթ յիշեցուցանելով նմա զթիւրութիւնն. իսկ Կիւրոն պատճառէր ոչ այլ ինչ խորհել բայց զոր նոքայն խորհին, և պահէր զՄովսէս զրպարտող նորին։ Իսկ իբրև ասացաւ ժողով քննութեան լինել և տեսանել վասն այնր, յայտնապէս խոստովանեցաւ Կիւրիոն զդաւանութիւն Քաղկեդոնի։ Յայնժամ իբրև ետես Աբրահամ թէ ոչինչ օգտեցաւ այլ առաւել յանամօթութիւն եկն, յայնժամ գրեաց թուղթ շրջաբերական առ վիճակեալս իւր, զի մի ամենևին հաղորդեսցին ընդ Վիրս եկեղեցեաւ կամ ուխտիւ կամ ամուսնութեամբ կամ այլ ինչ հոգևորական իրօք, բայց 'ի վաճառէ իմեքէ որպէս 'ի հեթանոսաց. զի մի մարմնաւոր ծանօթութեամբ 'ի հոգևոր վնասս ընկղմեսցին. և յայնմհետէ բարձաւ ձեռնադրութիւն Վրաց որ 'ի Հայոց, զի սկսան նոքա ըզՅունօք թևակոխել։ Զայս ամենայն ստուգութեամբ ուսուցանէ քեզ Ուխտանէս եպիսկոպոսն. զի նա զամենայն լիով գրեաց զթուղթսն և զպատասխանիսն և զքաջախօսութիւնսն Պետրոսի եպիսկոպոսին, որ պատգամաւոր էր տեառն Աբրահամու առ Կիւրիոն. զոր Վիրք վասն համարձակութեան նորա՝ Գայլ կոչեցին զնա։

Յետ Յուստինոսի, այր չար և պիղծ որ զքաղաքումն

[1] ՕՕ. Ցրտաւայ։

սպան յուղղափառացն, որ և ինքն և պատրիարգն Յով-
հան այսահարեալք մոլեգնէին, և այնպէս սատակեցան[1]. և ապա թագաւորեաց Տիբեր, և յետ նորա Մօրիկ. զսա ասեն 'ի Հայոց յՕշական գեղջէ, և այլք թէ 'ի Տարօնոյ. աղքատութեամբ աղագաւ երթեալ 'ի Կոստանդինուպօլիս, և անդ 'ի դիպուածէ իմեքէ բարեբախտիկ եղեալ թագաւորեաց այսպիսի պատճառաւ: Այլ եղև մեռանել Տիբերի կայսեր, և մեծամեծք ընդ միմեանս հակառակեալք ոչ հնազանդելով միմեանց, և էր մարտ անհնարին 'ի մէջ նոցա, որպէս թէ ո՞ յաղթիցէ և թագաւորեսցէ. և պատրիարգն 'ի մէջ անցեալ համոզեաց զնոսա արկանել վիճակս, և ում հասանիցէ՝ նմա ունել զթագաւորութիւնն, և այլոցն հնազանդել, և զայս երդմամբ ամենեցուն մուրհակաւ. և էր վիճակն այսպիսի: Ընդ լուսանալն բանալ զաւագ դուռն քաղաքին, և զայր որ պատահեսցի անդ, թէպէտ և կարի յանարգացն իցէ, ածել 'ի պալատն արքունի, և իշխանացն նստել 'ի միասին, և յոյր[2] 'ի գլուխըն դնիցէ զթագն՝ նմա լինել թագաւոր. հաւանեցան ամենեքեան և դադարեցին 'ի խռովութենէ: Այլ իբրև եհաս ժամն ժամադրեալ, բացեալ զքաղաքին դուռն, և տեսեալ զՄօրիկ առ դուրսն, ցօղուն ինչ առ 'ի վաճառել և լնուլ զպէտս իւր. և յափշտակեալ զնա զօրականաց տարան 'ի բաղանիս, և լուացեալ զնա զգեցուցին նմա հանդերձս ազնիւս, և տարան զնա յարքունիսն: Այլ իբրև ասացին նմա վասն որոյ կոչեցաւ, և նա պահանջեաց 'ի նոցանէ գիրս և երդմունս, զի մի սպանցեն զնա մնացեալքն 'ի թագէն, և նոքա երդուան նմա սաստիկ, զի անհօգ լիցի յայնմանէ. բազմեալ էին ամենեքեան մնոտի յուսով, և իւրաքանչիւր ոք անձին իւրում ասէր՝ թէ լիցի. կայր աթոռն և թագ 'ի վերայ նորա, և կօշիկքն հուպ առ նմին: Ընց Մօրիկն 'ի մէջ և առ զթագն 'ի ձեռն իւր, և սկսաւ շրջել ընդ բազմեալսն. իբրև եկն առաջինն՝ ուրախացաւ նա, բայց տրտմեցաւ երկրորդն. և իբրև եթող զնա՝ կալաւ տըրմութիւն զնա, և զընկերս նորա ուրախութիւն, և այս-

1 Ըստ կարծեաց հակառակորդաց իւրեանց:

2 Ա. Օ. խոր. Բ. Գ. սոր:

պէս ըստ կարգի երկիցս և երիցս շրջեցաւ նա, տրտմեցոյց զնոսա և ուրախացոյց։ Ընց նստաւ նա 'ի վերայ աթոռոյն և եդ զթագն 'ի գլուխ իւր, և տեսեալ ամենեցուն սխրացան[1]։ Բայց զի երդուեալ էին նմա թէ յոյր և դիցես գլուխն՝ մեք հնազանդիմք նմա, թոյլ ետուն նմա։ Մատուցեալ պատրիարգն ազգոյ զկօշիկս յոտս նորա, և երկիր եպագ. նոյնպէս և ամենայն մեծամեծքն երկրպագին նմա և ասեն. Կեցցէ արքայ Մօրիկ։ Սա արար ժողով Քաղկեդոնին վասն դաւանութեան. կոչեաց և զվարդապետս Հայոց, և չոգան Սըրթանէս և Գրիգոր, և այլ վարդապետք, և ոչ ինչ օգտեցուցեալ զՅոյնսն՝ դարձան նզովելով։ Ըռ սա ապատամբեալ նախարարաց Հայոց՝ փախուցեալք 'ի տէրութենէն Պարսից. իսկ սա անմարդի քարս ցուցեալ, ոչ եթէ ընդարձակեաց նոցա, այլ և զկարգեալ ռոճիկսն յառաջին թագաւորացն արգել 'ի նոցանէ։ Ըսէն զօրմանէ թէ առաքեաց առ հայրն իւր թողուլ զպանդխտութիւնն և գալ վայելել զփառս նորա, և թէ ոչ՝ խրատ առաքել նմա, որով կարասցէ վարել զթագաւորութիւնն. և երթեալ սպասաւորացն՝ գտին զնա զի դարմանէր զպարտէզն, և ասացին նմա զհրաման թագաւորին։ Նա պատասխանի ետ և ասէ. Թագաւորի հայր ես ոչ վայելեմ. և ինքն սկսաւ զմեծամեծ կաղամբսն՝ որ 'ի պարտիզի անդ՝ արմատախիլ առնել, կտրել զգլուխս և ծածկել ընդ հողով, և զմանունս փայփայել և յօրինել. և արանցն տեսեալ զայն համարեցան զնա բախած, թողեալ զնա 'ի բաց գնացին, իսկ զոր ինչ արար նա՝ զայն ոչ գիտացին։ Եւ գնացեալ առ թագաւորն պատմեցին զամենայն, և զյիմարութիւնն զոր գործեաց 'ի պարտիզին։ Իսկ Մօրիկ իբրև լուաւ ծիծաղեցաւ, և ոչ ինչ յայտնեաց, և կալեալ զմեծամեծս՝ զոր կարծէր թէ սատան են թագաւորութեան իւրոյ, եբարձ զամենեսեան, զի մի դաւ ինչ լինիցի, և զփոքունսն 'ի տեղիս նոցա կարգեաց. և կոչեցեալ զարսն զայնոսիկ զոր առաքեաց առ հայրն, ասէ ցնոսա. Այս էր խրատ հօրս իմոյ՝ զոր արար 'ի պարտիզին, և դուք ոչ իմանայիք։ Կէսք ասեն զսա յՈրփասուս գեղջէ Կա-

1 Բ Օ. փխրացան։

պատոլկեցւոց, զոր յետոյ քաղաք շինեաց զօրավար Տի-բերի։ Բայց Մօրիկ վասն խստութեան բարուց իւրոց ատեցաւ և որդւովք ողորմատես մահուամբ կորնչի՝ յիւրոց զօրաց, քանզի յարեան 'ի վերայ նորա զօրքն իւր՝ որոց առաջնորդէր Փոկաս, որ թարգմանի հուր[1], և սպան զնա, և ինքն թագաւորեաց ընդ նորա։ — Իսկ յետ Որմզդի Պարսից արքայի՝ թագաւորէ Խոսրով ձեռընտուութեամբ Մօրկայ։

Աշոտանոր Սմբատ Բագրատունի բազում մարտս յարուցանէր առաւել քաջութեամբ առ թշնամիսն Խոսրովայ. վասն որոյ պատուեալ զՍմբատ՝ նմա տայ զմարզպանութիւն Վրկան աշխարհին. և նա երթեալ գտանէ ազգս գերեալս 'ի Հայոց՝ անդ, որ Սագաստանն կոչի, մոռացեալ զլեզուն. զոր նորոգեալ Սմբատայ, և զհաբէլ զոմն եպիսկոպոս տայ ձեռնադրել կաթողիկոսին Հայոց, և կացոյց վիճակս յաթոռ սրբոյն Գրիգորի։ Ի տասներորդ ամի տէառն Աբրահամու, և յերեսներորդ եօթներորդ թուականին Հայոց եկին 'ի Հայս ասորիք արք քաջաբան, և կամէին սերմանել զաղանդն Նեստորի. և նզովեալ հալածեցին։ Բայց ոմանք ընկալան, և նոքա թարգմանեցին զնոցա սուտ գիրս[2], զԳորտոսակ, զԱկիրակոսակ, զՊօղոսի տեսիլն, զԱդամայ ապաշխարութիւնն, զՏիադեկ մանկութիւն տեառն, և զՍեբիոս և զՃիռն օրհնութեան, և զանթաքչելի մատեանս, և աւետարանի մեկնութիւն զՄանեայ. և որ հաւատայ նոցա՝ նզովի յուղղափառացն։

Իսկ յետ տեառն Աբրահամու առնու զկաթողիկոսութիւնն տէր Յովհաննէս 'ի Կոգովտէ, 'ի գեղջէ Բագարանէ, ամս քսան և վեց։ Ոմանք 'ի պատմագրաց զերկոսեան 'ի միում աւուր ասեն վախճանեալ, զԱբրահամ և զՅովհաննէս, և կէսք ոչ։ — Իսկ Խոսրով Պարսից արքայն իբրև լուաւ զմահն Մօրկայ՝ վրէժխնդիր եղև Մօրկայ, զի դաշնադիրք էին միմեանց, և բազում գաւառս աւերեաց Յունաց։ Առաքէ և զԽոռիան զօրավարն իւր 'ի Պաղեստինէ, որ երթեալ պաշարեաց ըզսուրբ քաղաքն Երուսաղէմ, առ զնա և կոտորեաց ըզբնակիչս նորա։ Գերեաց և զխաչն Քրիստոսի, և տա-

1 Ըստ լատին լեզուի Focus.

2 Որք անծանօթ են առ 'ի մէնջ։

րաւ զնա 'ի Պարս․ և գնաց բազում զօրօք 'ի վերայ Թագաւորին Հերակլեայ և 'ի նեղ արկ զԹագաւորանիստ քաղաքն Կոստանդինուպօլիս ։ Իսկ Հերակլ կայսրն ձեռնտուութեամբ Խաքանայ Խազրաց Թագաւորի գընաց յաշխարհն Պարսից, սպան զԽոսրով․ դարձոյց և զսուրբ խաչն և առաքեաց յԵրուսաղէմ ։ Զայս Խաքանս ծաղր արարին բնակիչք Տփխեաց, և առեալ դըդում մի նկարեցին զպատկերն Խաքանայ 'ի վերայ նորա՝ կոյր, որպէս թէ աչք նորա նեղ են և փոքր․ եդեալ զդդումն 'ի վերայ պարսպին հանդէպ նորա, սկսան նետաձիգ առնել․ իսկ նորա տեսեալ զայն՝ բարկացաւ յոյժ, բայց զի ժամանակն ձմեռնային էր, ոչինչ կարաց հատուցանել․ բայց 'ի գալ գարնան եկեալ պաշարեաց զնա․ և առեալ զքաղաքն հրամայեաց կոտորել զարս և զկանայս նաև զմանկտի, և առեալ զաւար 'ի քաղաքն և զինչսն, գնաց յաշխարհն իւր ։ Իսկ յետ սպանման մարզպանացն Ճիհր-Բուզենայ, Ճիհր-Վշնասպ Սուրենայ, Ճիհր-Վզոյն Միհրանայ[1], և այլ տաճկաստանաց, Դաւիթ Սահառունի մարզպան լեալ ամս երեսուն, յաւուրս սորա 'ի վախճան և երկու Թուականին՝ եղև շինուած կաթուղիկէին Սրբենոյ ։

Յետ տէր Յովհաննիսի՝ առնու զկաթողիկոսութիւնն տէր Կոմիտաս ամս ութ ։ Սա շինեաց զսուրբ տիկնօջն Հռիփսիմեայ զվկայարանն պայծառ և հրաշալի, զի խրթին էր առաջին շինուածն․ գտանէ 'ի նմա զնշխարս սրբոց, կնքեալ մատանեաւ սրբոյն Գրիգորի և սրբոյն Սահակայ, և ոչ իշխեաց բանալ, այլ իւրով մատանեաւ կնքեալ ամփոփէ անդէն, արարեալ զերգս շարականաց հայերէն այբբենիւք, որոյ սկիզբն է այս․ Անձինք նուիրեալք սիրոյն Քրիստոսի ։ — Յետ Խոսրովու Պարսից արքայի՝ առնու զթագաւորութիւնն Կաւատ․ սա արձակեաց 'ի գերութենէ զՍիրոյ կաթուղիկոսն Աղուանից, զոր 'ի բանդի եդեալ էր հայր նորա․ և յետ Կաւատայ Արտաշիր, և ապա Խոռեամ հրամանաւ Հերակլի, և ապա Խոսրով, և յետ նորա Բորն և Զար-

[1] Ոչ յիշի յայլոց մի բան միօջէ երեք ճիհր, այլ Բուրզան իբր յիսուն ամաւ յառաջ քան զՃիհր Վշնասպ Սուրէն, և Միհրան Ճիհր Վզոն իբր տասն ամաւ յետոյ քան զնա ։

մանդուխտ[1]. որք ամենեքեան սակաւակեացք. և ապա Յազկերտ:

Իսկ յետ տեառն Կոմիտասայ առնու զկաթուղիկոսութիւնն տէր Քրիստափոր, ամս երկու. և ապա Եզր՝ ամս տասն: Իսկ Հերակլ կայսեր եկեալ ՚ի Կարնոյ քաղաքն՝ ժողով արարեալ կոչէ և զԵզր կաթուղիկոս Հայոց. իսկ նա ոչ տարաւ ընդ իւր զարս իմաստունս, մանաւանդ զՅովհաննէս վարդապետն Մայրավանեցի, որ յոյժ տեղեակ էր աստուածային գրոց. երթեալ հաւանի աղանդոյն (!) Քաղկեդոնի. և տայ նմա պարգևս կայսրն զերիր մասն Կողբայ և զաղահանսն[2] բովանդակ. և եկեալ ՚ի Հայս փոխեաց զամենայն ուղղափառ կարգաւորութիւնս եկեղեցւոյ և զընթերցուածս Յակոբայ և Կիւրղի. փոխանակ այնորիկ զԱրտեմնին եդեալ, զոր յանդիմանեաց սուրբ վարդապետն Յոհան, եթէ Նոդէր ոգխտաբար հաւանեալ եղէր և լուծեր զքարիոզ կարգաւորութիւնս՝ որ ՚ի սրբոյն Գրիգորէ մինչև ցայսօր պահեալ էր յազգիս Հայոց: Իսկ Եզր փոխանակ զղջանալոյ հալածեաց զսուրբն անարգանօք Մայրագոմեցի կոչելով զնա: Իսկ մի ումն յաշակերտացն Յոհաննու՝ Սարգիս անուն՝ հերձուածս յարոյց. և Եզր համբաւեաց թէ Յոհաննու է հերձուածս, և գիրս շարագրեաց, և ընդ այլ հերձուածողաց բանս եդեալ, զբանս աշակերտի նորա Յոհաննու վերագրելով. զոր մի ոք իշխեսցէ բամբասել զսուրբն: Եւ երթեալ Յովհաննու ընտրեաց իւր տեղի լռութեան ՚ի կողմանս Գետաբակս Ներգոյ; և անդ դադարեալ՝ հանապազ ընդ Աստուծոյ խօսելով, եցոյց Աստուած[3] մեծամեծ սքանչելիս՝ վկայ լինել սրբութեան նորա. զի էր նորա էշ մի՝ որ սպասաւորէր զպէտս նոցա, պատահեաց նմա արջ մի և եկեր զնա. և իբրև ասացին Յոհաննու՝ երթեալ ասէ ցարջն. Որովհետև սպաներ զսպասաւորն մեր, արդ փոխանակ նորա դու սպասաւորեա մեզ: Եւ երթեալ արջուն սպասաւորէր ամենայն հնազանդութեամբ ՚ի բեռնակրութիւնս և յամենայն ինչ, ամս բազում: Եւ յետ ժա-

1 Վ. 62:

2 ՕՕ. զաղանդան:

3 Թերևս վայելուչք էին Մայրագոմեցւոյդ սպասաւորութիւն կամ ընկերութիւն իշոյ և արջոյ, բայց յոյժ անվայել հրաշիցդ կարծիս և պատճառ:

մանկանց պատահեալ որսորդաց սպանին զարջն, կարծելով զնա վայրենի. և իբրև տեսին եղբարք վանիցն՝ ընկեցին զնա 'ի խորափիտ մի, և մինչև ցայսօր բնակիչք վայրացն երթան և առնուն հող 'ի տեղւոջէն յորում թաղեցաւ արջն, և լինի դեղ ամենայն ցաւոց անասնոց, աղօթիւքն Յովհաննու. նոյնպէս և գերեզմանն սրբբոյն դեղ է ամենայն ցաւոց որք հաւատով ապաւինին յաղօթս սրբոյն։

Յետ Դաւթի Սահառունւոյ լինի մարզպան Հայոց Թէոդորոս Ռշտունի, ամս քսան և հինգ. և յետ Հերակլի կայսեր թագաւորէ որդի նորա Կոստանդին։ Իսկ իբրև լցաւ 'ի ծննդենէն Քրիստոսի ամք վեց հարիւր և ութևտասն, և Հայոց թուականին վաթսուն և եօթն, յայտնեցաւ ոմն .... մարգարէ հեթանոսաց, աղանդեալ 'ի Կերինթոսէ և յարիանոսաց, Մահմէտ անուն, իսմայելացի ազգաւ, յորդւոյն Հագարու. սա մինչդեռ վաճառականութեան աղագաւ երթայր յԵգիպտոս, հանդիպեցաւ միայնակեցի միոջ՝ որում անուն էր Սարգիս Բխիրա, արիանոս աղանդով, յանապատին Սինեայ։ Սա ուսոյց Մահմետի զ.... պատուածածանօթութիւն, գովեաց նմա զհին օրէնս, զտուեալն 'ի Մովսիսէ, և ասաց. Թէ լուիցես բանից իմոց՝ լինիս առաջնորդ և օրէնսդիր 'ի վերայ ազգին քո. և գնացեալ Մահմէտ զճանապարհս իւր, յանկարծակի եմուտ 'ի նա ոգի ...., և անկեալ փրփրեցաւ, և ընկերաց նորա տեսեալ զայն՝ կացին առ նմա մինչև սակաւ մի ուշաբերեցաւ, և ապա յարուցին զնա. հարցեալ ըզպատճառս այնպիսւոյ ......., ասէր 'ի հրեշտակէ սրբոյ լինել զայն, և յղել զնա պատգամաւոր յազգն իւր։ Նա երթեալ 'ի քաղաքն իւր սկսաւ քարոզել զոր ուսոյց նմա սուտ քրիստոնեայն. էին նմա հօրեղբարք գլխաւորք, նոքա հալածեցին զնա սպառնացեալ նմա մահուչափ, եթէ այլ այնպիսի ինչ բան լուիցեն 'ի նմանէ. և նա երթեալ՝ 'ի տան իւր նստէր տրտմում. և մտեալ Ալի՝ որ էր նորա հօրեղբօր որդի և փեսայ, և հարցեալ զպատճառս տրտմութեան, և նա ասաց. Վասն զի զԱստուած քարոզեցի նոցա, սպառնացան մահու ինձ. և ասէ Ալի. Եկ երթիցուք և դարձեալ քարոզեսցուք, և թէ ընդդէմ դառնան մեզ՝ սպանցուք զնոսա սրով.

զի այր զօրաւոր էր Ալի, և արք զօրաւորք ընդ նմա: Եւ իբրև սկսան քարոզել՝ եղև խռովութիւն յոյժ և պատերազմ, և պարտեցաւ կողմն Մահմետի, և փախըստեայ գնացին 'ի փոքր Մադիամ[1], ուր էին ժողովեալ Հրեայք երկոտասան հազար, զոր հալածեալ էր Կոստանդին կայսեր. և առեալ զնոսա Մահմետայ՝ գայ 'ի վերայ նոցա՝ որք հալածեցին զնա, և կոտորէ զնոսա: Իբրև տեսին Հրեայքն զյաջողուած գործոցն, կացուցին զնա իւրեանց առաջնորդ. յարեցան 'ի նոսա և այլ Ագարանացիք, և եղեն բանակ մեծ. չոգան 'ի վերայ Պաղեստինի, հարին զզօրս Հոռոմոց՝ որք յափշտակեցին զինչս վաճառականաց նոցա: Իբրև տեսին զյաղթութիւնն՝ չոգան 'ի վերայ տէրութեան Պարսից, և սպանին զՅազկերտ թագաւորն, և դադարեաց Պարսից թագաւորութիւնն: — Օ այսու ժամանակաւ խաւարեցաւ կէս արեգական, յարեգ աչեան ամիսն, մինչև 'ի քաղոց ամիսն: — Ապա արձակեցին զզօրս յերիս կողմանս, մի 'ի Հոռոմս՝ Յազ[2] անուն, և խրատատու Յովել անուն, որք կոտորեցին 'ի Հոռոմոց եօթանասուն հազար. և 'ի Պարսից կողմն արձակեցին զՕթմանն ամիրայ և զՄաւիէ զօրավար. նոքա հարին զՍիհրդատ[3] քսան հազարաւ, և զՄուշեղ սպարապետն Հայոց, և տիրեցին բոլոր աշխարհիս Հայոց, Պարսից և Ասորւոց, Եգիպտացւոց, Արաբաց և Պարթևաց. և սկսան շրջել զհաւատս նոցա, և նոքա ոչ հաւանեցան:

Իսկ Ագարանացիք և հաւանեալք նոցա՝ խնդրեցին օրէնս 'ի Մահմետէ, և նա ետ նոցա օրէնս . . . . . . . : Սա եղև օրէնսդիր պատգամաբեր ամս եօթն . . . . [4]: Եւ կոտորեցին զՌշտունիս, զԱգեովլիտ և զՏարօն. և Մահմէտս այս արգել զսուրն, և բանիւ խրատու նորա զմեծ մասն տիեզերաց հնազանդեցուցին. և անմտաց երդմամբ կնքեաց մուրհակ Հայոց աշխարհիս՝ համարձակութեամբ ունել զքրիստոնէութիւն, և վաճառեաց նոցա զհաւատս նոցա յամենայն տանէ առեալ չորս

1 Զմէտինէ ասէ:

2 Որ է Եզատ կամ Իճատ Իպն-Ղանէմ, և կամ Եզիտ որդի Էպու Սօֆիանայ:

3 Թուի պարսիկ կուսակալն 'ի Ռազաւ:

4 Ամենայն ՕՕ. որպէս և տպագիրն Մոսկուայ թուին պակասել յայսմ տեղւոջ:

դրամ, և երեք մեծ խորքալ՝ որ է ցորեան, և ձիաստապրակ մի, և պարան մի մազէ, և ձեռնարար մի։ Իսկ ’ի քահանայից և յազատաց և ’ի հեծելոց ոչ հրամայեաց առնուլ զհարկն. և ’ի տիրելն աշխարհաց կոչեցան Ամիրմումնիք։ Իսկ յետ քսան ամին Մահմետայ՝ կալան զիշխանութիւնն Իսմայելի՝ Ապու-Պաքր, Օթման, և Ամր, ամս երեսուն և ութ։

Յետ Եզրի առնու զկաթուղիկոսութիւնն տէր Ներսէս ամս քսան։ Սա շինեաց զվկայարան սրբոյն Սարգսի՝ որ ’ի Դուին, ’ի կոտորելն Իսմայելի զքաղաքն Դուին, երկոտասան հազար, և արեամբ կոտորելոցն ծածկեցաւ սուրբ սեղանն և աւազանն, և զայլսն գերեցին աւելի քան զերեսուն և հինգ հազար. և զոսկերսն սպանելոցն ամփոփեաց սուրբ հայրապետն ’ի նոյն վկայարանի. և զվիրապն սրբոյն Գրիգորի շինեաց. նա և շինեաց զսուրբն Գրիգոր զարմացուցիչն տեսողաց, որ յետոյ աւերեցաւ ’ի Տաճկացն։ Ի սա եկեալ Ասորւոց ուղղափառաց՝ խնդրէին ’ի սմանէ եպիսկոպոս. և նա պահանջեաց ’ի նոցանէ գրով խոստովանութիւն հաւատոյ՝ որ ’ի Հայր և յՈրդի և սուրբ Հոգին. ’ի Հայր՝ որոյ հայրութիւնն անհասանելի է, և յՈրդի՝ որոյ ծնելութիւնն անբաժանելի է, և ’ի սուրբ Հոգին՝ որ ’ի Հօրէ ելանէ և ընդ Հօր և ընդ Որդւոյ երկրպագի և փառաւորի. զոր և կցորդ արարեալ մինչև ցայսօր պաշտի յեկեղեցիս Հայոց՝ յաւուր Ծրագալուցի յայտնութեան տեառն. և ապա ձեռնադրեցին զԱբդիսոյ եպիսկոպոսն։ Դէպ եղև սմա աշխարհաժողով բազմութ՟ ’ի տօնի Սարդավառի լինել ’ի Բագաւան. և բազմացեալ էր երգ շարականաց յեկեղեցիս Հայոց, մինչև ոչ գիտել միոյ գաւառի զերգս միւսոյն. և ասաց մի դասն[1] շարական ’ի Սարդավառի հարցն, և միւս դասն ոչ կարաց փոխել զնա, և փոխեցին բազում շարականս, և զայն ևս ոչ գիտէին։ Ապա հայրապետն Ներսէս հաւանութեամբ ժողովոյն ընտրեաց[2] զպիտանին և զօգտակարն, զի յամենայն եկեղեցիս ամենայն օր մի պաշտօն լիցի ըստ աւուրն խորհրդոյ. և ընտրեցին զարս իմաստունս զի շրջեսցին ընդ ամենայն աշխարհս Հայոց,

1 Չիք յՕՕ. մի դասն։ 2 ՕՕ. ընտրեցին զհայրապետքն։

և զնոյն կարգաւորութիւն հաստատեցեն, որ է մինչև ցայսօր։

Յետ Թէոդորոսի եկաց մարզպան Հայոց՝ Համազասպ, ամս եօթն. և յետ Ներսէսի՝ առնու զկաթողիկոսութիւնն տէր Անաստաս, ամս վեց։ Սա կոչեաց առ ինքն զմեծ վարդապետն Անանիա 'ի Շիրակ գաւառէ, այր քանիբուն և հանճարեղ, գիտող յոյժ ամենայն տոմարական արուեստից. զի կարգեսցեն անշարժ տոմար Հայոց, որպէս և այլոց ազգաց, զոր արարեալ մեծաւ ջանիւ, և մինչ կամէին ժողով հաստատել՝ վաղճանի սուրբն Անաստաս. անփոյթ եղեալ իրն զկնի եկելոց, այլ առաջին կարգաւ վարէին։ Ի հինգ ամին Անաստասայ եղև շինուած կաթուղիկէին յաւանն Արուճ, զոր շինեաց Գրիգոր պատրիկն, յորում մկրտի նահատակն Քրիստոսի Դաւիթ ազգաւ պարսիկ, որ յառաջն Սուրհան կոչէր, և վասն վկայութեանն Քրիստոսի կախեցաւ զփայտէ 'ի Դուինն։ Յետ Համազասպայ եղև մարզպան Հայոց Գրիգոր Մամիկոնեան ամս տասն. զոր սպանին Խազիրք։ Եւ Ներսեհ շիրակացի եկաց իշխան ամս երիս։ Զկնի Անաստասայ եկաց կաթուղիկոս տէր Իսրայէլ, ամս վեց. և ապա տէր Սահակ, ամս քսան և վեց։ Սա չոգաւ դեսպանութեան աղագաւ առ Մահմէտ զօրավարն Իսմայելի, որ գայր 'ի կոտորել զազգս Հայոց վասն ապստամբութեան 'ի Տաճկաց, և հասեալ 'ի Խառան հիւանդացաւ յոյժ, որ և մեռաւ իսկ. և դեռ չև ևս էր եկեալ Մահմէտ 'ի Խառան, գրեաց գիր պաղատանաց եթէ Ելի ես ընդ առաջ քո աղաչել զքեզ վասն ազգին իմոյ, և ոչ ժամանեցի տեսութեան քո. որ ամենեցուն շտեմարանապետն է՝ կոչեաց զիս։ Արդ երդումն տամ քեզ յուխտադրութիւնն Աստուծոյ՝ որ առ Աբրահամ, և առ Իսմայէլ հայրն ձեր, զի մի ինչ չար արասցես ազգին իմոյ, և հարկեսցեն ձեզ. եթէ լուիցես աղաչանաց իմոց՝ եկեսցեն 'ի վերայ քո օրհնութիւնք իմ. իսկ եթէ ոչ լուիցես՝ անէծք ժամանեսցեն քեզ, և դարձուսցէ Աստուած զսիրտ զօրաց քոց՝ ոչ առնել զկամս քո. յայս երկուցս զմինն ընկալ։ Եւ իբրև եկն Մահմէտ 'ի Խառան՝ ասացին նմա զամենայն և ետուն նմա զթուղթն. և իբրև ընթերցաւ, եհարց թէ ուր իցէ

զերեզման նորա, և ցուցին նմա զտեղին, ուր առ ժամայն էր վաղճանեալ. և երթեալ վաղվաղակի ըստ զենին իւրեանց՝ ողջոյն ետ մեռելոյն իբրև կենդանւոյ. և ասեն եթէ մեռեալ մարմինն պատասխանի ետ և ընկալաւ զողջոյնն իբրև զկենդանի. և ասէ Մահմէտ. Ի գրոյ քումմէ ծանեայ զքեզ, ով այր Աստուծոյ. այր արարից և կատարեցից զամենայն կամս քո։ Եւ վաղվաղակի ելոյծ զթշնամութիւնն, և ոստիկանս առաքեաց Հայոց, հարկ եդեալ ՚ի վերայ նոցա. և ինքն դարձաւ յաշխարհն իւր։

Եւ յետ Սահակայ առնու զկաթուղիկոսութիւնն տէր Եզրիա։ Իսկ յետ Հերակլեայ առնու զԹագն որդի նորա Կոստանդին։ Ի սորա աւուրս եղև յարձակումն Իսմայելի ընդ ամենայն աշխարհս։ Եւ յետ նորա որդին իւր համանուն հօրն։ Իսկ զիշխանութիւնն Իսմայելի յետ Ապու-Պաքրայ, Օթմանայ և Օմարայ՝ առնու Մաւիէ։ Իսկ զմարզպանութիւն Հայոց յետ Ներսեհի առնու Աշոտ ամս երիս, և սպանաւ ՚ի Տաճկաց. և յետ նորա՝ Ներսեհ Կամսարական ամս երիս. և յետ նորա Սմբատ Բագրատունի Բիւրատեան[1] ամս քսան։ Սա պատերազմեցաւ ընդ զօրս այլազգեաց ՚ի Մարդանակերտն աւանի, և յաղթեաց քաջութեամբ ՚ի Բագրևանդ գաւառի։ Յերեքտասան ամի սորա Մահմէտ զծովն Պնեղամայ արձակեաց, և առ զՍևան. և ՚ի վեշտասան ամին սորա Կասմ[2] ամիրայ զիշխանսն Վասպուրականի կոտորեաց։ Եւ յետ Կոստանդի թագաւորեաց Յուստինիանոս. ՚ի վերայ սորա յարեան նախարարք իւր և հատին զքիթս նորա, և փախեաւ ՚ի Խազիրս. և առեալ անտի իւր կին և զօրս բազումս, և դարձեալ թագաւորէ։ Եւ յետ նորա առնու զԹագն Լևոն, և յետ նորա Ափսիմերոս, և յետ նորա Յուստինիանոս, և յետ նորա Լևոն։ Եւ զիշխանութիւնն Իսմայելի՝ յետ Մաւեայ առնու Եզիտ, և յետոյ Մրուան, և յետ նորա Աբդլմելիք. սա է[3] որ այրեաց զիշխանսն Հայոց ՚ի Նախջուանի եկեղեցւոջ. և ապա որդի նորա Վլիթ. և ապա Սուլէման. սա զԴարբանդ էառ, և

1 ՕՕ. Բիւրեղեան։
2 ՕՕ. Կոյ կամ Կամ։
3 Ցաւուրս սորա հրամանաւ Մահմետի ոստիկանի եղև այրումն։

հրամայեաց քակել զպարիսպն · և մինչդեռ քակէին գտին քար մի՝ յորում գրեալ էր · Ես Մանկոն[1] կայսր շինեցի զքաղաքս զայս յիմոց գանձուց · 'ի վերջին աւուրս քակեսցի սա յորդւոցն Իսմայելի, և յիւրոց գանձուց շինեսցի ։ Եւ իբրև տեսին զքարն դադարեցին, և շինելոյ սկիզբն արարին ։ Եւ զկնի Սուլեմանայ առնու զիշխանութիւնն Օմառ · սա գրեաց առ Լևոն կայսր տեղեկանալ վասն քրիստոնէութեան և նոցին աւանդից · և կայսրն գրէ պատասխանի լի իմաստութեամբ, կարի ձաղելով զօրէնս նոցա · և իբրև կարդաց Օմառ՝ ամաչեաց զամօթն մեծ, և սկսաւ զգարշելիսն 'ի բաց հանել յօրինաց իւրեանց · Թէպէտ ոչ համարձակեցաւ եղծանել զամենայն, սակայն բազում ինչ ուղղեաց յանկարգից, և այնուհետև բարեմտութեամբ կայր առ ամենայն քրիստոնեայս, եւս առաւել առ ազգս հայոց · և հրամայեաց գերելոցն դարձ առնել յաշխարհն իւրեանց ։ Յորում ժամանակի նահատակեցաւ Սահակ Գողթան տէրն 'ի Շամ Հէշմայ[2] · քանզի յետ Օմառայ առ զիշխանութիւնն Եզիտ, և ապա Շամ, և ապա Վլիթ, և ապա յետ նորա Մրվան ։

Իսկ զկնի տէր Եղիայի առնու զաթոռն տէր Յոհաննէս Օձնեցին · սա էր իմաստասէր և սուրբ և վայելուչ հասակաւ մարմնոյն, և հոգւոյն եւս առաւել գեղեցիկ ։ Զսա կոչեաց Հէշմ 'ի դուռն իւր, և վասն վայելչութեան երեսաց նորա մեծապէս պատուեաց զնա · քանզի խարտեալ ոսկի և արկեալ զմօրուօքն իւր՝ եմուտ առ նա · և տեսեալ Հէշմայ զարմացաւ ընդ գեղեցկութիւնն, և ասէ ցնա հեզութեամբ · Վասն Քրիստոսին ձերոյ ասեն թէ կարի հեզ էր և խոնարհ, և զաղքատութիւնն առաւել սիրէր · զայս յայտ առնեն և կարգք քրիստոնէիցն · զի որ նոցա առաջնորդք են՝ զաղքատութիւն և զգձձութիւն առաւել մեծարեն քան զմեծութիւն և զփարթամութիւն · իսկ դու ընդէ՞ր այդպէս զարդարեալ ես ։ Ասէ ցնա սուրբն · Դու քան զծառայն քո աւելի ինչ ոչ ունիս, բայց միայն զթագն և զհանդերձդ թագաւորական · վասն այդորիկ երկնչին 'ի

1 Հնագոյն պատմիչք Մարկիանոս ասեն · զի և չճանաչի ուրեք Մանկոն կայսր · Թէպէտ և Մարկիանու իսկ գործդ անստոյգ ։

2 Հէշամ ամիրապետ, զորոյ անուն երկակի գրէ ։

քէն և պատուեն զքեզ։ Առաջին հայրքն մեր նշանագործք էին և սքանչելի վարուք, վասն այդորիկ երկրպագէին հնազանդեալքն և կատարէին զհրամանս նոցա դաշնութեամբ. իսկ մեք այսպիսիք ոչ եմք. վասն այնորիկ մեք զարդարիմք 'ի հանդերձս և 'ի ձև, զի մի արհամարհեսցին հրամանք մեր։ Եւ մերկացուցեալ զկուրծս իւր՝ եցոյց նմա զմազեղէնն զոր զգեցեալ էր 'ի ներքոյ հանդերձին երևելոյ, և ասէ. Այս է իմ հանդերձս։ Եւ զարմացաւ արքայն, և գովեաց զհաւատս քրիստոնէից։ Եւ ասէ ցսուրբն. Խնդրեա զինչ և կամիս, զի արարից քեզ։ Ասէ հայրապետն. Երիս իրս խնդրեմ 'ի քէն, որ քեզ դիւրին է տալ. առաջինն այս, 'ի քրիստոնէից զոք մի բռնադատեսցես թողուլ զհաւատս իւր, այլ յիւրաքանչիւր թողցես զկամսն։ Եւ երկրորդ, զազատութիւնս եկեղեցւոյ ընդ հարկաւ մի դնիցես, և մի ինչ առնուցուս յերիցանց և 'ի սարկաւագաց։ Եւ երրորդ, ուր և իցեն քրիստոնեայք համարձակութեամբ պաշտեսցեն զկրօնս իւրեանց. զայս՝ գրով տուր մեզ, և ամենայն ազգ իմ ծառայեսցեն քեզ։ Եւ վաղվաղակի հրամայեաց գրել գիր ըստ խնդրոյ նորա, և կնքեաց մատանեաւ իւրով, և ետ նմա պարգևս բազումս, և գումարեաց զօրս բազումս ընդ նմա և առաքեաց մեծաւ պատուով յաշխարհս Հայոց։ Եւ նորա եկեալ հալածեաց զամենայն Յոյնս որք էին յաշխարհիս Հայոց, եթէ վերակացուք և թէ զինուորք. և նոցա փախուցեալ այնքան շտապով, մինչ զի զգանձս ևս անգամ ոչ ժամանել տանել ընդ իւրեանս. այլ աստէն յաշխարհիս թաղեալք, և զհանգամանս տեղւոյն ընդ իւրեանս տարեալ, և զաշխարհս Հայոց ընդ իշխանութեամբ Իսմայելի նուաճեալ։ Ինքն ժողով առնէ [1] 'ի Մանազկերտ. կոչէ և զԱթանաս պատրիարգն Ասորւոց, և նա առաքէ վեց եպիսկոպոս. և նզովէ զՅուլիանիտոն և զապականացու ասողսն 'ի Քրիստոս, և ըզՍարեշապուհ և զԳաբրիէլ բանսարկուս Հայոց և Ասորւոց. և կանոնական օրինադրութեամբ պայծառացոյց զեկեղեցի, 'ի բաց ընկեցեալ զզաւանութիւնս

1 Զայդոսիկ ոչ առնէ Իմաստասէրն, այլ յանուն նորա յօդեն ատեցողքն Յունաց։ Տ. և Վ. 73։

Քաղկեդոնի, որ յաւուրցն Հերակլի կայսեր և Եզրի կաթողիկոսի ունէր անկարգութիւն(!) աշխարհս Հայոց. կարգեալ զընթերցուածս սրբոյն Կիւրղի, և զամենայն տօնս որպէս կարգեալ էր սրբոյն Գրիգորի. և տօնեցին 'ի քսանևհինգ դեկտեմբեր ամսոյ՝ Դաւթի մարգարէին և Յակոբայ առաքելոյն, զոր այլազգիք ծնընդեան տօնեն. և երգեաց շարական և զհարցն Մեղաք ամենայնի, որ մինչև ցայսօր պաշտի յեկեղեցիս Հայոց[1], սկսեալ 'ի հարիւր յիսուն և հինգ թուականէն մինչև 'ի վեց հարիւր իննսուն, որ այժմ մեր աւուրս է. և այսպէս կարգաւորեալ զամենայն աշխարհ ուղղափառութեամբ, և ինքն աղօթից և վարդապետութեան պարապեալ, և շինէ եկեղեցի մի մեծ յիւր գիւղն Ոձուն, որ հուպ է առ քաղաքն Լօռէ. և իւր ընտրեալ տեղի բնակութեան սակաւ մի 'ի բացեայ 'ի գեղջէն, և անդ դադարէր: Եւ եղև օր մի զի յաղօթս էր սուրբն, երկու վիշապք ահագինք յարձակեցան 'ի տեղիքն՝ ուր կայանքն էին առաքինւոյն, և տեսեալ պաշտօնէի նորա աղաղակեաց առ սուրբն օգնել. իսկ սուրբն կնքեաց ընդդէմ նոցա, և առժամայն քարացան, և են մինչև ցայսօր, և ջուր բղխեաց 'ի պորտոյ վիշապին, և բժշկութիւն է ամենայն օձահարի, որք հաւատով ապաւինին յաղօթս սրբոյն: Եւ կալեալ զհայրապետութիւնն ամս մետասան, հանգեաւ 'ի Քրիստոս պարկեշտ վարուք:

Եւ յետ նորա առնու զկաթողիկոսութիւնն տէր Դաւիթ, ամս երեքտասան. սա էր 'ի յԱրամունեայս՝ 'ի Կոտայս գաւառէ. սա փոխեաց զաթոռն 'ի Դուինայ յԱրամունս, շինեալ եկեղեցի և տուն բնակութեան հայրապետական. զի նեղեցաւ նա յոճրագործ ազգէն . . . . . : Եւ յետ նորա եկաց կաթողիկոս տէր Տրդատ, ամս քսանևերեք. և սա էր յՕթմնոյ գեղջէ, այր պարկեշտ և սուրբ և փայլեալ ամենայն առաքինութեամբ. և յաւուրս սորա դադարեցին հէնքն Իսմայէլի. և յետ նորա կաթողիկոս միւս տէր Տրդատ, ամս երիս. և ապա տէր Սիոն ամս ութ. տէր Տրդատ՝ 'ի Դասնաւորից և 'ի Բաւոնից[2]. և տէր Սիոն 'ի Բագուանէ.

1 Որպէս նախասացեալ գործքդ և այդ շարականք՝ չեն վայելք Իմաստասիրին:

2 Երկու են Տրդատք մի զկնի միոյ զահակալեալք, և զայդ յայտնեն երկին հայրենեացդ անուանք:

սա առ ոտամբն Սինի կոչեցեալ լերինն զցամաքեալ աղբիւրն՝ հսկմամբ աղօթից դարձեալ բղխեցոյց ։ — Իսկ Լեոնի կայսերն զկնի Թագաւորէ որդի նորա Կոստանդին. սա կոչեցաւ Կաւաղինոս, այսինքն Թրքաժողով. զի զօրն Տաճկաց բնակեալ էին առ Ալիւս գետոյ, հրամայեաց Թրիք ժողովել և արկանել 'ի գետն. և նոցա տեսեալ ահաբեկ եղեն, և կարծեցեալք անթիւ լինել զօրացն՝ և փախեան 'ի նմանէ ։ Պատմի թէ 'ի միում աւուր՝ զկնի միմեանց հինգ առիւծ սպան սա. և էառ զԿարնոյ քաղաքն. և յետ երկու ամի շինեաց զնա Իզիտ ամիրա ։ Յետ Մրվանայ առնու զիշխանութիւնն Իսմայելի Աբդլա. և յետ նորա միւս Աբդլա[1], այր ժանտ և արծաթասէր, զոր կոչէին զնա ազգն իւր Աբդլդանկի, այսինքն ծառայ դանկի կամ հայր դանկի, զի ըստ լեզուին Հագարացւոց՝ այսպէս կոչէր, զի զդանկ առաւել սիրէր քան զԱստուած ։ Սա շինեաց զՊաղտատ և արար թագումն չարիս ընդ աշխարհս Հայոց հարկապահանջութեամբ և յափշտակութեամբ. և այնքան նեղեաց՝ մինչ զի մեռելոցն հարկս 'ի կենդանեացն էառ, և հատաւ գիւտ արծաթոյ յաշխարհէս Հայոց. և կոտորումն եղև Բագրևնոյ, Յարենոյ, Թաւնայ, ուր սպանեան ոգիք եօթնհարիւր, և գերեցան ոգիք հազար երկերիւր. և Մուշեղ Մամիկոնեան և Սամուէլ այլօք ազատօքն Հայոց կոտորեցան յառուրս զատկացն յԻսմայելացւոց ։

Յայսմ ժամանակի Թուականիս երկերիւր քսանևերկու էր, Ստեփանոս դրան երէց՝ որ բանիբուն ճանաչիւր, հաս ամենայն իմաստասիրական և գրամատիկոս արուեստից հանդերձ հոգևորական առաքինութեամբ ։ Իմին և վարդապետք աշխարհիս Հայոց ընտրեալք տէր Եփրեմ, Անաստաս, Խաչիկ և Դաւիթ Հռոմայեցին, և մեծն Ստեփանոս Սիւնեաց մեծ իմաստասէրն աշակերտ Մովսէսի, զոր վերագոյն յիշեցաք, որ թարգմանիչ եղև 'ի յունէն 'ի հայ լեզու. և 'ի վերայ թարգմանութեան արար և երգս հոգևորս՝ քաղցր եղանակաւ շարականս, կցորդս և այլ երգս արար, և մեկնութիւն աւետարանացն, քերականին, և Յոբայ, և Տէր

1 Որ և Էպու Ճեաֆար Ալմանսուր ։

եթէ չրթանց գիշերոյ։ Նչի վասն որոյն Ստեփանոսի թէ 'ի մանկութենէ վարժ և կիրթ էր սուրբ գրոց. հանդիպի նմա հակաճառաբան Սմբատ այր երկաբնակ. և թողեալ զնա յանհաւանութեան՝ գնայ 'ի Հռովմ[1], և գտեալ անդ միաբանակեաց մի ուղղափառ դադարեաց առ նմա և ուսաւ 'ի նմանէ. և լուեալ Սմբատայ գրէ առ թագաւորն Հռոմոց թէ Ստեփանոս հերձուածող՝ որ հայհոյէ զդաւանութիւնս ձեր, այդր դադարեալ է առ այս անուն միաբանակեցի. և յոյժ ցասուցեալ թագաւորն խնդրէ զնա 'ի դուռն. և ետ նմա խրատ միաբանակեացն ասել զինքենէ, թէ մոլորացիկ եմ թափառական. և լուեալ զայն կայսեր՝ չիջաւ ցասումն բարկութեանն։ Այլ գտեալ համարձակութիւն Ստեփանոսի՝ աղաչեաց զկայսրն բանալ զարկեղս գրոց սրբոց. և գտին մատեան մի ոսկետառ սակս հաւատոյ. մատոյց զայն առաջի կայսերն, և ընթերցեալ զնա՝ 'ի Հռոմ յղէ, բերել անտի երիս գիրս համաբարբառս այնմ գրոց՝ յաղագս ճշմարիտ հաւատոյ, զի զաշխարհն յայն 'ի կրօնս դարձուցեն։ Իսկ զգրեանս 'ի Հռոմայ առեալ, անփոյթ արար զհրամանս ինքնակալին. գայ 'ի Դունին քաղաքն, զիւր աշխարհն նորօք լուսաւորել. և ձեռնադրէ զնա տէր Դաւիթ՝ Սիւնեաց եպիսկոպոս, 'ի խնդրոյ Բուրդքյ և Բաբգէնի իշխանաց Սիւնեաց։ Այլ մի ամ կալեալ զաթոռն՝ սպանեալ եղև 'ի պոռնիկ կանանց 'ի Մոզն գաւառի. զորոյ զմարմինն առեալ բերին 'ի Կազեան գաւառին[2], և անտի 'ի Թանատեաց վանս փոխեցին 'ի հանգիստ. և 'ի բերելն երանելւոյն զգրեանս 'ի Հռոմայ՝ եպիսկոպոսութիւն Սիւնեաց յերրեակ դասս Հայոց եպիսկոպոսաց կարգեցաւ։ Իսկ միաբանակեաց ոմն Նոյ անուն տեսանէր 'ի տեսլեան, զի Ստեփանոս լի արեամբ զգոգն առաջի Փրկչին ունէր և ասէր. Տէր տէր զայս, զի քո են դատաստանքդ արդար. և ազդեալ միաբանակեացն 'ի գաւառն զգալ բարկութեան, և բողոքէ կալ յաղօթս. և ահա խաւար կալաւ զՄոզան սահման, և զաւուրս քառասուն շարժեցաւ տեղն, և խորասոյզ եղեալ ընկղմեցան ոգիք իբրև

1 Ի Կոստանդնուպօլիս աշակերտի կամ բնակէ առ Ցոյն միանակեցին, և յետոյ գնայ 'ի Հռովմ։ Աղաւաղ է պատմութիւնք։

2 Արկազեան գեօղ և ոչ գաւառ։

տասն հազար. վասն այն Սայոյ ձոր անուանեցաւ մինչև ցայսօր ժամանակի. և բազում բժշկութիւնք լինին 'ի նշխարաց նորա, որք հաւատով ապաւինին 'ի բարեխօսութիւն սրբոյն՝ ախտացելոց 'ի պէսպէս ցաւոց և 'ի հիւանդութեանց. զի Աստուած զփառաւորիչս իւր փառաւորէ աստ, և 'ի հանդերձելումն տայ զպատրաստեալ բարիսն, զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ։

Եւ ապա տէր Եսայի յԱղապատրոշ գեղջէ կոչի շնորհօքն Աստուծոյ 'ի պէտս ժողովրդեան 'ի քահանայութիւն, եպիսկոպոսութիւն և հայրապետութիւն, ամս երեքտասան. և յետ վախճանի նորա՝ Իպնդօկն կողոպտէ զեկեղեցին։ Եւ բազում կաշառօք յաջորդէ տէր Ստեփաննոս ամ մի. սա էր 'ի Գունայ. և յետ նորա՝ տէր Յովլաբ ամ մի. սա էր 'ի յոստանէն 'ի կուրապաղատին տանէն[1]. և զկնի նորա տէր Սողոմոն ամ մի. սա էր 'ի Մաքենոցաց վանից ծերացեալ յոյժ. և յետ նորա տէր Գէորգ, ամս երիս, որ Խուլ-որբուկն[2] կոչէր. սա էր յԱրագածոտանէ. և յետ նորա տէր Յովսէփ, ամս մետասան. սա էր 'ի բնակչաց սրբոյն Գրիգորի[3]։ Իսկ յետ Կոստանդի կայսեր առնու ըզ-թագն Լևոն, և յետ նորա Կոստանդին և Եւրինէ մայր իւր։ Ի սոցա աւուրս կանգնումն եղև պատկերացն 'ի Հռոմ։ Եւ եղև սոցա տեսանել տապան մի մեծ մարմարեայ. զարմացան, և հրամայեցին բանալ զտապանն. և գտին գրեալ 'ի նմա, թէ Օ ինչ օգուտ է ծածկելդ զիս, զի յաւուրս Կոստանդեայ և Եւրինեայ մօր նորա՝ տեսցէ զիս արեգակն։ Եւ յետ տասն ամի 'ի միասին թագաւորելոյ՝ ընկէց զմայրն Կոստանդին և ինքն թագաւորեաց ամս եօթն. և ապա ըմբռնեաց մայրն զորդին, բրեաց զաչս նորա, և ինքն թագաւորեաց ամս հինգ։ Եւ յետ նոցա[4] թագաւորեաց Նիկեփոր։ Ի սորա աւուրս երկու եղբարք Սահակ և Յովսէփ խամայելացիք[5] կատարեցան վկայութեամբ 'ի Բրիստոս՝ 'ի Կարնոյ քաղաքին, յարաց հնդետասան։ Եւ

1 ՕՕ. 'ի Կուրապաղատէն։

2 Այլք գրեն Խոյորբուլ համ Հոյորբուլ։

3 Այսինքն վանաց Ս. Գրիգորի։

4 Ոմանք նորա։

5 Ա. Գ. յիսմայելացւոց։

յետ նորա Թագաւորեաց Միքայէլ. յաւուրս սորա սով սաստիկ եղեւ ընդհանուր, եւ յաւուր միում գտին մե-ռեալս երեքհազար։ Եւ յետ նորա Լեոն. սա զպատ-կերսն ընկէց, եւ ընտրեաց զԲիւզու եւ զԱրկադուպօլիս։

Իսկ յետ այրելոյ զիշխանս 'ի Նախջաւանի' յետ յի-սուներորդ ամի' Հայոց մարզպան[1] եղեւ Աշոտ Բագրա-տունի, ամս եօթնեւտասն. եւ յետ նորա Սմբատ որդի Աշոտոյ որ Աբլաբաս կոչէր, ամս երեսուն եւ հինգ. սա շինէ զքաւարանն մեծապայծառ զարդու յԵրազգա-ւոր, որ արդ Շիրակաւանն կոչի։ Իսկ զիշխանութիւնն Իսմայելի յետ Աբդլայ առնու Մահադի, եւ ապա Մու-սէ, եւ յետ նորա Ահարոն, եւ յետ նորա Մահամատ, եւ ապա Մահմուտ, եւ ապա Ապուսահակ Մահմէտ, եւ յետ նորա Ահարոն[2]։ Իսկ յետ Յովսեփայ եղեւ կա-թուղիկոս տէր Դաւիթ, ամս քսանեւհինգ. սա էր 'ի Մազազայ 'ի գեղջէ Կակաղայ[3]. եւ յետ նորա Յովհան-նէս ամս քսանեւերկու. սա էր 'ի գաւառէ Կոտայից 'ի գեղջէ Ովայից։ Յութերորդ ամի սորա չարախօսք ո-մանք 'ի նմին տանէ բանս հայհոյութեան խօսէին ըզ-սրբոյն, որք չարամահք սատակեցան, նանրալեզուք, որպէս այնոքիկ որ առ Նարկեսոսիւ էին Երուսաղեմայ եպիսկոպոսիւ։ Եւ յետ նորա տէր Զաքարիա. սա էր 'ի Կոտայս գաւառէ' 'ի գեղջէն Ձագայ, 'ի միում աւուր ամենայնին արժանաւորեալ, սարկաւագութեան եւ քա-հանայութեան եւ կաթուղիկոսութեան. այր սուրբ եւ առաքինի, ամս քսանեւերկու։ Ի սորա աւուրս եկաց գլուխ Իսմայելի այր ոմն անօրէն եւ աստուածատեաց, Ջաբր անուն. սա յոյժ մախայր ընդ անունն Քրիս-տոսի, եւ զբազումս հրապուրէր յուրացութիւն, եւ զեւս բազումս որք ոչ հաւանէին նմա՝ սպանանէր դառն տանջանօք, եւ բազում չարիս գործեաց նա ընդ աշ-խարհս՝ որ ընդ իշխանութեամբ էին. եւս առաւել ընդ աշխարհս Հայոց սպանմամբ եւ գերութեամբ։ Քանզի առաքեաց ոստիկան մի Ապուսէթ անուն, որոյ եկեալ կալաւ զիշխանն Տարօնոյ զԲագարատ, եւ զայլս բա-

1 Մարզպան կոչումն ոչ լսէր յայնժամ. եւ Թուականքդ եւ կարգ իշխանացդ թերութիւնք են։

2 Անուանքս ամիրապետացդ զա-նազանին յայլոց եւ մանաւանդ 'ի բուն արաբիկ պատմչաց, որպէս եւ յզկնիսն։

3 ՕՕ. Կաղձուայ։

զուիս. զոր իմացեալ բնակիչք լերինն Խոյթայ[1] որ Սա-
սունքն անուանին, եկեալ սպանին զԱպուսէթն. զոր
լուեալ Ջաֆրի՝ բարկացաւ յոյժ, և առաքեաց զօրա-
գլուխ մի Բուղայ անուն, Թուրք ազգաւ, այր խորա-
մանկ և անօրէն. որ եկեալ աւերեաց զաշխարհս Հայոց,
զմեր խաբէութեամբ և զոր պատերազմաւ, և խաղացոյց
զգերութիւնն 'ի Սամառա. որ և զՍմբատ սպարապետ
Հայոց՝ խաբէութեամբ տարաւ առ Ջաֆր, և նա եդ
զնա 'ի բանդի զի ուրասցի զՔրիստոս, որ ոչ հաւա-
նեալ հրամանի անօրինին, այլ համարձակութեամբ
զՔրիստոս խոստովանեցաւ և պահեցաւ 'ի նմին բան-
դի, մինչև անդէն մեռաւ, և զխոստովանական անուն
ժառանգեաց. և այլք բազումք վկայեցին վասն Քրիս-
տոսի, և մեռան յանօրինէն. և զարկաւագ ոմն ասորի
անուն Նանան՝ վասն համբաւոյ վարդապետութեան
ըմբռնեալ ածին առաջի Ջաֆրին, և նա խոստովանե-
ցաւ համարձակութեամբ զՔրիստոս. և տանջեալ զնա
և 'ի բանդն արգելեալ յոլով ժամանակս, յետոյ ար-
ձակեցաւ խնամօքն Աստուծոյ. որ և գրեաց զմեկնու-
թիւն աւետարանին Յովհաննու լուսաւոր բանիւք։
Նոյնպէս և յիշխանացն Հայոց մի ոմն Ստեփաննոս ա-
նուն որ Կոնն կոչէր, նահատակեցաւ 'ի Քրիստոս. և
բազումք ուրացան զՔրիստոս ճշմարիտն Աստուած՝
վասն երկիւղի մահուն. այլ և յոլովակի չարիս անցոյց
ընդ աշխարհս. զոր գտցես 'ի գիրսն Թովմայի և Շա-
պուհի և այլոց պատմագրաց։ Ի Թուականիս Հայոց
հարիւր իննսուն և չորս և Ասորւոց՝ հազար եօթանասուն-
և չորս, շինեաց Ջաֆր զԲաղդատ 'ի վերայ Տիգրիս գե-
տոյ, չորս աւուր ճանապարհաւ հեռի 'ի Բաբելոնէ։ Սա-
ծնաւ կին մի, երեսուն տարի ապրեցաւ՝ ոչ ինչ կերաւ։
Իսկ զկնի խոստովանողին Սմբատայ առնու զիշխա-
նութիւնն Աշոտ որդի նորա. սա ամենայն նախնեացն
վեհագոյն գտաւ, զի զկնի սպարապետութեանն՝ իշխա-
նաց իշխան եղև, և ապա թագաւորեաց յերկոցունց
թագաւորաց յիսմայելէն և յունականէն։ Քանզի յետ
Ջաֆրի առնու զԹագն Մահմէտ, և ապա Ահմատ,
ապա Ապդլլա, և ապա Մէհմէտ. սա իշխանաց

1 Խոյթ կամ Խութ։

իշխան կացոյց զԱշոտ, և ապա թագ ետ նմա։ Իսկ յետ Լևոնի կայսեր՝ առնու զթագն Միքայէլ․ և յետ նորա Վասիլ․ զսա ասեն 'ի Տարօնոյ 'ի գեղջէն Թիլայ․ սա շինեաց զԶօրավարն[1]․ սա դարձեալ թագ առաքեաց Աշոտոյ 'ի վերայ իսմայելականին[2]․ և առ Աշոտ գրեաց թուղթ պատրիարգն Կոստանդինուպօլսի Փոտ, և առաքեաց մասն 'ի տէրունական խաչէն․ որոյ պատասխանի գրեաց հրամանաւ Աշոտոյ վարդապետն Իսահակ գեղեցիկ և իմաստասիրական[3]։ Արդ 'ի բառնալոյ թագաւորութեան Արշակունեաց մինչև ցթագաւորութիւնն Բագրատունեաց լինին ամք չորեքհարիւր երեսունևչորս[4]․ որ յերեքհարիւր երեսունևչորս թուին Հայոց թագաւորեաց Աշոտ, այր երկիւղած յԱստուծոյ և բարեպաշտօն, զարդարիչ եկեղեցւոյ, և սիրող պաշտօնէից Աստուծոյ, որ զարդարեաց զեկեղեցիս Հայոց մեծաւ զարդիւք և պայծառութեամբ։ Զամս երեսուն և երկու իշխանաց իշխան կացեալ, և հինգ ամ թագաւորեալ՝ փոխեցաւ 'ի Քրիստոս բարի դաւանութեամբ և ճշմարիտ հաւատով։ Եւ յետ նորա թագաւորեաց որդին Սմբատ, ամս քսան և չորս։ Սա վկայութեամբ կատարեցաւ 'ի Քրիստոս 'ի Դունին՝ 'ի Յուսփայ որդւոյն՝ Ապուսաթայ։ — Իսկ յետ Զաքարիայի առնու զաթոռն տէր Գէորգ 'ի գեղջէն Գառնոյ․ սա գերեցաւ յԻսմայելացւոցն, և իշխանքն Աղուանից գնեցին և արձակեցին․ և յետ նորա եկաց կաթուղիկոս տէր Մաշտոց ամ մի․ սա էր սուրբ և առաքինի, լցեալ հանճարով և իմաստութեամբ, և բնակէր 'ի կղզւոջն Սևան մեծաւ ճգնութեամբ․ զամս քառասուն հաց ոչ եկեր և ջուր ոչ արբ, միահանդերձ և բոկոտն։ Սա կարգեաց զգիրսն որ ըստ իւր անուանն Մաշտոց կոչի, ժողովեալ զամենայն կարգեալ աղօթս և զընթերցուածս 'ի միասին յարմարեալ յաւելուածով յիւրմէ, որ ունի յինքեան զամենայն կարգս հաւատոյ քրիստոնէութեան․ և հասեալ 'ի ծերութիւն պարարտութեան հանգեաւ 'ի Քրիստոս փառաւորապէս, և եդաւ 'ի գե-

1 Իմա զեկեղեցին։

2 Յառաջ քան զթագաւորելն Աշոտոյ մեռեալ էր Վասիլ։

3 Ըստ ախորժակաց Կիրակոսի։

4 Զբարձումն թագաւորութեան իջուցանէ ցնահատակութիւնն Վարդանայ․ այլ 'ի մերժելոյ Արտաշրի վերջնոյ ցԱշոտ՝ լինին ամք 458։

րեզմանի 'ի Գառնի, հուպ առ զարմանալի թախտին Տրդատայ. և շինեցին 'ի վերայ նորա վայելուչ եկեղեցի. և յետ նորա յաջորդէ զաթոռն տէր Յոհաննէս աշակերտ նորին և ազգային՝ ամս քսանևութ. Սա էր այր իմաստուն և բանաւոր 'ի քաղաքագեղջէն Գառնոյ, ուստի սուրբ հայրապետն Գրիգոր էր. սա գրեաց պատմութիւնս գեղեցկայարմարս, զոր ինչ գործեցին անօրէն ազգն Հագարացւոց ընդ աշխարհս ամենայն մեծամեծ չարիս:

Արդ յայսմ վայրի կամ է ինձ երկրորդել վասն պատակոման... ազգին Իսմայելի, զի հրամայէ փրկիչն մեր և Աստուած Յիսուս Քրիստոս, եթէ Ամենայն թագաւորութիւն բաժանեալ յանձն՝ աւերի, որպէս և սոցայս, զի 'ի բազում բաժանեալ տէրութիւնս. զի Սոփարն[1] տիրէր աշխարհին Խորասանու, և Ապալիկն Ապութորոսպ 'ի Բասրացւոց[2] քաղաքին, Յիսէ Ըեխայ[3] որդին 'ի Պաղեստինէ, և որդին[4] Ապլտփոյ 'ի Դիլմաց[5] աշխարհի, և այլք ոմանք 'ի տեղիս տեղիս խռովութիւնս յարուցեալ՝ ջանային բռնութեամբ տիրել իրերաց, վասն որոյ դժուարագիւտ եղև անուանք ամբարշտացն: Բայց յորոց և է ոստիկանք չարք և անմօրդիք արձակեալք լինէին յաշխարհս մեր, որպէս գազանաբարոյն Բուղա, և անօրինագոյն Ափշին որդի առաջագոյն չարին Ապուսիթայ, և կամ ևս չարագունին ապականչին Յուսփին եղբօր Ափշինոյ՝ որ սպան զՍմբատ Թագաւորն 'ի Դուին, և թագաւորեցոյց զԳագիկ ոմն 'ի տանէն Արծրունեաց զորդի Դերենկանն, այր բարի և աստուածասէր, որդի քեռ Թագաւորին Սմբատայ Բագրատունւոյ. սա շինեաց զեկեղեցին Աղթամարայ, որ 'ի ծովուն Բզնունեաց, քաղաք Թագաւորական և եկեղեցի հրաշազան և պայծառ յօրինուածով: Այսոքիկ ամենեքեան չար վերակացուք՝ որ գային յաշխարհս

1 Սոֆֆարիանեան տոհմն, այսպէս կոչեցեալ 'ի Սոֆֆար արաբացի ձայնէ, որ է կատսայագործ, զի զայս արուեստ ունէր հայր իշխանացելոյն՝ Եաղուպայ:

2 Գարիտեան տոհմն բռնացաւ կողմանց Գասրայի 'ի կէս Ժ դարու:

3 Որ յետոյ և 'ի Միջագետս կուսակալ կարգեցաւ, և եբեր Աշոտոյ զԹագն:

4 Հասան-պէն-Զէյտ, Դեյլմեկաց բռնաւորն, որ նուաճեցաւ 'ի Սոֆֆարեանց:

5 Վ. 95:

մեր աւերել և եղծանել, մինչև բարձաւ թագաւորութիւնն Ամիրմումնեացն, և փոխանորդեցին Սկիւթացիքն ոչ ելլենախոհք[1] այլ բարբարոսք. քանզի բազում ազգս հարեալ հնազանդեցուցին և իւրեանց իշխեցին, ընդ որս և զիշխանութիւնս Տաճկաց հնազանդեցուցին. բայց զի զանուանս նոցա ոչ ուրեք գտաք գրեալ, վասն այնորիկ և ոչ մեք կարացաք դրոշմել. թուի թէ և ոչ 'ի դպրութեան կենաց, այլ յարձանս ամբարըշտաց. վասն այնորիկ լքեալ թողցուք զնոսա իբրև զարանց յուսացելոց 'ի զօրութիւնս իւրեանց, որք խլեցան յարկացն Աստուծոյ։

Իսկ 'ի սկսանել թագաւորութեանն Թուրքաց՝ որք յիսուն հայ ազգաւ նեղեալք 'ի նոցունց՝ ելին յանապատն սպառազինեալք, և եկին 'ի Մարաշ։ Գտին այր մի քաջ Փիլարտոս անուն հայ, եդին զնա գլխաւոր, և մտեալ 'ի Կիլիկիա՝ առին զառվանդակ աշխարհն. յորս էին և Ռուբինեանք սերեալ թագաւորազունքն։ Ոչ մինչև յայս Մելիքշահ սուլթանն՝ գրեալ էր զպատճառ տիրելոյ նոցա մեծիմաստ վարդապետն՝ որ Սարկաւագ կոչիւր, և երկրորդեալ էր Սամուէլ քահանայ, այլ և զհօր նորա զարիւնախանձին Ալփասլանայ, և ըզնորին հօր և հաւուց, և զոր Տուղրուլ-պէկ և Մահմուտ և Սալջուկ անուանք են նոցա։ Այլ մեք դարձցուք անդրէն յոճն կարգի ուստի ելաք. հանգցուք արտաքս ըզմիտս[2], և աստացուք խրախուսութեամբ. Նոքա 'ի ձեռանէ քումմէ մերժեցան. մեք ժողովուրդք և խաշն արօտի քո։ Քանզի յետ մահուան Սմբատայ Բագրատունւոյ թագաւորէ Հայոց Աշոտ որդի նորա, հրամանաւ Ռոմանոսի կայսեր, յետ եօթն ամի սպանման հօրն, ամս ութ. իսկ յետ Վասլի կայսեր՝ թագաւորեաց Լեւոն, և ապա Ալէքսն, և զկնի նորա Ռոմանոս։ Սա հալածեաց զամենայն կրօնաւորս և զքահանայս Հայոց որք էին յաշխարհս Հոռոմոց, զի ոչ հաւանեցան դա-

1 Ի Սարկաւագ վարդապետի պատմութենէն առեալ իմաստակէ. Հելլէնախօսք, կիրթք Յունաց պէս՝ կամելով ասել, և անձնարկէ 'ի Սելջուքեանս։

2 Նորին յիշելոյ Սամուէլի ժամանակագրի են բանքդ, զոր անձամբ 'ի ներս մուծանէ Կիրակոս. և մինն է գաւազան մի թագաւորութեան՝ զոր 'ի կարգէ շարեցն 'ի բաց թողու գաւազանագիրն։

ւանութեան Բաղկեդանի. և եկեալ յաշխարհս Հայոց՝ յաւուրս Աբասայ որդւոյ Սմբատայ, հաստատեցին վանորայս զԿամրջաձոր, և զԿապուտաքար 'ի գաւառին Արշարունեաց հռչականաւն, և զՀոռոմոսին կոչեցեալ վանք և զԴպրեվանք 'ի Շիրակ գաւառին. շինեցին եկեղեցի մի յանուն սուրբ Աստուածածնի 'ի վանքն՝ որ կոչի Սանահին 'ի սահմանս Լոռէ քաղաքին. և զի կոչէին զերիցունս Հոռոմոց՝ երէց, անուանեցին զմի վանքն որ 'ի Շիրակ՝ Հոռոմոց վանք. (որ ցարդ ևս Հոռոմոցի վանք ասի[1]): Եւ յետ Ռոմանոսի թագաւորէ Կոստանդին որդի Լևոնի, և ապա Ռոմանոս. և զկնի նորա Նիկեփոր, և զկնի նորա Կիր-Ժան:

Իսկ յետ Յովհաննիսի առնու զկաթողիկոսութիւնն տէր Ստեփաննոս ամ մի, և ապա տէր Թէոդորոսն ամս մետասան. և ապա տէր Եղիշէ, ամս եօթն. և ապա տէր Անանիա Մոկացին, ամս քսան և երկու: Յաւուրս սորա էր եպիսկոպոս մի կողմանցն Սիւնեաց՝ Յակոբ անուն, որ սկսաւ նորաձևութիւնս առնել խօսից և կարգաց. և այլ միւս եպիսկոպոսն Խոսրով անուն, որ ասէր. Չէ պարտ կիւրակէ ասել զօրն տէրունի՝ այլ կիւռակէ, զի հոռմերէն է. նոյնպէս և հասարակաց թողուլ ասէր զգէսս և ոչ հատանել, մինչև երկայնասցի և պատ առցէ. զի վասն այն կոչի պատանի, և ապա կտրել հրամայէր, զի վասն այնորիկ կոչի ասէ կտրիճ. և ասէր. Ոչ է պարտ եպիսկոպոսապետի՝ այսինքն կաթողիկոսի՝ հլու լինել, զի աւելի ոչ ինչ ունի, բայց միայն զանուանակոչութիւն: Եւ այլ այսպէս անիմաստ բանիւք լցոյց զաշխարհս, և խռովութիւն յարոյց ամենայն ուրեք վասն նորաձևութեան: Առ որ գրէ թուղթս խրատականս տէր Անանիա 'ի բաց կալ յանհանճար և յանընդունակ բանից. իսկ նա փոխանակ զղջանալոյ՝ առաւել ևս անամօթանայր, զանձն իմաստուն կարծէր և զնոսա տգէտ. առ որ հարկաւորի դարձեալ գրել երկիցս և երիցս. գրեն և այլ իմաստունքն վարդապետք, և յիշեցուցանեն նմա 'ի գրոց հանգամանս կարգաց: Իսկ նա 'ի նոյն միտս ամբարշտութեան կացեալ՝ քամահէր զամենեքումբք, և ինքն ապստամբեալ 'ի կաթողիկոսէն

1 Փակագծեալքս չեն յԱ և 'ի Գ: — Վ. 88:

ամիանայր 'ի բերդն Սիւնեաց, զոր ընդ բանիւ արարեալ կաթողիկոսն, գրէ առ տիկինն Սիւնեաց՝ տալ զնա 'ի ձեռս խորատել զնա, զի թերեւս գայցէ յուղղութիւն. և նոքա ոչ ետուն զնա 'ի ձեռս նորա. և զնոսա ևս արար ընդ բանիւ կապանաց, և 'ի նոյն միտս եկաց մինչև մեռաւ: Նա և ապա գնաց տէր Անանիա յաշխարհն Սիւնեաց հնազանդել զապստամբս. և իբրև լուան իշխանքն Սիւնեաց զգալուստ հայրապետին՝ ելին ընդ առաջ նորա, և մեղադրէին անձանց իւրեանց, և ետուն նմա ձեռագիր երդմամբ, զի այլ ոչ ապստամբեսցեն յաթոռոյն սրբոյն Գրիգորի յազգէ մինչև յազգս. և ապա ձեռնադրեաց յազգէ նոցա զմի ոմն արքեպիսկոպոս, որ յառաջն էր Սիւնեաց եպիսկոպոս. զայն 'ի պատիւ արարեալ իշխանացն Սիւնեաց՝ հրամայեաց խաչ տանել առաջի արքեպիսկոպոսին Սիւնեաց ուր և երթիցէ:

Յետ մահուան տեառն Անանիայ եկաց յաթոռ նորա տէր Վահան 'ի Բաղաց ամ մի: Սա դաշնադիր եղև ընդ Վիրս միաբան դաւանութեամբ. վասն որոյ ժողովեալ յամուրն Անի, 'ի թագաւորութեան Աշոտայ[1] որդւոյն Աբասայ, բազում եպիսկոպոսաց և խստակրօն վանականաց, որք ծանուցեալ հաւաստեաւ զհերձուած կորստեան մտաց նորա, զոր ետ բերել պատկերս վասն նորոգման աղանդոյն (!) Քաղկեդոնի, և որոշեալ զնա՝ հալածական արարին: Նա և միաբանեալ նստուցին յաթոռ սուրբ Լուսաւորչին զՍտեփանոս հաբազատ արեան սուրբ առն Մաշտոցի՝ որ 'ի Սևան կղզւոջ. և էր սա հետևեալ վարուց նորա, որ եկաց յաթոռն՝ ամս երկու: Բայց քանզի Վահանիկն դեռ ևս կենդանի էր 'ի Վասպուրական, հաւանեցոյց զոմանս 'ի պարզամտաց սուտ զնմանէ կարծել զհամբաւ հերձուածոյ. և վասն այնորիկ զմիջոց աշխարհիս Հայոց լցին նզովիւք: Իսկ 'ի հրամանէն Աստուծոյ 'ի միում աւուր[2] մեռան երկոքին. և ամ մի անվերակացու լեալ՝ ապա հրամանաւ թագաւորին՝ որ Սմբատն կոչիւր՝ ժողովեալ ընտրելոց արանց, և եպիսկոպոսաց սրբոց կացուցանեն յաթոռ հայրապետական զերանելին այրն

1 Ողորմածն Աշոտ:

2 Ի միում ամի ըստ այլ պատմիչաց:

Աստուծոյ զտէր Խաչիկ՝ հարազատ տեառն Անանիայի մեծի հայրապետին, որ բանիւ վարդապետութեան սանձեաց զբերանս հերձուածողաց, որբասէր և քրիստոսասէր, որ կալաւ զաթոռն՝ ամս ինն և տասն։ Այս զկնի նորա տէր Սարգիս ամս քսան և չորս։ Իսկ զկնի Աշոտոյ թագաւորէ որդի նորա Սմբատ, որ և Շահնշահ կոչիւր. սա 'ի թագաւորելն՝ լիր արկեալ պարսպին Անւոյ՝ բարձրաբերձ բրգամբք և լայնատարած տեղօք, յԱխուրեան գետոյն մինչև 'ի Ծաղկոցաձորն կոչեցեալ վայր. հիմնարկեաց և զկաթուղիկէն պայծառ 'ի նմին քաղաքի, և ոչ կարաց աւարտել, զի եհաս նմա մահ. թագաւորեալ ամս երեքտասան։ Յաւուրս սորա սկիզբն եղև շինուածոյ հռչակաւոր ուխտին Մարմարաշէնն[1] կոչեցեալ, 'ի քրիստոսասէր իշխանէն Վահրամայ։ Այս յետ նորա թագաւորէ Գագիկ եղբայր նորա, ամս իննևտասն. սա շինեաց զսուրբն Գրիգոր գերահռչակ 'ի վերայ Ծաղկոցաձորոյն, գաղափար առեալ զհոյակապ սուրբ Գրիգորն, զոր շինեաց հայրապետն Ներսէս. և կատարեցաւ 'ի հազար ամի մարմնանալոյ տեառն մերոյ. Յիսուսի Քրիստոսի, և 'ի չորեքհարիւր քառասուն և եօթն[2] թուին Հայոց. և կին նորա Կատրամիտէ թագուհի աւարտեաց զկաթուղիկէն սուրբ, զոր ոչ կարաց կատարել Սմբատ թագաւորն։ Շինեաց և Սմբատ մագիստրոսն զփափագատես վանքն՝ որ Բագնայրն[3] կոչի։ Իսկ յետ Կիռ—Ժանեայ կայսեր՝ առնու զթագն Վասիլն՝ ամս յիսուն թագաւորեալ. սա էր այր բարեմիտ յաւէտ առ ազգս Հայոց, որ և թողեալ զդաւանութիւնս Քաղկեդոնի՝ մերում ճշմարտութեանս հետևեաց, և եկեալ յաշխարհն Կիլիկեցւոց մկրտեցաւ 'ի Հայոց 'ի վանքն որ կոչի Պաղակծիակ. և ետ վանացն գիւղս և ագարակս և այլ ինչս բազում[4]։

Այս յետ տեառն Սարգսի առնու զկաթուղիկոսութիւնն Հայոց տէր Պետրոս, ամս երեսուն և ինն։ Այս յետ Գագկայ Շահնշահի թագաւորեաց որդի նորա Յովհաննէս՝ ամս քսան։ Յաւուրս սորա մեծապատիւ Վեստն Սարգիս զկնի բազում շինուածոյ բերդից և

1 Ուղիղն Մարմաշէն, 'ի Շիրակ։

2 Ինն ըստ ասորական հաշուի։

3 Բագնայրն արդ կոչի Ղօշունի֊ձէ, 'ի Շիրակ։

4 Ուստի՞ ուսաւ Կիրակոս զայսպիսի հեթեթանս։

եկեղեցեաց՝ շինեաց և զփառաւոր վանք զԱյցկունս[1] և
զեկեղեցի յանուն սրբոյն Սարգսի, և զՕաւաքար[2]
վանքն բերդ արարեալ պարսպեաց ամրագոյն, և եկեղե֊
ցիս շինեաց փառաւորս 'ի նմա ։ Բայց Թագաւորն Յով֊
հաննէս գժտութեամբ լեալ ընդ հայրապետին Պետ֊
րոսի՝ դնէ զնա 'ի բանտի, և զԴէոսկորոս ոմն առաջ֊
նորդ սուրբ ուխտին՝ որ կոչի Սանահին՝ բերեալ ձեռ֊
նադրէ զնա կաթուղիկոս փոխանակ Պետրոսի ։ Ապա
եկեալ Յովսէփ կաթուղիկոսն Աղուանից՝ հաշտութիւն
արարեալ 'ի մէջ Թագաւորին և հայրապետին՝ հանէ
զկաթուղիկոսն 'ի բանտէ ․ իբրև տեսին ռամիկք բազ֊
մութիւն քաղաքին Անւոյ եթէ արձակեցաւ կաթուղի֊
կոսն 'ի բանտէն, ընթացեալ յանդգնութեամբ 'ի վե֊
րայ Դիոսկորոսի՝ պատառեցին զքօղն երեսաց նորա
յաւուր յայտնութեան տեառն, մինչ դեռ օրհնէին ըզ֊
ջուրն ․ քանզի քօղով վարէին յայնմ ժամանակի կա֊
թուղիկոսք, և հանին զնա անարգանօք 'ի քաղաքէն,
և կացուցին զՊետրոս յաթոռ իւր ։ Եւ գնաց Դէոս֊
կորոս տրտմութեամբ 'ի Սանահին 'ի տուն իւր, և անդ
եղև վախճան կենաց նորա ․ և եդաւ հուպ յեկեղեցին ։
Եւ յաւուրս իշխանութեան Զաքարիայի և առաջ֊
նորդութեան Սանահնին Գրիգոր վարդապետին՝ որ֊
դւոյն Տուտայ, որ էր այր երևելի, առաքեցին բնակիչք
քաղաքին Անւոյ այր մի քարկոփ 'ի Սանահին 'ի նոյն
քաղաքէ, զի յայտնի կամ գաղտնի առցէ մասն ինչ 'ի
նշխարաց Դէոսկորոսի, և տարցէ 'ի քաղաքն ․ զի վասն
նորա են ասեն այս կոտորուածք որ լինի 'ի քաղաքիս
համապազ յայլազգեաց ․ զի թերևս թողութիւն ա֊
րասցէ քաղաքիս վասն յանդգնութեանն՝ զոր գործե֊
ցին ընդ նա հարքն մեր ։ Իսկ այրն երթեալ 'ի գիշերի
կամեցաւ բանալ զգերեզմանն և առնուլ 'ի նմանէ մասն
ինչ, և ահաբեկեալ ահիւ մեծաւ՝ ոչ կարաց բանալ
զգերեզմանն ․ և երթեալ պատմեաց Գրիգոր վարդա֊
պետին ․ և նա ասաց ․ Ես ոչ կարեմ գործել զայդ իրս,
մինչև ժողով բազմութեան քաղաքին Անւոյ այսր գայ֊
ցեն, և մեք ընդ նոսա պաղատեսցուք խնդրել զթողու֊
թիւն 'ի նշխարաց նորա ։ Իսկ ասացեալն յապաղէր ․ զի
ոչ ոք արար փոյթ զնմանէ ։

1 Իմա 'ի գիւղն Խնծկօնս ։ 2 Վ․ 131 ։

Եւ յետ Յովհաննիսի առնու զթագաւորութիւնն Գագիկ որդի Աշոտայ՝ ամս երկու։ Որ յետ մահուան Յովհաննիսի՝ որ և Սմբատ, միաբանեալ իշխանաց և զօրացն յաւէտ և պատրիարգն Պետրոս, ժողովեցան առ դրունս մեծափառ կաթուղիկէին Անւոյ, և կացուցանեն զԳագիկ՝ թագաւոր, զեղբօրորդին Յովհաննիսի, և երդմունս արարեալ ուխտից միամտութեամբ ծառայել նմա։ Իսկ նա պատերազմական արիութեանց ոչ ինչ փոյթ արարեալ, որով աշխարհ վարի, մանաւանդ զի առ այնու ժամանակաւ աւելի ինն 'ի դէպ էր քաջանալ. քանզի իշխանութիւն Իսմայելի շփոթեալ էր, քանզի Սկիւթացիք յարեան 'ի վերայ նորա, որպէս ցուցաք յառաջագոյն. և Յունացն ևս վրդովեալ էր։ Այլ սա զի 'ի մանկութենէ դպրութեամբ գրոց վարժեալ էր 'ի նոսին ևս և զբօսնոյր. զոր իմացեալ ազգին Յունաց՝ առ իւրեանս կոչեցին խաբանօք, յաւէտ ևս 'ի սադրելոյ իշխանացն, որք նենգեցին զուխտ՝ զոր եդին ընդ նմա, աննենգ պահել զտէրութիւնն նորա 'ի վերայ ինքեանց, և ոչ կացին յուխտին. և կատարած գործոյն կորուստ եղև անձանց և աշխարհիս. զի և Յոյնք զգնացեալն՝ 'ի կղզւոջ արգելին, և 'ի տեղի նորա վերակացուս արձակեալ ամ մի։ Իսկ բնակիչք աշխարհիս զմիմեամբք ելանելով անձոռնի[1] յոխորտանօք, և 'ի միմեանս արձակեալ խորամանկութեամբ, և ստաբանութեամբ խորհէին զխորհուրդս նենգութե՛ան, մատնելով զմիմեանս կայսեր, բաղբաղեալ զձեռն տալն առ Հագարացիսն. որք և իշխանացն անգամ՝ զհայրապետսն, և նորա զնոսա. զոր յոչ կամսյս առեալ տանէին 'ի բնակութենէ իւրեանց։ Իսկ մնացեալքն իբր զանտերունչս անգուշեալ կիցս ընկենուին։ Տիրեալ Յունաց ամս քսանևմի. և յետ որոյ հուր հարաւային բքեալ՝ եբեր զգազանն մարդախանձ, որ հրդեհեալ բնաջինջ արար զազգս մեր, ևս առաւել զքաղաքն Անի. զի պաշարեաց զնա աւուրս քսանևհինգ. և ապա առեալ զքաղաքն կոտորեաց զբնակիչս նորա, ոչ ումեք ողորմելով, արեանարբու գազանն՝ որ Արփասլան կոչէր։

1 ՕՕ. անձոռնի։

Այլ մերն դադարեաց գաւազան թագաւորական[1], որպէս Կիւրիկէին որ 'ի Լոռէ քաղաք և որ շուրջ զնովաւ. զի և սա յազգէ Բագրատունեաց էր. և միւսես Գագիկ Վանանդեայ և Կարուց, որ գնաց առ Յոյնս. սակայն գլխաւորն դադարեաց յաւուրս Գագկայ, և այլքն անձնատուրք եղեն ընդ ձեռամբ վիշապին. և կէսք փախստականք գնացին առ կայսրն Յունաց, և նոքա տիրեցին աշխարհիս ամենայն։ Իսկ Յոյնքն՝ գնացելոցն ետուն երկիրս և քաղաքս կալուածոյ, զկողմանս Կեսարու և Սեբաստու՝ զոր ետ Գագկացն երկուցն թագաւորաց։ Իսկ զկաթուղիկոսն Պետրոս մեծապատիւ պատուեաց կայսրն, և ետ նմա աթոռ ոսկի. և իբրև յարեաւ յաթոռոյն և կամէր արտաքս ելանել, եպիսկոպոս մի անուն Եղիսէ՝ առ զսայլիտն[2] ոսկի՝ յորոյ վերայ նստաւ կաթուղիկոսն. իսկ սպասաւորքն արքունի ոչ տային նմա թոյլ առնուլ. և եհարց կայսրն զեպիսկոպոսն, եթէ ընդէ՞ր զայդ առնէր. և ասէ ցնա եպիսկոպոսն. Օրէնն է մեր, զի յաթոռն յոր նստի կաթուղիկոսն՝ ոչ այլ ումեք նստիլ բայց 'ի կաթուղիկոսէն. և զարմացաւ կայսրն ընդ պատիւն զոր ետ եպիսկոպոսն կաթուղիկոսին, և հրամայեաց սպասաւորացն թոյլ տալ զի առցէ եպիսկոպոսն. և ասէ ցնա. Եօթնհազար դահեկանի է այդ, տար պահեա զայդ 'ի պատիւ կաթողիկոսին քո։ Եւ եղև երբեմն ժամանակ, զի յաւուր յայտնութեան տեառն ժողովեալ էին ամենայն քրիստոնեայք և այլ ամբոխ բազում 'ի Տրապիզոն քաղաք օրհնել զջուրն ըստ սովորութեան. և ըստ նախանձուն զոր ունէին Յոյնք ընդ Հայք՝ կացուցին զհայրապետն իւրովք ժողովրդովք 'ի վերոյ և ինքեանք 'ի ներքոյ կողմանէ գետոյն. այսպիսի մտօք, զի թերակատար համարէին զօրհնութիւնս Հայոց. զի 'ի ներքոյ կալով՝ զօրհնեալն 'ի Հայոց կրկին օրհնեսցեն. սովորեցուցեալ էին և աղաւնի մի սպիտակ որ գայր և խառնէր ընդ ջուրս և վերանայր, որով խաբէին զանընտելսն եթէ Հոգին սուրբ էջ 'ի նմանութիւն աղաւնոյ։ Եւ յաղօթեսն սուրբ հայրապետին Պետրոսի՝ դարձաւ ջուրն 'ի

1 Ըստ տպագրին յաւելլի. զի Ռէգնէփ Գոյր ուրուտ փէրոսնիկոն։ յորմէ և ոչըն ասէ Մատթէոս Ուռհայեցի և հնագոյնք քան զնա։
2 Գաւհ. ըստ յունին σέλλα.

վէր և լոյս սաստիկ ծագեաց, որ նուաղեցուցանէր զճառագայթս արեգական. և իբրև եկն աղաւնին նոցա խառնիլ ընդ ջուրն որպէս սովոր էր, յանկարծակի խոյացեալ արծիւ մի՝[1] էառ զնա և գնաց, և զամօթի մեծի հարան Յոյնքն ամենայն, և ակամայ գովէին զհաւատս Հայոյն։ Եւ հրամայեաց կայսրն հայրապետին դնել զաթոռ իւր 'ի Սեբաստիա և անդ հովուել զհօտ իւր. և եկաց անդ մինչև ցմահ իւր. և եդաւ անդէն 'ի Սեբաստիա, կացեալ կաթուղիկոս ամս երեսուն և ինն։

Եւ յետ նորա տէր Խաչիկ սակաւ ժամանակս։ Նորա աշխարհս Հայոց ժողովեալ 'ի մի վայր՝ կացուցին հայրապետ զտէր Վահրամ զոր անուանեցին Գրիգորիս. զորդին Գրիգորի Մագիստրոսի 'ի քաղաքէն Բջնոյ, զթոռն Վասակայ մարտիրոսի, զայր իմաստուն և առաքինի։ Սա խնդրեաց[2] յիւրմէ մեկնել զարուեստն քերականի, զի էր նա իմաստասէր. և մեկնեաց զնա արուեստաւոր բանիւ։ Այս աքանչելի հայրապետս թարգմանեաց բազում ճառս վկայից Աստուծոյ, և ճառս ներբողականս 'ի Յունաց և յԱսորւոց։ Եդ սա 'ի մտի իւրում յետ ժամանակաց երթալ 'ի Հռովմ քաղաք, յերկրպագութիւն նշխարաց սրբոց առաքելոցն Պետրոսի և Պօղոսի, խորհրդակից իւր առեալ զոմն վարդապետ Գէորգ անուն[3]. և կոչեալ զհօտս իւր զեպիսկոպոսս և զերիցունս և զիշխանս, ասաց նոցա զմտածումն իւր. և նոցա յարտասուս հարեալ լային դառնապէս, և աղաչէին զնա մի թողուլ զնոսա որբս և անհովիւս։ Իսկ նա ասէ ցնոսա. Ուխտ է իմ եղեալ և անհնար է ինձ ստել. տեսէք ձեզ այր մի, զի ձեռնադրեցից զնա փոխանակ իմ. և էր պատգամաւոր վարդապետն այն Գէորգ՝ զոր վերագոյն յիշեցաք։ Եւ իբրև ոչ հաւանէին ժողովուրդքն՝ այլ 'ի նոյն աղաչանս պնդեալ կային, և ոչ զոք գտանէին փոխանորդ նորա, յայնժամ ասէ ցնոսա Գէորգ. Ընդէ՞ր այնչափ աղաչէք զնա, որ նա ուխտեալ է երթալ, և ես տեղեակ եմ խորհրդոց նորա, զի ոչ փոխի յայնմ. ես ահաւասիկ, թող զիս ձեռնադրեսցէ փոխանորդ իւր։ Եւ իբրև

1 Ոչ պակաս քան զաղաւնին՝ խաբուսիկ է և արծուիդ։

2 Գրիգորիս՝ 'ի հօրէն իւրմէ։

3 Գէորգ Լոռեցի։ — Վ. 102։

լուաւ կաթուղիկոսն զարմացաւ, և լի եղև ցասմամբ, զի երդուեալ էր Գէորգ ընդ նմա երթալ, սակայն յակամայ կամաց ձեռնադրէ զնա, և ինքն ճանապարհորդ լինէր, և Գէորգ նստաւ յաթոռ նորա։ Եւ երթեալ սուրբ հայրապետն 'ի Հռոմ, մեծապէս պատուեցին զնա ազգն Փռանգաց[1]։ Եւ կատարեալ զուխտն գայ 'ի Կոստանդինուպօլիս նաւով՝ Թարգմանութեան աղագաւ, և յարուցեալ բռնութեամբ հողմոյ ծովուն, և տարեալ զնաւն ընդ այլ ճանապարհս՝ հանէ զնոսա յԵգիպտոս։ Իսկ որք ընդ նմա էին սպասաւորքն երկեան, զի սովորութիւն էր բնակչաց աշխարհին զալէկոծեալ նաւսն կողոպտել և սպանանել։ Եւ կացեալ սրբոյն Գրիգորի յաղօթս, եղև անձրև սաստիկ յԵգիպտոս, որ երբէք չէր լեալ. իբրև տեսին զայն բնակիչքն՝ զարհուրեցան։ Բայց Հագարացին որ թագաւորէր նոցա, այր իմաստուն էր, կոչեաց զզօրսն իւր և ասէ ցնոսա. Դուք ինքնին գիտէք զի յԵգիպտոս անձրև բնաւ չէ եկեալ 'ի սկզբանց անտի մինչև ցայժմ. բայց միայն կարկուտ յաւուրս Մովսէսի, և անձրև մի յորժամ Յիսուս էր եկեալ. սոյնպէս և այս նշան է գալըստեան սքանչելագործ մարդոյն. տեսէք խնդրեցէք զնա թէ ո՞ ոք է։ Եւ շրջեալ զօրացն ընդ աշխարհն գտին զԳրիգորիս իւրովք պաշտօնէիւքն, զի կային յաղօթս առ եզր ծովուն. և ածին զնա առ սուլտանն։ Եհարց զնոսա և ասէ. Վասն ձե՞ր եկն այս անձրևս. և նոքա ասեն. Այո։ Եւ ասէ ցնոսա. Վասն ի՞նչ պատճառի խնդրեցէք զայս։ Նոքա ասեն, թէ Երկեաք վասն սովորութեան աշխարհիս 'ի սպանմանէ, զի նաւաբեկ եղաք 'ի ծովու. և զամենայն իրս ասացին ստուգութեամբ։ Յայնժամ զարմացաւ սուլտանն, և գովեաց զհաւատս նոցա. և ասէ ցհայրապետն. Նիստ դու յԱղեքսանդրիա յաթոռն Մարկոսի, և ամենայն քրիստոնեայք որ են ընդ իշխանութեամբս իմով՝ քեզ լիցին հնազանդ։ Եւ ետ նմա պարգևս մեծամեծս, և սիրեաց զնա իբրև զհայր. և եղև յայնմ օրէ հնազանդ յաթոռն[2] սրբոյն Գրիգորի. և անդ կացեալ վախճանեցաւ սուրբն 'ի փառս Աստուծոյ[3]։

1 Տես 'ի Պատմ. Հայ. Բ. 1000։
2 ՕՕ. աթոռն։
3 Աստ և զկնի (57) շփոթեալ մի համարի զԳրիգորիս Վկայասէր

Իբրև ետես Կիւրիկէ արքայ Բագրատունեաց որդի Դաւթի որդւոյ Գերենկան, որ հիմնարկեաց զհռչակաւոր ուխտն զՀաղբատ և զՍանահին, եթէ եթող տէր Գրիգորիս զաթոռ իւր և գնաց 'ի Հռոմ, կոչեաց առ ինքն զտէր Յովսէփ կաթուղիկոսն Աղուանից, և ետ ձեռնադրել զտէր Բարսեղ՝ կաթուղիկոս Հայոց. և զՍարգիս ոմն դրան երէց Կիւրիկէի՝ ձեռնադրեն եպիսկոպոս Հաղբատայ, և յայնմհետէ եղև աթոռ եպիսկոպոսի. և յետ Սարգսի՝ Գէորգ, և յետ նորա Բարսեղն: Սա էր գեղեցիկ տեսլեամբ. զսա տեսեալ թագուհին Վրաց Թամար՝ մեծապէս պատուեաց զնա վասն վայելչութեան գեղոյ նորա, զի եղբարք նորա գործակալք էին տանն արքունի: Եւ յետ Բարսեղի եղև եպիսկոպոս Գրիգորիս. սա ազգական էր Զաքարիայի և Իւանէի, սա որ յաւուրս մեր եղև. և յետ նորա Յովհաննէս այր հեզ և առաքինի՝ ազգական իշխանաց Խաչենոյ: Սա զգաւիթն փոքրագոյն քակեաց որ 'ի դուռն կաթուղիկէին Հաղբատայ, և շինեաց մեծ և գեղեցիկ շինուածս, որ զարմացուցանէ զտեսողսն հիացմամբ: Եւ յետ նորա միւս Յովհաննէս քուերորդի իշխանաց Զաքարիայի և Իւանէի, և եղբօրորդի առաջնոյ Յոհաննիսին. սա շինեաց բերդ մի ամրագոյն պարսպօք 'ի մէջ Հաղբատայ և Սանահնին. վասն որոյ գժտութիւն ընդ երկուս մեծամեծ վանորայս եղև, որպէս թէ 'ի հողոյ Սանահնին իցէ, և վրէժխնդիր եղև իշխանն Շահնշահ՝ որդին Զաքարէի՝ Սանահնին. զի հայր նորա անդ թաղեալ էր, և իւրեանց սեփական համարէին. զի Հաղբատ 'ի Վրաց թագաւորին հաշուին էր յայնմ ժամանակին: Իբրև մեռաւ եպիսկոպոսն Յովհաննէս՝ քակեցին և զպարիսպն բերդին հրամանաւ Թամթային. և յետ մահու եպիսկոպոսին Յոհաննիսի՝ եկաց 'ի տեղի նորա Յովհաննէս որդի Աղաբրթանայ՝ 'ի Մածնաբերդէ Բագրատունեացն՝ ամս երկու, որ չև էր ձեռնադրեալ եպիսկոպոս վասն շփոթման ժամանակին, որ յետոյ ձեռնադրեցաւ 'ի կաթուղիկոսէն Աղուանից՝ Ներսէսէ՝ կողմանցն Մածնա-

Մեծ և զԳրիգոր քեռորդի իւր, զոր ձեռնադրեաց եպիսկոպոս Եգիպտոսի, և ինքն դարձաւ 'ի Հայս, և մեռաւ 'ի Կարմիր վանս Քեսնոյ:

բերդին․ և յետ նորա Համազասպ 'ի քաղաքէ Անւոյ ։ Սա շինեաց եկեղեցի 'ի տեղին հրաշալի և զանկակատուն և ժամատուն մեծ և սքանչելի ։ Այլ դարձցուք 'ի կարգն բանին, անդի ուստի ելաք ։ Քանզի 'ի բազում բաժանեցաւ կաթուղիկոսութիւնն Հայոց․ տէր Գրիգորիսն որ և Վահրամն՝ յԵգիպտոս․ և Գէորգ 'ի կողմանս արևմտից․ և միւս ոմն 'ի Վասպուրականի՝ 'ի կղզւոջն Աղթամարայ․ և տէր Բարսեղ յաշխարհին Հայոց․ այսպէս 'ի յոլովս բաժանեալ էր ։

Բայց Գագիկ Թագաւորն Կարուց՝[1] գնաց տեսանել զկայսրն Յունաց, քանզի ընդ իշխանութեամբ նորա էր․ և 'ի դառնալն եկն 'ի Կեսարիա․ և լուաւ թէ ոմն Մարկոս՝ մետրապօլիտն Կեսարու՝ ունի շուն մի, և վասն ատելութեան որ առ ազգս Հայոց ունէին Հոռոմք՝ զանուն շանն Արմէն կոչէին․ և այսպէս ձայնէին զնա, զի զՀայքս՝ ամենայն ազգ Արմէն կոչէին վասն քաջութեան Արմենայ[2] Հայկազնոյ ։ Գնաց Թագաւորն յիջևանս լինել առ մետրապօլիտն, և նա ուրախութեամբ ընկալաւ զնա, և իբրև ընդ գինիս մտին ասէ Թագաւորն․ Լուեալ է իմ եթէ դու շուն մի ունիս ազնիւ, ցոյց ինձ զի տեսից զնա ։ Ասէ մետրապօլիտն․ Աւանիկ առ դուրս է հանդէպ մեր․ և ասէ Թագաւորն․ Ձայնեա զնա զի գայցէ այսր․ և նա ձայնէր նմա զայլ շան անուն և ոչ զիւր․ իսկ շունն ոչ ընդոստնոյր և ոչ գայր առ նա ։ Եւ իբրև ձայնեաց Արմէն Արմէն, վաղվաղակի 'ի վեր յարեաւ և եկն ։ Ասէ Թագաւորն․ Զայդ անուանդ ընդէ՞ր ես դու կոչեալ նմա ։ Ասէ մետրապօլիտն․ Զի մանուկ է և նորահասակ․ և հրաման ետ Թագաւորն ծառայից իւրոց և ասէ․ Բերէք քուրձ մի մեծ, և արկէք անդր զշունն․ և հազիւ կարացին արկանել ։ Ապա ասէ Թագաւորն․ Արկէք և զեպիսկոպոսդ անդ առ նա․ թող տեսից ես թէ մանո՞ւկ է շունդ, որպէս ասացն դա ։ Իսկ նա լայր և աղաչէր զԹագաւորն թողուլ նմա զյանցանսն ։ Իսկ Թագաւորն բարկութեամբ ասէ․ Արդ խթանաւ խթեցէք զշունդ, զի կերիցեն զմիմեանս․ և խթէին զշունն, և նա առ կսկծի ցաւոյն ժա-

1 Ոչ Կարուց՝ այլ Բագրատունեաց Թագաւորին Գագկայ է գործըդ եպերելի ։

2 Այսպէս ՕՕ ։

նեօք և մագլօք պատառ պատառ առնէր զնա մինչև մե֊ռաւ. և ասէ. Արդ գիտացիր թէ մանուկ է Արմէն. և ինքն կողոպտեաց զեպիսկոպոսարանն, և այլ ոչ ևս ետես զկայսրն։

Նոյն միւս[1] Գագիկն Թագաւորեալ՝ յաւուր միում ել յորս, և էր արբեալ. և 'ի տօթ ժամու էջ յերիվա֊րէն հանգչել ընդ հովանեաւ ծառոց, և այլ ոչ ոք գոյր ընդ նմա, բայց միայն մանուկ մի փոքրիկ. զի այլ զօրքն ամենայն ցրուեալ էին զհետ որսոյ. և պատահեալ նմա արանց Յունաց՝ ծանեան զնա, և կապեալ առեալ տա֊րան զնա 'ի բերդ մի. և իբրև սթափեցաւ 'ի գինւոյ անտի, ասէ. Ո՞ւր եմ ես. և Հոռոմքն ասեն. Ո՞ւր է մետրապօլիտն մեր Մարկոս. և ընկեցին զնա անարգա֊նօք ընդ պարիսպն բերդին, և նա ջարդեալ մեռաւ։ Եւ զմանուկն այն որ էր ընդ նմա՝ գնեաց ոմն վաճառա֊կան Հայ, և արար իւր փեսայ։ Եւ եղև յետ աւուրց իբրև զարգացաւ մանուկն[2] և եղև այր, գնաց 'ի սահ֊մանս Կիլիկիոյ արամբ միով որսալ կաքաւս. և էր անդ բերդ մի՝ զոր Բարձրբերդ կոչեն. և էր անդ եպիսկո֊պոս մի Հոռոմ. և եղև ծանօթութիւն առն և եպիս֊կոպոսին, և եղեն միմեանց սիրելիք, և զբազում ա֊ւուրս ուտէին և ըմպէին 'ի միասին. և այրն ոչ հանէր 'ի մտաց զիրսն զոր գործեցին Հոռոմք ընդ Թագաւորն Գագիկ ընդ ազգական նորա։ Եւ եղև օր մի, զի ամե֊նայն պաշտօնեայք եպիսկոպոսին ելեալ էին արտաքս 'ի բերդէն 'ի պէտս ինչ գործոյ իւրեանց. և էր եպիսկո֊պոսն միայն և մանուկ մի ընդ նմա. եկն այրն որսորդ հուպ առ բերդն որսալ կաքաւս. և տեսեալ զնա Եպիս֊կոպոսին ձայնեաց 'ի պարսպէն գալ առ նա, և 'ի միա֊սին ճաշակել, և նա ոչ հաւանէր. և էջ առ նա եպիս֊կոպոսն առանց պաշտօնէի։ Իբրև ետես այրն թէ միայն գայ եպիսկոպոսն և ծանեաւ թէ ոչ ոք կայ 'ի բերդն, ասէ ցայրն որ ընդ նմա էր. Այսօր 'ի դէպ է առնուլ ըզ֊վրէժ արեան սպանման Թագաւորին մերոյ՝ զոր գործե֊ցին Հոռոմք. տե՛ս գուցէ առաքեսցէ զքեզ եպիսկոպոսն

1 Նոյն Գագիկ է զորմէ յառաջն ասացաւ։

2 Վասն Ռուբենի հեղինակի Կիլիկեցւոց Թագաւորութեանն ասէ, զոր այլ պատմիչք ցուցանեն այր չափահաս և ազգական լինել Գագկայ. և տե՛ս պատմանդ. Կիւրակոսի՝ առաւելեաց ունի ցոյցս։

'ի բերդն, Ջանասիրք առնուլ զնա և ինձ խմացուցես 'ի ձեռն նշանի ինչ, զի ես սպանից զեպիսկոպոսն ։ Այս իբրև եկն եպիսկոպոսն՝ մտին 'ի ճաշել, և 'ի պակասել գինւոյն՝ ասէ եպիսկոպոսն ցսպասաւորն․ Երթ 'ի բերդ անդր, և բեր մեզ անտի գինի, զի ուրախասցուք 'ի միասին․ և գնաց այրն և ասաց զհրաման եպիսկոպոսին՝ սպասաւորի նորա․ և իբրև նա խոնարհեցաւ 'ի կարաս անդր զի հանցէ գինի, նա կալեալ զոտից նորա ընկէց զնա 'ի կարասն գլխիվայր, և խեղդեցաւ 'ի գինւոյն․ և ելեալ 'ի պարիսպն նշանակեաց տեառն իւրում, եթէ առի զբերդս․ և սա աստէն 'ի ներքոյ խեղդեաց զեպիսկոպոսն, և ինքն մտեալ 'ի բերդ անդր բռնացաւ․ և առսակաւ սակաւ աճեցոյց զկալուածս իւր, զոր բռնութեամբ և զոր պատրանօք․ մինչև տիրեցին նա և որդիքն իւր և թոռունքն աշխարհին Կիլիկեցւոց, քաղաքաց և գաւառաց ։ Սա է նախնի թագաւորին Լևոնի որ ընդարձակեաց զսահմանս իւր քաջութեամբ, զոր յիւրում տեղւոջն ասասցուք ։ — Իսկ զկնի Աշոտի կայսեր թագաւորեաց Կոստանդին, և յետ նորա Ռոմանոս ծերն, և զկնի նորա Միխայէլն, և ապա Կիւր Օջի[1], և յետ նորա Մոնամախն․ առ սովաւ առեն զերթն Գագկայ 'ի Յոյնս․ և յետ նորա Կիռ Թէոտորն, և ապա Դուկիծն, և յետ նորա Դիուժէննն ։ Յառաջին ամին սորա մեռաւ Շահնշահն Գագիկ թագաւորն Անանդայ[2], և յութերորդ ամի իշխանութեան իւրոյ՝ ել Դիուժէննն բազում զօրօք 'ի Պարսս 'ի պատերազմ, և եկն 'ի Մանազկերտ և առ զնա․ զոր լուեալ բռնաւորին Ալփասլանայ՝ եկն ընդ առաջ․ և եղև սով սաստիկ և պատերազմ․ և պարտեցաւ Դիուժէննն և ըմբռնեցաւ 'ի նմանէ․ և հարկ եդեալ 'ի վերայ եթող զնա․ իսկ ազգ նորա ոչ հնազանդեցան նմա, այլ թագաւորեցուցին զՄիքայէլ որդի Դուկիծին ։ Դարձեալ պատերազմեալ Միխայէլն՝ եհար զԴիուժէննն, և զօրացն քուրձ ագուցեալ նմա՝ ածին առ թագաւորն Միխայէլ, և 'ի ճանապարհին զաչս նորա փորեցին հրամանաւ կայսեր, և 'ի կսկծոյն մեռաւ՝ 'ի հինգ հարիւր քսան և մի թուին ։ Այս 'ի սմին ամին դատաստանք եր-

1 Օ. Կիւրղէ ։

2 Ոչ սա՝ այլ Բագրատունին էր Շահնշահ ։

կայնամտին և արդարադատին Աստուծոյ յուղեցան 'ի վերայ խորոխտ և անզգառագլուղ գազանին Ալփասլանայ. մինչդեռ մրմռայր զայրագնութեամբ տիրել տիեզերաց, և զմղձկեալ սրտին դառնութիւն թափել և յայնոսիկ՝ զոր ոչ էր ածեալ զբռամբ, յեղակարծ ժամանակի սրախողխողեալ բարձաւ ամբարիշտն յերկրէ, և ոչ ետես զփառս Աստուծոյ։ Այլ յետ նորա բարեբախտ որդի նորա՝ որ Մելիքշահն կոչիւր. սա ոչ նմանեաց չար հօր իւրոյ, այլ զբարի ածեալ զմտաւ՝ զնոյն և առաբար առ ամենայն հնազանդեալս իւր, յաւէտ առ ազգս Հայոց. զի մտահաս եղեալ բասրէր հօր իւրոյ զխմացուածս, իբր թէ հակառակ եղեալ կենաց մարդկան արեամբ և զրկմամբ խնդացեալ. իսկ ինքն իմաստաբար քաղցրավարութեամբ կարեօք հանդերձէր զամենայն։ Արդ այրն այն և խոհեմ քան զյոլովս 'ի թագաւորաց, հոգ տարեալ յամենայնի զի արդարութեամբ վարեսցի և մի ոք լիցի տրտում 'ի զրկելոյ, և հպարտ՝ 'ի գոռոզից, որ և ազատաբարոյ և մեծախորհուրդ. այլ և տեսիլ մարմնոյն արժանի թագաւորութեան։ Սա 'ի դոյզն ժամանակի զբոլորն հնազանդէր զտիեզերս, ոչ պատերազմաւ և բռնութեամբ, այլ սիրով և խաղաղութեամբ. և այսպէս բարի անուամբ կալեալ զիշխանութիւնն ամս քսան, վախճանէր 'ի կնոջէն դեղակուր եղեալ. և անպատմելի խռովութիւն լեալ զամս չորս. զի եղբայր նորա Դըրդուշն և որդի նորա Բէքիարուքն՝ զայսոսիկ մարտիւ պատերազմի՝ զբարեկյարմարութիւն աշխարհի՝ 'ի բաց կորեցին. վասն ոչ ընդ փոյթ միոյ 'ի նոցանէն տիրելոյ՝ հոսմունս արեանցն իբրև զուխից լինէր, ոչ միայն զինակիր նահատակաց, այլ և առհասարակ քաղաքաց և գաւառաց. և այսպէս բարիքն 'ի բաց վճարեցան՝ ընդ խզման կենաց թագաւորին. և ապա Բէքիարուխն սպանեալ զԴըրդուշն, և յետ նորա ըզԽզըլն, որ թարգմանի կարմիր։ Սա էառ զԼօռէ քաղաք, և զուխտն սուրբ զՍանահին և զՀաղբատ[1]։

Իսկ յետ Միքայելի կայսեր առնու զթագն Ալեքսն։ Յեօթն և տասն ամի սորա Հռոմայեցիք ելին ընդ Թրակ[2] 'ի կողմանս Սկիւթացւոց, խնդրել զքէն վրիժուց տառա-

1 Զորս և այրեաց։ 2 ՕՕ. Թիրակ։

պանաց քրիստոնէից 'ի Սկիւթացւոց և 'ի Պարսից, հանդերձ Տաճկաստանաւ. և բազումք կրեցին նեղութիւն յորդւոյն բելիարայ՝ Ալէքս կոչեցելոյ, որ էր թագաւոր 'ի Կոստանդնուպօլիս, գաղտնի և յայտնի նենգութեամբ. քանզի հրամայէ անօրէնն խառնել 'ի կերակուրն դեղ մահացու և այնպէս տալ նոցա, նոյնպէս և յըմպելիսն, որք ուտէին և մեռանէին. և 'ի ծովու ևս նենգեաց զնոսա, որ վստահանային 'ի նա իբրև 'ի հաւատակից իւրեանց. իսկ[1] բարբարոսացն խորամանկութեամբ օգնէր, որում հատուցէ տէր. քանզի և չէր իսկ քրիստոնեայ, որպէս և ոչ մայր նորա. զի բազումք մեռան 'ի Փռանկաց. և մնացեալքն ունայն դարձան յԱնտաք, և առին զնա և զԵրուսաղէմ, երկու թագաւորազունք Մայունն և Տօնղրիլն[2], և եօթն կոմսունք. և թագաւորեաց յԵրուսաղէմ Կոնտոփրի, և ապա Պաղտոյն, ամս եօթնևտասն. և Ամարի ամս հինգտասն. և այս եղև 'ի հինգ հարիւր քառասուն և վեց թուին Հայոց: Մեռաւ սկիւթացի բռնաւորն Խզըլ 'ի յառման քաղաքին Պռունայ 'ի զօրացն Պարսից. և ապա 'ի բազումս բաժանի տէրութիւն նոցա. ոմն բռնացեալ 'ի Խորասան, և ոմն Ասորեստանի, և այլ ոմն 'ի կողմն Կապադովկացւոց և Հայոց[3], և ոմն յԵգիպտոս, և այլք յայլ տեղիս. որոց անուանքն անծանօթ են մեզ:

Ի հինգ հարիւր վաթսուն և երկու թուին փոխեցաւ տէր Բարսեղ, կալեալ զաթոռն ամս երեսուն և երիս. և յաջորդէ տէր Գրիգորիս եղբայր Ներսեսի մեծաշուք պատուով. սոքա էին յազգէ սուրբ Լուսաւորչին. վասն որոյ և ընդ նստելն իսկ յաթոռն սքանչելի սուրբ հայրապետն Գրիգորիս պայծառացոյց զեկեղեցի զանազան կարգօք և օրինադրութեամբ կանոնականօք, և ամենայնիւ ջանայր ըստ իւր նախնեացն վարիլ: Սա փոխեաց զաթոռ հայրապետական 'ի բերդն որ կոչի Հռոմկլայ. քանզի իբրև տանէին Յոյնք զթագաւորն և զտէր Պետրոս առ իւրեանս, այնուհետև ոչ

1 ՕՕ. 'ի բարբարոսացն:

2 Պեմունդ և Դանգրետ կամի ասէ:

3 Վասն սուլտանաց Իկոնիոնի ասել: — Վ. 110:

եղեւ յարեւելս աթոռ հայրապետական, այլ ընդ իշխանութեամբ Յունաց, երբեմն 'ի Սեբաստիա և երբեմն 'ի Ծովք վայրն կոչեցեալ. իսկ սա փոխեաց 'ի Կլայն Հռովմէական։ Այս պատճառ փոխելոյն այս էր. զի նեղացաւ 'ի Սկիւթականաց և 'ի Տաճկաց այսր անդր ածելով, և ապա ետես զերրորդն ամուր. բարձեալ զըրբութիւնս իւր և զսպասք եկեղեցւոյ՝ տարաւ եդ անդ 'ի պահեստի առ բարեմիտ կին մի իշխանի ազգաւ Փռանկ։ Այլ եղև ընդ աւուրսն ընդ այնոսիկ վաղճանել իշխանին՝ որ էր (տէր) բերդին, և մնաց կին նորա այրի. զոր աղաչեաց սրբազան հայրապետն զկինն բարեպաշտօն՝ տալ զբերդն ցհայրապետն զի լիցի նա աթոռ հայրապետութեան Հայոց, և կինն ետ յօժարութեամբ. և յուղարկեալ սուրբն զկինն յաշխարհն Կիլիկեցւոց առ մեծ իշխանն իշխանաց Հայոց Թորոս, և նա ետ նմա գիւղս և ագարակս և զայլ կալուածս և ուրախ արար զկինն յոյժ. և ապա յուղարկեաց զնա յաշխարհն իւր։

Այս Թորոս իշխանս և եղբայրն Ստեփաննէ որդիք էին Լևոնի, որդւոյ Կոստանդեայ, որդւոյ Ռուբէնի, թոռունք յառաջագոյն ասացելոց առն, որ յազգականութենէ և 'ի զօրացն Գագկայ՝ Արծրունեաց. սոքա ընդարձակեցին զսահմանս իւրեանց քաջութեամբ տիրելով բազում քաղաքաց և գաւառաց, և այլոց բազմաց. և առին զանուանի քաղաքս աշխարհին՝ զՏարսոն, զՍիս, զԱտանա, զՍելևկիա, և որ շուրջ զնոքօք գաւառք և գիւղք և քաղաքք։ Այլ լուեալ կայսրն Յունաց որ Ալէքս կոչիւր, առաքէ 'ի վերայ Հայոց բազում զօրօք, և ըմբռնէ խաբէութեամբ զՍտեփաննէ, և ետ սպանանել։ Իսկ Թորոսի առեալ զեղբօրորդիս իւր՝ զՌուբէն և զԼևոն, եդ զնոսա 'ի բերդ մի ամուր, և ապա էառ Թորոսն զքէն վրիժու արեան եղբօրն 'ի Հոռոմոց անտի՝ որ բնակեալ էին յաշխարհին, զի զբռնացեալսն կոտորէր, և զայլսն փախստական առնէր յաշխարհէն, և ինքն տիրէր ամենայն գաւառաց մեծաւ զօրութեամբ։ Իսկ 'ի հինգ հարիւր վաթսուներկու թուականիս՝ յորում վաղճանեցաւ Նարսեղ, փոխեցաւ առ Քրիստոս մեծ և հռչակաւոր վարդապետն Գէորգ՝ որ ըստ քաղցրութեան բարուցն իսկ՝ Մեղրիկ կոչէին։

Սա կարգաւորէ զհռչակաւոր ուխտն որ կոչի Դրազարկ. անդադար լինէր 'ի պաշտօնն զցայգ և զցերեկ, և հանապազ պահօք կատարել, և առանձին ումեք ոչ ինչ լինել՝ բայց 'ի հասարակաց տանէն։ Ի սոյն ամի և արին Հռովմայեցւոց Տանզրի իշխող քաղաքին Անտիոքայ՝ վախճանէր դեղակուր լեալ 'ի պատրիարգէն իւրեանց։

Այլ առնու զկաթուղիկոսութիւն Հայոց յետ տէր Բարսեղի՝ ամն յիսուն և երեք՝ Գրիգորիս։ Նայս ըսքանչելիս Գրիգորիս ձեռն 'ի գործ արկեալ շինեաց զեկեղեցի հրաշազան զմբէթարդ 'ի նոյն բերդն[1]. և սկսաւ թարգմանութիւն առնել աստուածային գրոց, և բազում գիրս ետ թարգմանել 'ի հայ լեզու զոմս ինքեամբ, և զոմս այլոց ձեռամբ։ Յաւուրս սորա էին վարդապետք անուանիք և իմաստունք, Ներսէս սքանչելի հարազատ նորին կաթուղիկոսի, և միւս Ներսէս եպիսկոպոս[2], և Ներսէս Լամբրոնացի՝ եղբայր Հեթմոյ, որ թարգմանեաց զմեկնութիւն տեսլեան Յովհաննու աւետարանչի, և զպատմութիւն Գրիգորի պապուն Հռովմայ, և զօրինադրութիւն սրբոյն Բենետիքտոսի. արար և մեկնութիւնս յինքենէ սաղմոսացն Դաւթի, առակացն Սողոմոնի, և սուրբ պատարագամատուցին, և աղօթիցն Յովհաննու աւետարանչին, որոյ սկիզբն է այս, Որ ընդ եղբարս։ Շինեաց եկեղեցիս հրաշազան 'ի վանքն որ կոչի Սկևռա, հուպ 'ի բերդն անառ Լամբրօն. և կարգեաց զպաշտօն վանիցն ըստ օրինակի այլոց ազգաց՝ սարկաւագաւ և դպրաւ և անծածկոյթ գլխաւ, զոր յոլովք դսրովեն 'ի Հայոց։ Այլ միւս ևս եպիսկոպոս անուն Իգնատիոս, որում հրամայեաց կաթուղիկոսն մեկնութիւն առնել աւետարանին Ղուկասու, և նա ոչ առ յանձն. մինչև տեսանէր 'ի տեսլեան տուն մի լուսաւոր զարդարեալ ամենայն վայելչութեամբ, և զամենայն վարդապետս եկեղեցւոյ անդ խրախացեալս. կամեցաւ և ինքն մտանել 'ի ներքս, արգելուին զնա և ասէին, եթէ Վասն զի ոչ աշխատեցար 'ի մեկնել զաւետարանն՝ ոչ մտցես այսր. և զարթուցեալ սկսաւ մեկնել խորհրդական և մտաւոր բա-

1 Իմա՛ 'ի Հռոմկլայ։ Ներսէս եպիսկոպոս, և թուի սը-
2 Անծանօթ է երկրորդս այս խալ կրկնեալ։

նիւ։ Եւ այլ ոմն վարդապետ Սարգիս անուն սքան-
չելի 'ի վանքն՝ որ կոչի ասորերէն Նարաշիթաւ, արար
մեկնութիւնս եօթանեցունց թղթոց կաթուղիկէից,
նախերգանօք և յորդորակօք և ընդարձակ և առատ
ճառիւք։ Եւ միւս ևս եպիսկոպոս Յովսէփ անուն, այր
երևելի 'ի կողմանս Անտիոքու։ Իսկ յարևելս արք ա-
նուանիք և գիտնականք լուսաւորիչք եկեղեցւոյ՝ յա-
ւուրս Դիոսկորոսի, այր մտաւոր և հանճարեղ, գիտող
տոմարական արհեստից և աստուածայնոց գրոց մեկնող՝
Անանիա վարդապետ. սորա ասեն 'ի մի հաւաքեալ 'ի
մեկնութիւնն առաքելոյ զբանսն Եփրեմի և Յովհան-
նու Ոսկեբերանի, և Կիւրղի և այլ սրբոցն, արարեալ
համառօտ վասն դիւրահասութեան ընթերցողաց. ա-
րար խորհրդական և մտաւոր տեսութիւն և համեմա-
տութիւն աւետարանացն օրինակս, գրեաց և լուսաւոր
իմացուածս վասն խորհրդական սրբասացութեանս՝ որ
յեկեղեցիս ուղղափառաց խաչեցարիւ ասի, և զներբո-
ղեան շողակաթին։ Սոյնպէս և մեծիմաստն գիտու-
թեամբ քան զյոլովս և հանճարեղն ամենայնի, մտա-
հարուստն Յովհաննէս՝ Սարկաւագն կոչեցեալ 'ի Հաղ-
բատ. սա բազում ինչ աշխատասիրեաց 'ի գիրս՝ յիշա-
տակ բարի թողեալ. սա զբազմաց փափաքելին և ոչ
ձեռնհաս՝ զհաստատ և զանշարժ տոմարն կարգեաց
Հայոց, փոխանակ շարժականին և անհաստատնոյն. ա-
րար և զմիաբանութիւն ամենայն ազգաց տումարին
ընդ Հայոց. վասն զի յոյժ իմաստուն էր այրն, և աս-
տուածային շնորհօք զարդարեալ. սորա բանքն ամենայն
իմաստասիրական ոճով են՝ որպէս զԳրիգորի Աստուա-
ծաբանի և ոչ գեղջուկ։ Սա գրեաց ճառս ներբողա-
կանս 'ի մեծավօր արքայն Հայոց Տրդատ, և 'ի սուրբ
հայրապետն Ներսէս, և 'ի սքանչելին Սահակ և Մես-
րոպ. արար և շարականս Ղևոնդեանց քաղցր եղանա-
կաւ և յարմար բանիւ, որոց սկիզբն է այս. Պայծառա-
ցան այսօր սուրբ եկեղեցիք։ Գրեաց և ճառս ներբո-
ղականս նոցունց. գրեաց սա և գիրս աղօթից. գրեաց
և օրինակս ստոյգ գրոց։ Եւ կարի յոյժ սիրէր զսա թա-
գաւորն Վրաց Դաւիթ, հայրն Դեմետրեայ, պապն
Գէորգայ և Դաւթի. այնքան զի մինչ լսէր զգալուստ
նորա՝ յոտն յառնէր և ելանէր ընդ առաջ նորա և խո-

նարհեցուցեալ զգլուխն խնդրէր 'ի նմանէ օրհնութիւն. և նա եդեալ զձեռն 'ի վերայ գլխոյ նորա զայս սաղմոս ասէր. «Գտի զԴաւիթ ծառայ իմ, իւղով սրբով օծի զնա. ձեռն իմ ընկալցի զնա և բազուկ իմ զօրացուսցէ։ Մի՛ մեղիցէ նմա թշնամի և որդի անօրէնութեան մի՛ չարչարեսցէ զնա»։ Եւ 'ի պատճառս սորա սիրէր թագաւորն զազգս Հայոց։ Դէպ եղև սմա վասն անառակ գնացիցն որոշել զոմն 'ի խորհրդական պատարագէն Օմզոմա անուն. և նա փոխանակ զղջանալոյ և ապաշխարելոյ՝ խորհէր սպանանել զքանչելին. և օր մի պատահեալ նմա մինչդեռ գայր նա յայրէ անտի՝ որ 'ի ներքոյ կայ վանիցն՝ հայելով 'ի վերայ գետոյն, ըմբռնեալ անամօթն ընկէց յերկիր և հարաւ 'ի վերայ նորա։ Իսկ սուրբն զի իմաստուն էր, ասէ ցնա. Որդեակ Ստեփաննոս, մի՛ սպանաներ զիս. և ասէ ցնա յանդուգն. Մինչև ցայժմ Օմզոմա էի, իսկ այժմ փոխանակ միոյ Նոյի բազումն յաւելուս Ստեփաննոս. քանզի աւելի անուն նորա Օմզոմա էր. դու ընդէ՞ր սպանէր զիս, զի հաներ յեկեղեցւոյն։ Ասէ ցնա իմաստասէրն. Եւ դարձեալ մուծից զքեզ յեկեղեցի։ Եւ եկեալ 'ի վանս ասէ ցեղբարսն. Զոր ինչ ասէին զեղբօրէս զայսմանէ կարծեմ թէ սուտ է. ահաւասիկ մուծանեմ զսա յեկեղեցի։ Եւ հրամայեաց եկեղեցպանին առնել զնա աւագ երէց. բազում քրթմնջիւն էր վասն այնորիկ, որպէս թէ անարժան էր. և նա կաշառս էառ և եմոյծ զնա յեկեղեցին։ Իբրև եհաս ժամ խորհրդական պատարագին, ել թշուառականն 'ի բեմն անդր զի մատուսցէ պատարագ. և եկն վարդապետն 'ի գաւիթ անդր 'ի մէջ ատենին հանդէպ սրբոյ սեղանոյն, եբաց զգլուխն իւր և սկսաւ աղօթել. և վաղվաղակի ոգի չար եմուտ յայրն աներկիւղ, և ընկէց զնա 'ի բեմէ անտի յատակս տաճարին, և սկսաւ լլկել զնա յոյժ. և հանին զնա արտաքս 'ի տաճարէ անտի, որպէս զՈզիա. և երկիւղ մեծ անկաւ 'ի վերայ տեսողացն։ Եւ այսպիսի բարի քաղաքավարութեամբ կեցեալ յաշխարհի, փոխեցաւ 'ի Քրիստոս աշխատասէրն 'ի Հաղբատ։ Եւ թաղեցին զնա յարևելից կուսէ եկեղեցւոյն մեծի առ դուռն փոքրագոյն եկեղեցւոյն, զոր յետոյ քակեաց եպիսկոպոսն Համազասպ և շինեաց հրաշալի շինուած,

ուր զանկական կախէին, յարմարեալ 'ի նմին և եկեղե-ցիս. և եղև վաղճան սորցին 'ի հինգ հարիւր եօթանա-սուն և ութ թուականին։ Իսկ զկնի ամի միոյ վաղճանե-ցաւ սուրբ լուսաւորիչն Դաւիթ վարդապետ Ալաւկայ որդի, որ գրեաց զկանոնական օրինադրութիւնս գե-ղեցկայարմար և պիտանացու 'ի խնդիրս քահանայի միոջ՝ որում անուն էր Արքայութիւն, 'ի քաղաքէն Գանձա-կայ։ Իսկ միւս ևս սքանչելի վարդապետն՝ զոր Թոռա-կերի որդի կոչէին՝ Գրիգոր անուն. սոքա երեքին յաշ-խարհէն Գանձակայ էին, ուստի և ես։ Դէպ եղև զի յաւուր միում նստէին երեք այս արքս սքանչելի. եկն անդ այր մի շինական, և ասէ ցնոսա. Նշանն որ գիտէ 'ի ձեռնջ թէ որդ իմաստնագոյն իցէ. զայս իբրև ծաղրա-կան ասաց։ Պատասխանի ետ Թոռակերի որդին, և ա-սէ. Ես ասեմ քեզ. մինչդեռ էաք 'ի մերում աշխար-հին՝ ես կտրող էի և կարօղ. իսկ Մարկաւագս կարել միայն գիտէր. իսկ այժմ սա կտրէ և կարէ, և թագում նկարս յաւելու 'ի վերայ. զայս առակաբար վասն յի-մարութեան[1] նորա ասաց։ Զի այնպէս փոյթ էր այրն յուսումն, մինչ պատահեաց յաւուր միում գնալ յայրն յորում էին գրեանքն, և այլք ընդ նմա. իբրև ելին որ ընդ նմա էին և փակեցին զդուռն, նա թաքոյց զանձն 'ի ներքս. այսպէս գիտելով նոցա՝ եթէ նախ ել նա։ Իբրև անցին թագում աւուրք 'ի վերայ՝ դարձեալ գնա-ցին յայրն 'ի պէտս ինչ, և տեսին զնա անդ և սքանչա-ցան, և հարցանէին թէ՝ Որպէս ապրեցար առանց կե-րակրոյ և ըմպելոյ. և նա եցոյց նոցա զգրեանն զոր ըն-թերցեալ էր, և ասէ. Այդ է իմ կերակուր և ըմ-պելի, զոր կերայ և արբի զաւուրս զայսոսիկ։

Իսկ 'ի հինգ հարիւր ութսուն և ութ թուին եղև շարժ սաստիկ և կործանեցաւ քաղաքն Գանձակ, և տապալեցան շինուածքն որ 'ի նմա 'ի վերայ բնակչաց իւրոց. և եկն թագաւորն Վրաց Դեմետրէ՝ հայրն Դաւթի և Գէորգեայ, և տարաւ զդրունսն յաշխարհն իւր։ Փլաւ և լեառն Ալհարակ 'ի շարժմանէն, և ար-գել զձորակն որ անցանէր ընդ մէջ նորա, և եղև ծո-

1 Իմա՛ վասն միամտութեանն շինականին, իսկ տպագիրն Մոսկուայ դնէ Իմաստութեան՝ 'ի Մարկաւագ ձգելով զբանն։

վանկ, որ է մինչև ցայսօր, և լինին 'ի նմա ձկունք ազնիւք։

Իսկ սքանչելի հայրապետն Գրիգորիս օր ըստ օրէ յաւելոյր 'ի բարեգործութիւն և 'ի պայծառութիւն եկեղեցւոյ. և էր սիրեցեալ նա յամենայն ազգաց. և եղև նմա գնալ 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, զի երկրպագեսցէ սուրբ տեղեացն տնօրինականաց. և իբրև եհաս նա 'ի քաղաքն Անտիոք՝ ել ամենայն քաղաքն ընդ առաջ նորա ջահիւք և լապտերօք, և մեծաւ պատուով տարեալ նստուցին զնա յաթոռն Պետրոսի առաքելոյն[1]։ Եւ իբրև եհաս նա յԵրուսաղէմ, ազգն Փռանկաց՝ որ իշխէին քաղաքին և պատրիարգն նոցա առաւել սէր հաստատեցին ընդ ազգիս մերոյ վասն նորա. զի էր նա բարի տեսլեամբ և գիտութեամբ սուրբ գրոց զարդարեալ. զհին դաշինս սրբոյն Գրիգորի և Տրդատայ և Կոստանդիանոսի կայսեր և Սեղբեստրոսի վերստին նորոգեցին առ սովաւ։ Եւ այսպէս քաղաքավարութեամբ կեցեալ փոխեցաւ առ Քրիստոս լի աւուրբք և կատարեալ առաքինութեամբ. և փոխանորդէ զաթոռ նորա եղբայր նորին Ներսէս, զեօթն ամ։ Այս Ներսէս առաւելեալ էր իմաստութեամբ քան զյոլովս 'ի ժամանակի անդ. ոչ միայն քան զՀայոց վարդապետս, այլ քան զՅունաց և զԱսորւոցն. այնքան մինչ զի համբաւ իմաստութեան նորա տարածեցաւ ընդ ամենայն ազգս. և իմաստասէր ոմն Կոստանդնուպօլսու՝ անուն Թորոս[2], լուեալ զհամբաւ նորա բարձեալ զգրեանսն իւր 'ի վերայ գրաստուց, եկն փորձել զնա և լսել զիմաստութիւնն նորա. և եկեալ աւուրս բազումս խօսեցաւ ընդ նմա և եգիտ զնա անփորձ ամենայնիւ, այլ և լցեալ Հոգւով սրբով։ Իբրև գնաց նա 'ի քաղաքն Կոստանդնուպօլիս, հարցանէին զնա թէ որպէս էր համբաւն՝ նոյնպէ՞ս է թէ ոչ. և նա ասէր. Որպէս լուաք սոյնպէս և տեսաք. զի նոր ոմն Գրիգոր աստուածաբան յարուցեալ է. և զարմացուցանէր զամենեսեան վասն նորա։ Եւ զի էր նա այր բանաւոր, նա՛ բազում ինչ կարգեաց յեկեղեցիս քաղցր եղանակաւ,

1 Յաթոռն եպիսկոպոսական՝ Պետրոսի։
զոր հաստատեալ էր անդ նախ

2 Այն է Թէոդորիանոս։

խորովային ոճով շարականս, մեղեդիս, տաղս և ուսանաւորս. քանզի նորա է յարութեան օրհնութիւնն՝ երրորդ կողմն, և Աստուածածնին փոխման երկու աւուրցն, և Պօղոսի Պետրոսի օրհնութիւն և մանկունքն և համբարձին, և Որդւոցն որոտմանցն օրհնութիւն՝ Որ էնն յէութեան որդին, և Անտոնի շարական, և երկու Թէոդոսի, և մի քառասնիցն, և մի առաքելոցն, և աւագ շաբաթուն օրհնութիւն երկուշաբաթուն, երեքշաբաթուն և չորեքշաբաթին, և երկու շարական յարութեան ճաշոյն, և Նինուէացւոց, և հրեշտակապետացն, և սրբոցն Վարդանանցն, և այլ բազում շարականս: Արար սա զքարոզ սուրբ պատարագին քաղցր եղանակաւ, և տունս շարականաց նմին խորհրդաբար, և երկու գանձս ըստ գրոց անուան իւրոյ, մի Վարդավառին և մի Փոխման Աստուածածնին, որպէս Նարեկացին զՀոգւոյն գալստեան և զեկեղեցւոյ և զսուրբ Խաչին. որ գրեաց գիրս աղօթից յոգնազան բառիւք և իմաստասիրական ոճով. և զներբողական սուրբ Յակոբայ Մծբնայ, և զառաքելոց: Նոյնպէս և սա կարգեաց զհամառօտն Մատթէոսի աւետարանին լուսաւոր և առատ մտօք, մինչև յայն տեղին որ ասաց տէրն. Մի համարիք եթէ եկի լուծանել զօրէնս. և այլն ոչ գիտեմ թէ վասն ինչ պատճառի խափան եղև: Գրեաց նա և ճառս հրեշտակապետաց ըստ ոճոյն Դիոնիսեայ Արիսպագացւոյ. Թարգմանեաց և բազում ճառս վկայից Աստուծոյ: Նա այսպէս բարիոք կարգաւորութեամբ փոխեցաւ առ Քրիստոս յոյսն ամենեցուն ցանկալի և երանելի մահուամբ: Զի այնպիսի էին կամք սրբոյն. զի թէ հնար իցէ՝ ոչ ոք խօսիցի խօսս աշխարհականս՝ բայց ՚ի գրոց, ոչ ՚ի գինարբուս, ոչ յայլ ուրախութիւնս. վասն այնորիկ և արար նա երգս և ուսոյց այնոցիկ որ պահէին զբերդն, զի փոխանակ վայրապար ձայնից զայն ասասցեն. որոյ սկիզբն է սաղմոսն Դաւթի, "Յիշեցի ՚ի գիշերի զանուն քո տէր". և այսպէս խորհրդաբար ըստ կարգի. Զարթիք փառք իմ. որ այժմ ասի յեկեղեցի ՚ի ժամ գիշերային պաշտաման: Կոչեցաւ երբեմն ՚ի մեծէն Ալէքսէ՝ որ էր փեսայ ինքնակալ թագաւորին Հոռոմոց Մանուիլին, և եկեալ էր ՚ի Մամեստիա քաղաք Կիլիկեցւոց, և հարցեալ ցնա բանս խո-

րինս և գծուարիմացս գրոց, և յամենայնի կատարեալ եւտես զնա, և մեծարեաց յոյժ: Դարձեալ գրեաց առ նա գրով տալ նմա զխոստովանութիւն Հայոց, և ըզխորհուրդս տօնից և զառաջաւոր պահոց, և զխորհուրդ մի բնութեանն՝ զոր ասեմք 'ի Յիսուս Քրիստոս յետ միաւորութեանն, և այլ կարգաց եկեղեցւոյ՝ որ ոչ է միաբան այլոց ազգաց: իսկ (նա) համառօտ և յայտնի բանիւք ետ նմա զխնդրելին, զոր ասէ եկեղեցի Հայաստանեայց ուղղափառութեամբ* . . . . : Զայս իբրև ընթերցան, գովեցին զհաւատս Հայոց ամենայն իմաստունքն Յունաց. և զի յամենայնի համձարեղ էր Ներսէս, արար և առակս խորհրդաբարս 'ի գրոց և հանելուկս, զի փոխանակ առասպելեաց զայն ասասցեն 'ի գինարբուս և 'ի հարսանիս. և էր ինքն հեզ ամենայնիւ և պարկեշտ, արժանաւոր այրն Աստուծոյ: Իսկ յետ նորա յաջորդէ զաթոռն՝ Գրիգոր ամս քսան: Սա շինեաց զգեղապաճոյճ եկեղեցին 'ի Սկայն, և զարդարեաց զնա մեծապէս: Իսկ ապա Գրիգորիս տղայն մի ամ, քուերորդի նոցունց. և էր նա հասակաւ գեղեցիկ և բարիոք տեսանելով. բայց զի մախողք բազում էին նորա՝ արկանէին բարուրս ինչ 'ի վերայ նորա եպիսկոպոսունքն նախանձոտ, և մատնեցին զնա ստութեամբ Լեւոնի Թագաւորի, և նա հրամայեաց արգելուլ զնա 'ի բերդ մի, մինչև քննութիւն լիցի ճշմարտութեամբ վասն նորա, և ինքն գրեաց Թուղթս առ վարդապետս և եպիսկոպոսունս Հայոց աշխարհին, եթէ զինչ կամք իցեն նոցա վասն այսր. և մինչև պատասխանի ընկալեալ՝ վաղճանեցաւ կաթողիկոսն այսպիսի մահուամբ. յաւուր միում տեսին զնա անկեալ ընդ պարիսպ բերդին ունելով կտաւ զմիջաւ իւրով. և զայս ոմանք ասէին եթէ մախողք նորա ընկեցին զնա, որք ակն ու-

* Քանզի բազում անգամ տպագրութեամբ հրատարակեալ է՝ և ծանօթ է՝ զանց առնեմք աստանօր զգրով դաւանութեանս, որ և արտաքոյ կարգի պատմութեանն. և ունի վերնագիր զայս.

Գիր հաւատոյ դաւանութեան Հայաստանեայց եկեղեցւոյ. Գրեալ 'ի Ներսէսէ եպիսկոպոսէ, յեղբօրէ կաթողիկոսին Հայոց Գրիգորի. 'ի խնդրոյ Գերապատիւ փիլոսոփին Կոմնենոսի Թագաւորին Հոռոմոց Մեծի Պրոտոսեբաստոսին Ալեքսի, յորժամ էր յորդորեալ և էր 'ի Մամեստիա մայրաքաղաքին Կիլիկեցւոց, անդանօր հետեւելով, և նմին կամաւ էր եւ նորին կաթողիկոսի. 'ի Թուին ՈԺԴ:

Բանիւք դաւանելի ինչ խօսելով. և այլն:

նէին ժառանգել զաթոռն, յորոց զմինն ասէին զՅովհաննէս, որ յետ նորա կալաւ զաթոռն, և զԱնանի՝ որ եղև հակառակաթոռ 'ի Սևաստ՝ յիշխանութեանն սուլտանին Հոռոմոց, և այլք յեպիսկոպոսաց անտի վեց. և կէսք ասէին եթէ 'ի գիշերի կամեցաւ փախչել 'ի բերդէն, և հնարեցաւ իջանել կտաւով, և կտրեալ կտաւոյն անկաւ և մեռաւ. զոր զճշմարիտն միայն ծածկագէտն Աստուած գիտէ։ Եւ ապա տէր Գրիգոր Ապիրատն՝ եօթն ամ։ Եւ այնուհետև սկսան մախողքն Գրիգորիսի զմիմեամբք ելանել, թէ ո՞ նստցի յաթոռ հայրապետական. և Յովհաննէսն զի ընտանի էր թագաւորին Լևոնի՝ բռնացաւ և կալաւ։ Իբրև ետես զայս միւս եպիսկոպոսն Անանիա, չոգաւ նա առ սուլտանն՝ զոր Հոռոմոց կոչեն, ետ նմա կաշառ և նստաւ կաթողիկոս 'ի Սևաստ, զի ասէր զինքն յազգէն կաթուղիկոսին Պետրոսի, որ կայ թաղեալ անդր։ Եւ այսպէս բաժանեցաւ աթոռ սրբոյն Գրիգորի յերիս. մի՝ բունն՝ զոր էառն Յովհաննէս, որ էր 'ի Հռոմկլայն, և միւսն 'ի Սևաստ, զոր ապստամբեցաւ Անանիա, և միւսն ևս 'ի կղզւոջն Աղթամարայ Դաւիթ անուն։

Իսկ յետ Ալեքսի կայսեր թագաւորէ Կալօժանն, և յետ նորա Մանուէլն։ Արդ 'ի հինգ հարիւրերորդի և իննսունևութերորդի թուականութեանս Հայոց՝ ազգն Հռովմայեցւոցն զօրաժողով լեալ բիւրք բիւրուց, դիմեցին յայսկոյս Ովկիանոսի ընդ Թիրակ, ըստ առաջին անցիցն զոր նշանակեցաք 'ի հինգ հարիւր քառասուննևվեց թուականին, և մոռացան զանհնարին նեղութիւնս զոր եցոյց որդին բեղհայրայ Ալեքս՝ անդանոր այնոցիկ, որք ոչ իմացան զխարդախ խաբէութիւն նորա, համարելով զնա հաւատակից և պաշտօնեայ Քրիստոսի. վասն այնորիկ և սոքա աստանօր զի չյիշեցին զանցս աղէտիցն՝ ինքեանք առաւել խաբեալք և պատրեալք 'ի նորին թոռնէն, որոյ անունն ըստ նեռինն դեռաքրիստոս կոչի, սոյնպէս և սորայս տարորոշ և հեռի ամենայնիւ 'ի գործս և 'ի կրօնս Էմմանուէլի, Մանիլ անուն որ դրժեաց զՀռովմայեցիսն մահարար կերակրօք և ըմպելեօք[1]։ Բայց յաւուրս հաւուն սորա

1 Խիստ են բանքդ և դատաստանք։

Ալեքսի կոմս ոմն եկն յԵրուսաղէմ յԱնտիոք, և իբրև եմուտ 'ի տաճարն սրբոյն Պետրոսի առաքելոյ և հաղորդ եղև պաշտմանն, երևեցաւ նմա սուրբ առաքեալն Պետրոս և ասէ. Ի պատուհանին եկեղեցւոյդ թաղեալ կայ գեղարդն՝ որով խոցեցին զՓրկիչն մեր, առեալ տարցես յաշխարհն քո. և նորա առեալ խնդութեամբ եկն 'ի Կոստանդինուպօլիս. և լուեալ Ալեքսի կայսեր՝ մեծարանս արար նմա, և ետ նմա գանձս բազումս, և խնդրեաց 'ի նմանէ զգեղարդն, և եթող առ նմա կոմսն, և գնաց զճանապարհս իւր։

Իսկ 'ի վեցհարիւր երեսուն և վեց թուին յարեաւ բռնակալ ոմն Թուրք ազգաւ Սալահատին անուն, 'ի Մասեացն-յոտնէ[1], ծառայ լեալ սուլտանին Մերտինայ։ Սա զօրս կազմեալ բազում յոյժ, չոգաւ 'ի վերայ քաղաքին Երուսաղեմի, և էր թագաւորն Երուսաղեմի Փռանկ ազգաւ ընդդէմ նորա զօրու ծանու, և նենգ գործեցին նմա զօրքն իւր ծովեզերեայ. զի տէրն Տրապօլու բարեկամ լեալ ընդ թշնամիսն՝ մատնէ զնա 'ի ձեռս նորա, այսպիսի յեղանակաւ։ Էր տօթ յոյժ ժամանակն, և տեղին անջրդի. և խորհրդակից լեալ կոմսին ընդ թագաւորին՝ առնուլ իւրեանց կայանս զապառաժն անջրդի. իսկ թշնամիքն կալան զեզրն Յորդանանու. իբրև խմբեցաւ պատերազմն միջօրէին, երիվարք զօրուն քրիստոնէից, քանզի պապաքեալք էին 'ի ծարաւոյ՝ իբրև տեսին զջուրն, քարշեալ զհեծեալսն ընկեցին 'ի ծովն 'ի մէջ թշնամեաց, և նոցա սուր եդեալ յանխնայ կոտորեցին։ Իսկ թագաւորն Երուսաղեմի զի այր քաջ էր, զբազումս կոտորեաց 'ի թշնամեացն անձամբ իւրով. իբրև ետես եթէ անհնար է զերծանել նմա, զի սպանին և զերիվար նորա՝ կամաւ ետ զինքն 'ի ձեռս նոցա. և նոքա երդումն պահանջեալ 'ի նմանէ զի մի այլ սուր հանցէ նոցա, թողին զնա. և գնաց յաշխարհն իւր. և նոքեանք չոգան 'ի վերայ Երուսաղեմի և առին զնա և որ շուրջ զնովաւ քաղաքք. կոտորեցին զամենեսեան, և խաւարեցաւ արեգակն զչորով ժամս։ Նաև տիրեցին Սալահատնեանք Պաղեստինի և Եգիպտոսի և Միջագետաց. և մեծ մասին աշխարհիս Հայ-

1 Ըստ կարծելոյ ոմանց 'ի մերայոց։

ոց, ինքեանք և թոռունք իւրեանց, որ կոչին Ադլեանք, յորոց էին Մէլիք Քէլմ, և Մէլիք Աշրաֆն[1], և այլ սուլտանք, որ տիրեցին բազում աշխարհաց:

Իսկ Կիւրիկէ Բագրատունի որ 'ի Լօռէ քաղաքէ, զամենայն ժամանակս իւր կացեալ ընդդէմ Վրաց՝ 'ի հաստատութեան պահէր զհայրենիս իւր. և յետ մահուան նորա զաւեալք 'ի Վրաց որդիք նորա՝ ելեալ 'ի տանէ հայրենեաց գնացին 'ի Պարսիկս, Դաւիթ և Աբաս. և առնուն 'ի նոցանէ 'ի ժառանգութիւն զՏաւուշ և զՄածնաբերդ և զայլ տեղիս. և ապա յետ աւուրց առնուն դարձեալ Պարսիկք 'ի նոցանէ զՏաւուշ. և նոքա բնակեն 'ի Մածնաբերդ, և փոխին մահուամբ յաշխարհէ: Եւ յաջորդէ զտեղի հօրն՝ Դաւթի՝ որդի նորա Կիւրիկէ, այր բարեբարոյ և կատարեալ 'ի գործս առաքինութեան քան զհարս իւր. և բարիոք փոխեալ յաշխարհէս թողու ժառանգակալ զորդին իւր զմանուկն Աբաս երկոտասանամեայ. սա առնու իւր կին զդուստրն Սարգսի բարեպաշտ իշխանի, որդւոյ Զաքարիայի, որդւոյ Վահրամայ, զքոյր մեծամեծ իշխանաց՝ Զաքարէ և Իւանէի՝ Նանա անուն. սոցա գործքն յոլովք են, զոր իւրում տեղւոջն ասասցուք: Եւ կեցեալ Աբաս ամս երկուս ընդ ամուսնոյն իւրոյ, վախճանի ինն և տասնամեայ. սորա զաւակ ոչ եղև: Իբրև ետես քոյր նորա Բուրինեա անուն՝ եթէ բնաջինջ լինին յազգէն, անհնարին սգով վարանէր. և ապա ասացին նմա. Ի կին մի որ ունի մանուկ մի ստնդիայ յեղբօրէն քումմէ. ապա զուարթացեալ կնոջն առնու զորդայն և սնուցանէ, և անուանեաց զանուն նորա Աղսարթան, որ եղև ժառանգակալ Մածնաբերդին, այր աստուածապաշտ և քահանայասէր: Սա որ եհաս յաւուրս մեր. սորա 'ի ծերութեան ցաւեցին ոտք. ընդ սա խաբէութեամբ վարեցաւ Դաւիթ իշխան Նոր-բերդին. զի էր և նա յազգէն Բագրատունեաց, հայրն Վասակայ իշխանին, որ չինեաց զեկեղեցին հրաշազան 'ի վանքն որ Անապատն կոչի հուպ 'ի Նոր-բերդն, առաջնորդութեամբ և ձեռնտուութեամբ արքեպիսկո-

1 Մալէք էլ-Քամէլ, որ տիրէր Աշրաֆ, 1250–1254. բայց են և յամս 1218–1238. Մալէք էլ- այլք միջակարգեալք տոցին:

պոսին Յովհաննիսի Տուեցւոյ [1], քաղաքին Շամքորոյ և Գարդմանայ, և Աղդէվանիցն և Տէրունականին և Տաւշոյ և այլ կողմանց։ Յիշխանութեանն Սահրամ իշխանին եղև աւարտումն եկեղեցւոյն, որ օծաւ և կընքեցաւ յանուն սրբոյ Աստուածածնին։

Ի վեց հարիւր ութսունևինն թուին Հայոց մեռաւ այր սուրբ և առաքինի եպիսկոպոսն Յովհաննէս [2], որ յոլով քառասունս անսուաղութեամբ անցուցանէր։ Իսկ Գուրիթ իշխանն Նոր-բերդին խաբեաց զմանուկն Աղսարթան և փեսայացոյց զնա 'ի դուստրն իւր, և ինքն տիրեաց Մածնաբերդոյ. և ապա եհան զդուստրն 'ի նմանէ։ Իսկ Աղսարթանայ իւր արարեալ զբնակիչս բերդին, և յանկարծակի յեղակարծ ժամու ըմբռնեալ զԳուրիթ ամենայն ընտանեօք՝ հանին արտաքս 'ի բերդէն, և ետուն զբերդն յԱղսարթան. և նա յետ ժամանակաց 'ի կենդանութեան իւրում ետ զիշխանութիւնն յորդին իւր Կիւրիկէ, և ինքն կրօնաւորեցաւ 'ի վանքն որ կոչի Գետակիցք. և Կիւրիկէի եղեն որդիք, և անուանք նոցա միում՝ [3] Փալհաւան, և միւսոյն՝ Թաղիաթին, և երրորդին՝ Աղսարթան։

1 ՕՕ. Ուէցւոյ կամ Օշնէցւոյ։
2 Վերոյիշեալ Տուեցին։
3 Ա. Գ. Փոյ փոխանակ։

# Ա.

## ՎԱՍՆ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԼԵՒՈՆԻ՝ ՈՐ Ի ԿՈՂՄԱՆՍ ԱՐԵՒՄՏԻՑ, ԹԷ ՈՐՊԷՍ ՑԱՌԱՋԵԱՑ ԵՒ ԲՌՆԱՑԱՒ ՑՈՅԺ

Մինչև ցայս վայր էր պատմութիւնս երկօք աշխատութեամբ հաւաքեալ 'ի նախագրելոց. իսկ որ առաջի կայս մեզ ասպարէզ պատմութեանս՝ է որ ականջալուր, և է որ ականատես:

Քանզի իբրև մեռաւ մեծ իշխանն Թորոս, որդին Լևոնի, որդւոյն Կոստանդեայ, որդւոյ Թագաւորազինն Ռուբենայ յաշխարհին Կիլիկեցւոց, եառ զիշխանութիւն նորա Ռուբէն անուն՝ որդի Ստեփանեայ, զոր սպան Անդրոնիկոս նենգիւ զօրավարն Հոռոմոց. և յետ սակաւ ժամանակաց վախճանեցաւ և նա. և եառ զիշխանութիւնն[1] այր քաջ և պատերազմող՝ անուն նորա Լեւոն:

Սա ընդ տիրելն՝ իսկ և իսկ ընդարձակեաց զսահմանս տէրութեան իւրոյ. զի ետ պատերազմ ընդ շրջակայ ազգսն, և յաղթեաց քաջութեամբ ըստ անուանն առիւծաբար, զի Լևոնն առիւծ կոչի: Իբրև տեսին զաջողութիւն նորա թագաւորքն Թուրքաց և Տաճկաց՝ որ սուլտանքն անուանին, ժողովեցաւ 'ի վերայ նորա սուլտանն՝ որ իշխէր Հալպայ և Դամասկոսի անթիւ զօրու և զինու. և լուեալ Լևոնի իշխանաց իշխանի զդիմումն 'ի վերայ նորա այլազգւոյն, աճապարեալ զզօրս իւր և յանկարծակի եհաս 'ի վերայ նոցա իբրև զար-

1 Թուի պակասել Եղբայր նորա :

ծիւ սլացմամբ յերամս հաւուց, և եհար զնոսա 'ի հարուածս մեծամեծս, և սուլտանն փախստական լեալ մազապուր զերծաւ 'ի նմանէ, այն որ խրոխտանօք գայր 'ի վերայ նորա: Իսկ Լեւոն հարկս եդեալ 'ի վերայ նորա ծառայեցուցանէր զնա. և զայն գործ քաջութեան նորա տեսեալ շուրջակայ ազգացն Տաճկաց, գողային 'ի նմանէ, և հարկէին 'ի նմանէ. և այնպէս բռնացաւ 'ի վերայ ամենեցուն: Իսկ իբրև ետես եթէ յաջողեցաւ նմա տէրութիւնն առաւել քան զնախնիսն իւր, խորհեցաւ այնուհետև ընդ իշխանսն իւր և ընդ մեծամեծս թագաւորել, և առաքեաց 'ի տիեզերահռչակ քաղաքն Հռովմայեցւոց առ ինքնակալ կայսրն[1], և առ պապն, զի տացէ նմա հրաման և թագ թագաւորական. զի ոչ կամեցաւ նա այլում հնազանդել վասն թագի՝ բայց թէ ազգին Փռանկաց. միանգամայն և պարծանս իւր վարկաւ զսուրբ առաքեալս Պետրոս և Պօղոս, որ կան 'ի Հռոմ քաղաքն, որպէս թէ 'ի նոցունց առեալ զօրհնութիւն պսակին: Իսկ առաքեն նմա կայսրն և պապն Հռովմայեցւոց թագ ազնիւ, զառաջին թագաւորացն[2], և արծուէս մի պատուաւոր՝ այսինքն արքեպիսկոպոս մի, դնել զթագն 'ի գլուխ նորա. երիս իրս պահանջել 'ի նմանէ, տօնել զտօն տեառն և ամենայն սրբոց յորում աւուր և հանդիպի, և միշտ յեկեղեցւոջն կատարել զաղօթս տունջեան և գիշերոյ, զոր 'ի վաղուց հետէ ոչ առնէին Հայք 'ի հինահարութեանցն Իսմայէլի, բայց միայն 'ի ժամ խորհրդածութեան պատարագին. և ոչ լուծանել զՃրագալոյցն Ծննդեան և զՅարութեան, բայց միայն ձկամբք և ձիթով. և յորժամ զայդ առնիցէք, ասէ, ոչ ինչ փոյթ առնիցէք տրոց և ընծայիցն կայսերն և պապին վասն թագիդ. ապա թէ ոչ առնիցէք՝ հրաման ունիմ, ասէ, այնչափ գանձս առնուլ 'ի ձէնջ ոսկւոյ և արծաթոյ և ականց պատուականաց: Իսկ Լեւոնի կոչեալ զկաթուղիկոսն և զեպիսկոպոսսն՝ հարցանէր թէ զինչ պատասխանի տացէ պատգամին, և նոքա ոչ հաւանե-

1 Առ կայսրն Աղամանայ կամ Գերմանիոյ, որ ոչ էր 'ի տիեզերահռչակ քաղաքին Հռովմայեցւոց, այլ կոչէր երբեմն ըստ նախորդացն՝ կայսր կամ թագաւոր Հռովմայ կամ արևմտից:

2 Ըստ օրինի կամ պսակի առաջին թագաւորաց:

ցան առնել զխնդիրն. և ասէ ցնոսա Լևոն. Դուք մի ինչ հոգայք վասն այդորիկ, ես հաճեցից զմիտս նոցա առ անգամ մի կեղծաւորութեամբ։ Այլ պատասխանի արարեալ Լևոնի ասէ ցեպիսկոպոսն Հռոմայ. Զոր ինչ հրամայէ ինքնակալ կայսրն և պապն մեծ, անյապաղ առնեմք զամենայն։ Այլ նորա երդումն պահանջեալ 'ի նոցանէ երկոտասան եպիսկոպոսաց. և հաւանեցոյց Լևոն զեպիսկոպոսսն յանձն առնուլ զերդումն. և արարին եպիսկոպոսք զբանս երդմանն[1], յորոց մի էր եպիսկոպոսն Տարսոնի Ներսէս Լամբրոնացի, զոր վերագոյն յիշեցաք, և Յովսէփ կողմանցն Անտիոքու, առաջնորդ վանացն՝ որ կոչի Յեսուանց, և Յովհաննէս՝ որ եղև կաթուղիկոս, և Անանիա՝ որ եղև հակառակաթոռ 'ի Սևաստ, և այլք ընդ նոսա։ Ապա եղև ժողով բազմութեան յոյժ՝ զօրապետաց և զօրաց և ազգաց և ազանց. պատրիարգն Յունաց որ նստէր 'ի Տարսոն, և կաթուղիկոսն Ասորւոց որ նստէր 'ի վանս սրբբոյն Պարսումայ 'ի սահմանս Մելտինոյ, և կաթուղիկոսն Հայոց ամենայն եպիսկոպոսօք։ Այլ թագաւորեցուցին զԼևոն, և եղեն ընծաբերք նորոգ թագաւորին կացելոյ՝ շուրջակայ ազգքն։

Այլ լուեալ կայսրն Յունաց եթէ Փռանկք ետուն զթագն Լևոնի, առաքեաց և նա ընծայս և թագս գեղեցիկս ոսկւով և ականմբք պատուականօք ընդելուզեալ. և ասէ. Զթագն Հռոմայեցւոց մի դիցես 'ի գլուխ քո, այլ զմերն. զի առ մեզ հուպ ես քան թէ 'ի Հռոմ։ Իսկ թագաւորն Լևոն քանզի իմաստուն էր՝ ոչ խոտեաց և ոչ զմի ոք յերկոցունց թագաւորաց. այլ ըստ կամաց նորա արար պատասխանի, և սիրով ընկալեալ զեկեալսն, և ետ տուրս մեծամեծս բերողաց թագին. և եղև պսակեալ յերկոցունց։ Այլ էր նա բարի բնութեամբ, ողորմած առ աղքատս և կարօտեալս, սիրող եկեղեցեաց և պաշտօնէից Աստուծոյ։ Կարգէր վանորայս ընդ ամենայն կողմանս տէրութեան իւրոյ և բազմացուցանէր զպիտոյս նոցա, զի մի ումեք իւիք կարօտեսցին ըստ մարմնոյ բաւականին. այլ միայն աղօթից

1 Ոչ այնքան Լևոնի կեղծաւո- որ թուի անծանօթ գոլ և թղթոյ
րութիւն որքան հեղինակիդ կե- և ուղւոյ Ս. Լամբրոնացւոյն առ
ղակարծութիւն երևի 'ի բանքդ, Լևոն։

և պաշտամանն պարապեսցէն. յորոց մի է 'ի վանորէիցն զոր կարգեաց նա՝ Հռչականուն Մկներ կոչեցեալ վանք. որ մինչև ցարդ ևս վարին՝ նովին կարգադրութեամբ զոր նայն կարգեաց, զամենայն աւուրս պահոցն պահօք կատարել, այլ միայն լուծանել ձկամբ զշաբաթ և զկիրակէն: Եւ այսպէս կարգաւորութեամբ հաստատէր զիւր թագաւորութիւնն բարեպաշտն Լեւոն: Եւ էր նա ամենայն իրօք բարեգոյն, բայց միայն միով մասամբ, զի էր նա իգասէր. և եթող նա զկինն իւր զառաջինն՝ զոր ունէր յիշխանութեան, և առ նա 'ի կնութիւն զդուստրն արքային 'ի Կիպրոս կղզւոյ՝ Փռանկ ազգաւ[1], զի լիցի նմա թիկունք և օգնականք: Դէպ եղև զի չոգաւ նա 'ի Կիպրոս կղզին 'ի տեսութիւն աներացն իւրոց. և լուեալ զայն թշնամեաց նորա որք 'ի ցամաքի ոչ ինչ կարէին առնել նմա՝ պատրաստեցին նաւս բազումս, զի 'ի ծովու նենգեսցեն զնա: Եւ լըւեալ զայն արքային Լեւոնի, դարձաւ անդրէն յետս 'ի Կիպրոս, զի էր 'ի Ճանապարհի 'ի վերայ ծովու. և առ իւր նաւս պատերազմականս, և եկեալ 'ի դարանն որ գործեալ էր նմա՝ նաւաց բազմաց, և զի այր իմաստուն էր՝ ծանեաւ թէ յորում նաւուցն իցէ գլխաւորն, եհար զնա արագաթև նաւով, և ջրասոյզ արար զամենեսեան, և մնացեալ նաւքն փախեան. և անկաւ ահ նորա 'ի վերայ ամենեցուն հեռաւորաց և մերձաւորաց: Եղև երբեմն զի սուլտանն որ տիրէր կողմանցն Հալպայ, զօրաժողով եղև 'ի վերայ նորա յաւուրս զատկաց, և յղեաց առ Լեւոն պատգամս այսպէս. Եթէ ոչ հարկեսցես ինձ ծառայութեամբ, բազմութեամբ զօրաց իմոց 'ի սուր սուսերի մաշեցից զձեզ և զամենայն բնակիչս երկրի քո, մայր առ մանկանդ. և զտօնդ ձեր՝ յորում ուրախանայք քրիստոնեայք պատուելով զդա, որպէս թէ յարութիւն Քրիստոսին ձերոյ իցէ, դարձուցից զդա 'ի սուգ ձեզ, և արարից զի զպատրաստեալ կերակուրն ձեր վասն տօնիդ՝ ուտիցէք զայդ 'ի վերայ ձիոց: Եւ իբրև առաքեաց զայս, ինքն առեալ զբազ-

1 Սիպիլ, դուստր Ամաւրեայ Լուսինեան: Սմբատ պատմիչ մերձաւոր՝ առ մեծի յանցանաց առաջին կնոջն տաէ յարգելանի եդեալ զնա. այլ չասէ առ կենդանեաւ նորին առեալ զերկրորդն, որ և չէ հաւանելի:

մութիւն զօրաց իւրոց բանակեցաւ առ սահմանօք նորա. և մնայր գալստեան պատգամին։ Իբրև գիտաց արքայ Լևոն զգալ պատգամին և զօրաժողով լինել այլազգեաց, հրամայեաց զդեսպանսն յայլ կողմն շրջեցուցանել աշխարհին՝ պատճառանօք թէ այդր իցէ արքայն. և ինքն անձապարեալ ժողովեաց զզօրս իւր, և ընդ այլ կողմն ել ՚ի վերայ նոցա. և յեղակարծ ժամու անկան ՚ի վերայ նոցա. եհար զնոսա հարուածս մեծամեծս։ Նազապուր փախեաւ սուլտանն. և Լևոնի արքայի առեալ զաւար բանակին այլազգեաց՝ հանդերձ վրանօք նոցա, և զգերիսն ամենայն, եկն բանակեցաւ յաշխարհին իւրում առ ափն գետոյն, և հրամայեաց զօրաց իւրոց կանգնել խորան այլազգեաց, և զիւրաքանչիւր զդրօշս կանգնել ՚ի դուռն խորանին իւրոյ. և հրամայեաց կոչել զդեսպանսն, և իբրև եկին տեսին զխորանս և զվրանս զօրաց իւրեանց և նշանակ դրօշից իւրաքանչիւր գնդից, և զարմացան հիացմամբ մեծաւ, զի ոչ գիտէին զեղեալսն. ապա իբրև իմացան՝ դիմեցին յոտս թագաւորին, և զապրել անձանց խնդրէին։ Իսկ արքայն մարդասիրեալ առ նոսա շնորհեաց նոցա կեանս, առաքելով զնոսա առ տէրն իւրեանց. և զայն հարկն զոր պահանջէր սուլտանն յարքայէն, զնոյն և ևս յաւելեալ եդ ՚ի վերայ նորա, և ծառայեցոյց զայլազգիսն. և եղև թագաւորելն նորա ՚ի վեց հարիւր քառասուն և վեց թուականին Հայոց։

## Բ

### ՎԱՍՆ ԻՇԽԱՆԱՑՆ ՈՐ ՏԱՐԵՒԵԼՍ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ, ԶԱՔԱՐԻԱՅ ԵՒ ԻՒԱՆԷԻ ԵՂԲՕՐ ՆՈՐԻՆ

Յաւուրս ժամանակաց թագաւորութեանն Հայոց Լևոնի արքայի՝ էին յարեւելս երկու եղբարք, որդիք Սարգսի բարեպաշտ իշխանի, որդւոյ Վահրամայ, որդւոյ Զաքարիայ, որ հատուածեալ ՚ի Քրդաց, ՚ի բաբիլական խելէն[1]. անուն առաջնոյն Զաքարէ, և երկ-

[1] Բաբիլական կողմանս ասիցէ թէ այլ ինչ, կամ թէ սխալ, ոչ գիտեմ։

որդւոյն Իւանէ, այրք քաջք և ճոխք, իշխանութեամբ պատուեալք 'ի Թագուհւոյն Վրաց, որ Թամարն կոչէր, դուստր Գէորգայ քաջի, որդւոյ Դեմետրի։ Եւ Զաքարէ էր զօրավար Վրաց և Հայոց զօրուն, որ ընդ ձեռամբ Թագաւորին Վրաց. իսկ Իւանէ աթաբակութեան[1] պատուով. սոքա բազում մարտս քաջութեան ցուցին. քանզի զբազում աշխարհս Հայոց՝ զոր ունէին Պարսիկք և Տաճկունք՝ առին 'ի նոցանէ յինքեանս. զգաւառն՝ որ շուրջ զծովովն[2] Գեղարքունեաց, զՏաշիր և զԱյրարատ, զԲջնի քաղաք և զԴուին և զԱնբերդ և զԱնի և զԿարս և զՎայոց ձորն, և զաշխարհս Սիւնեաց, և որ շուրջ զնովաւ են բերդք և քաղաքք և գաւառք. հարկատուս արարին և զսուլտանն Կարնոյ քաղաքին։ Աւերեցին և զբազում քաղաքս Պարսից և զԱտրապատականու, և ընդարձակեցին զսահմանս իւրեանց յամենայն կողմանց։ Այսպէս և միւս իշխանն Զաքարէ անուն և եղբայրն իւր Սարգիս, և միւս Սարգիս հայրն Շալուէի և Իւանէի, ազգականքն մեծ իշխանացն, ձեռնտուութեամբ նոցին՝ առին և նոքա բազում գաւառս 'ի Պարսից և բերդս ամուրս, զԴարդման, զՌարհերձ և զԼօրգէվանք, զՏաւուշ, զԿածարէթ, զՏէրունականն և զԴադ. և զՇամքոր քաղաք 'ի նեղ եարկ, զոր յետոյ եառ որդի նորա Վահրամ, հայրն Աղբուղին, պապն Վահրամայ, Զաքարէի և Իւանէ։ Եւ այսպէս աջողեցաւ նոցա 'ի վերուստ յաղթութիւն նոցա. զի համբաւ քաջութեան նոցա ել ընդ ամենայն տիեզերս, և բազում ազգք հարկ տային նոցա, որ սիրոյ աղագաւ և որ յերկիւղէ։ Շինեցան և բազում վանորայք՝ որ 'ի վաղուց ժամանակէ անտի աւերեալ էին 'ի հինիցն Իսմայելի. վերստին նորոգեցան եկեղեցիք, և պայծառացան դասք պաշտօնէից. շինեցան և նոր վանորայք և եկեղեցիք՝ որ 'ի հնոց էին լեալք. ընդ որս և հռչակաւոր վանքն՝ որ Գետիկն կոչի, 'ի գաւառին Կայենի. զոր շինեաց սուրբ վարդապետն Մխիթար՝ զոր Գոշն կոչէին[3], շինեալ հրաշազան եկեղեցի, գմբեթայարկ երկնանման, և կնքեալ զեկե-

1 Որ է վերակացութիւն տան թագաւորի, կամ հազարապետութիւն։

2 ՕՕ. Գեղամ։

3 Վասն որոյ և Գոշայ վանք կոչեցաւ։

ղեցին և օծեալ յանուն սուրբ Աստուածածնին, տա-
ճար փառաց տեառն և բնակարան բանաւոր հօտին
Քրիստոսի: Այլ իբրև այսպէս յաջողեցաւ նոցա իշ-
խանութիւնն, հարին զսուլտանն՝ որ Շահի-Արմէնն
կոչիւր: Ապա կամեցան առնուլ և զհոյակապ քաղաքն
Բզնունեաց, որ կոչի Խլաթ [1]. և զօրս գումարեալ պա-
շարեցին զնա; և մերձ էին առնուլ. ապա ելեալ իշ-
խանն Իւանէ՝ եղբայր զօրավարին զբօսանաց ինչ աղա-
գաւ 'ի զնին պարսպին, և յանխիմաստ շրջելն գթեաց
ոտք երիվարին 'ի խորխորատն՝ որ թագուցեալ էր, և
ընկէց զնա յերկիր. և տեսեալ արանց քաղաքին՝ յա-
րեան 'ի վերայ նորա, և ձերբակալ արարեալ տարան
զնա 'ի քաղաքն. և եղև քաղաքին ուրախութիւն մեծ,
և իսկոյն ազդեցուցին զըմբռնումն նորա. ընդ որ կարի
յոյժ ուրախացեալ՝ հրամայեաց առ ինքն ածել: Այլ
լուեալ զօրավարին Զաքարիայ, յղեաց առ քաղաքա-
ցիս բանս սպառնալեաց և ասէ. Եթէ հանէք զեղբայրն
իմ 'ի քաղաքէդ յայդմանէ կամ կորուսանէք, զհողդ
երկրիդ 'ի կողմանս Արաց տանիմ և անմարդ արարից
զձեզ 'ի մարդկանէ: Այլ երկուցեալ նոցա ոչ ետուն
տանիլ առ սուլտանսն՝ [2] որք էին 'ի կողմանս Դամասկո-
սի և Եգիպտոսի, որոց անուանք էին Աւզ [3], և Մէլիք
Քէմլ, և Աշրափ՝ յազգէն Սալահատնին որ առ զԵ-
րուսաղէմ:

Ապա արարեալ սէր ընդ միմեանս խնդրեցին զդուստր
Իւանէի 'ի կնութիւն, և եղև որպէս խնդրեցին. ա-
ռին պատանդս, և արձակեցին զԻւանէ. և նորա եր-
թեալ 'ի տուն իւր առաքէ զդուստրն իւր, որ եղև կին
Աւզոյն, և յետ նորա Աշրափի. բազում օգուտ եղև
գալ կնոջն 'ի տունս սուլտանաց, զի դիւրեցին քրիստո-
նէիցն՝ որ ընդ իշխանութեամբ իւրեանց էին. Եւս ա-
ռաւել երկրին Տարօնոյ, զի վանորայքն որ անդ էին՝

1 ՕՕ. Խըլխաթ. ուր նստէր հը-
զօր ամիրայ իշխող կողմանցդ ան-
դրատին յ'Թ դարէ:

2 ՕՕ. սուլտանն:

3 Կուզդ Թուխ-Քէյքաուս սուլ-
տան Իկոնիոնի. Քէմլ՝ Եգիպտո-
սի, միւսն Դամասկոսի: Բայց Աշ-
րափդ յազգէ Սալահատնին որ և
էառն զդուստր Իւանէի՝ տիրա-
ցաւ Խլաթայ՝ յետ մահու եղբօրն
Աւհատայ՝ որում նախ խօսեցաւ
դուստրն Իւանէի՝ Թամթա: —
Վ. 138:

ընդ հարկաւ էին. Թեթեւացուցին զսակ հարկին, և կիսոց զամենն իսկ թողին. և հրամայեցին այնոցիկ որ ընդ իշխանութեամբ իւրեանց էին՝ ոչ զրկել կամ նեղել զՃանապարհորդս, որք աղօթից աղագաւ երթային յԵրուսաղէմ: Եւս առաւել ընդարձակեցին ազգին Վրաց. զի Իւանէն խոտորեցաւ յաղանդն (!) Քաղկեդոնի, յոր կործանեալ էին Վիրք. զի սիրեաց նա զփառս մարդկան առաւել քան զփառս Աստուծոյ (!). Հրապուրեալ նա 'ի Թագուհւոյն որ Թամարն կոչէր, 'ի դստերէն Գէորգայ: Վասն այնորիկ առաւել մեծարէին զՎիրս, զի անհարկ էին նոքա յամենայն քաղաքս նոցա, և յԵրուսաղէմ ևս. և էր անուն կնոջն Թամթա: Եւ այսպէս եղև սէր և միաբանութիւն ընդ Թագաւորին Վրաց, և ընդ իշխանութիւնն սուլտանաց:

Գ

ՎԱՍՆ ԺՈՂՈՎՈՅՆ ԶՈՐ ԱՐԱՐ ԶԱՔԱՐԻԱ ՎԱՍՆ ԽՆԴՐՈՑ ԻՆՉ ԻՐԱՑ

Յետ այսորիկ իբրև խաղաղացուցին զաշխարհս ընդ իշխանութեամբն իւրեանց յամենայն հինից, և բազմացան վանորայք և պայծառացան պաշտամունք եկեղեցւոյ, այլ ինչ եած զմտաւ իշխանն Զաքարէ. զի տեսանէր զզօրս Վրաց որ ընդ Թագաւորին իւրում, զի իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ ունէր ընդ իւր քահանայս, և յամենայն տեղիս մատուցանէին պատարագ, և ինքն ոչ ունէր եկեղեցի 'ի Ճանապարհին. զի չէր սովորութիւն Հայոց 'ի բազում ժամանակաց, յորմէ հետէ բարձան իշխանքն Հայոց մեծամեծք 'ի Պարսից և յԻսմայելացւոց բռնութենէն. և նախատէին Վիրքն զՀայս՝ ոչ ունել եկեղեցի 'ի Ճանապարհի, և անհաղորդ մնալ նոցա, և ոչ տօնել զտօն վկայիցն Աստուծոյ յիւրաքանչիւր աւուր կատարման. վասն այնորիկ կարի յոյժ ցաւէր նմա: Ապա հարցանէր զմեծ վարդապետն Մխիթար, զշինող վանիցն [1] Գետկայ՝ որ էր հայր խոստովանութեան նորա. և ասէր՝ եթէ Ո՞չ երբէք եղեալ է Թագաւորաց մերոց կամ իշխանաց 'ի պէտս Ճանապար-

1 ՕՕ. Վկայիցն:

Հայց եկեղեցւոյ՝ տեղի պաշտաման և պատարագի. Հայցանէր և զայլ վարդապետս, և նոքա ասացին նմա զայն, որ առ մեծազօր արքայիւն Տրդատայ՝ վրանն և սեղանն զոր շրջեցուցանէին յարքունական բանակին. և որ առ սուրբ Վարդանամբք, որ զմկրտութիւնն և ըղհաղորդութիւնն կատարէին ՚ի մէջ բանակին. և զայն զոր գրեցին սուրբ վկայքն Հիպիրիքոս[1] և Փիլիտոս առ Յակոբոս երէց, եթէ Առեալ ընդ քեզ զսպաս պատարագին և զեղջիւր իւղոյդ՝ եկեսցես առ մեզ. և այլ բազումք որ նման են սմին: Ապա ասէ ցնոսա մեծ զօրավարն. Տուք և ինձ հրաման, զի և ես շրջեցուցից զհետ իմ քահանայս և վրան պատարագի: Ասէ ցնա վարդապետն մեծ. Մեք չունիմք հրաման առնել զայդ առանց կաթուղիկոսին Հայոց և թագաւորին Լևոնի: Ապա գրէ թուղթ և առաքէ դեսպանս առ կաթուղիկոսն Հայոց Յովհաննէս անուն, որ ընդ այն ժամանակս ապստամբ էր ՚ի թագաւորէն Լևոնէ ՚ի Հռոմկլայն վասն իրիք պատճառաց. նմանապէս գրէ և առ թագաւորն Լևոն, և ծանուցանէ նմա զխնդիրն: Եւ նա նստուցեալ էր զտէր Դաւիթ կաթուղիկոս փոխանակ Յովհաննիսի որ ապստամբեալ էր, յաշխարհէն Կիլիկեցւոց ՚ի վանքն՝ որ կոչի Արքակաղին: Ապա արքայն Լևոն ժողովեալ զվարդապետս և եպիսկոպոսունս իւրոյ իշխանութեանն, հարցանէր վասն խնդրոյն Զաքարէի. և նոքա յանձն առին, զի մի ելցէ արտաքոյ ուղղափառ հաւատոյն՝ որպէս զեղբայր իւր, և գրեն թուղթ յարուելս այսպէս.

Մեծ սպարապետ և Շահնշահ արևելեան կողմանց Զաքարիա. ՚ի խնդիր ելեալ եղծեալ և աղաւաղեալ կարգաց քրիստոնէից՝ որ ՚ի տկարութենէ այլասեալց, ժողով արարեալ վարդապետաց և եպիսկոպոսաց, հարց և երիցանց, որք քննեալ գտին զխնդիրս նորա համաձայն աստուածային գրոց: Ապա առաքեաց առ քրիստոսապսակ արքայն Հայոց Լևոն, որ ՚ի կողմանս արևմտից աշխարհին Կիլիկեցւոց. և նորա ժողով արարեալ

1 Ա. Գ. Հիպէրիպոս. որ են Ս. Հիպերիքոս և Փիլոթէոս, և այլ ընկերքն, վկայք Սամոսատացիք:

'ի մայրաքաղաքն Սիս զկաթուղիկոսն Դաւիթ իւրովք վարդապետօք և եպիսկոպոսօք և ճգնաւոր միաբանամբք, գտին զխնդիրս նորա համաձայն առաքելական կանոնաց, և ոչ արտաքոյ. վասն որոյ 'ի գլուխս կանոնաց դրոշմեալ առաքեցին թուղթ ուխտ՝ որ են այսոքիկ։

Ա. Մատուցանել զսուրբ պատարագն դպրաւ և սարկաւագաւ, որպէս օրէնն է։

Բ. Տօնել զտօն աւետեաց Աստուածածնի 'ի վեցն ապրիլի ամսոյ, յորում աւուր և հանդիպի, և զտօնն փոխման նորին 'ի հնգետասան օգոստոսի, յորում աւուր և հանդիպի, և զտօն սուրբ խաչին 'ի չորեքտասան սեպտեմբերի յորում և հանդիպի։

Գ. Պահել զճրագալոյցս Յայտնութեան և Զատկին, մինչև ցերեկոյն պահօք, և ոչ այլ իւիք լուծանել՝ բայց միայն ձկամբ և ձիթով։

Դ. Ընդունել զնկարագրութիւն պատկերի Փրկչին և ամենայն սրբոց, և մի խոտել զնոսա իբրև զպատկերս հեթանոսաց։

Ե. Պատարագս մատուցանել և կենդանեաց։

Զ. Կրօնաւորաց միս ոչ ուտել։

Է. Ձեռնադրել դպիր, և ապա յետ աւուրց սարկաւագ, և 'ի կատարեալ հասակի՝ ապա քահանայ։

Ը. Միաբան կալ 'ի վանս, և առանձին իրս ոչ ստանալ։

Զայսոսիկ և որ նման սոցին գրեցին 'ի ժողովն յարևմտից, և առաքեցին յարևելս առ Զաքարիա։

Իսկ կաթուղիկոսն Յովհաննէս որ 'ի Հռոմկլայն, վասն ընդ միտ մտանելոյ իշխանացն արևելից առաքեաց վրան մի գմբեթարդ եկեղեցաձև, և կազմողս և յօրինողս նմին, և սեղան մարմարեայ, և այլ սպասք պատարագաց. և եպիսկոպոս մի Մինաս անուն, և սարկաւագս և դպիրս և քահանայս, և գեղեցկաձայն ասողս պատարագին. որք եկեալ եղեն յանդիման սպասալարին 'ի քաղաքն Լօռէ, և առաջի կացուցին նմա զհրամանս կաթուղիկոսին, և զթուղթ նորին և զընծայս։ Նոյնպէս և յարքայէն Լևոնէ և 'ի կաթուղիկոսէն Դաւթէ եկին դեսպանք և հրամանաբերք։ Ընդ որ յոյժ ուրախացեալ Զաքարիայ՝ ժողով հրամայեաց առնել 'ի Լօռէ քաղաք զեպիսկոպոսն Հաղբատայ

զԳրիգորիսն՝ զիւրեանց աշակերտն, և զեպիսկոպոսն Անեւոյ, և զեպիսկոպոսն Բջնոյ, զԳառնոյ, զԿարուց, և զայլս որք դիպեցան. նոյնպէս և զվարդապետս և զառաջնորդս վանաց հանդերձ քահանայիւք և աշխարհական ամբոխիւ. կամէր կանգնել զվրանն և պատարագ մատուցանել: Եւ էին 'ի ժամանակին յայնմիկ վարդապետք երևելիք, Մխիթար որ Գոշն կոչիւր, այր իմաստուն և հեզ և վարդապետական ուսմամբ հռչակեալ. Իգնատիոս, Վարդան, Դաւիթ Քոբայրեցին 'ի Հաղբատայ, Յովհաննէս հայր Սանահնին, որ էր սնուցող նոցին իշխանացն, Գրիգոր զոր Մոնմոնիկն կոչէին՝ 'ի Կեչառուաց, Տուրքիկն 'ի Թեղենեաց, որ բարիոք կարգաւորեաց զվանքն՝ զամենայն ինչ հասարակաց լինել, և առանձին ոչ ինչ ստանալ. Եղիա 'ի Հաւուց-Թառէ, այն որ գեղեցիկ կարգաւորեաց զկարգ վանաց իւրոց, որպէս թէ ամենեցուն ընդ մի բերան հնչել՝ եթէ ցած և կամ բարձր, և ոչ հարստահարել ընկեր զընկերն. Գրիգոր Գառնեցին, Սարգիս միայնակեացն 'ի Սևանայ: Սոյոքիկ արք երևելիք, և այլք բազումք. Գրիգորէս եպիսկոպոս Հաղբատայ, Վըրթանէս Բջնոյ և Գառնոյ, Սարգիս աթոռակալ Անոյ, Յովհաննէս Կարուց. և այլք յոլովք աստի և անտի, հանդերձ երևելի քահանայիւքն վանաց, քաղաքաց և գիւղից: Իսկ իբրև լուան և գիտացին զհրաման կաթուղիկոսին և թագաւորին, ոմանք հաւանեցան և կէսքն ոչ. և այսպէս անմիաբան լեալք քակտեցան 'ի միմեանց. ոմանք 'ի գիշերի փախչելով գնացին, և ըղկէսն[1] արգել բռնութեամբ, մինչ մատուցեն զպատարագն. և այսպէս անմիաբան լեալք գնացին միմեանց մեղադրելով:

Իսկ իշխանն Զաքարէ առաքեաց 'ի վանորայս որ ընդ իշխանութեամբ իւրեանց էին, և տայր բռնութեամբ առնել զտօն փոխման Աստուածածնի և սուրբ խաչին՝ ոչ 'ի կիրակէ՝ որպէս սովորն էին, այլ զպատկերն զինչ օր որ գայր: Բազում անմիաբանութիւնք, կռիւք, փոխանակ սիրոյ՝ ատելութիւն ընդ միմեանս, և փոխանակ ուրախութեան՝ տրտմութիւն, ատելութիւն,

1 Օ. կէսն կամ կէսքն:

մինչև 'ի սուր եւ մատաբերել միմեանց։ Նոյա առաքեաց Զաքարիա զեպիսկոպոսն Սինաա՝ որ եկեալ էր 'ի կաթուղիկոսէն 'ի Հաղբատ՝ պաշտօնէիւք իւրովք, զի և անդ զնոյն արասցեն. և մինչ դայր նա հուպ 'ի վանքն՝ առաքեաց Գրիգորէս եպիսկոպոս Հաղբատայ արս՝ որք սաստիւ հարին զնա բրօք և զպաշտօնեայսն նորա, և վէրս 'ի վերայ եդեալ թողին կիսամահ, և զջորիսն որք էին ընդ նմա բեռնակիրք՝ գահավէժ արարեալ սատակեցին. և բարձեալ զեպիսկոպոսն մահճօք տարան առ Զաքարէ. և նորա բարկացեալ յոյժ 'ի վերայ եպիսկոպոսին, և հրամայեաց ըմբռնել զնա, մահուչափ ըսպառնացեալ 'ի վերայ նորա, և նա փախստական գնաց յաշխարհն Այենոյ 'ի վանքն Գետիկ առ մեծ վարդապետն Մխիթար, ապաւինութեան աղագաւ. զի գիտէր թէ մեծ համարձակութիւն ունէր նա առ Զաքարէ, և ճողոպրեցաւ այն անգամ 'ի ձեռաց նորա. և յետոյ ըմբռնեաց զնա 'ի Կեչառուս, եդ զնա 'ի բանդի, և զՅովհաննէս կացոյց եպիսկոպոս Հաղբատայ փոխանակ նորա. այն որ յառաջն եթող զաթոռն և գնաց 'ի Խաչէն։ Նա էր այս Յովհաննէս այր առաքինի, և բազում գործս յիշատակի արժանիս գործեաց նա 'ի Հաղբատ[1]. ընդ որս և զհռչակաւոր գաւիթս շինեաց եկեղեցւոյն՝ որ հիացուցանէ զտեսողսն։ Նա այնպէս շփոթումն ունէր զեկեղեցիս արևելից. քանզի 'ի բազում ժամանակաց հետէ չէին սովոր առնել զոր խնդրէրն նա, և ոչ զտօնսն յիւրաքանչիւր աւուր, զի մի պատճառաւ լուծցին պահքն. և զպատարագն սուրբ ոչ մատուցանէին սարկաւագաւ և դպրաւ, այլ միմեանց քահանայքն սպասաւորէին. և կարծեմ թէ զայս սովորութիւն էին կալեալ 'ի բռնութենէն Տաճկաց, որ ոչ տային համարձակ պաշտել զպաշտօնս իւրեանց քրիստոնէից, այլ և ոչ զդրունս եկեղեցեաց թողուլ 'ի բաց 'ի ժամ սոսկալի խորհրդոյն, զի մի ոճիրս ինչ գործեսցեն այլազգիքն. և ոչ զայլսն՝ զոր նա ախորժէր։

Դարձեալ հրամայէր ժողով առնել 'ի մայրաքաղաքն յԱնի, որ 'ի Շիրակ գաւառի, և ժողովեցան վերոյգրեալ եպիսկոպոսունք և վարդապետք, և ևս յոլովք.

1 Որ և ցարդ ակն յայտնի վկայէ յարձանից տեղւոյն։

գրեաց Զաքարիա առ վարդապետն Մխիթար, զի և նա գայցէ 'ի ժողովն։ Իսկ նա պատճառեաց զհիւանդութիւնն և զանկարութիւն, և գրեաց պատասխանի այսպէս. Եթէ զոր ինչ առնեն դոքա և կամին՝ համաձայն եմ ես այնմ. և աղաչեմ զքեզ մի ինչ աւելի աշխատ առներ զիս, զի չեմ կարող։ Իսկ Զաքարէ կոչեաց զժողովն և խնդրէր 'ի նոցանէ ձեռագիր, զի արասցեն զոր խնդրէ նա. և նոքա ասեն. Անհնար է մեզ առանց Մեծ վարդապետին առնել զայդ. զի այսպէս կոչէին զնա սակս պատուոյ. իսկ նա ցուցեալ զթուղթն ասէ. Ահասիկ նա, զի այս ձեռագիրս նորա. սա նա է և նա սա. և զթուղթն ոչ ետ նոցա՝ եթէ զինչ էր գրեալ 'ի նմա։ Իսկ ժողովն խնդրէր 'ի նմանէ ներումն, մինչև ինքեանք առաքեսցեն առ նա՝ գալ նմա 'ի ժողովն. և առաքեցին առ վարդապետն Մխիթար և աղաչէին զնա գալ 'ի ժողովն, զի միաբան պատասխանի տացեն զօրավարին. և գրեցին թէ զանկարութիւն մարմնոյ մի ինչ պատճառեր. եթէ 'ի ճանապարհին հասանէ քեզ վախճան, ընդ առաջին սուրբ վարդապետաց եկեղեցւոյ կարգեսցուք զյիշատակս քո։ Այլ իբրև ընթերցաւ ըզթուղթն ժողովոյն՝ վաղվաղակի գնաց զկնի կոչնականաց. և էր աւուրքն ձմեռնային և տօն ծննդեան և յայտնութեան Յիսուսի Քրիստոսի մերձեալ։ Իբրև գիտաց զօրավարն թէ գայ նա, առաքեաց իշխան մի արտաքս քան զդուռն քաղաքին, զի յորժամ գայցէ մի թողացուսցեն նմա երթալ 'ի ժողովն, այլ առ ինքն տարցեն։ Նախ քան զգալն նորա կէսք հաւանեալ էին առնել զխնդիրն, այնորիկ որ եպիսկոպոսքն էին իշխանութեան, զի մի անկցին յաթոռոյն. և կէսք ոչ։ Իբրև եկն վարդապետն և առեալ իշխանն զերասանակս երիվարի նորա՝ տարաւ զնա առ զօրավարն. իբրև գիտաց ժողովն՝ եթէ ոչ թողին զնա առ մեզ, առաքեցին ըզվարդապետն Սերոբէս, զայր առաքինի և ողջախոհ, որ յետոյ առաջնորդ եկաց Կեչառուացն՝ զկնի մահուան Գրիգորի վարդապետին՝ որ Մոնոնիկն կոչիւր. զի երթիցէ ասիցէ նմա՝ նախ 'ի ժողովն գալ, զի խորհեսցին 'ի միասին թէ զինչ պարտ իցէ առնել. զի 'ի դիպող պահոջ էին, և հանդերձեալ էր զօրավարն աքսորել զնոսա յօտարութիւն։ Այլ նա երթեալ հանդիպի նմա

յայնմ տեղւոջ՝ զի հանդերձեալ էր նա մտանել յապարանս զօրավարին. և արտաքուստ ձայնեաց առ նա, և ասաց զպատգամս ժողովոյն. իսկ իշխանն ստիպով տարեալ եմոյծ զնա 'ի ներքս. և զօրավարն եկեալ ընդ առաջ նորա ողջոյն ետ նմա և ասէ. Որովհետև եկիր դու աստ, ինձ ոչ ինչ փոյթ է զնոցանէ: Իբրև լուեալ զբանս զայս ժողովն[1], նախանձաբեկ եղեն և յաչաղելով[2] ասէին. Զայս ամենայն զոր գործէ զօրավարն ընդ մեզ, խրատով նորա գործէ. մեք իբրև զանասունս համարեալ եմք յաչս նորա. և այլ բազում բանիւք բամբասէին զնա: Իսկ նա իբրև իմացաւ զիրսն որ եղեալ էին առ ժողովն, մեղադիր եղև զօրավարին թէ իշխանաբար ոչ պարտ էր զայդպիսի իրս առնել. և առաքեաց առ ժողովն և ասէ. Դուք վասն ազգիս մեր՝ զի մի այդպիսի սովորութեամբ խառնեսցին ընդ Վիրս, և ես հոգամ վասն վօրավարիս, զի մի լիցի սա վրացի իբրև զեղբայրն, որում սպասեն Վիրք: Բայց թէ այսպէս է, զի՞ մեղադրէք ինձ. զի հրաման ունի 'ի կաթուղիկոսէն և 'ի թագաւորէն Լևոնէ՝ առնել զայս. և մեք թէ կամիք և թէ ոչ՝ սա ոչ դադարէ առնելոյ զայս: Բայց դուք դարձջիք յիւրաքանչիւր բնակութիւնս, և մեք աղաչեսցուք ոչ հանել զձեզ յեկեղեցեաց ձերոց և 'ի տեղեաց. և մեք զպաշտօն որ մինչև ցայսօր պաշտեալ եմք՝ զնոյն պաշտեսցուք: Իսկ Ամիր սպալարն Զաքարէ հրաման ետ դաղտնի առանց գիտելոյ վարդապետին՝ մերժել զնոսա յատարութիւն. զոր գիտացեալ վարդապետին՝ զբազումս 'ի նոցանէ թափեաց դառնալ 'ի տեղիս իւրեանց. և զայլսն յետ սակաւ ինչ աւուրց Իւանէ եղբայր զօրավարին՝ հրաման ետ դառնալ 'ի տեղիս իւրեանց: Իսկ Զաքարիա զժամանակս կենաց իւրոց որչափ եկաց, նոյնպէս վարեցաւ՝ որպէս կամէր. բայց եկեղեցիքն ամենայն առաջին պաշտամամբն վարեցան:

Զբովանդակ իրս, և զբան և զգործ այս ժողովոյ գրեաց մեծիմաստ և առատասիրտն վարդապետս Վանական յիւրում պատմութեանն. զի ականատես էր նա իրացն եղելոց և ականջալուր, յաշակերտի կարգի գոլով

[1] ՕՕ. ժողովուրդն:
[2] ՕՕ. աղաչելով:

յայնժամ առ Մեծ վարդապետն։ Այս և այլ յոլով իրք գտանին 'ի գիրս նորա, որք կամին մտադիւրութեամբ ուսանիլ։

## Դ

### ՎԱՍՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻՆ ԱՂՈՒԱՆԻՑ ԳԱԼՈՅ ԱՌ ՄԵԾ ԻՇԽԱՆՆ, ՆԵՂԵԱԼ Ի ՅԱՅԼԱԶԳԵԱՑՆ

Ի բազում վշտաց և 'ի նեղութեանց զոր կրեաց առ հասարակ ամենայն աշխարհս յազգացն հարաւային, յորդւոցն Իսմայելի, ևս առաւել ազգս Հայոց և Աղուանից, զի բնաջինջ եղաք 'ի թագաւորաց և յիշխանաց. կաթուղիկոսքն Աղուանից այսր անդր յածելով վասն ոչ ունելոյ տեղի հաստատուն աթոռոյ, դէպ եղև նոցա գալ 'ի քարայր մի 'ի սահմանս բերդին՝ որ կոչի Չարեք[1], և անդ դադարել և անդուստ հովուել զհօտ իւրեանց[2]. և մի ոմն 'ի նոցունց կաթուղիկոսաց, Ներսէս անուն՝ եթող զկարգ իւր և եառ կին, և ստացաւ որդիս. և մերժեն զնա յաթոռոյն, և ձեռնադրեն փոխանակ նորա զտէր Ստեփաննոս։ Սորա (էր) քորեպիսկոպոս մի Սարկաւագ անուն. դէպ եղև գնալ նմա 'ի Գանձակ քաղաք, ժողովել զմուտս յերիցանց և 'ի քրիստոնէից որ անդ. զնա տեսեալ ամիրայի քաղաքին, որում անուն էր Գուրջի Բագրատին, եհարց զնա թէ Ո՞յր ես, և իբրև ասաց թէ կաթուղիկոսին, ասէ[3]. Լուեալ է իմ թէ քրիստոնեայք մեծապէս խնդութիւն առնեն՝ յորժամ օրհնեն զջուրն. արդ ահաւասիկ տօնն ձեր մերձեալ է, կոչեա զկաթուղիկոսն ձեր հանդերձ պաշտօնէիւք որպէս սովորութիւն է ձեր, և օրհնեցէք զջուր 'ի քաղաքիս. զի և մեք բերկրեսցուք ընդ ձեզ։ Իսկ քորեպիսկոպոսն երթեալ պատմեաց կաթուղիկոսին զհրաման ամիրային. և նա ուրախացեալ յոյժ, զի ոչ երբէք իշխէր կաթուղիկոս կամ երևելի ոք յայտնապէս մտանել 'ի քաղաքն կամ շրջել անդ. զի Պարսիկք ունէին զայն քաղաքն, որք ծարաւիք ա-

1 Վ. 138։
2 OO. խոր։
3 յ'OO. չէք առէ։

րեան քրիստոնէից. քանզի բազում վիշտս կրեալ էին նոքա 'ի բնակչացն Այաչենոյ ուազակաբար կելով, զբազումս սպանանէին 'ի Պարսից, և կողոպտէին զքրիստոնեայս 'ի ձեռաց նոցա. նոյնպէս և Թագաւորն Վ-րաց, և զօրք նորա. և վասն այն պատճառին թշնամի էին ամենայն քրիստոնէից։ Իսկ կաթուղիկոսն ժողովեալ զեպիսկոպոսունս և զվարդապետս իւրոյ վիճակին, գնաց նոքօք 'ի կոչ ամիրային. և տեսեալ զնա ամիրայն՝ յոյժ ուրախացաւ, և հրամայեաց մեծաւ հանդիսիւ և ճոխութեամբ երթալ վառեալ մոմովք և ժամհարովք և մեծամեծ պաշտամամբք՝ օրհնել ըզջուրն. և ինքն հեծեալ յերիվարն զօրօք բազմօք՝ գնաց 'ի տես զբօսանաց աղագաւ. դղրդեցաւ և քաղաքն ամենայն բնակչօք հեթանոսօք, գնացին և նոքա 'ի տես։ Իբրև արկին զխաչն սուրբ 'ի ջուրն, ասեն Պարսիկք. Ահաւասիկ զամենեսեան քրիստոնեայ արար ամիրայն. զի զինչ աւելի առնեն քրիստոնեայք, բայց թէ մկըրտեն և օծանեն. և մեք ամենեքեան ըմպեմք 'ի ջրոյս յայսմանէ, և լուանամք 'ի սմանէ. յայսմհետէ մեք անհաւատ եմք և դենակորոյսք. արդ եկայք հնարեսցուք ինչ։ Յայնժամ ամբոխ յոյժ արարեալ և եղին զկաթուղիկոսն 'ի բանտ, և դրդեցին զկնի ամիրային և եղին զնա 'ի բերդն. և ինքեանք գրեցին առ Աթապակն՝ որ նստէր 'ի Սպահան, թէ այս ամիրայս զմեզ զամենեսեան եհան 'ի հաւատոց մերոց. զի զխաչն խա-զի՝ ետ արկանել 'ի ջուրն գլխաւորին քրիստոնէից. արդ 'ի պահոջ են[1] երկոքեանս, կաթուղիկոսն և ամիրայն. արդ զինչ կամք քո հրամայեն՝ այն եղիցի։ Եւ հրաման ետ զամիրայն լուծանել յիշխանութենէն և առ ինքն ածել։ Իսկ 'ի կաթուղիկոսէն բազում գանձս առեալ ոսկւոյ և արծաթոյ՝ թողին գնալ ուր և կամեսցին. և նա զերծեալ 'ի վտանգէն՝ չոգաւ 'ի կողմանս Այաչենոյ, և այլ ոչ իշխէր մտանել 'ի սահմանս Գանձակայ։ Իսկ վանորայքն որ 'ի կողմանս քաղաքին էին և երիցունք գաւառաց, իբրև տեսին թէ ոչ իշխէ գալ տէր Ստեփաննոս յայն կողմն՝ և նոքա ոչ իշխէին երթալ առ նոսա, առեալ զՆեժգէնն զայն կարգընկէց՝ տան 'ի նա

1 Թերևս 'ի դիպահոջ։

զձև և զկարգ քահանայութեան։ Զոր լուեալ տէր Ստեփաննոս՝ ընդ բանիւ կապանաց արկ զնա, և զգործողս իւրացն, և ինքն այսր անդր կացեալ, մինչև մեռաւ 'ի Հերգ[1] գաւառի։ Իբրև տեսին վարդապետք և եպիսկոպոսք կողմանցն Աղուանից՝ եթէ բարձաւ կաթուղիկոսութիւնն 'ի նոցանէ, և ոչ կայ յազգէն յայնմանէ եպիսկոպոս կամ քահանայ, բայց միայն մանուկ մի սարկաւագ, առեալ զնա տարան 'ի Սիւնի առ եպիսկոպոսն Սրթանէս, և տան ձեռնադրել զնա քահանայ, և առեալ բերեն զնա 'ի քաղաքն Պարտաւ առ իշխող քաղաքին՝ որում անուն էր Ամիր Օմար. և աղաչէին զնա զի հրաման տացէ ձեռնադրել զնա կաթուղիկոս. և նա ասէ. Կարի մանուկ է տիոյք. դուք որ կատարեալ էք հասակաւ՝ ընդէ՞ր ոչ լինիք կաթուղիկոս. և նոքա ասեն. Վասն զի սա է յազգէ կաթուղիկոսաց, և սմա անկ է աթոռն։ Նա հրաման տայ ձեռնադրել զնա. և էին անդ եպիսկոպոսք սակաւ. և իբրև ձեռնադրեցաւ, հեծոյց զնա ամիրայն յաջնիւ երիվար, և արկ 'ի վերայ կտաւ աջնիւ 'ի պատիւ նմա, և փողահարս յառաջոյ և զկնի, և հրամայեաց շրջեցուցանել զնա ընդ փողոցս քաղաքին։

Նա այսպէս կալաւ զաթոռն Աղուանից տէր Յովհաննէս զամս քսան. սա հաստատեաց զաթոռն իւր 'ի սահմանս Զարեքին, 'ի քարի անդ զոր ասացաք վերագոյն։ Սա նեղեալ յայլազգեաց՝ դիմեաց գալ յերկիրս Հայոց առ մեծամեծ իշխանս Զաքարէ և Իւանէ. և նոքա մեծաւ պատուով ընկալան զնա, և բնակեցոյց զնա Իւանէ 'ի քաղաքն Միափոր՝ 'ի վանքն որ կոչի Խամշի։ Սա սկսաւ շինել անդ եկեղեցի մեծ և հրաշալի, և մինչ չև էր աւարտեալ խափանումն եղև. զի եկն սուլտանն Խորասանայ Ջալալադինն կոչեցեալ և եհար զԹագաւորութիւնն Վրաց, և խստացաւ մի զկնի միոյ գալ զօրաց այլազգեաց և աւերել զաշխարհս Հայոց, Աղուանից և Վրաց։

1 Գուցէ Հերեթ յաշխարհին ժինն Հերոսի եղբօր Հայկայ, և Աղուանից, կողմն Սղնախայ, բա- Հէր+ գրեալ։

# Ե

## ՎԱՍՆ ՎԱՐԴԱՊԵՏԱՑՆ ԵՐԵՒԵԼԵԱՑ ՈՐՔ ԷԻՆ Ի ԿՈՂՄԱՆՍ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ, Ո՛ՐՊԷՍ ԵՂԵՆ ԿԱՄ ԶԻ՛ՆՉ ԱՐԱՐԻՆ

Ընդ այնոսիկ աւուրս ժամանակաց էին վարդապետք առաքինիք և լուսաւորք, որք փայլէին յաշխարհի իբրև լուսաւորք. Ստեփաննոս որդի Յուսկան[1], այր սքանչելագործ և սուրբ, որ և գերեզման նորա յետ մահուանն բժիշկ էր ամենայն ախտացելոց. և Գէորգն Կառրենացի[2], այր իմաստուն և գիտնաւոր. և միւս ևս այլ՝ Տիրացու նորա անունն, որ և զաստիճան եպիսկոպոսութեան ընկալաւ. և Աստուածատուր՝ զոր Աղբայրկայ որդի կոչէին՝ 'ի յԱրճէշ քաղաքէ. զամենէ բազում ինչ առաքինութիւն պատմեցին որք տեսողք լեալ էին։ Էր սա որդի մեծատան, յոյժ ողորմած և աղքատասէր. իբրև ասացին նմա թէ մեռաւ մայրն քո ըստ մարմնոյ, գոհացաւ զԱստուծոյ. և գնացեալ 'ի թաղումն նորա՝ առեալ ոսկի և արծաթ արկանէր 'ի ձեռս մօր իւրոյ, և կոչէր զաղքատս առնուլ 'ի ձեռաց մօր իւրոյ, որպէս թէ ինքն իսկ ձեռօք իւրովք է տուեալ։ Իսկ իբրև հայրն վախճանեցաւ, առեալ զամենայն ինչսն բաշխեաց աղքատաց. և կուպղայք էին նորա բազումք, և զայն ետ 'ի վարձու, և յամենայն ամի առեալ զգինսն՝ գնէր նոքօք մորթս ոչխարաց, և կարէր ձեռօք իւրովք հանդերձս և տայր աղքատաց. և տեսեալ զբարեգործութիւն նորա բազումք 'ի Տաճկաց՝ գային առ նա, և մկրտեալ 'ի նմանէ լինէին քրիստոնեայ։ Իսկ տեսեալ անհաւատիցն եթէ նա է պատճառ ամենայնի, կամէին սպանանել զնա, և յայտնի ոչ իշխէին վասն բազմութեան ժողովրդոցն, խորհեցան դնել նմա գաղտնի որոգայթ. և կալեալ մի 'ի ծառայից նորա խեղդեցին, և բերեալ 'ի գիշերի ընկեցին առ դրունս վանիցն, և վաղվաղակի ընդ առաւօտն եկեալ պաշարեցին զնա զի ըմպանեսցեն զնոսա, որպէս թէ նոքա գործեցին զայն.

1 Ի կողմանց Վանայ, ուր և մանն, մերձ 'ի ծայր ծովուն։ Արգելանի վանք նորա և գերեզ.

2 Բ. Կառբէննեցի։

Եւ լուեալ քրիստոնէիցն ժողովեցան անթիւ բազմութիւնք, մեռանել ամենեցուն և ապա տալ զնա 'ի ձեռս ։ Իսկ սուրբ այրն Աստուծոյ տեսեալ զգաղտնի որոգայթս թշնամւոյն՝ թէ 'ի պատճառս նորա զբազումս կամին սպանանել, զի Պարսիկք ունէին զիշխանութիւն քաղաքին, ասէ ցնոսա. Ներեցէք մեզ զմի գիշերս, և 'ի վաղիւն որպէս կամք լիցի ձեր, այնպէս արարէք դուք մեզ ։ Եւ հրամայեաց գիշերապաշտօն առնել, և խնդրել յԱստուծոյ զի զերծցին 'ի պարտութենէն. և ինքն առանձնացուցեալ զինքն և մեծաւ հառաչանօք խնդրէր յԱստուծոյ զայցելութիւն ։ Եւ վաղիւն բացեալ զդրունս վանիցն, կոչեաց զամենեսեան 'ի ներս զհաւատացեալս և զանհաւատս, և ինքն առեալ զնշանն տէրունական, ասէ բարձր ձայնիւ 'ի լուր ամենեցուն. Քեզ ասեմ այր դու յանուն Յիսուսի Քրիստոսի, որ հաստատեաց զարարածս յոչնչէ, ասա առաջի ամենեցուն թէ ո՞վ սպան զքեզ ։ Եւ նա յարեաւ վաղվաղակի և նայեցեալ յամբոխն՝ ետես զսպանողն իւր, և ասէ. Այրս այս սպան զիս ։ Յայնժամ ասէ ցնա սուրբն Աստուծոյ. Դարձեալ դիր զգլուխ քո և ննջեա մինչև 'ի հասարակաց յարութիւնն. և իսկոյն մեռաւ դարձեալ. և այսպէս զերծեալք 'ի մահուանէ՝ փառաւորեցաւ անուանն Քրիստոսի [1] ։

## Զ

### ՎԱՍՆ ՄԱՀՈՒԱՆՆ ԶԱՔԱՐԷԻ ԶՕՐԱՎԱՐԻՆ

Յետ բազում քաջութեանց և յաղթութեանց՝ զոր արարին մեծամեծ իշխանքն Զաքարէ և Իւանէ, չոգան զօրօք բազմօք 'ի քաղաքն 'ի Մարանդ, և առին զնա և աւերեցին զբազում գաւառս որ շուրջ զնովօք. և ապա գնացին յԱրտաւիլ քաղաքն, նմանապէս առին և զնա ։ Եւ բազումք 'ի նոցանէ աղօթակոչօք իւրեանց, զոր մուղրի անուանեն՝ ապաստանեալք էին յաղօթարանն իւրեանց. Հրամայեաց Զաքարէ բերել

1 Աւանդի այսպէս և 'ի Յայսմաւուրս ոմանս, և յայսմանէ Մեռելայարոյց կոչի վարդապետն ։

խոտ և ցօղունս և արկեալ զնովաւ նաւթ և ձէթ և բորբոքել հրով, և այնպէս այրեաց զնոսա, և ասէ ցիշխանս և աշխարհականս[1], փոխանակ իշխանաց Հայոց՝ զոր այրեցին Տաճիկք 'ի Նախջաւանի. և կուրայքն՝ փոխանակ քահանայիցն Բագուանայ՝ զոր մորթեցին, և զարիւնն արկին զպարսպովն եկեղեցւոյն, որ մինչև ցայսօր սևացեալ երևի տեղին։ Իսկ ինքն դարձաւ յաշխարհն իւր, և 'ի ճանապարհին հիւանդացաւ. զի եղին վէրք անբժշկելիք յանդամս նորա, և յողջանալ միոյն միւսն բուսանէր. և այսպէս վտանգեալ զնա, և յետ սակաւ աւուրց վախճանեցաւ. և եղև սուգ ամենայն քրիստոնէից. և տարեալ թաղեցին զնա 'ի Սանահինն 'ի մեծ եկեղեցւոջն, առաջի դրան խորանին, ներքոյ՝ յահեակ կողմանէ։ Իսկ սուգ մեծ զգեցաւ թագաւորն մեծ Վրաց Գէորգի, մականուն Լաշա, որդի Սօսլանայ և Թամարին, թոռն Գէորգայ մեծի թագաւորի, և եղբայր իւր Իւանէ ամենայն զօրօք Վրաց։ Իսկ մնաց որդի մի Զաքարէի մանուկ տիօք Շահնշահ անուն նորա, զոր սնոյց Իւանէ ընդ որդւոյ իւրում Սարգսի՝ զոր Աւագն կոչէին, մինչև եհաս յարբունս հասակի, և ապա տիրեաց հայրենի իշխանութեանն։

Է

ՎԱՍՆ ԼԵՒՈՆԻ ԱՐՔԱՅԻ ԵՒ ՎԱԽՃԱՆԻ ՆՈՐԱ.

Իսկ բարեպաշտ և հզօր արքայն Հայոց Լևոն 'ի վերայ բազում քաջութեանց զոր արար՝ հնազանդեցոյց զշուրջակայ զազգսն. եկն և ապստամբ կաթուղիկոսն Հայոց Յովհաննէս՝ որ 'ի Կլայն հռովմէականն, և հաշտեցան ընդ միմեանս, իբրև վախճանեցաւ տէր Դաւիթ՝ որ յԱրքակաղնին։ Ապա հիւանդացաւ և արքայն Լևոն հիւանդութիւն՝ որ և մեռաւ իսկ. և կոչեալ առ ինքն զկաթուղիկոսն Յովհաննէս, և զամենայն զօրագլուխս զօրօք իւրեանց, և զի որդի ոչ ունէր՝ բայց միայն դուստր մի, զոր յանձնեաց 'ի կաթուղիկոսն և յամենայն իշխանսն՝ թագաւորեցուցանել զնա

1 Անելի է իշխանին և աշխարհականին. տ. Վ. 140։

փոխանակ իւր, և կեալ նմա հնազանդ, և ամուսնացուցանել զնա զուգապատիւ առն. և ետ զնա 'ի ձեռս կաթուղիկոսին և երկու մեծամեծ իշխանացն, Կոստանդնի՝ ազգականին իւրոյ, և Սիր Հանսայ՝ որ էր հռոմ դաւանութեամբ. և ինքն հանգեաւ խաղաղական մահուամբ 'ի վեց հարիւր վաթսուն և ութ թուին Հայոց, կալեալ զթագաւորութիւնն ամս քսան և չորս, յաղթութեամբ և բարի անուամբ. և յոյժ սգացին ամենայն աշխարհն իւր և ամենայն զօրքն առ հասարակ. զի յոյժ սիրելի էր ամենեցուն քրիստոսասէր արքայն. և յետ օրինաւոր սգոյն՝ կազմեցան առ 'ի թաղել, և եղև հակառակութիւն. զի կէսքն ասէին թաղել զնա 'ի թագաւորանիստ քաղաքն 'ի Սիս, և այլք 'ի վանքն որ կոչի Ակներ, զի յոյժ սիրէր նա զայն վանքն՝ վասն բարիոք կարգաւորութեան նոցա, և հաճոյական աղօթից. իսկ ոմանք ոչ համարեցան պատշաճ, զի եզր էր տեղին այն, և թշնամիք բազում էին նորա յայլազգեաց. գուցէ ասեն եկեալ հանցեն զդա և այրեսցեն հրով, վասն բազում քինուն[1] զոր ունէին ընդ նմա. ապա միաբանեալ ամենեցուն տարեալ զմարմին նորա թաղեցին 'ի Սիս. զսիրտն և զփորն տարան 'ի վանքն Ակներ: Այսպէս հանգեաւ բարեպաշտութեամբ քաջ և յաղթողն ամենայնի արքայն Լևոն:

Այս կաթուղիկոսն և իշխանք բերին զորդի տեառն Անտիոքայ՝ զոր բրինձն անուանէին, և ետուն զդուստրն արքային Լևոնի 'ի կնութիւն նմա, և թագաւորեցուցին զնա. և էր անուն պատանւոյն Փիլիպպոս, և անուն թագուհւոյն Զաբել: Եւ նա իբրև եկաց 'ի թագաւորութեան ամս չորս, խաբեաց զնա հայրն և առ 'ի նմանէ զթագն Լևոնի արքային, և զպաղատն արքունական[2], զոր յերևելի աւուրս կանգնէին, և այլ գանձս ոսկւոյ և արծաթոյ: Եւ իբրև տեսին եթէ ոչ է միամիտ յարքայութեան անդ, ըմբռնեալ զնա արարին արգելս, մինչև բերցէ զթագն և զգանձն զոր տարաւ: Իսկ հայրն ոչ ետ և ոչ զմին, այլ և ոչ օգնել կարաց որդւոյ իւրում, և թողին զնա անդ մինչև 'ի նմին մեռաւ: Այս

1 Ա. Գ. ոխակալութեանն:

2 Թուի վրան կամ գահաւորակ:

իշխանն մեծ Կոստանդին հաւանեցոյց զկաթուղիկոսն և զայլս ոմանս 'ի մեծամեծացն՝ թագաւորեցուցանել զորդին իւր զՀեթում՝ մանուկ տիօք, առոյգ մարմնով և գեղեցիկ տեսանելով. իսկ Թագուհին ոչ հաւանէր լինել կին մանկան. այլ չոգաւ ապաստանեցաւ[1] 'ի Սելևկիա առ Ֆռանկս որ անդ, զի մայր նորա Ֆռանկ էր ազգաւ 'ի Կիպրոս կղզւոյ. և առեալ Կոստանդնի զզօրսն ամենայն պաշարեաց զքաղաքն, մինչև ոչ կամաւ ետուն զԹագուհին 'ի ձեռս նորա. և տարեալ ամուսնացոյց զնա որդւոյ իւրում, և եղեն 'ի նմանէ որդիք: Այլ յոյժ բարեպաշտ էր կինն այն և ողջախոհ, սիրող ամենայն երկիւղածացն Աստուծոյ, և աղքատասէր, պահօք և աղօթիւք հանապազ ճգնէր: Իսկ մեծ իշխանն Կոստանդին իբրև առ զԹագաւորութիւնն որդւոյ իւրում Հեթմոյ, զամենայն հոգս արքայութեան յանձն առեալ՝ իմաստաբար կարգաւորէր. զկէսն հնազանդէր սիրով, և զոչ հնազանդսն՝ բառնայր 'ի միջոյ, զոմանս փախստական առնելով, և զայլս մահուամբ: Արար սէր և միաբանութիւն ընդ սուլտանին Հռոմոց, որում անուն էր Ալադին[2]: Նոյնպէս առնէր և ընդ ամենայն շուրջակայ ազգսն, և յամենայն կողմանց խաղաղացոյց զաշխարհս. և կարգեաց զանդրանիկ որդին զՍմբատ՝ զօրավար, և զմիւսն[3] իշխան Թագաւորութեան. և զամենայն վանօրայս երկրին անհոգ առնէր յամենայն մարմնական պիտոյից. զի ինքն տայր նոցա զմարմնաւոր պէտս նոցա, զի նոքա միայն աղօթից և պաշտաման պարապեսցին: Լցաւ և երկիրն բազմութեամբ մարդկան՝ անարուեստից և արուեստաւորաց, որք ժողովեցան յամենայն կողմանց, փախուցեալք յաւերմանէ Թաթարին զբազում աշխարհս, որք եկեալ յարևելից հիւսիսոյ՝ տապալեցին զամենայն տիեղերս:

Յետ այսորիկ մեռաւ և կաթուղիկոսն Յովհաննէս կալեալ զաթոռն ամս ութ և տասն: Այլ նստուցանէ մեծ իշխանն հանդերձ Թագաւորաւն զտէր Կոստանդին յաթոռ սրբոյն Գրիգորի, այր առաքինի և հեզ, սուրբ վարիւք կեցեալ, և անձին իւրում բարիոք ա-

1 Օօ. ապաստանեցաւ:
2 Ալայէտտին Քէյքուպատ:
3 Որ կոչիւր Լևոն:

առաջնորդեալ, որպէս զարգարեաց զկարգ եկեղեցւոյ ուղղափառութեամբ. զսա պատուէին ամենայն ազգք, ոչ միայն քրիստոնեայք՝ այլ և ազգն Տաճկաց։ Դէպ եղև երից սուլտանացն գալ 'ի սահմանս Հռոմկլայն կոչեցեալ քաղաքի, ուր էր աթոռ կաթուղիկոսութեան, 'ի վերայ Եփրատ գետոյն. գնաց կաթուղիկոսն 'ի տես սուլտանաց. իբրև գիտացին զգալուստ նորա՝ ինքեանք իսկ ընթացան ընդ առաջ նորա, և բերեալ զնա 'ի բանակն մեծաւ պատուով, կանգնեցին խորան ագնիւ 'ի մէջ խորանաց իւրեանց. 'ի մի կողմանէ խորան Մէլիք Թէմիրին՝ որ իշխէր կողմանցն Եգիպտոսի, և 'ի միւս կողմանէ խորանն Մէլիք Աշրաֆին՝[1] որ իշխէր մեծ մասին Հայոց աշխարհին և Միջագետաց, նոյնպէս և խորանն եղբօրորդւոյ նորա. և այսպէս մեծապատիւ արարեալ զնա յոլով աւուրս՝ և արձակեցին զնա մեծաւ պարգևօք, գեղօք և գաստակերտօք. զի Աստուած զփառաւորիչս իւր փառաւորէ աստ և 'ի հանդերձեալն։

Եւ եղև սկիզբն թագաւորութեանն Հեթմոյ 'ի վեց հարիւր եօթանասուն և երեք թուին Հայոց։

## Ը

### ՀԱՄԱՌՕՏ ՀԻՇՈՒԱԾՔ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ ԿՈՂՄԱՆՑՆ ԱՂՈՒԱՆԻՑ ԸՆԴ ՆԵՐՔՈՅՍ ՋՐՈՒՑԱՏՐԱԲԱՐ

Սկիզբն առաջնոյ պատմութեանն եդաք զսուրբ Լուսաւորիչն Հայոց, զառաքեալ և զմարտիրոս և զաթոռակալ երից սուրբ աթոռոցն՝ Թադէոսի և Բարդողիմէոսի և Յուդայի Յակոբեան, զսուրբ Գրիգորիոս, և աղօթիւք նորա հասաք մինչև ցայսվայր։ Իսկ երկրորդ հատածիս դիցուք գլուխ՝ զԼուսաւորիչս կողմանցն Աղուանից, որպէս զազգայնոց և զհաւատակցաց մերոց, մանաւանդ զի և առաջնորդք նոցա հայալեզուք և հայախօսք յոլովք էին, թագաւորք՝ հնազանդ թագաւորաց Հայոց, ընդ ձեռամբ նոցա լեալք, և եպիսկոպոսք՝ ձեռնադրեալք 'ի սրբոյն Գրիգորէ և աթոռակալաց[2] նորա. և ազգն ուղղափառութեամբ ընդ մեզ

1 Սուլտան Դամասկոսի։ 2 Ա. աթոռակից։

կացեալ 'ի կրօնս. վասն այնորիկ արժան է 'ի միասին լինել երկուց ազգաց: Եւ մեք համառօտիւք սկսցուք ասել զառաջնորդս նոցա, մինչև ցայսվայր որ Թողաւս:

Արդ առաջին կողմանցն արևելից ասեն զսուրբն Եղիշէ՝ զաշակերտ մեծին Թադէոսի առաքելոյն, որ յետ մահուան սուրբ առաքելոյն՝ գնացեալ յԵրուսաղէմ առ Յակոբոս եղբայր տեառն, և 'ի նմանէ ձեռնադրեալ եպիսկոպոս՝ գայ ընդ աշխարհս Պարսից, և հասանէ յաշխարհն Աղուանից. գայ նա 'ի տեղի մի անուանեալ Գիս, և անդ շինէ եկեղեցի. և ինքն կատարի անդէն նահատակութեամբ, անյայտ թէ յումմէ եղև. և ընկեցեալ զնա 'ի ջրհոր մի ընդ այլ բազում դիականց. և անդ եկաց մինչև յաւուրս բարեպաշտ արքային Վաչագանայ վերջնոյ:

Եւ այս են Թագաւորք Աղուանից 'ի զարմից Հայկայ, յազգականութենէն Առանայ, զոր կարգեաց Վաղարշակ Պարթև՝ վերակացու և իշխան կողմանցն այնոցիկ. առաջին Վաչագան, Վաչէ, Ուռնայր. սա եկեալ առ մեծ արքայն Տրդատ և առ սուրբն Գրիգոր՝ մկրտի 'ի նմանէ, և ձեռնադրէ սուրբն Գրիգոր զայր մի 'ի սպասաւորաց նորա եպիսկոպոս, որ եկեալ էր 'ի Հռոմայ ընդ նմա, և տայ զնա Ուռնայրի արքայի: — Յաւչաքան, Մերհաւան, Սատոյ, Ասփ[1], Եսվաղէն. յաւուրս սորա արար գիր Մեսրոբ երանելի՝ Հայոց, Վրաց և Աղուանից. Վաչէ, զսա բռնութեամբ մոգ արար Յազկերտ Պարսից արքայ, (որ կոտորեաց զսուրբ Վարդանանքն. և յետոյ Թողեալ զմոգութիւնն[2]) ընդ նմին և զԹագաւորութիւնն՝ կրօնաւորեալ խստակրօն վարիւք հաշտեցոյց զԱստուած որում և մեղաւն: Եւ ապա Վաչագան բարեպաշտ, զոր յիշատակեցաք 'ի վերոյ: Սա լուաւ եթէ զսուրբն Եղիշէ ընկեցին 'ի գուբն, հրամայեաց հանել զամենայն ոսկերս որ 'ի գբի անդ, և հանեալ կուտեցին զնա շեղջս շեղջս. և յաղօթս կացեալ բարեպաշտ արքայն զի յայտնեսցէ զոսկերս սուրբ Եղիշէի. և եւ հողմն ուժգնակի և ցանեալ ցրուեաց զամենայն ոսկերսն ընդ երեսս դաշտին, բաց յոսկերաց սրբոյն Եղիշէի. և բարձեալ արքայն մեծաւ

1 ՕՕ. Սափրատա:

2 Ըստ տպագրին:

պատուով գոհանալով զԱստուծոյ՝ բաշխեաց ամենայն երկրին իւրոյ ։

Ապա սուրբն Շուփհաղիշոյ եկաց եպիսկոպոս · բայց վասն առնս այսորիկ յառաջ կարգելոյ՝ երկմտութիւն գոյ մեզ · զի որ գրեաց զպատմութիւնն Աղուանից՝ զայս անուն կարգէ յաւուրս Վաչագանայ բարեպաշտի լեալ · և պատմ վկայ օրէնքն՝ զոր եդ Վաչագան արքայ՝ ամենայն եպիսկոպոսիւք Աղուանից, և գրէ այսպէս · Ես Վաչագան Աղուանից արքայ, և Շուփհաղիշոյ Աղուանից արքեպիսկոպոս Պարտաւայ · և յետ այսորիկ այլ անուն ոչ գտանի 'ի կարգ համարոյ եպիսկոպոսաց · այլ մեք որպէս գտաք և եդաք ։ Եւ ապա տէր Մաթէ, տէր Սահակ, հինգ · տէր Մովսէս, վեց · տէր Պանտ, եօթն · տէր Ղազար, ութ ։ Եւ ապա սուրբ մանուկն Վրթանայ մեծի որդի Գրիգորիս, եղբայր Յուսկանն, թոռն սրբոյն Գրիգորի · զոր առաքեաց մեծ արքայն Տրդատ, և սպանեալ եղև 'ի դաշտին Վատնայ՝ վասն վկայութեանն Աստուծոյ · և բերեալ թաղեցաւ յԱմարաս, և յետոյ նշխարքն գտեալ եղև յաւուրս Վաչագանայ · ընդ որս և նշխարք սրբոցն գտեալ եղեն՝ Զաքարիայի հօրն Յովհաննու Մկրտչի, և Պանտալեոնի մեծի բժշկի, որ վկայեաց 'ի Նիկոմիդիայ քաղաքի յաւուրս Մաքսիմիանոսի, զոր տարեալ էր սուրբն Գրիգորիս ընդ իւր ։ Եւ ապա տէր Զաքարիա, տասն · տէր Դաւիթ, մետասան · տէր Յովհաննէս, որ և Հոռնացն եղև եպիսկոպոս, երկոտասան ։ Տէր Երեմիա, երեքտասան · յաւուրս սորա արար երանելին Մեսրոպ գիրս Աղուանից մեծաւ ջանիւ ։ Տէր Աբաս, չորեքտասան · առ սա եւս գրեցին 'ի ժողովոյն Դունայ՝ զսուրբ Աստուածն անմահ և խաչեցար, և ասել մի բնութիւն աստուածութեան և մարդկութեան ։ Տէր Վիրոյ, ամս երեսուն և երեք · սա բազում ամս 'ի դիպահոջ լեալ 'ի դրան Խոսրովու Պարսից արքայի, և յետ մահուան նորա ազատեալ եկն յերկիր իւր · սա թափեաց զգերեալս Հայոց, Վրաց և Աղուանից՝ 'ի Թաթայ Խագանէ, յորդւոյն Ջաբու-խաքանեայ, որ գերեաց զաշխարհս [1] · սա շինեաց քաղաքս հինգ [2] յանուն Թաթայ,

1 Ցերկարագոյնս ոճով պատմէ զայսոսիկ պատմիչն Աղուանից Մովսէս Կաղանկատուեցի ։

2 Այսպէս ՕՕ · Թէպէտ վեց քաղաքք համարին, գուցէ առաջինն վրիպակաւ մուծեալ, զի և չէ մեզ ծանօթ ։

զՐ ախթար, զՐ ամբեր, զՐ աքի, զՐ խրուան, զՐ ա-
մսիսի, զՐ ապորան։ Տէր Զաքարիա ամս հնգետա-
սան. սա աղօթիւք իւրովք ապրեցոյց զմեծ քաղաքն
Պարտաւ 'ի գերութենէ. տէր Յովհաննէս, ամս քը-
սան և հինգ։ Տէր Ուխտանէս, ամս երկոտասան. սա
անէծ զնախարարս Աղուանից վասն ազգաշաղախ խառ-
նակութեանն, և սատակեալք եղեն ամենեքեան։ Տէր
Եղիազար, ամս վեց. տէր Ներսէս, ամս եօթնևտասն.
սա մինչ եպիսկոպոս էր Գարդմանայ[1] հաւանեցոյց
զկին ոմն Սպրամ անուն՝ կին իշխանին Աղուանից, զի
թէ տացէ զնա ձեռնադրել կաթուղիկոս Աղուանից՝
զամենայն ինչ ըստ կամաց նորա գործեսցէ. և էր կինն
աղանդաւոր(!) Քաղկեդոնի, և աղաչեալ զեպիսկոպո-
սունսն՝ ետ ձեռնադրել զՆերսէս—Բակուր 'ի կաթու-
ղիկոսութիւն Աղուանից։ Իբրև անցին աւուրք ինչ ե-
րևեցոյց զաղանդն՝ զոր յղացեալ ունէր. իբրև յանդի-
մանեցաւ յեպիսկոպոսաց և յերիցանց՝ հալածական ա-
րար զբազումս, և ժողովեալ առաջնորդաց Աղուանից՝
նզովեցին զնա, և գրեցին առ կաթուղիկոսն Հայոց (Ե-
ղիա) օգնել նոցա. և գլխաւորն Տաճկաց Աբդլմէլիք
լուաւ թէ առաջնորդն Աղուանից և կին մի՝ կամին ապ-
ստամբեցուցանել զաշխարհս 'ի քէն, զի զՅունօք
թևակոխեն. և հրամայէ Եղիայի գնալ յաշխարհն
Աղուանից, և ընկենուլ զնա յաթոռոյն, և զնա և զը-
կինն կապել 'ի միասին զոտան՝ և արկանել զուղտով
որպէս զբեռն. և տանել զնոսա 'ի դուռն արքունի, զի
նշաւակ լիցի ամենայն զօրուն։ Նա գնացեալ Եղիայի
և ներքինւոյն արքայի 'ի քաղաքն Պարտաւ, և արարին
զհրաման արքունի[2]. և մինչ այնպէս անարգանօք ձա-
ղէին զնա՝ 'ի նեղասրտութեան անկեալ Ներսէս յետ
ութ աւուրց վախճանեցաւ դառնապէս. և միաբան ե-
տուն ամենայն նախարարք Աղուանից և ամենայն ե-
պիսկոպոսք առաջի ներքինւոյն՝ հրամանաւ և միաբա-
նեաւ արքունի, զի առանց կաթուղիկոսին Հայոց հրա-
մանի ոչ ձեռնադրեն կաթուղիկոս Աղուանից։ Նա ձեռ-
նադրեաց Եղիա յաթոռն Աղուանից զտէր Սիմէոն՝

1 ՕՕ. Գարգմանայ։ բայց պատմչաց խականորդութիւն
2 Վասն այսորիկ և ոմն 'ի մե- տեսան Եղիշէի կոչէ զգործն։

որ զպղատորումն Ներսէսի եբարձ, կացեալ ամ մի և կէս. և եդ կանոնս եօթն տուն: Տէր Միքայէլ, ամս երեսուն և հինգ. սա կոչեաց զՄաքենոցացն հայրն՝ Սողոմոն, անէծ զտեարսն Աղուանից, զերից ազգաց ծնունդս ամուսնացեալս, որք բարձան 'ի միջոյ առ հասարակ. նզովեցին և զԹալիլէ Վրաց առաջնորդն, զի հրամանս տայր անօրէն ամուսնութեան: Տէր Անանիա, ամս չորս. տէր Յովսէփ, ամս հնգետասան. 'ի սորա հինգ ամին լցաւ երկերիւր ամ Հայոց թուին: Տէր Դաւիթ, ամս չորս. սա թափեաց զհող և զսպաս սրբութեանց, և դեղակուր լեալ մեռաւ: Տէր Դաւիթ, ամս ինն. սա վաճառեաց անօրինացն զԴաստակերտան և զՄահմանախաչ: Տէր Մատթէոս, ամ մի և կէս. տէր Սահակոն, ամս երկուս. տէր Սողոմոն, ամս երիս. տէր Թորոս, ամս չորս. տէր Սողոմոն, ամս մետասան և կէս. տէր Յովհաննէս, ամս քսան և հինգ. սա փոխեաց զկաթուղիկոսարանն 'ի Բերդակոր՝ (որ էր) ի բերանց հովոցաց տեղի, յորժամ հանաւ 'ի Պարտաւայ: Տէր Մովսէս, կէս ամ. տէր Դաւիթ, ամս քսան և ութ: Սա օրհնեաց զանօրէն ամուսնութիւնն Շաքոյ տեառն. և նորին իշխանին եղբայր աշխարհականն հարցեալ ասէ ցնա. Ուստի գաս տէր. և նա ասէ. Ի տանէ եղբօր քո. և ասէ իշխանն՝ Դաւթի. Լեզուդ որ օրհնեաց՝ մի խօսեսցի, և աջդ չորասցի. և առժամայն եղև այնպէս, և ոչ բժշկեցաւ մինչև 'ի մահ: Տէր Յովսէփ, ամս քսան և հինգ. 'ի սորա երեք ամին՝ լցաւ թուին Հայոց երեքհարիւր: Տէր Սամուէլ, ամս եօթն և տասն. անձամբ առեալ սորա զպատիւն, և յետոյ լուծեալ 'ի Գէորգէ կաթուղիկոսէ Հայոց, 'ի հարկէ առնու զերկրորդ ձեռնադրութիւն 'ի Դուին: Տէր Յովնան, ամս ութ և կէս. սա էր դրան եպիսկոպոս Հայոց. և մինչդեռ 'ի գերութեան էր Գէորգ՝ սա գայ յԱղուանս, և անդրէն ձեռնադրի առանց կամաց տեառն Գէորգայ. և իբրև գնեցին զտէր Գէորգ իշխանքն Աղուանից՝ լուծանէ զնա 'ի պատուոյն. բայց աղաչեալ զնա իշխանաց Աղուանից՝ վասն երախտեացն որ առ նա, կրկին ձեռնադրէ զնա ևս: Տէր Սիմէոն, ամս քսան և հինգ. տէր Դաւիթ, ամս հինգ. տէր Սահակ, ամս ութ և տասն: Տէր Գագիկ, ամս չորեքտասան. 'ի սորա չորրորդ ամին լցաւ թր-

ւական Հայոց չորեքհարիւր ։ Տէր Դաւիթ, ամս վեց . սա առ ձեռնադրութիւն յԱնանիայէ Հայոց կաթուղիկոսէ . տէր Պետրոս, ամս վեշտասան, յառաջնորդութենէն Փառիսոսայ վանաց . ապա տէր Սարգիս այրն Աստուծոյ, և յետ նորա Յովսէփ . և ապա միւս տէր Սարգիս . և զկնի նորա Ստեփանոս . ապա տէր Յովհաննէս . և ապա տէր Ստեփաննոս, ամ մի և կէս, 'ի տիս պատանեկութեան վաղճանեալ ։

Յամին հինգհարիւր ութսուն և ութ թուին, յաւուրս տեառն Գրիգորիսի մեծի Հայոց կաթուղիկոսի[1], առաջնորդ ոչ գոյր տանն Աղուանից զամս քսանևհինգ . ապա մանուկ մի էր յազգէ կաթուղիկոսաց Գագիկ անուն, որդի Գէորգայ, թոռն Կարապետի, զոր սնուցին և ուսուցին . և իբրև 'ի չափ հասաւ մանուկն, ապա գրեն թուղթ մաղթանաց Գրիգոր վարդապետն որդի Թոքակերի, և Դաւիթ որդի Ալաւկայ, և այլ աշխարհն Չոլայ[2] և Աղուանից, առ մեծ հայրապետն Հայոց Գրիգորիս, որ ընդ այն ժամանակս էր նա 'ի կողմանս արևմտից . այր մի ընդ թղթոյն առաքեցին, զի ձեռնադրեսցէ զնա եպիսկոպոս, և առաքեսցէ և ինքն եպիսկոպոս զմի յիւրոցն, և տացէ ձեռնադրել զմանուկն Գագիկ յաթոռն Աղուանից . զի մի կորիցէ առաջնորդ յաշխարհէն ։ Իսկ սուրբ հայրապետն ձեռնադրեաց զառաքեալն, հրաման ետ և եպիսկոպոսին Կարնոյ՝ գնալ յաշխարհն Աղուանից, ձեռնադրել նոցա կաթուղիկոս ։ Սա եկեալ եպիսկոպոսին Կարնոյ՝ Սահակայ, և միւսն ևս, ձեռնադրեն այլ ևս եպիսկոպոսս երկոտասան, ըստ օրինի հրամանաց գրոց, և ապա ձեռնադրեցին զԳագիկ կաթուղիկոս, և անուանեցին Գրիգորէս, ըստ անուան կաթուղիկոսին Հայոց ։

Ընդ աւուրսն այնոսիկ եղև յանկարծակի մէգ և մառախուղ, և լցաւ առ հասարակ լեառն և դաշտ, և եղև շարժ ահագին, և կործանեցաւ մայրաքաղաքն Գանձակ . և շնորհօքն Աստուծոյ ապրեալ եղև նորընծայ կաթուղիկոսն . բայց մեռաւ 'ի շարժմանէն մեծ վարդապետն Գրիգոր, հանդերձ այլ բազմութեամբ արանց

1 Գրիգորիս Փոքր Վկայասէրն, եղբայր Ն · Շնորհալւոյ ։

2 ՕՕ · Աւփայ ։

և կանանց և մանկտւոյն, որոց ոչ գոյ թիւ, զոր տապա-նէր շինուածքն՝ անկեալ 'ի վերայ: Եւ եկն Թագաւորն Վրաց Դեմետրէ և աւար էառ զամենայն ինչսն, և տարաւ զդրունս քաղաքին յիւր յաշխարհն. փլաւ և լեառն Ալհարակ, և կապեաց զձորակ՝ որ անցանէր ընդ մէջ նորա, և եղև ծով՝ որ է մինչև ցայսօր ժամանակի: Եւ յետ ութ ամի երևեցաւ աստղ մի գիսաւոր լի լու-սաւորութեամբ, որ նշանակ էր սովոյ և սրոյ և գերու-թեան, որ կալաւ զաշխարհս: Եւ յորժամ եղև այր կատարեալ կաթուղիկոսն Խաչիկ, լի իմաստիւք աս-տուածայնովք, փոխեցաւ յաշխարհէս, և դարձեալ խաւար եղև կողմանցն այնոցիկ: Եւ ապա տէր Բեժ-գէն, որ եթող զկարգն և էառ կին. և յետ նորա տէր Ստեփանոս, ամս քառասուն. և զկնի նորա տէր Յովհաննէս, ամս քառասուն, որ շինեաց եկեղեցի մի հրաշալի 'ի գաւառն Միափոր, 'ի վանքն՝ որ կոչի Խամ-շի. սա որ եհաս յաւուրս մեր: Եւ ապա տէր Ներսէս եղբայր նորին, այր հեզ և բարի բնութեամբ, որ ձեռ-նադրեալ եղև 'ի վեց հարիւր ութսուն և չորս թուին Հայոց:



Թ

ՎԱՍՆ ԽԱՌՆԵԼՈՅ ԹԱԹԱՐ ԱԶԳԻՆ ԶՕՐՈՒՆ, ԵՒ ՓԱԽՍՏԵԱՆ
ԱՌՆԵԼՈՅ ԶԹԱԳԱՒՈՐՆ ՎՐԱՑ

Ի վեց հարիւր վաթսուն և ինն թուին՝ մինչդեռ հպարտացեալ էին Վիրք յաղթութեամբն զոր յաղթե-ցին Տաճկաց, յինքեանս կորզելով բազում գաւառս Հայոց 'ի նոցանէ, յանկարծակի յեղակարծում ժա-մու յոլով գունդք զօրու ծանու՝ ամենայն կազմութեամբ ելեալ ընդ դուռն Դարբանդայ և եկեալ յաշխարհն Աղուանից, գալ անցանել յաշխարհս Հայոց և Վրաց, և զոր ինչ գտանէր 'ի ճանապարհին՝ զամենեսեան սրոյ ճարակ տայր, զմարդ և զանասուն՝ մինչև 'ի շունս ան-գամ. և մեծագին հանդերձից և ընչից փոյթ ոչ առ-նէին, բայց 'ի ձիոյ: Եւ փոյթ ընդ փոյթ չոգան մինչև 'ի քաղաքն Տփխիս, և դարձեալ եկին յաշխարհս Ա-ղուանից 'ի սահմանս Շամքոր քաղաքի. և համբաւ

տուութեան զայր փնոցանէ, թէ մոգք են և քրիստո-
նեայ հաւատով և նշանագործ, և եկեալ են 'ի վրէժ-
խնդրութիւն քրիստոնէից՝ որ 'ի բռնութենէն Տաճ-
կաց. և ասէին թէ ունին եկեղեցի վրանեայ և խաչ
ոքանչելագործ, և բերեալ կապին մի զարի՝ արկանեն
առաջի խաչին, և ամենայն զօրքն առեալ տանին տան
երիվարաց իւրեանց, և ոչ պակասի. այլ իբրև եկին [1]
ամենեքեան և սպառեն 'ի տանելոյ՝ նոյն չափ կապճին
անդէն մնայ, նոյնպէս և զկերակուրս մարդկան. — և այս-
պիսի համբաւ ստութեան լցաւ յաշխարհս։ Այսն այ-
նորիկ ոչ ամրացան բնակիչք աշխարհին, մինչև երեց
մի աշխարհական առեալ զժողովուրդ իւր, և խաչիւք
վառելովք ընթացաւ առաջի նոցա. և նոցա սուր 'ի վե-
րայ եդեալ կոտորեցին զնոսա առ հասարակ. և այսպէս
յանհոգս տեսեալ զբազումս՝ կոտորեցին, և աւերեցին
զյոլով տեղիս. և ինքեանք ամրացուցին զախս իւրեանց
('ի մօր և 'ի տղմուտ տեղիս) որ կայ 'ի մէջ երկուց քա-
ղաքացն՝ Պարտաւայ և Նելուկումայ [2], յամայագոյն [3]
տեղիս, զոր Նեղամէջն կոչեն. և ինքեանք յանդուգն
յարձակմամբ աւերէին զբազում գաւառս։ Նոցա դար-
ձեալ զօրաժողով լեալ թագաւորն Վրաց Լաշայն, և
մեծ հազարապետն Իւանէ, եկաց ընդդէմ նոցա մար-
տիւ պատերազմի. և իջեալ 'ի դաշտավայր տեղիս՝ զոր
Խոնանն [4] անուանեն, քանզի անդ պատահէր թշնա-
մեաց, և մարտուցեալք ընդ միմեանս՝ զառաջինն 'ի
փախուստ դարձուցին զթշնամիսն. բայց քանզի դարան
գործեալ էր թշնամեաց՝ յարեան յետուստ կողմանէ
և սկսան կոտորել զզօրսն Վրաց. դարձան ընդդէմ և
փախուցեալքն, աստի և անտի 'ի մէջ առեալ մեծ հա-
րուածս հասուցին 'ի վերայ զօրուն քրիստոնէից. և փա-
խեաւ թագաւորն և իշխանքն ամենայն. և ժողովեալ
թշնամեացն զաւար զօրուն՝ տարան 'ի բանակս իւ-
րեանց։ Դարձեալ միւսանգամ զօր ժողովեալ թա-
գաւորին Վրաց ևս բազում քան զառաջինն, կամե-

1 Այսպէս ՕՕ։

2 Պարզեգան ըստ օրինակաց 'ի դաշտին մեծի Ուռեկացւոց՝ առ Կուր և Երասխ խառնելին յերար. զբաղդայքն համանուն աւերեցին թաթարքն յայս արշաւանս։

3 ՕՕ. յամագայն։

4 Ի հարաւակողմն Տփղեաց, 'ի սահմանակցութեան Վրաց, Աղուանից և Հայոց։

ցեալ տալ պատերազմ ընդ Թշնամւոյն. իսկ նոցա առեալ զկին և զորդիս և զամենայն ախոն՝ կամեցան անցուցանել ընդ դուռն Դարբանդայ յաշխարհն իւրեանց. իսկ զօրն Տաճկաց որ 'ի Դարբանդ՝ ոչ ետուն նոցա մուտ անցից. և նոցա հատեալ զլեառն Կովկասու ընդ անանց՝ 'ի վիհսն լնլով զփայտ և զքար նաև զախք իւրեանց և զերիվարս և զկազմած պատերազմական, անցին գնացին յաշխարհն իւրեանց: Էր անուն գլխաւորին Սաքատա Բահատուր[1]:

## Ժ

### ՎԱՍՆ ՈՐ Ի ՍԱՀՄԱՆՍ ԳԱՆՁԱԿԱՑ ԱՆԿՈՒՄՆ ԵՂԵՒ ԶՕՐԱՑՆ

Զկնի այսորիկ իբրև ժամանակք ինչ անցին 'ի վերայ, այլ զօր ել 'ի Հոնաց, զոր Խուչախն[2] անուանէին, և եկեալ ընդ աշխարհն Վրաց առ Թագաւորն Լաշա, և առ հազարապետն Իւանէ, զի տացէ նոցա տեղի բնակութեան, և նոքա ծառայեսցեն նմա միամտութեամբ. իսկ նոքա ոչ առին յանձն լինել նոցա ասպնջական. և նոքա դէմ եդեալ գնացին առ բնակիչսն քաղաքին, և նոքա յօժարութեամբ ընկալան. քանզի էին 'ի մեծ նեղութեան 'ի զօրացն Վրաց, որք աւերէին զաշխարհս նոցա, և գերէին զմարդ և զանասուն, ետուն նոցա տեղի բնակութեան 'ի սահմանս քաղաքին, և օգնէին նոցա կերակրովք և ըմպելեօք. զի նոքօք կայցեն ընդդէմ Թագաւորութեանն Վրաց: Իսկ զօրքն Հոնաց դադարեալ անդ և զետեղեալ, զօրաժողով եղեալ ապա Իւանէ և դիմեաց հպարտութեամբ 'ի վերայ նոցա, մեծամեծս փքայր բնաջինջ առնել զնոսա և զքաղաքն. 'ի բազմութիւն զօրացն յուսացեալ և ոչ յԱստուած, որ տայ զյաղթութիւնն ում և կամի: Եւ իբրև հարան ընդ միմեանս՝ ելին խուժքն հանգստեամբ յորջից իւրեանց, և զվաստակեալ և զլքեալ զօրսն[3] Վրաց 'ի բե-

1 Ա. Գ. Սոխա Սոխակապուր: Ըստ պատմութեան Թաթարաց երկու զօրավարք էին առաջնորդք, Սուպուդայ և Ջէպէ:

2 Ղփչախք կամ Քափչաք տոհմակիցք են Թուրքաց, և ոչ ընկէր Հոնք. և կալեալ էին զերկիր Խազրաց: — Տես և Վ. 142:

3 ՕՕ. զօրսն:

րան սրոյ արկեալ, և զբազումս ձերբակալ արարեալ և զմնացորդսն փախուցեալ. և մեծ բեկումն եղև յաւուրն յայնմիկ զօրուն քրիստոնէից. և այնքան թողան 'ի ձեռանէ Աստուծոյ՝ մինչ զի մի վատ այր զբազումս քաջաց արս և անուանիս եղեալ 'ի պատերազմունս՝ իբրև հովիւ զհօտս առաջի անցուցեալ էին՝ բերէին[1]. զի եբարձ տէր զօգնութիւն 'ի սրոյ նոցա, և ոչ ընկալաւ զնոսա 'ի պատերազմի. բերէին զարս պատուականս և վաճառէին ընդ դոյզն հանդերձից և կամ ընդ կերակրոց. և Պարսիցն գնեալ զնոսա՝ յանհնարին նեղութիւնս կեղէին զկեանս նոցա. և այնքան պահանջէին 'ի նոցանէ կշիռս ոսկւոյ և արծաթոյ՝ մինչև անհնարին լինել հատուցանել. և բազումք մեռան 'ի բանտի անդ: Ընդ ըմբռնեցաւ ընդ այլսն և Գրիգոր որդի Հաղբակայ[2], եղբայր քաջին Սասակայ, և Պապաք նորուն եղբօրորդի. զի երեք որդիք էին Սասակայ՝ Պապաքն, Սկդէմ և Հասան, արք քաջք և անուանիք, որ յահէ նոցա դողայր ամենայն զօրն Տաճկաց. զՊապաքն սպանին 'ի պատերազմի, իսկ զԳրիգոր ձերբակալ արարեալ՝ նեղեցին բազում խոշտանգանօք, զի ուրասցի ըզՔրիստոս, և նա ոչ առ յանձն. այլ առաւել անարգէր ..... զ'օրէնսդիրն նոցա .... և ...... զ'օրէնս նոցա. և նոցա բարկացեալ քարշեցին զնա մերկ 'ի վերայ երկրի, և փշով քանցեցին զամենայն մարմինս նոցա. և այնքան տանջեցին զնա՝ մինչև 'ի գանելն նոցա աւանդեաց զհոգին, և ընկալաւ 'ի Քրիստոսէ զվկայական պսակն: Սոքա գաւառօք Խաչէնեցիք էին՝ յերևելի ազգէ, հաւատով քրիստոնեայք ուղղափառք և ազգաւ Հայք. և զայլ բազումս 'ի գերելոցն՝ անօրէն Պարսիկք զանազան տանջանօք նեղէին, քաղցիւ, ծարաւով և մերկութեամբ: Իսկ քրիստոնեայքն՝ որ էին 'ի քաղաքին Գանձակայ՝ բազում բարեգործութիւնս ցուցին առ գերեալսն. զոմանս գնելով և ազատելով, և զկէսս կերակրելով, և կիսոցն հանդերձս զգեցուցանելով, և զվախճանեալսն թաղելով. և այսպէս յամենայն կողմանց բարերարութիւնս ցուցանելով: Բայց յետ աւուրց ինչ անցանելոյ՝ դարձեալ զօր ժողովեաց

1 Ս. յակէս ՕՕ:

2 Խաչենոյ իշխան: Տես Վ. 143:

մեծ հայրապետն Յուանէ, երթալ առնուլ զվրէժս յայնցանէ՝ որք կոտորեցին զզօրս նորա. և զինեալ 'ի վերայ նոցա յեղակարծ ժամու՝ հար սատակեաց զխուժադուժն 'ի բերանոյ սրոյ, և զաւար նոցա և զմանկունս գերի վարեալ ած յաշխարհն իւր։

## ԺԱ.

### ՎԱՍՆ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՄԽԻԹԱՐԱՅ՝ ԹԷ ՈՒՍՏԻ՛ ԷՐ, ԵՒ ԿԱՄ ՈՐԴԻՍ ՈՔ ԷՐ

Հռչակաւորն այն և մեծիմաստն գիտութեամբ՝ էր 'ի քաղաքէն Գանձակայ, քրիստոնեայ ծնողաց զաւակ, որք ետուն զնա յուսումն գրոց սրբոց. և իբրև եհաս նա յարբունս հասակին՝ ձեռնադրեցին զնա քահանայ կուսակրօն. և պաշտեալ զքահանայութիւնն յոլով ամս՝ ցանկացաւ նա հմուտ լինել գրոց սրբոց և առակաց խորհոց՝ որ կան 'ի նոսա. և հանդիպեցաւ նա Յովհաննիսի վարդապետի Տաւուշեցի անուանեալ, որ 'ի ժամանակին յայնմիկ երևելի էր գիտութեամբ. զառաջինն յաշխարհականաց կեանս կացեալ սակաւ ինչ, և մնացեալ յամուսնոյն, կրօնաւորութեան հետևեալ և հասու եղեալ աստուածային գրոց պարապեալ. և[1] էր վարդապետն Յովհաննէս շրջագայ տեղւոջէ 'ի տեղի շրջելով, քարոզելով զբանն Աստուծոյ և ուսուցանելով ըղձաւորի վարս մարդկան։ Նա բազում իրս կարգաւորեաց կարգաց և կրօնից քրիստոնէից. զի դեռ ցայն ժամանակն 'ի տեղիս տեղիս լուծանէին զշաբաթ և զկիրակէն սուրբ քառամնորդաց աղուհացիցն. սա եդ օրէնս պահօք վճարել, որպէս զայլ աւուրս շաբաթուն. բայց միայն զի տօնեսցեն 'ի շաբաթու՝ վկայիցն Աստուծոյ, և 'ի կիրակէն՝ խորհուրդ յարութեանն Քրիստոսի, և մատուսցեն պատարագ. և այսպէս հաստատութիւն կալաւ յամենայն տեղիս, զ.յիմներեակ՝ պահօք վճարել, որ յառաջն կէսք պահօք վճարէին և կէսք ոչ։ Կոչեցաւ առ սմա Մխիթարայ, և առ այլս անուն[2] էառ սա զանուանս վարդապետականս. և այնու ոչ շատացաւ,

[1] ՕՕ. և վն էր։

[2] ՕՕ. և այլք անուն։

այլ չոգաւ յարեւմուտս կոյս յաշխարհն՝ որ կոչի Սեւալեաւն [1] առ վարդապետսն՝ որք էին ուսուցիչք անդ. և զայն ինչ 'ի վեր ոչ հանեալ, թէ իցէ նորա առեալ զայն պատիւ, այլ բազում ինչ օգտեալ 'ի նոցանէ՝ եկն նա 'ի Կարնոյ քաղաք. և անդ գտանէ նա զբարեպաշտ իշխանն մեծ՝ զանուանեալն Բուրդ և հաւատովն քրիստոնեայ, որ ընդ այն ժամանակս անդ լինէր, մարտուցեալ 'ի Թագաւորէն Սրաց. և եղեալ նորա ծանօթ՝ սիրեցաւ 'ի նմանէ իբրև զհայր: Իսկ յետ այսորիկ դարձաւ նա յաշխարհն իւր. և էլ համբաւ իմաստութեան նորա յաշխարհս, և բազումք աշակերտէին նմա յուսումն վարդապետութեան, և ապա նեղեալ նա 'ի Տաճկաց 'ի սաղրելոյ կաթուղիկոսին Եղուանից Ստեփաննոսի, և եկեալ նա յաշխարհն Խաչենոյ առ Սախթանկ իշխանն Հաթերքոյ [2] և առ եղբարս նորա, որք բազում պատուով պատուեցին զնա, և անդ դադարեալ ամն ինչ. ապա դարձեալ իշխանին Բուրդի 'ի հայրենիս իւր, գայ յաշխարհն Կայենոյ և Մահկանաբերդոյ, և բազում մեծարանս եդ նմա Թագաւորին Սրաց՝ որ Օսմանն կոչէր, դարձուցանելով զնա 'ի հայրենի տեղիսն, և յայլս յոլովս. սա է հայր Սադունին: Իսկ իբրև լուաւ վարդապետն Մխիթար թէ դարձաւ Բուրդն [3] 'ի հայրենիսն իւր, եկն նա առ նա վասն առաջին սիրոյ և միաբանութեանն որ առ միմեանս, և բնակեցաւ նա 'ի վանքն որ կոչի Գետիկ, 'ի գաւառին Կայենոյ, որ 'ի վերայ գետոյն մեծագունի զոր անուանեն Աղստեւոյ գետ, յաջմէ կողմանէ գետոյն. և էր առաջնորդ վանիցն վարդապետն՝ որ Մարկաւագ անուանիւր՝ աշակերտ նորին. որ բազում ուրախութեամբ ընկալաւ զնա և ինքն սպասաւորէր նմա, և անդ դադարեալ յոլով ժամանակս: Ապա եղև շարժ սաստիկ՝ որ զբազում տեղիս կործանեաց և տապալեաց զբարձրաբերձ շինուածս. ընդ որս և խախտեցաւ եկեղեցին Գետակայ սաստիկ յոյժ, մինչ զի ոչ լինել հնար վերստին նորոգելոյ: Ապա երկմտեալ բնակչացն կամէին ցրուիլ այսր և անդր, ոչ միայն վասն խախտելոյ եկեղեցւոյն՝

1 Ի Կիլիկիա:
2 Վ. 140:
3 ՕՕ. վարդապետն:

այլ և զի նեղեալ էին 'ի մերձակայիցն. քանզի ոմն յիշխանացն Սարգիս անուն՝ փոխեաց զգիւղն իւր 'ի տեղւոջէն իւրմէ, և բերեալ շինեաց մերձ 'ի վանս այլ գեղ, և այնուհետև բազում գժտութեամբ կային ընդ միմեանս, քանզի պարսաւադէտք էին հանապազօր։ Իսկ վարդապետն սուրբ արգել զնոսա անդ 'ի խորհրդոյն յայնմանէ՝ ոչ թողուլ զմիմեանս և ցրուիլ, այլ 'ի միասին կեալ և խնդրել իւրեանց բնակութիւն։ Ապա չոգան միաբանն առ մեծ իշխանն Իւանէ եղբայր զօրավարին Սբաց Զաքարէի, որդիք քեռ բարեպաշտի իշխանին Վրդին, որ ընդ այն ժամանակս իշխէր բերդին Կայենայ և գաւառին, և ցուցին նմա զխնդիրս զի տացէ նոցա տեղի ուր զվանքն իւրեանց փոխեսցեն. և նա հրամայեաց տեսանել, թէ ո՛ր տեղի պատշաճ իցէ. և նոցա շրջեալ գտին տեղի վայելուչ և գոգաձև առ ստորոտս երկուց լերանց՝ որ կայ 'ի գլխոյ նորա, զոր անուանեն զտեղին Տանձուկաձոր[1]. և էր 'ի նմա գիւղ, և ձորակ մի փոքրագոյն անցանէր ընդ մէջ նորա, և միւս ևս յորդագոյն յաջմէ կողմանէ, տեղի փայտաւէտ և ջրաւէտ. անդր համարեցան թէ պատշաճ իցէ զետեղիլ։

## ԺԲ

### ՎԱՍՆ ՇԻՆՈՒԹԵԱՆ ՎԱՆԱՑ ՆՈՐՆ ԳԵՏԿԱՑ

Սկսաւ այնուհետև վարդապետն սքանչելի հանդերձ միաբանօք իւրովք ձեռն 'ի գործ արկանել շինութեան վանից և եկեղեցւոյ՝ 'ի վերասացեալ ձորն Տանձուտայ, հրամանաւ մեծ իշխանին Իւանէի. և շինեցին եկեղեցի մի գեղեցկաշէն փայտակերտ, և օծեալ կնքեցաւ յանուն սուրբ Լուսաւորչին Գրիգորի։ Էր 'ի տօնախմբութեան սուրբ եկեղեցւոյն և սուրբ վարդապետն Խաչատուր Տարօնացի, առաջնորդ սուրբ ուխտին՝ որ կոչի Հաղարծին, այր սուրբ և առաքինի և գիտութեամբ հռչակեալ, մանաւանդ երաժշտական արուեստիւ։ Սա պայծառացոյց զսուրբ ուխտն՝ յորում առաջնորդ էր ինքն, որ յառաջ քան զգալ նորա ամայի

1 Տանձուտայ—ձոր, որպէս և ստորև ասէ։

էր և խամրացեալ։ Սա պատուէր մեծապէս Թագաւորն Վրաց Գէորգի Հայր Թամարին. և ետ եկեղեցւոյն ձեռնագրաւ իւրով զերկու գիւղսն՝ զՄաքասաձոր[1] և զՏանձուտն, և այգի մի 'ի Միջնաշխնին. և եդ նզովս ամենայն սրբովք՝ զի մի ոք իշխեսցէ հանել զնոսա 'ի վանացն։ Սա եբեր զխազն[2] 'ի կողմանս արևելից[3], զանմարմին եղանակս 'ի մարմին ածել, զարարեալսն իմաստնոց առաջնոց, որ ցայն ժամանակս չէր ցրուեալ ընդ աշխարհս. սա եկեալ գրեաց և ուսոյց բազմաց. և ինքն անդ հանգեաւ 'ի Քրիստոս, և կայ թաղեալ յարևմտից կուսէ եկեղեցւոյն։ Շինեցին 'ի նորին Գետիկ՝ փոքրագոյն եկեղեցի մի յանուն սուրբ կարապետին Յովհաննու, 'ի ծնունդս կանանց մեծի և Քրիստոսի ձեռնադրողի, 'ի գլուխ վանիցն. և ապա սկսան հիմն արկանել մեծափառ եկեղեցւոյն կոփածոյ վիմօք և գեղեցկաշէն արուեստիւ զմբեթայարդ երկնանման, սխրալի տեսողաց, սկսեալ 'ի վեց հարիւր քառասուն թուին Հայոց, զկնի չորից ամաց առնլոյ զԵրուսաղէմ Սալահադնին, և կատարի յամս հինգ 'ի խանգար զատկին Յունաց։ Վասն այսր զատկի բազում հակառակութիւն և վէճ էր ամենայն ազգաց ընդ Հայոց[4], և առաւել Վրաց ազգին. զի լրբեալ ասէին զԹիւրն ուղիղ. զոր եղծ և ապականեաց Իրոն անիծեալ, որ 'ի դրան ամբարշտին Յուստինիանոսի. որ վասն ոչ կոչելոյ զնա 'ի ժողովն որ եղև յԱղեքսանդրիա, վասն լրմանց զատկաց և այլ տօնից. յետ վճարելոյ երկերիւրեկին Անդրէասայ, զինն ամ խանգար եկաց[5] տօնքն ամենայն. զի ոչ կարացին վարել ուղղապէս զարուեստն նոքա՝ յետ վճարելոյն։ Ապա իմաստասէր ոմն Իրաս անուն՝ ձայն արկեալ առ ինքն կոչէր զիմաստունն ամենայն ազգաց. զՓենեհէզ հրեայ, զԳիրգան յԱսորւոց, զԱգգէ 'ի Գամրաց, զԵղբս 'ի Յունաց, և զայլս յոլովս. և սկսեալ 'ի ներքուստ 'ի վեր թուել զամն, և գտեալ հաստատութեամբ՝ կարգեցին զհինգ հա-

1 Ի Կայծն գաւառի, 'ի հիւսիսոյ արևելից ծովուն Սևանայ։

2 Զնշանս եղանակաց երգոց։

3 Բ. 'ի կողմանցն յարևելից։

4 Զոր 'ի զուր ջատագովէ հեղինակդ նովին հակառակութեամբ կամ կանխակալ ախտութեամբ և դիւրահաւանութեամբ։

5 Ա. Գ. խանգարեալ։

րիւրեակ բոլորն՝ անտարակուսելի օրինակ յաւիտեան. զոր տարեալ առ Յուստինիանոս կայսրն, նա հրամայեալ Իրանի, և նա նախանձաբեկ եղեալ վասն արուեստին մեծանձնութեան և իւրն ոչ կոչելոյ[1], կամեցաւ եղծանել ինչ առնել իրացն. փոխեաց զապրիլի եօթնետասն 'ի վեշտասան և զվեցն 'ի հինգ. քաղայս եղեալ[2] թէ այլն ամենայն ճշմարիտ է բայց յայնմանէ. այն վեշտասան ոչ ինչ սխալէ, իսկ այն հինգն յիննսուն և հինգ[3] ամի հանապազ սխալէ զնոսա, ընդ Հրէայս առնելով զզատիկն, 'ի ներքոյ լրմանն. քանզի շաբաթ ածէ նոցա հինգն, իսկ վեցն՝ մեզ կիրակէ, որպէս դիպեցաւ և աստ։ Իսկ վասն այսպիսի վրիպման Հայոց և Աբաց՝ առաքէ Թագուհին Թամար և սպարապետն Զաքարիա զմի ոմն 'ի մեծ իշխանացն Աբաց, նոյնպէս և 'ի Հայոց՝ յԱրուսաղէմ, յառաջ քան զզատիկն, տեսանել զճշմարիտն. և այսոցիկ դատաւորքն՝ լուցումն կանթեղին որ 'ի սուրբ գերեզմանին Քրիստոսի. զոր ասեն խնդրուածովք սրբոյն Գրիգորի լուսաւորչին, առանց ձեռաց մարդոյ և զգալի հրոյ՝ լուցանիլ հրամանաւն Աստուծոյ յամենայն զատկի. որ լինի մինչև ցայսօր ժամանակի։ Բայց զվերահայցութիւն քաղաքին Տաճիկք ունէին, հարցին զքրիստոնեայս, թէ Ո՞րք իցէ զատիկն ձեր. պատասխանեցին որք 'ի Յունաց և այլոց ազգաց՝ թէ Յայսմ կիրակէի. իսկ ազգն Հայոց ասեն, Ոչ յայսմ այլ միւս կիրակէն։ Իսկ վերակացու Տաճիկն այր իմաստուն էր, հրամայեաց շիջուցանել զամենայն կանթեղս որ էին 'ի տաճարի անդ և փակել զդուրսն, և կնքեաց մատանեաւ իւրով. և ումեք հրամայեաց մտանել 'ի ներքս և տեսանել թէ ո՞ր ազգն իցէ ճշմարիտ. և իբրև անց օրն այն և եղև երեկոյ, և սպասէին լուցման կանթեղին, և իբրև ոչ լուցաւ՝ հրամայեաց իշխանն անարգանօք հանել զամենեսեան, և գանիւ մեծաւ իբրև զտգէտս և զսուտս, բայց 'ի Հայոց։ Իսկ իբրև անց շաբաթն և եկն միւս կիրակէն՝ զոր ասէին Հայք զատիկ, մինչդեռ 'ի պաշտաման և յաղօթս էին 'ի տասներորդ ժամու՝ ազդումն եղև ամենեցուն և

1 Ոմն։
2 Փոխել։
3 Ծն։

փաղփաղակի լուցաւ կանթեղն առանց ձեռաց, և եղև ուրախութիւն մեծ Հայոց, և գան հարկն [1] այլոց ազգաց, և գովէին զազգս Հայոց և զհաւատս նոցա. ևս առաւել ազգն Տաճկաց, և անարգէին ձաղէին զՅոյնս յամենայն քաղաքս որ ընդ իշխանութեամբ Տաճկաց։ Տեսին զայն և որքն առաքեալք 'ի Թագաւորէն Վրաց և 'ի զօրավարէն, և եկեալ պատմեցին զոր տեսինն, և խնդաց մեծ զօրավարն Զաքարէ, և ամենայն Հայ-եարն՝ որ էին 'ի զօրուն. և առաւել ևս հաստատէին յուղիղ հաւատս Հայոց։

Յայսմ ամի եղև աւարտ հռչակաւոր և խնդատես եկեղեցւոյն Գետկայ, զոր շինեաց վարդապետն՝ իւր միաբանօք, ձեռնտուութեամբ Վախթանկայ Խաչենե-ցւոյ՝ տեառն Հաթերքոյ, և եղբարց իւրոց՝ Գրիգորոյ և Գրիգորիսի և Խոյդանայ և Վասակայ, և այլոց իշխանաց բարեպաշտաց, որդւոց Արդին՝ Դաւթի և Սադունինս. նա և քոյր սոցա՝ որում անուն էր Արզու-խաթուն՝ կին Վաղթանկայ Հաթերքոյ. սա բազում ինչ յօժան-դակ եղև, արար և փառագոյր գեղեցիկ՝ դստերովք իւ-րովք՝ ծածկոյթ սուրբ խորանին, զարմանալի տեսողաց, 'ի մազոյ այծիցն կակղագունից, ներկեալ պէսպէս և զանազան գործ գնդակերպ [2], և նկարեալ պատկերօք ճշգրտագոյն հանուածովք տնօրինականօք Փրկչին և այլ սրբոց, որ հիացուցանէր զտեսողսն, և որք տեսա-նէին՝ օրհնութիւն տային Աստուծոյ, որ ետ կանանց իմաստութիւն ոստայնանկութեան և հանճար նկարա-կերտութեան, որպէս առ Յոբն ասացաւ. ոչ ինչ ընդ-հատ էր 'ի կազմուածոյ խորանին՝ զոր արարին Բեսե-լիէլ և Եղիաբ, թէ ոչ յանդգնութիւն է ասելս՝ թէ նոյն Հոգւոյն և զսոսա։ Եւ ոչ միայն այս եկեղեցւոյս արար ծածկոյթ, այլ և այլոց եկեղեցեաց, Հաղբատայ՝ և Մակարայ վանիցն, և Դադի վանից. քանզի յոյժ սիրող էր եկեղեցեաց բարեպաշտ տիկինն. և արարին նաւակատիս եկեղեցւոյն մեծապէս խմբիւք. անդ էր և եպիսկոպոսն Հաղբատայ Յովհաննէս, առաքինի և սուրբ այր, և այլ բազմութիւն քահանայից և պաշտօ-

1 Ա. Գ. յաւելուն զՅոյնս։

2 ՕՕ. գնդակերպ. Թերևս և գնդաձևակերպ։

նեցից. և օծեալ կնքեցաւ եկեղեցին յանուն սրբոյ Աս-տուածածնին: Շինեցաւ և գաւիթն եկեղեցւոյն գե-ղեցկազարդ և կոփածոյ վիմօք, և յոլովք ձեռնտու ե-ղեն, մեծ զօրավարն Զաքարէ և եղբայր իւր Իւանէ. քանզի նոքա ունէին իշխանութիւն գաւառին, և յայժ սիրէին զվարդապետն. քանզի Զաքարէ խոստովանու-թեամբ նորա հոգևոր որդի էր. և ընծայեցին եկեղե-ցւոյն սահման ջրաղարձիւք՝ լեռնէ 'ի լեառն. և բով մի յԱբասաձոր, և զՇորաձորն[1] 'ի նահանգին Աջնոյ, և զՈշակա 'ի գլուխ վանացն. և շինեցին ինքեանք գիւղ մի մերձ 'ի ծովակն փոքրագոյն՝ անհնարին խո-րութեամբ, և անուանեցին զգիւղն յանուն ծովակին՝ Տզրկածով, քանզի բազում մօրասէր և տղմասէր սո-ղունք կային. և այլ միւս ևս փոքրագոյն գիւղ 'ի ներ-քոյ վանիցն՝ զոր Ուրելանէջ[2] անուանեցին. շինեցին և այլ մատրուռս յանուն սրբոց առաքելոց և սրբոյն Հռի-փսիմեայ: Նա ինքն քանզի սիրէր զանապատ և զամայու-թիւն[3], արար իւր տուն բնակութեան բացագոյն 'ի վա-նացն. շինեաց և անդ փոքրագոյն եկեղեցի մի փայտա-կերտ յանուն սուրբ Հոգւոյն. և 'ի ժամանակի ծե-րութեանն՝ 'ի գլուխ վանիցն յաջմէ կողմանէ շինեաց եկեղեցի մի՝ շիրիմ գերեզմանի իւրոյ, կրով և վիմօք մածուցեալ սրբագործ, յանուն Համբարձմանն Քրիս-տոսի:

## ԺԳ

### ԹԷ ՈՅՔ ԷԻՆ ՈՐՔ ԵՐԵՒԵԼԻՔ ԷԻՆ ՅԱՇԱԿԵՐՏՍ ՆՈՐԱ

Բազումք էին որք աշակերտեցան 'ի նմանէ վարդա-պետական բանին. քանզի համբաւ իմաստութեան նո-րա հռչակեցաւ ընդ ամենայն տեղիս, և գային առ նա յամենայն կողմանց. քանզի ըստ անուան իւրոյ մխի-թարէր զամենեսեան. քանզի էր նա մխիթարական որպէս Բառնաբաս, և նշանաւոր 'ի մէջ ժողովրդեան՝ որպէս Անտոն. և բանք նորա արդիւնականք և լի շնոր-

1 ՕՕ. Ղորաձոր. տպագիրն Զօ-րաձոր:

2 Ա. Գ. Ուրէլանէջ գրեն. տպա-գիրն Ոստէլանէջ:

3 ՕՕ. զանաճայութիւն:

հօք, և ամենայն որք փափագէր տեսանել զնա և լսել 'ի նմանէ ։ Վասն այսպիսի համբաւոյ բազումք որ էին 'ի կարգի վարդապետաց՝[1] ծածկէին զինքեանս, և գային 'ի կարգի աշակերտաց կալով՝ ուսանէին 'ի նմանէ, և առնուին վերստին հրաման. և բազումք յաշակերտաց նորա հասին 'ի պատիւ վարդապետական ։ Բայց երկուք ոմանք 'ի նոցանէ որք իմաստնագոյնք էին քան զայլսն՝ որք կարող էին և զայլս օգտեցուցանել, առաջնոյն Թորոս անուն՝ 'ի սահմանացն Մելտինոյ Հայոց, հայր նորա հայկական, և մայրն ասորի, այր հեզ և խոնարհ, առաքինի և աղքատասէր յոյժ, ասպնջական օտարաց և առատ 'ի տուրս, որ զժամանակս կենաց իւրոց բարւոքապէս վարեալ և 'ի ծերութիւն պարարտութեան յաւելեալ առ հարսն իւր, և կայ թաղեալ 'ի հռչակաւորն վանքն Հաղբատ, 'ի գլուխ վանացն, 'ի գերեզմանս եպիսկոպոսացն և վարդապետացն, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի, և աղօթք նորա պարիսպ հաւատացելոց ։ Իսկ երկրորդին՝ Սանական անուն, այր սուրբ և պարկեշտ և յամենայն գործս բարիս յառաջադէմ, ողջախոհ և զգաստ յամենայնի, և վարդապետական բանիւ քան զամենայն որ 'ի ժամանակն էին՝ գերազանցեալ, ծննդական մտօք և յարմար բանիւք. վասն որոյ բազումք դեգերէին առ նա ուսման աղագաւ՝ ոչ միայն վարդապետական բանի, այլ ամենայն կեանք նորա և շարժումն՝ անգիր օրէնք էին տեսողացն. և զայս ոչ եթէ ականջալուր միայն ասեմ, այլ և ականատես. զի բազում ժամանակս կացաք առ նմա 'ի վարժս կրթութեան, 'ի սահմանս Տաւուշ բերդոյ, յանապատի անդ՝ զոր ստացաւ իւր բնակութիւն, և աղքիւրաբար արբուցանէր ամենեցուն զբանս վարդապետական ։

1 ՕՕ. վարդապետք ։

# ԺԳ

## ՎԱՍՆ ՎԱԽՃԱՆԻ ՄԵԾ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՄԽԻԹԱՐԱՅ՝ ՈՐ ԳՈՇՆ ԿՈՉԻ

Այս երանելիս զոր վերագոյն ասացաք՝ զընթացսն կատարեալ և զհաւատսն պահեալ, եհաս 'ի խորին ծերութիւն. և իբրև ետես նա թէ տկարացաւ յամենայն զօրութենէ մարմնոյն, և հանդերձեալ է այնուհետև յաւելուլ առ հարս իւր, կոչեաց նա զբնակիչս ուխտին վանաց Նոր Գետկայ, որք ընդ նմա ժուժկալեալ էին յամենայն աշխատութիւնս վանից և եկեղեցւոյն. օրհնեաց զնոսա, և զաշակերտս իւրեանց՝ յանուն Տեառն. և զմի ոմն 'ի նոցանէ ընտրեալ Մխիթար անուն, որ աշակերտեալ էր նմա և ընտանի էր նմա, կացոյց զնա առաջնորդ նոցա, մանուկ տիովք բայց կատարեալ իմաստութեամբ, այր քաղցրաձայն յերգս պաշտաման, և առատամիտ յընթերցման, և արագ 'ի գրչութիւն. նմա հրամայեաց իշխել նոցա. և գրեաց կտակ առ մեծ հազարապետն Իւանէ, եղբայր Զաքարէի, և յանձնեաց 'ի նա զվանս և զառաջնորդն. և ինքն փոխեցաւ յաստեացս առ Քրիստոս՝ ալևորեալ և լի աւուրբք: Իսկ վերակացու վանացն Մխիթար՝ հանդերձ միաբանօք գեղեցկապէս յարմարեալ զպատշաճս թաղման նորա, հոգեկան և մարմնական պիտոյիւք. և տարեալ հանգուցին զնա առաջի դրան եկեղեցւոյն փոքրագունի, որ կայ 'ի գլուխ վանացն յարևմտից կողմանէ վանացն, և մինչև ցայսօր գերեզման նորա օգնէ ցաւագնելոցն՝ որք հաւատով ապաւինին յաղօթս նորա. և զհող տեղւոյն հանապազ տանին 'ի պէտս հիւանդաց մարդոյ և անասնոյ. զի Աստուած զփառաւորիչս իւր փառաւորէ կենդանութեամբ և մահուամբ:

Դէպ եղև երբեմն զի պաշտօնեայք նորա գային գրաստիւք բարձեալ գինի 'ի պէտս վանացն. վրացի ոմն Բասիլիա անուն՝ եկեալ բռնութեամբ կամէր առնուլ 'ի նոցանէ 'ի գինւոյ անտի. զի գործակալ էր նա Իւանէի, 'ի վերայ մայրոյն, որ պահէր զտեղի իջևանի նորա. և պաշտօնեայքն ասէին մի՛ նեղեր զմեզ, քանզի Գոշին եմք. զի այսպէս կոչէին զնա մականուամբ,

նուածովք. և իբրև ընդմիջեցաւ եկեղեցւոյն խափանումն եղև յոյժ ժամանակս. քանզի եկն սուլդանն Իկոնիոնու Ալահատինն կոչեցեալ, և եհար զզօրս Հայոց և Վրաց, և աւերեաց զբազում գաւառս. վասն այսորիկ և այլ յոլովից մնաց անաւարտ: Յետոյ այր ոմն Գրիգոր Կապաղեցի, որ յառաջին արդիւնաւոր էր 'ի շինուածն եկեղեցւոյն՝ վերստին ձեռն արկեալ աւարտեաց զնա 'ի վեց հարիւր իննսուն թուին:

Վախճանեցաւ և Իւանէ եղբայր Զաքարէի, և թաղեցաւ 'ի Պղնձահանքն, 'ի դուռն եկեղեցւոյն՝ զոր շինեաց ինքն, առեալ 'ի Հայոց՝ վրացի վանս հաստատեաց. և մինչև մեռանէր նա՝ յանձնեաց զորդին իւր յիշխան ոմն իւր սնուցած և փառաւորած, Գրիգոր անուն, զոր Տղայն կոչէին: Նա խնդրեաց յորդւոյն Իւանէի յԱւագէ զվանքն Գետիկ՝ 'ի տեղի իւր գերեզմանի, և վասն յոյժ սիրելոյն զնա՝ ետ նմա. գնեաց և գիւղ մի 'ի նմանէ Վաշխէ անուն, մերձ յԱղստև, ետ զայն 'ի վանքն. և այլ բազում արդիւնս արար, գրեանս, խաչս, և անասունս. շինեաց հրաշալի եկեղեցի մի երեքխորանի մերձ 'ի գաւիթս եկեղեցւոյն՝ զարմանակերտ, և անուանեցին յանուն որդւոյն Գրիգորի. նա և այլ յոլով շինուածք եղեն 'ի նմա, և բազմացան քահանայք և պաշտօնեայք և մանկունք ուսումնականք: Իսկ կալեալ Մարտիրոսն զառաջնորդութիւնն ամս քսան՝ եթող կանոնաւորաբար. և կալաւ յետ նորա Մխիթար ոմն, այլ և սա և նա՝ Յովասափն, և այլք՝ սակաւօրեայ. Աբրահամ վարդապետն, և ապա տէր Յովհաննէս Արմնեցին, որ և Հաղարծնին էր առաջնորդ, և ձեռնադրեցաւ եպիսկոպոս յեօթնհարիւր և հինգ թուին: Սա շինեաց 'ի Հաղարծինն անդամատուն երևելի սրբատաշ վիմօք. և ապա գնաց 'ի մեծ աթոռն 'ի Հռոմկլա. և յեօթնհարիւր և երեք թուին Խաչատուր վարդապետն և եղբայրն իւր Բարսեղ շինեցին եկեղեցի մի երեքխորանի՝ հանդէպ վանիցն գմբեթաւոր՝ յանուն սրբոյն Գէորգեայ:

## ԺԶ

### ՎԱՍՆ ՍՈՒԼՏԱՆԻՆ ՋԱԼԱԼԱՏԻՆԻ[1] ԵՒ ԿՈՏՈՐԵԼՈՑՆ ԶԶՕՐՍՆ ՎՐԱՑ, Ի ՎԵՑ ՀԱՐԻՒՐ ԵՕԹԱՆԱՍՈՒՆ ԵՒ ՉՈՐՍ ԹՈՒԻՆ

Յառաջաստացեալ ազգն հիւսիսոյ արեւելից, որ Թաթարն անուանիւր՝ 'ի նեղ արկ զսուլտանն Խորասանայ զՋալալատին, եւ եհար զզօրս նորա եւ տապալեաց զաշխարհս նորա. եւ հանին զնա փախստական յաշխարհէն Աղուանից. եկն նա 'ի քաղաքն Գանձակ եւ առ զնա, եւ կուտեաց իւր զօրս անթիւս. եւ զօրքն էր 'ի Պարսից, 'ի Տաճկաց, եւ 'ի Թուրքաց. եւ եկն յաշխարհս Հայոց. (զայն տեսեալ Իւանէի՝ ազդ առնէ Թագաւորին Վրաց՝ եւ ժողովէ զօրս բազում կալ ընդդէմ սուլտանին.)[2] եւ հպարտութեամբ մեծամեծս փքային, եւ դաշինս եդեալ էին, եթէ յաղթեսցեն նմա՝ զամենայն Հայ 'ի կրօնս Վրաց դարձուսցեն, որք ընդ իշխանութեամբ նոցա, եւ զընդդիմացեալսն սրով բարձցեն. զայս խորհուրդս խորհեցան ոչ Աստուծով, եւ դաշինս կռեցին՝ եւ ոչ նորա հոգւով. զայս խորհեցան՝ եւ զՏէր ոչ հարցին, որ տուիչն է յաղթութեան ում եւ կամի:

Եկն ապա սուլտանն 'ի գաւառն Կոտայից. գնաց Իւանէ զօրօքն Վրաց, եւ կայր հանդէպ նոցա 'ի վերոյ. եւ տեսեալ զնոսա զետեղեաց 'ի տեղւոջն եւ զանգիտեաց: Իսկ սուլտանն յառաջ վարեալ զզօրս իւր՝ գայր հանդէպ նոցա. իբրեւ զայն ետես իշխան մի յաւագացն Վրաց՝ Շալւէ անուն, եւ եղբայր իւր Իւանէ, արք քաջք եւ անուանիք եւ յաղթողք 'ի պատերազմի, ասեն ցայլ զօրս. Դուք կացէք մնացէք վայր մի, եւ մեք երթեալ խառնեսցուք 'ի նոսա. եթէ դարձուսցուք զոմանս 'ի նոցանէ յետս՝ մեր է յաղթութիւնն, եկայք եւ դուք ապրեցուցէք զանձինս ձեր: Իբրեւ խառնեցան նոքա սկսան կոտորել զզօրս սուլտանին. իսկ զօրն Յունաց՝[3] այնմ ոչ ուշ եդին. այլ փախեան 'ի տեղւոջէ անտի, մինչեւ այր զընկերն 'ի փախուստն ոչ գիտէր, եր-

1 ՕՕ. Սալահատինին: — Վ. 143. Ծան. 3:

2 Ըստ տպագրին:

3 Վասն Վրաց ասէ իբր յունադաւանք:

թեալ առանց ուրուք հալածելոյ, ամենեքեան 'ի փախուցն 'ի վայր մնացեալք՝ 'ի ձորն անդր լնուլին, 'ի գլուխս քարագիւղին[1] Գառնոյ: Նորա տեսին զայն զօրքն սուլտանին զհետ մտին, զբազումս կոտորեցին և զայլս զահավէժ արարին. (և եկեալ սուլտանին) 'ի գլուխ ձորոյն՝ ետես զայն ողորմ տեսիլ, զի իբրև զձերբուկս քարանց կուտեալ կային անդ բազմութիւնք մարդկան և երիվարացն. շարժեաց զգլուխ իւր և ասէ. Այս գործս ոչ մարդոյ է՝ այլ միայն Աստուծոյ, որ կարօղն է ամենայնի: Եւ դարձաւ դիակապուտ առնել զանկեալսն. և աւերեալ զբազում քաղաքս գնաց 'ի Տփխիս, և ձեռնտու եղեն Պարսիկք՝ որ 'ի նմա. և առ զնա և զբազումս կոտորեաց, և զեւս բազումս բռնադատէր թողուլ զքրիստոնէութիւնն, և հաւանիլ.......
....... ուսման Տաճկաց. բազումք այնուհետև յերկիւղէ մահուանն զանգիտեալ՝ փոխանակէին զճշմարտութիւնն ընդ ստութեան. և այլքն յանձն առեալ զմահ քաջութեամբ քան զկեանս խղճին, զվկայական անունն ժառանգեալ՝ ելին յաշխարհէս բարի մահուամբ. և ապա հրաման ետ՝ որք հաւանին և որք ոչ՝ ոչ հարցաքննութիւն առնել; այլ բռնութեամբ զամենեսին թլփատել. և այսպէս բռնաբար յերկուց կողմանց կալեալ զձեռանէ մարդկան 'ի հրապարակի անդ, և միւս ոմն առեալ սուր՝ հատանէր զմաշկ անդացի անդամոյն: Եւ ընդ կանայսն խառնակէին զազրալի պղծութեամբ. և ընդ ամենայն տեղիս ուր և գտանէին խաչ կամ եկեղեցի՝ կործանէին և քակէին. և զայս ոչ միայն 'ի Տփխիս, այլ և 'ի Գանձակ և 'ի Նախջուան և յայլ տեղիս գործէին: Եւ մի ոմն յաւագացն, որ և մայր սուլտանին կին էր նորա՝ Օրզան անուն, սա բազում չարչարանօք նեղէր զքաղաքն Գանձակ. ոչ միայն զքրիստոնեայս, այլ և զՊարսիկս, հարկապահանջութեամբ բազմաւ, և սպանաւ 'ի նմին քաղաքին 'ի Մէհեղաց[2], որք սովոր էին սպանանել զմարդիկ. և մատեան առ նա ոմանք՝ մինչդեռ գայր ընդ փողոցն քաղաքին, իբր թէ զբկանս կալեալ իցէ նա յումեքէ. և առ նա մատեան տալ իրաւունս. ցուցին նմա թուղթ 'ի ձեռին ունելով՝

1 Տպ. քառաքագիւղին:     2 Վ. 97:

տաղապակեցին և ասեն. Դամտ դատ. և իբրև զտեղի առ նա, և կամէր հարցանել, թէ ո՞ր իցէ փախստեալ զնոսա, նոքա աստի և անտի յարեան 'ի վերայ նորա, և սրովն զոր ունէին 'ի ծածուկ՝ խոցոտեալ սպանին զնա. և այսպէս բարձաւ չարն չարեաւ 'ի միջոյ, և զսպանողս նորա՝ հազիւ կարացին սպանանել նետիւք. զի զբազումս խոցոտեալ փախեան ընդ մէջ քաղաքին։ Զի այսպէս սովոր են առնել ազգն այն՝ որ բռնացեալ են յամուր տեղիս, զոր Թունի-Թանջահ կոչեն, այլ և 'ի մայրիսն Լիբանանու. առնուն զգինս արեան յիւրեանց իշխանէն, զոր պաշտէին փոխանակ Աստուծոյ. և տան յորդիս և 'ի կանայս իւրեանց, և ինքեանք երթեալ՝ ուր և առաքէ իշխանն նոցա՝ բազում ժամանակս դեգերին 'ի կերպս կերպս եղեալ, մինչև պատեհ ժամանակ գտցեն սպանման. և ապա սպանանեն զորս կամին. վասն այնորիկ երկնչին 'ի նոցանէ ամենայն իշխանք և թագաւորք, և տան հարկս նոցա. և սատրիկ կատարողք են հրամանաց իշխանին իւրեանց, զոր ինչ և ասէ՝ մինչև 'ի մահ անձանց իւրեանց, ոչ խնայեն. և այսպէս բազում մեծամեծս սպանանեն նոքա՝ որք ոչ հարկին նոցա, որպէս և զայս ամբարիշտս։

## ԺԷ

### ՎԱՍՆ ԿՈՐՍՏԵԱՆ ՍՈՒԼՏԱՆԻՆ ՋԱԼԱԼԱՏՆԻՆ ԵՒ ԲԱՌՆԱԼՈՅՆ ՆՈՐԱ ՅԵՐԿՐԷ

Յետ գործելոյ նորա զայս չարիս, գնաց նա 'ի քաղաքն՝ որ է Խլաթ, յաշխարհին Բզնունեաց, և էր նա ընդ իշխանութեամբ Աշրափ իշխանին. և ետ պատերազմ ընդ նմա, և էառ զնա. էր անդ կին սուլտանին՝ դուստր Իւանէի, Թամթա անուն, զոր վերագոյն յիշեցաք, առ զնա իւր կնութեան. չոգաւ և աւերեաց ըզբազում գաւառս յիշխանութենէն սուլտանին Հոռոմոց, զոր Ալադինն կոչէին։ Ապա միաբանեալք սուլտանքն՝ Աշրափն և Քէմլն եղբայր իւր, որ իշխէր կողմանցն Եգիպտոսի, և Ալադինն[1], կոչեցին իւրեանց

[1] ՕՕ. զԱլադինն։

օգնական 'ի զօրացն Հայոց, որ յաշխարհէն Կիլիկեցւոց, և 'ի Փռանկաց ծովեզերեաց. և եկին տալ պատերազմ ընդ խորազմացւոյն Ջալալադնի. և իբրև եկին մօտ առ միմեանս՝ զանգիտեցին երկոքին կողմանքն, և ոչ իշխէին խառնիլ ընդ իրեարս: Այլ քրիստոնեայքըն որք 'ի Հայոց և 'ի Փռանկաց՝ խրախուսեալք յԱստուած, դիմեցին 'ի վերայ նոցա. և էին թուով սակաւք, նուազք քան զհազար[1], և զօրութեամբ Քրիստոսի հարին զզօրսն, և 'ի փախուստ դարձուցին. և զայն տեսեալ զօրացն Տաճկաց՝ յարձակեցան և նոքա, և հարին կոտորեցին զբազումս մինչև 'ի մուտս արևու: Այլ հրաման ետուն սուլտանքն՝ ոչ պնդել զհետ փախըստէիցն, իբրև այն թէ հաւատակիցք նոցա իցեն, և դադարեցին 'ի պնդելոյ զհետ նոցա: Իսկ սուլտանքն զի որք բարեպաշտք էին՝ ոչ ապերախտք լինէին զօրուն քրիստոնէից, զի գիտացին թէ 'ի ձեռս նոցա ետ տէր զյաղթութիւնն: Այլ դարձան մեծաւ ուրախութեամբ յաշխարհն իւրեանց. և ընդ որ անցանէին՝ ընդ քաղաքս և ընդ գաւառս՝ ելանէին ընդ առաջ նոցա պարիւք և ծնծղայիւք, և գովասացութեամբ ընդունէին: Իսկ Ալադինն իբրև եկն 'ի Կեսարիա Կապադովկեցւոց՝ ամենայն բազմութիւն քաղաքին հանդերձ քրիստոնէիւք և քահանայիւք իւրեանց, խաչիւք և ժամահարիւք՝ իբրև աւուր միոյ ճանապարհ ելին ընդ առաջ նմա. և իբրև մօտ եղև սուլտանն՝ բազմութիւն Տաճկացն ոչ տային թոյլ քրիստոնէիցն խառն ինքեանցն հպիլ յերկրպագութիւնն սուլտանին, այլ յետս կոյս մղեցին զնոսա. և նոքա ելին 'ի բլուր մի հանդէպ բանակին. իբրև եհարց սուլտանն թէ ո՞ք են նոքա, և գիտաց թէ քրիստոնեայք են, ինքնին իսկ մեկնեցաւ 'ի զօրուէն միայն, և գնաց 'ի մէջ նոցա. և հրամայեաց հարկանել զժամահարսն, և պաշտել բարձրաձայն. և նոքօք եմուտ այնպէս 'ի քաղաքն. ետ նոցա պարգևս, և արձակեաց յիւրաքանչիւր տեղիս: Իսկ Ջալալատին սուլտանն դարձաւ մեծաւ ամօթով յաշխարհն Աղուանից, 'ի բերրի յարգաւանդ դաշտին՝ որ կոչի

1 ՕՕ. ՃՌ. զոր մարթ է ընթեռնուլ միջ հազար. Թէպէտ և տպագիրն որոշակի գրէ պակաս քան զհազար մի:

Մուղան. և անդ զետեղեալ կամէր զօր ժողովել: Նո-պա Թաթարն՝ որ եհան զնա փախստական յերկրէն իւրմէ, զհետ մտեալ նորա՝ տարաւ վարեալ զնոսա մինչև յՆմիթ քաղաք. և անդ եհար զզօրս նորա սաստկապէս. կորեաւ և անօրէն իշխանն 'ի նմին պատերազմի. և թէ որպէս ոմանք ասեն, երթայր հետիոտս փախըստական. դիպեալ նմա առն միոյ՝ և գիտացեալ թէ նա է՝ եսպան զնա, փոխանակ մերձաւորի իւրոյ՝ որ ըսպանեալ էր զնա յայլում աւուր. և այսպէս բարձաւ չարն 'ի միջոյ:

## ԺԸ.

### ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԵՒ ԹԱԹԱՐՆ ԱՊԱԿԱՆԵԼ ԶԱՇԽԱՐՀՍ ԱՄԵՆԱՅՆ

Ամենայն բանք պատմութեանս մերոյ և նախաշաւիղ որ մինչև ցայսօր՝ էր վասն ազգիս այսորիկ, զոր շնորհօքն Քրիստոսի հանդերձեալ եմք ճառել. կարծեմք թէ յոլով և ս զնոյնս պատմեսցեն. և ամենեքեան նուազեալ գտանին յարժանաւորութենէն. զի յաճախեն քան զպատմութիւնս՝ չարիքս, որ եկին կալան զաշխարհս ամենայն. զի ժամանակս 'ի վերջ հասեալ է, և կարապետք Նեռինն գուշակեն զգալուստ որդւոյն կորստեան: Երկեցուցանեն և զմեզ յայտնութիւնք սրբոց արանց և աստուածազգեցից, զոր սուրբ Հոգին եցոյց նոցա 'ի զգուշութիւն ապագայիցն. և մանաւանդ անսուտ հրաման փրկչին մերոյ և Աստուծոյ՝ որ ասէ. Յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն 'ի թագաւորութեան վերայ. և այն, ասէ, սկիզբն է երկանց: Նայլ և սրբոյն Ներսեսի հայրապետին մերոյ, զոր մարգարէաբար ազդեաց վասն կործանման աշխարհիս Հայոց՝ յազգէն Նետողաց. զոր աչօք մերովք տեսաք զաւեր և զտառապանս, զոր անցուցին ընդ աշխարհս ամենայն. և եղև պատճառ ելից նոցա այսպէս:

Քանզի աշխարհն հեռաւոր հիւսիսոյ արևելից՝ զոր կոչեն 'ի խաժական լեզուն՝ Գարաղրում[1], 'ի սահմանս

1 Գարագօրում, ուր և համանուն քաղաքն մեծ, որոյ գիրք չեն քաղջայայտ. բայց միայն զի էր 'ի հովտի Օրգոն գետոյ որ 'ի Գարագօրում լերանց իջեալ թափի 'ի լիճն Գալքալ:

# ԺԳ

## ՎԱՍՆ ՎԱԽՃԱՆԻ ՄԵԾ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՄԽԻԹԱՐԱՅ՝ ՈՐ ԳՈՇՆ ԿՈՉԻ

Այս երանելիս զօր վերագոյն ասացաք՝ զընթացսն
կատարեալ և զհաւատսն պահեալ, եհաս 'ի խորին ծե-
րութիւն. և իբրև ետես նա թէ տկարացաւ յամենայն
զօրութենէ մարմնոյն, և հանդերձեալ է այնուհետև
յաւելուլ առ հարս իւր, կոչեաց նա զբնակիչս ուխտին
վանաց Նոր Գետկայ, որք ընդ նմա ժուժկալեալ էին
յամենայն աշխատութիւնս վանից և եկեղեցւոյն. օրհ-
նեաց զնոսա, և զաշակերտս իւրեանց՝ յանուն Տեառն.
և զմի ոմն 'ի նոցանէ ընտրեալ Մարտիրոս անուն, որ
աշակերտեալ էր նմա և ընտանի էր նմա, կացոյց զնա
առաջնորդ նոցա, մանուկ տիովք բայց կատարեալ ի-
մաստութեամբ, այր քաղցրաձայն յերգս պաշտաման,
և առատամիտ յընթերցման, և արագ 'ի գրչութիւն.
նմա հրամայեաց իշխել նոցա. և գրեաց կտակ առ մեծ
հազարապետն Իւանէ, եղբայր Զաքարէի, և յանձ-
նեաց 'ի նա զվանս և զառաջնորդն. և ինքն փոխեցաւ
յաստեացս առ Քրիստոս՝ ալևորեալ և լի աւուրբք:
Այլ վերակացու վանացն Մարտիրոս՝ հանդերձ միաբա-
նօք գեղեցկապէս յարմարեալ զպատշաճս թաղման նո-
րա, հոգեկան և մարմնական պիտոյիւք. և տարեալ
հանգուցին զնա առաջի դրան եկեղեցւոյն փոքրագու-
նի, որ կայ 'ի գլուխ վանացն յարևմտից կողմանէ վա-
նացն, և մինչև ցայսօր գերեզման նորա օգնէ ցաւա-
գնելոցն՝ որք հաւատով ապաւինին յաղօթս նորա. և
զհող տեղւոյն հանապազ տանին 'ի պէտս հիւանդաց
մարդոյ և անասնոյ. զի Աստուած զփառաւորիչս իւր
փառաւորէ կենդանութեամբ և մահուամբ:

Դէպ եղև երբեմն զի պաշտօնեայք նորա գային
գրաստիւք բարձեալ գինի 'ի պէտս վանացն. վրացի
ոմն Բասիլիա անուն՝ եկեալ բռնութեամբ կամէր առ-
նուլ 'ի նոցանէ 'ի գինւոյ անտի. զի գործակալ էր նա
Իւանէի, 'ի վերայ մայրոյն, որ պահէր զտեղի իշխա-
նի նորա. և պաշտօնեայքն ասէին մի՛ նեղեր զմեզ, քան-
զի Գոշին եմք. զի այսպէս կոչէին զնա մականուամբ,

զի հեղգագոյն եկին ալիք նորա։ Իսկ թշուառականն հայհոյեաց զնոսա և զԴրոշն. և իբրև եկն յայն տեղի որ յիշէր զանուն նորա անարգանօք, անդէն վաղվաղակի համրացաւ և կապեցաւ լեզու նորա, և թիւրեցան շրթունք նորա. և այնպէս եկաց բազում ամս, մինչև հառաչանօք խնդրեաց զթողութիւն, և ամենայն որ տեսանէր զայրն՝ գովէին զծառայն Աստուծոյ։

Եւ եթող նա յարձան և յիշատակ գերեզմանի գիրս իմաստախոհս՝ յօգուտ իմաստասիրաց, համառօտ մարգարէութեանն Երեմիայի՝ գեղեցկագիր կարգօք, և սուղ ինչ կանոնս վասն սպասաւորելոյ մարմնոյ և արեան Տեառն, թէ որպէս պատշաճ իցէ, կամ որպիսի կարգօք. և գիրք մի Ողբ 'ի վերայ բնութեանս՝ 'ի դիմաց Ադամայ առ որդիս նորա, և 'ի դիմաց Եւայի՝ առ դստերս նորա. և գիրք մի Յայտարարութիւն ուղղափառ հաւատոյ՝ ընդդէմ ամենայն հերձուածոց, 'ի խնդրոյ մեծ զօրավարին Զաքարէի և եղբօր իւրոյ[1]. և այլ թուղթս խրատականս։ Եւ եղև վախճան նորա 'ի վեցհարիւր վաթսուն և երկու թուին։

## ԺԵ

### ՎԱՍՆ ՈՐՔ ՅԵՏ ՆՈՐԱ ԿԱԼԱՆ ԶԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԻՒՆ ՎԱՆԱՑՆ

Փառաւորեցաւ վանքն և հռչակաւոր եղև անուամբ սուրբ վարդապետին, և իմաստութեամբ Մարտիրոսի առաջնորդի, քանզի այր շինարար էր՝ շինեաց այլ ժամատուն անտաշ վիմօք, մածուցեալ կրովք, հաստահեղոյս որմօք և փայտակերտ վերնայարկօք, որ յետ ժամանակաց փլաւ վերնայարկն. շինեաց և վերնատուն մի գեղեցկաշէն յարկօք, արուեստաւոր ունելով զհիւսն Մխիթար, որ 'ի բազում իրս աշխատ եղև եկեղեցեաց և վանից. և բազում եղբարք ժողովեցան վասն հռչակման տեղւոյն. և բազմաց եղև տեղի մնդեան և ուսման. որ և մեք իսկ սնեալ և ուսեալ եղաք 'ի նոյն վանս։ Սկսան շինել և եկեղեցի մի եօթն խորանօք, կոփածոյ և տաշած վիմօք, գմբեթաւոր և գեղեցիկ շի-

1 Այս երկու յետին գիրք 'ի մեր ձեռս հասեալ չեն։

նուածովք. և իբրև ընդմիջեցաւ եկեղեցին խափանումն եղև յոլով ժամանակս. քանզի եկն սուլտանն Խորասանու Սալահատինն կոչեցեալ, և եհար զզօրս Հայոց և Վրաց, և աւերեաց զբազում գաւառս. վասն այսորիկ և այլ յոլովից մնաց անաւարտ: Յետոյ այլ ումն Գրիգոր Կապալեցի, որ յառաջն արդիւնաւոր էր 'ի շինումն եկեղեցւոյն՝ վերստին ձեռն արկեալ աւարտեաց զնա 'ի վեց հարիւր իննսուն թուին:

Վախճանեցաւ և Իւանէ եղբայր Զաքարէի, և թաղեցաւ 'ի Պղնձահանքն, 'ի դուռն եկեղեցւոյն՝ զոր շինեաց ինքն, առեալ 'ի Հայոց՝ վրացի վանս հաստատեաց. և մինչև մեռանէր նա՝ յանձնեաց զորդին իւր յիշխան ումն իւր սնուցած և փառաւորած, Գրիգոր անուն, զոր Տղայն կոչէին: Սա խնդրեաց յորդւոյն Իւանէի յԱւագէ զվանքն Գետիկ՝ 'ի տեղի իւր գերեզմանի, և վասն յոյժ սիրելոյն զնա՝ ետ նմա. գնեաց և գիւղ մի 'ի նմանէ Վաչխէ անուն, մերձ յԱղստեւ, ետ զայն 'ի վանքն. և այլ բազում արդիւնս արար, գրեանս, խաչս, և անասունս. շինեաց հրաշազան եկեղեցի մի երեքխորանի մերձ 'ի գաւիթս եկեղեցւոյն՝ զարմանակերտ, և անուանեցին յանուն սրբոյն Գրիգորի. նա և այլ յոլով շինուածք եղեն 'ի նմա, և բազմացան քահանայք և պաշտօնեայք և մանկունք ուսումնականք: Եւ կալեալ Մխիթարոսն զառաջնորդութիւնն ամս քսան՝ եթող կամաւորաբար. և կալաւ յետ նորա Մխիթար ումն, այլ և սա և նա՝ Յովասափն, և այլք՝ սակաւօրեայ. Աբրահամ վարդապետն, և ապա տէր Յովհաննէս Արմանեցին, որ և Հաղարծնին էր առաջնորդ, և ձեռնադրեցաւ եպիսկոպոս յեօթնհարիւր և հինգ թուին: Սա շինեաց 'ի Հաղարծինն սեղանատուն երևելի սրբատաշ վիմօք. և ապա գնաց 'ի մեծ աթոռն 'ի Հաղբատ. և յեօթնհարիւր և երեք թուէն Խաչատուր վարդապետն և եղբայրն իւր Մարսեղ շինեցին եկեղեցի մի երեքխորանի՝ հանդէպ վանիցն գմբեթաւոր՝ յանուն սրբոյն Գէորգեայ:

# ԺՁ

## ՎԱՍՆ ՍՈՒԼՏԱՆԻՆ ՋԱԼԱԼԱՏՆԻՆ[1] ԵՒ ԿՈՏՈՐԵԼՈՑՆ ԶԶՕՐՍՆ ՎՐԱՑ, Ի ՎԵՑ ՀԱՐԻՒՐ ԵՕԹԱՆԱՍՈՒՆ ԵՒ ՉՈՐՍ ԹՈՒԻՆ

Յառաջացեալ ազգն Հիւսիսոյ արեւելից, որ Թաթարն անուանիւր՝ 'ի նեղ արկ զսուլտանն Խորասանայ զՋալալատին, և եհար զզօրս նորա և տապալեաց զաշխարհս նորա. և հանին զնա փախստական յաշխարհէն Ղզուանից. եկն նա 'ի քաղաքն Գանձակ և առ զնա, և կուտեաց իւր զօրս անթիւս. և զօրքն էր 'ի Պարսից, 'ի Տաճկաց, և 'ի Թուրքաց. և եկն յաշխարհս Հայոց. (զայն տեսեալ Իւանէի՝ ազդ առնէ թագաւորին Վրաց՝ և ժողովէ զօրս բազումս կալ ընդդէմ սուլտանին.)[2] և հպարտութեամբ մեծամեծս փքային, և դաշինս եդեալ էին, եթէ յաղթեսցեն նմա՝ զամենայն Հայ 'ի կրօնս Վրաց դարձուսցեն, որք ընդ իշխանութեամբ նոցա, և զընդդիմացեալսն սրով բարձցեն. զայս խորհուրդս խորհեցան ոչ Աստուծով, և դաշինս կռեցին՝ և ոչ նորա հոգւով. զայս խորհեցան՝ և զՏէր ոչ հարցին, որ տուիչն է յաղթութեան ում և կամի։

Եկն ապա սուլտանն 'ի գաւառն Կոտայից. գնաց Իւանէ զօրօքն Վրաց, և կայր հանդէպ նոցա 'ի վերոյ. և տեսեալ զնոսա զետեղեաց 'ի տեղւոջն և զանգիտեաց։ Իսկ սուլտանն յառաջ վարեալ զզօրս իւր՝ դայր հանդէպ նոցա. իբրև զայն ետես իշխան մի յաւագացն Վրաց՝ Շալւէ անուն, և եղբայր իւր Իւանէ, արք քաջք և անուանիք և յաղթողք 'ի պատերազմի, ասեն ցայլ զօրս. Դուք կացէք մնացէք վայր մի, և մեք երթեալ խառնեսցուք 'ի նոսա. եթէ պարտուսցուք զոմանս 'ի նոցանէ յետս՝ մեր է յաղթութիւնն, եկայք և դուք ապրեցուցէք զանձինս ձեր։ Իբրև խառնեցան նոքա սկսան կոտորել զզօրս սուլտանին. իսկ զօրն Յունաց՝[3] այնմ ոչ ուշ եդին. այլ փախեան 'ի տեղւոջէ անտի, մինչև այր զընկերն 'ի փախուստն ոչ գիտէր, եր-

1 ՕՕ. Սալահատինին : — Վ. 143. Ծան. 3 :

2 Ըստ տպագրին :

3 Վասն Վրաց ասէ իբր յունադաւանք :

Թեալ առանց ուրուք հալածելոյ, ամենեքեան 'ի փախիցն 'ի վայր մնացեալք՝ 'ի ձորն անդր լնուին, 'ի գլուխ քարագիւղին[1] Պռաւնոյ: Իբրեւ տեսին զայն զօրքն սուլտանին զհետ մտին, զբազումս կոտորեցին եւ զայլս դահավէժ արարին. (եւ եկեալ սուլտանին) 'ի գլուխ ձորոյն՝ ետես զայն ողորմ տեսիլ, զի իբրեւ զդերբուկս քարանց կուտեալ կային անդ բազմութիւնք մարդկան եւ երիվարացն. շարժեաց զգլուխ իւր եւ ասէ. Այս գործս ոչ մարդոյ է՝ այլ միայն Աստուծոյ, որ կարօղն է ամենայնի: Եւ դարձաւ դիւակապուտ առնել զանկեալսն. եւ աւերեալ զբազում քաղաքս գնաց 'ի Տփխիս, եւ ձեռնտու եղեն Պարսիկք՝ որ 'ի նմա. եւ առ գնա եւ զբազումս կոտորեաց, եւ զեւս բազումս բռնադատէր թողուլ զքրիստոնէութիւնն, եւ հաւանիլ....... .......ուսման Տաճկաց. բազումք այնուհետեւ յերկիւղէ մահուանն զանգիտեալ՝ փոխանակէին զճշմարտութիւնն ընդ ստութեան. եւ այլքն յանձն առեալ զմահ քաջութեամբ քան զկեանս խղճին, զվկայական անունն ժառանգեալ՝ ելին յաշխարհէս բարի մահուամբ. եւ ապա հրաման ետ՝ որք հաւանին եւ որք ոչ՝ ոչ հարցաքննութիւն առնել; այլ բռնութեամբ զամենեսին թլփատել. եւ այսպէս բռնաբար յերկուց կողմանց կալեալ զձեռանէ մարդկան 'ի հրապարակի անդ, եւ միւս ոմն առեալ սուր՝ հատանէր զմաշկ առնացի անդամոյն: Եւ ընդ կանայսն խառնակէին զազրալի պղծութեամբ. եւ ընդ ամենայն տեղիս ուր եւ գտանէին խաչ կամ եկեղեցի՝ կործանէին եւ քակէին. եւ զայս ոչ միայն 'ի Տփխիս, այլ եւ 'ի Գանձակ եւ 'ի Նախջուան եւ յայլ տեղիս գործէին: Եւ մի ոմն յաւագացն, որ եւ մայր սուլտանին կին էր նորա՝ Օրղան անուն, սա բազում չարչարանօք նեղէր զքաղաքն Գանձակ. ոչ միայն զքրիստոնեայս, այլ եւ զՊարսիկս, հարկապահանջութեամբ բազմաւ, եւ սպանաւ 'ի նմին քաղաքին 'ի Մ՛հեղաց[2], որք սովոր էին սպանանել զմարդիկ. եւ մատեան առ նա ոմանք՝ մինչդեռ գայր ընդ փողոցն քաղաքին, իբր թէ զբկանս կալեալ իցէ նա յումեքէ. եւ առ նա մատեան տալ իրաւունս. ցուցինն նմա թուղթ 'ի ձեռին ունելով՝

1 Տպ. քարափագիւղին:

2 Վ. 97:

աղաղակեցին և ասեն. Պամտ դատ. և իբրև զտեղի առ-նա, և կամէր հարցանել, թէ ո՞ր իցէ փաստեալ զնոսա, նոքա աստի և անտի յարեան 'ի վերայ նորա, և սրովն զոր ունէին 'ի ծածուկ խոցոտեալ սպանին զնա. և այս-պէս բարձաւ չարն չարեաւ 'ի միջոյ, և զսպանողս նո-րա՝ հաղիւ կարացին սպանանել նետիւք. զի զբազումս խոցոտեալ փախեան ընդ մէջ քաղաքին։ Զի այսպէս սովոր են առնել ազգն այն՝ որ բռնացեալ են յամուր տեղիս, զոր Թունի-Թանջահ կոչեն, այլ և 'ի մայ-րիսն Լիբանանու. առնուն զգինս արեան յիւրեանց իշխանէն, զոր պաշտէին փոխանակ Աստուծոյ. և տան յորդիս և 'ի կանայս իւրեանց, և ինքեանք երթեալ՝ ուր և առաքէ իշխան նոցա՝ բազում ժամանակս դեգե-րին 'ի կերպս կերպս եղեալ, մինչև պատեհ ժամանակ գտցեն սպանման. և ապա սպանանեն զորս կամին. վասն այնորիկ երկնչին 'ի նոցանէ ամենայն իշխանք և թա-գաւորք, և տան հարկս նոցա. և սոսորիկ կատարողք են հրամանաց իշխանին իւրեանց, զոր ինչ և ասէ՝ մին-չև 'ի մահ անձանց իւրեանց, ոչ խնայեն. և այսպէս բազում մեծամեծս սպանանեն նոքա՝ որք ոչ հարկին նոցա, որպէս և զայս ամիրիշտս։

## ԺԷ

### ՎԱՍՆ ԿՈՐՍՏԵԱՆ ՍՈՒԼՏԱՆԻՆ ՋԱԼԱԼԱՏԻՆԻ ԵՒ ԲԱՌՆԱԼՈՅՆ ՆՈՐԱ ՑԵՐԿՐԷ

Յետ գործելոյ նորա զայս չարիս, գնաց նա 'ի քա-ղաքն՝ որ է Խլաթ, յաշխարհին Բզնունեաց, և էր նա ընդ իշխանութեամբ Աշրափ իշխանին. և ետ պատե-րազմ ընդ նմա, և էառ զնա. էր անդ կին սուլտանին՝ դուստր Իւանէի, Թամթա անուն, զոր վերագոյն յի-շեցաք, առ զնա իւր կնութեան. չոգաւ և աւերեաց ըզ-բազում գաւառս յիշխանութենէն սուլտանին Հոռո-մոց, զոր Ալադինն կոչէին։ Այս միաբանեալք սուլ-տանքն՝ Աշրափն և Քէմլն եղբայր իւր, որ իշխէր կող-մանցն Եգիպտոսի, և Ալադինն[1], կոչեցին իւրեանց

1 ՕՕ. զԱլադինն։

օգնական 'ի զօրացն Հայոց, որ յաշխարհին Կիլիկեցւոց, և 'ի Փռանկաց ծովեզերեաց. և եկին տալ պատերազմ ընդ խորազմացւոյն Ջալալադնի. և իբրև եկին մօտ առ միմեանս՝ զանգիտեցին երկոքին կողմանքն, և ոչ իշխէին խառնիլ ընդ իրեարս: Այլ քրիստոնեայքըն որք 'ի Հայոց և 'ի Փռանկաց՝ խրախուսեալք յԱստուած, դիմեցին 'ի վերայ նոցա. և էին թուով սակաւք, նուազք քան զհազար[1], և զօրութեամբ Քրիստոսի հարին զզօրսն, և 'ի փախուստ դարձուցին. և զայն տեսեալ զօրացն Տաճկաց՝ յարձակեցան և նոքա, և հարին կոտորեցին զբազումս մինչև 'ի մուտս արևու: Այլ հրամանն ետուն սուլտանքն՝ ոչ պնդել զհետ փախըստէիցն, իբրև այն թէ հաւատակիցք նոցա իցեն, և դադարեցին 'ի պնդելոյ զհետ նոցա: Իսկ սուլտանքն զի որք բարեպաշտք էին՝ ոչ ապերախտք լինէին զօրուն քրիստոնէից, զի գիտացին թէ 'ի ձեռս նոցա ետ տէր զյաղթութիւնն: Այլ դարձան մեծաւ ուրախութեամբ յաշխարհն իւրեանց. և ընդ որ անցանէին՝ ընդ քաղաքս և ընդ գաւառս՝ ելանէին ընդ առաջ նոցա պարիւք և ծնծղայիւք, և գովասացութեամբ ընդունէին: Իսկ Ալադինն իբրև եկն 'ի Կեսարիա Կապադովկեցւոց՝ ամենայն բազմութիւն քաղաքին հանդերձ քրիստոնէիւք և քահանայիւք իւրեանց, խաչիւք և ժամահարիւք՝ իբրև աւուր միոյ ճանապարհ ելին ընդ առաջ նմա. և իբրև մօտ եղև սուլտանն՝ բազմութիւն Տաճկացն ոչ տային թոյլ քրիստոնէիցն խառն ինքեանցն հպիլ յերկրպագութիւնն սուլտանին, այլ յետս կոյս մղեցին զնոսա. և նոքա ելին 'ի բլուր մի հանդէպ բանակին. իբրև եհարց սուլտանն թէ ո՞յք են նոքա, և գիտաց թէ քրիստոնեայք են, ինքնին իսկ մեկնեցաւ 'ի զօրուէն միայն, և գնաց 'ի մէջ նոցա. և հրամայեաց հարկանել զժամահարսն, և պաշտել բարձրաձայն. և նոքօք եմուտ այնպէս 'ի քաղաքն. ետ նոցա պարգևս, և արձակեաց յիւրաքանչիւր տեղիս: Իսկ Ջալալատին սուլտանն դարձաւ մեծաւ ամօթով յաշխարհն Ագուանից, 'ի բերրի յարգաւանդ դաշտին՝ որ կոչի

[1] ՕՕ. Գր. զոր մարթ է ընթեռնուլ վեց հազար. թէպէտ և տպագիրն որոշակի գրէ պակաս քան զհազար մի:

Մուղան. և անդ զետեղեալ կամէր զօր ժողովել։ Ապա Թաթարն՝ որ եհան զնա փախստական յերկրէն իւրմէ, զհետ մտեալ նորա՝ տարաւ վարեալ զնոսա մինչև յԱմիթ քաղաք. և անդ եհար զզօրս նորա սաստկապէս. կորեաւ և անօրէն իշխանն ՚ի նմին պատերազմի. և թէ որպէս ոմանք ասեն, երթայր հետիոտս փախստական. դիպեալ նմա առն միոյ՝ և գիտացեալ թէ նա է՝ եսպան զնա, փոխանակ մերձաւորի իւրոյ՝ որ ըսպանեալ էր զնա յայլում աւուր. և այսպէս բարձաւ չարն ՚ի միջոյ։

## ԺԸ.

### ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԵՒ ԹԱԹԱՐՆ ԱՊԱԿԱՆԵԼ ԶԱՇԽԱՐՀՍ ԱՄԵՆԱՅՆ

Ամենայն բանք պատմութեանս մերոյ և նախաշաւիղ որ մինչև ցայսօր՝ էր վասն ազգիս այսորիկ, զոր շնորհօքն Քրիստոսի հանդերձեալ եմք ճառել. կարծեմք թէ յոլով և ս զնոյնս պատմեսցեն. և ամենեքեան նուաղեալ գտանին յարժանաւորութենէն. զի յաճախեն քան զպատմութիւնս՝ չարիքս, որ եկին կալան զաշխարհս ամենայն. զի ժամանակս ՚ի վերջ հասեալ է, և կարապետք Նեռինն գուշակեն զգալուստ որդւոյն կորստեան։ Երկեցուցանեն և զմեզ յայտնութիւնք սրբոց արանց և աստուածազգեցից, զոր սուրբ Հոգին եցոյց նոցա ՚ի զգուշութիւն ապագայիցն. և մանաւանդ անսուտ հրաման փրկչին մերոյ և Աստուծոյ՝ որ ասէ՝ Յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն ՚ի թագաւորութեան վերայ. և այն, ասէ, սկիզբն է երկանց։ Այլ և սրբոյն Ներսեսի հայրապետին մերոյ, զոր մարգարէաբար ազդեաց վասն կործանման աշխարհիս Հայոց՝ յազգէն Նետողաց. զոր աչօք մերովք տեսաք զաւեր և զտառապանս, զոր անցուցին ընդ աշխարհս ամենայն. և եղև պատճառ ելից նոցա այսպէս։

Քանզի աշխարհն հեռաւոր հիւսիսոյ արևելից՝ զոր կոչեն ՚ի խաժական լեզուն՝ Ղարաղրում [1], ՚ի սահմանս

[1] Գարագօրում, ուր և համանուն քաղաքն մեծ, որոյ դիրք չեն քաջայայտ. բայց միայն զի էր ՚ի հովտի Օրգոն գետոյ որ ՚ի Գարագօրում լերանց իջեալ թափի ՚ի լիճն Գալքալ։

Ղատիայ[1], բարբարոս ազգացն բազմութիւնք որ անդ էին՝ անգիտելիք և անթուելիք բազմաց. գլուխ Թագաւորացն ունելով՝ ազգն որ կոչի Թաթարք, որում անուն էր Չանկզզան, դէպ եղև մեռանել նմա: Եւ յառաջ քան զվաղճանն կոչեաց զզօրսն ամենայն և զերիս զորդիս՝ զոր ունէր, և ասէ ցզօրսն. Ես աւանիկ մեռանիմ. զմի յորդւոց[2] աստի իմոց զոր կամիք ընտրեցէք ձեզ Թագաւոր փոխանակ իմ: Եւ նոքա պատասխանի ետուն. Որ միանգամ կամք քո ընտրեսցեն, նա լիցի մեր Թագաւոր, և նմա ծառայեսցուք միամտութեամբ: Յայնժամ ասէ ցնոսա. Ես ասեմ ձեզ զբարս և զգործըս երեցունց որդւոցս: Անդրանիկ որդիս իմ Չաղատա, սա այր պատերազմող է և զօրասէր, բայց հըպարտ է բնութեամբ, և մեծ քան զպատահեալ բախտըն: Իսկ երկրորդ որդիս իմ, նոյնպէս յաղթող է 'ի պատերազմունս, բայց ուժտ է բնութեամբն: Իսկ կրտսեր որդիս իմ շնորհաւոր է 'ի մանկութենէ իւրմէ, և առատ բարոյիւք, և մեծատուր 'ի ձիրս. և յորմէ հետէ ծնաւ սա ինձ՝ օր ըստ օրէ յաւելաւ փառք իմ և մեծութիւն: Արդ ահա ասացի ձեզ զամենայն ստուգութեամբ, և ում կամիք պագէք երկիր յերեցունց աստի: Եւ նոքա մատուցեալ երկիր պագին կրտսերոյն, որում անուն էր Հոքթա-խան ղան[3]. և հայրն եդ զԹագն 'ի գլուխ նորա, և մեռաւ: Իսկ նա իբրև առ զիշխանութիւն Թագաւորութեանն, զօր գումարեաց անթիւ բազմութեամբ իբրև զաւազ ծովու անհամար 'ի բազմութենէ, զիւր սեփական ազգն, զոր Մուղալ Թաթարն անուանէին, և զԽազրաց և զՀոնաց և ըզՂատիացիս և զԱնկիտանս[4], և զայլ բազում ազգս բարբարոսաց, ախիւք և բանակօք, կանամբք և որդւովք իւրեանց և խորանօք: Բաժանեաց զնոսա յերիս առաջս, զմինն ընդ կողմն հարաւոյ առաքեաց, գլխաւոր վերակացու կարգեաց յիւրոց հաւատարմաց և 'ի սերե-

1 Գարա-Խիթա աշխարհ յարևմտից Չինաց և 'ի հիւսիսոյ Տիբէթայ:

2 ՕՕ. որդի:

3 Ա. Գ. Խանական. — Օկոդայի կամ Էօկտայ Խաքան:

4 Խազիրք և Հոնք ոչ են լսելին յայնժամ, այլ Քափչաքք. իսկ Ղատիացիք Թուին Գարա-Խիթացիք 'ի միջնաշխարհին Թուրքաստանի. և Անկիտանքն՝ Անկուսք յարևելս Թաթարաց և մեծի Քօղի անապատին:

լեաց. և զմիւսն ընդ արևմուտս, և զորդիս իւր ընդ նոսա, և 'ի կողմանս հիւսիսոյ. և զերրորդն ընդ արևելս հիւսիսի, վերակարգեալ զայր մի որում անուն էր Զարմաղան[1], այր խորագէտ և իմաստուն և յաջողած 'ի գործս պատերազմի: Պատուէր տուեալ նոցա աւերել քանդել զամենայն աշխարհս և զԹագաւորութիւնս տիեզերաց, և ոչ ևս դառնալ առ նա, մինչև բովանդակեսցեն զամենայն աշխարհս նուաճեալ ընդ տէրութեամբ նոցա. և ինքն անդէն զետեղեալ յաշխարհին՝ ուտելոյ և ըմպելոյ և զբօսանաց և շինութեան պարապեալ՝ յանհոգ յամենայն կողմանց: Իսկ զօրացն երթեալք ընդ կողմանս կողմանս աշխարհին՝ աւերէին զաշխարհս և զգաւառս, և բռնային զիշխանութիւնս ազգաց, առնուին զինչս և զստացուածս, զկանայս նորահասակս, և զմանկունս նոցա գերի առեալ 'ի ծառայութիւն ստրկութեան. էր զոր առաքէին հեռու յաշխարհս իւրեանց՝ առ իշխանն Թագաւոր իւրեանց[2], և էր զոր առ իւրեանս կալեալ 'ի պէտս ծառայութեան ախոյց[3] իւրեանց: Իսկ այս զօր որ ել ընդ արևելս, որոց գլխաւոր էր Զարմա-Նուինն, չոգաւ սա 'ի վերայ Պալապղին սուլդանին, որ իշխէր Խորասանայ և գաւառացն որ շուրջ զնովաւ. և եհար վանեաց զնա, և զզօրս նորա, և արար փախստական, որպէս ցուցաք վերագոյն. և ինքեանք կարգ առեալ աւերեցին զամենայն աշխարհն Պարսից և զԱտրպատականս և զԳիլմայ, կարգաւ սրբեցին զամենայն. որպէս զի մի մնասցէ խոչ ընդ ոտն գայթակղութիւն նոցա. առին և զմեծամեծ քաղաքսն և զհոյակապ ամենայնիւ լցեալ զՌէ և զՍպահան, և յիւրեանց անուն վերստին շինեցին. այսպէս առնէին ամենայն երկրի ընդ որ անցանէին: Եւ ապա եկին հասին յաշխարհն Աղուանից՝ ամենայն ախիւք և բազմութեամբ իւրեանց, և 'ի բերրի յարգաւանդ դաշտին՝ որ կոչի Մուղան, և լի ամենայն բարութեամբ՝ ջրով, փայտիւ, և մրգով. անդ զետեղ առեալ հարին զխորանս իւրեանց: Նոյնպէս առնէին զա-

1 Զօրմաղուն:

2 Ցպ. առաքէին անդէն 'ի հետաւոր յօգնութիւն յաշխարհն իւրեանց առ Խաղանն Թագաւոր իւրեանց:

3 Ա. ախոյից:

մենայն աւուրս ձմերային, և 'ի ժամանակս գարնա-
նայինս սփռէին ընդ կողմանս, ասպատակաւ և աւեր-
մամբ ; և դարձեալ դառնային անդրէն և բանակէին :



### ՎԱՍՆ ԱՒԵՐՄԱՆ ՄԵԾԻ ԵՒ ՊԱՏՈՒԱԿԱՆ ՔԱՂԱՔԻՆ ԳԱՆՁԱԿԱՅ Ի ՁԵՌՆ ԹԱԹԱՐԱՑ

Այս քաղաքս բազմամբոխ լցեալ Պարսկօք, այլ սակաւ և քրիստոնէիւք, յոյժ թշնամի էր սա Քրիստոսի և երկրպագուաց նորա, անարգիչ և հայհոյիչ խաչի և եկեղեցւոյ, և այպանիչ և նախատիչ քահանայից և պաշտօնէից. վասն որոյ իբրև լցաւ չափ մեղաց նոցա և ել աղաղակ չարութեան նոցա առ Տէր, երևեցան նշանք աւերման նորա[1] յառաջագոյն, որպէս 'ի վերայ Երուսաղեմի յառաջ քան զաւեր նորա, նոյնպէս և այսմ քաղաքի. քանզի յանկարծ պատառեալ երկրի՝ արտաքս ելեալ ջուր սեաւ. և ծառ սօսի զոր Ճանդար կոչէին՝ մերձ յոյժ առ քաղաքն մեծ, տեսին զնա յանկարծակի շրջեալ իւրովի. և 'ի տեսանել նորա դղրդեցաւ ամենայն քաղաքն, և դարձեալ տեսին զնա կանգնեալ որպէս յառաջն. այս եղեալ երկիցս և երիցս, և ապա անկաւ և այլ ոչ ևս կանգնեցաւ: Եւ սկսան իմաստունք նոցա քննել վասն նշանին թէ զինչ իցէ. և իմացեալ թէ պատճառ աւերման քաղաքին է, սկըսան այնուհետև զխաչս՝ որ բևեռեալ էին 'ի վերայ ներքին սեմոց դրանց քաղաքին՝ հանել յանարգանացն. քանզի վասն այպանելոյ կացուցեալ էին, զի կոխեսցեն ամենայն անցաւորք: Եւ յանկարծակի հասին զօրքն Թաթար, և պատեցին զքաղաքն յամենայն կողմանց, և մարտ եդեալ մարտնչէին ընդ նմա բազում մեքենայիւք. և հարին զայգեստանս՝ որ շուրջ զքաղաքաւն էին: Ապա փլուցին և զպարիսպ քաղաքին փիլիկուանօք յամենայն կողմանց, և ոչ ոք եմուտ 'ի քաղաքն 'ի թշնամեացն, վառեալք զինու պահեցին զքաղաքն շաբաթ մի. Իսկ բնակիչք քաղաքին իբրև տեսին

[1] ՕՕ. նոցա :

թէ առաւ քաղաքն 'ի Թշնամեաց՝ մտեալ իւրաքանչիւր ոք 'ի տուն իւր, այրեաց 'ի վերայ իւր զշինուածն, զի մի՛ անկցին 'ի ձեռս Թշնամեաց. և այլք այրեցին զամենայն որ ինչ ծախիւր 'ի հրոյ, և ինքեանք միայն մնացին. և զայն տեսեալ Թշնամեացն առաւել ևս 'ի բարկութիւն բրդեցան, և սուր 'ի գործ արկեալ զամենեսեան ճարակ սրոյ ետուն, զարս և զկանայս և զմանկունս. և ոչ ոք զերծաւ 'ի նոցանէ, բայց միայն սակաւ մի զօրք վառեալք զինու և ամենայն պատրաստութեամբ՝ պատառեցին զմի կողմն պարսպին 'ի գիշերի և գնային փախստական, և այլ սակաւ ինչ սինլքորք, զորս պահեցին և խոշտանկեցին ցուցանել զգանձս՝ ուր պահեալ իցեն. և ապա զոմանս սպանին, և զկէսն գերի վարեցին. և ինքեանք բրեցին զայրեալ տունս և հանին զորս գտին Թագուցեալ. և զայս արարեալ զաւուրս բազումս 'ի բաց գնացին: Ապա յամենայն գաւառաց շրջեցան 'ի վերայ նորա՝ առ 'ի բրել և որոնել զինչսն և զանօթսն. և գտանէին բազում ինչս ոսկւոյ և արծաթոյ 'ի նմա, պղինձ և երկաթ, և այլ պէսպէս հանդերձից, որ Թագուցեալ էին 'ի դարանս և 'ի տունս գետնափորս. և այսպէս ամայի եկաց քաղաքն չորս ամ. և ապա հրաման ետուն շինութեան քաղաքին, և եկին ժողովեցան առ սակաւ սակաւ, և սկսան շինել զնա՝ բայց 'ի պարսպէն:

## Ի

### ՎԱՍՆ ԱՒԵՐՄԱՆ ՔԱՂԱՔԱՑ ԵՒ ԳԱՒԱՌԱՑ Ի ԹԱԹԱՐԷՆ

Զկնի ամաց ինչ անցանելոյ աւերման քաղաքին Գանձակայ, այս զօրս մոլեկան և խորամանկ իբրև վիճակաւ բաժանեալ զաշխարհս Հայոց և Վրաց և Աղուանից, իւրաքանչիւր գլխաւորի ըստ մեծութեան, զքաղաքս և զգաւառս, զաշխարհս և զբերդս, առնուլ քանդել և աւերել. և չոքան իւրաքանչիւր մասն բաժանեալ[1], կանամբք և որդւովք, և ամենայն ախիւք բանակին իւրեանց, ուղտիւք և անասնովք իւրեանց: Ընդ այն ժա-

1 ՕՕ. բաժանեալ. Տպ. մասն բաժնի:

ժամանակս թագաւորութիւնն Վրաց նուաղեալ էր. զի էր ընդ ձեռամբ կնոջ մի՝ որում անուն էր Ռուզուդան, դուստր Թամարայ, քոյր Լաշային, թոռն Գէորգայ, վաւաշ և կալթոտ որպէս զՇամիրամն. որ անհաւան եղեալ արանցն՝ զոր ածէին նմա, ընդ բազմօք անկեալ և այրի մնացեալ, վարէր զիշխանութիւն թագաւորութեանն 'ի ձեռն զօրագլխացն Իւանէի, և որդւոյ իւրոյ Աւագին, և Շահնշահի՝ որդւոյ Զաքարէի, և Վահրամայ, և այլոցն. և զի յառաջ քան (զսակաւ) ժամանակս մեռեալ էր Իւանէ, և տարեալ թաղեցին զնա 'ի Պղնձահանքն[1], զոր իւր շինեալ էր վասն Վրաց, առեալ 'ի Հայոց, և զիշխանութիւն նորա վարէր որդի նորա, և ոչ էին կարօղ զդէմ ունել անհնարին փքոյն եկելոյ. վասն այսորիկ անձնապահք եղեն ամենեքեան՝ գաղթեալ[2] յամրոցս ուր և կարացին: Եւ նոքա սփռեալք առ հասարակ ընդ երեսս դաշտաց, լերանց և ձորոց, իբրև զմարախ բազմութեամբ, և կամ իբրև զանձրևս յորդութեամբ տեղեալ 'ի վերայ երկրի. և անդ էր տեսանել այնուհետև աղէտք տրտմագինք, և աշխար արժանի ողբոց. զի ոչ երկիր թագուցանէր զմըտեալս, և ոչ վէմք և անտառք պահէին զապաստանեալս, ոչ ամրագոյն շինուածք բերդից, և ոչ խոխոմք ձորոց, այլ ամենեքեան արտաքս վարէին զղօղեալքս. լքանէր անձն արի արանց, և լուծանէին ձեռք կորովք աղեղնաւորաց, թագուցանէին զսուրն՝ որք ունէին զնոսա, զի մի տեսեալ թշնամեացն՝ անողորմ սատակեսցեն զնոսա. ձայնք թշնամեացն հալէին զնոսա, դոփիւնք կապարձացն նոցա ահաբեկ առնէին զամենեսեան. աչք իւրաքանչիւր զօրհասն իւր տեսանէր եկեալ, և սիրտք իւրեանց մեռանէին 'ի ներքուստ. մանկունք խուսափէին առ ծնօղս յահէ սրոյն, և ծնօղք յահէ նոցա անկանէին հանդերձ նոքօք, նախ քան զընկենուլ թըշնամեացն: Անդ էր տեսանել զսուրս յանխնայ կոտորելոցն զարս և զկանայս, զերիտասարդս և զմանկունս, զծերս և զպառաւունս, զեպիսկոպոսունս և զքահանայս, զսարկաւագունս և զդպիրս. մանկունք սանդեալք զքարի հարեալք, և կուսանք գեղեցիկք խայտառա-

1 Վ. 148:

2 ՕՕ. գաղթականեալ:

կեալք և գերեալք ։ Ահագին էր տեսիլ կերպարանաց նոցա, և անգութ աղիք որովայնի նոցա. մի և միոյ մօր արտասուաց՝ ոչ ողորմէին, և յալիս երբէք ոչ գթային. 'ի սպանութիւնս խրախութեամբ ընթանային, իբր 'ի հարսանիս կամ 'ի գինարբուս. լցաւ երկիրն ամենայն դիակամբք մեռելոց, և ոչ ոք էր որ թաղէր զնոսա. հատեալ էր արտօսր յաչաց սիրելեաց, և ոչ ոք իշխէր լալ զանկեալսն յահէ անօրինաց ։ Սուգ զգեցաւ եկեղեցի, և բարձաւ պայծառութիւն գեղեցկութեան նորա. խափանեցան պաշտամունք նորա, և վերացան պատարագք 'ի սեղանոյն. լռեցին պաշտամունք նորա, և ոչ ևս լսէր 'ի նմա ձայն երգոց ։ Իբրև խաւարաւ մածեալ էր ամենայն աշխարհս. և սիրէին մարդիկ առաւել զգիշեր քան զտիւն, և երկիր թափուր մնաց 'ի բնակչաց իւրոց, և շրջէին 'ի նմա օտարաց որդիք. յափշտակեցան ինչք և ստացուածք նոցա, և ժլատութիւն բարուց նոցա ոչ երբէք յագեցաւ. խուզեցան տունք և սենեակք ամենայն. ոչ ինչ մնաց զոր ոչ առին. շրջէին այսր և անդր անգադար արագութեամբ իբրև զայծեմունս, և կեղեքէին պատառէին իբրև զգայլս. երիվարք նոցա ոչ վաստակէին յընթացս, և ոչ ինքեանք ձանձրանային 'ի ժողովել զաւարս ։ Եւ այսպէս առ հասարակ դառնութիւն հասուցին բազում ազգաց և լեզուաց. զի բաժակ բարկութեան տեառն էր հեղեալ յերկիր 'ի վրէժխնդրութիւն գործոց մերոց չարաց՝ զոր արարաք. զի մեղաք առաջի նորա, և զարգար զցասումն նորա շարժեցաք, վասն այն եղև դիւրամուտ[1] յաշխարհս ամենայն ։ Եւ իբրև առին ժողովեցին զաշխարհս ամենայն, և զանասունս՝ որ 'ի դաշտի և որ ոչ, և զինչս և զստացուածս, և զգերիս բազմութեամբ՝ որ յարձակ վայրս, սկսան այնուհետև մարտնչել ընդ ամրոցս ամենայն, և ընդ քաղաքս բազումս (կանգնեալ մենքենայս բազումս) և ազգի ազգիս. զի յոյժ խորամանկ և հնարաւորք էին, և առին քանդեցին զբազում ամրոցս և զբերդս. և զի աւուրքս ամառնային էր և խորշակ յոյժ, և ամբարք[2] ոչ հաւաքեալք, զի յեղակարծում ժամու եկին 'ի վերայ, վասն այնորիկ պապակեալ 'ի ծարաւու՝ մարդ և ա-

1 Տպ. դիւրաւ մուտ ։ 2 Շտեմարանք (Չբոյ) ։

նաւուն՝ կամաւ և ակամայ անկանէին 'ի ձեռս Թշնամեաց առ վտանգի նեղութեանն. և նոքա էր զոր սպանանէին և էր զոր պահէին 'ի պէտս իւրեանց՝ առկութեամբ ծառայութեան. զնոյն անցս անցուցանէին և ընդ քաղաքս բազմամարդս, շուրջ նստեալ պատեալ պաշարէին զնոսա։

## ԻԱ.

### ՎԱՍՆ ԱՌՄԱՆ ՔԱՂԱՔԻՆ ՇԱՄՔՈՐՈՑ [1]

Մի ոմն յաւագացն որում անունն էր Մօլար-նուրին, որոյ հաւաքեալ էր բաժին կողմանքն այնոքիկ, մինչդեռ շարժէին 'ի տեղւոջէ իւրեանց՝ որ բնակեալ էին 'ի դաշտին որ կոչի Մուղան, առաքեաց սակաւ զօր իբրև արս հարիւր, որ եկեալ հասին առ դրունս քաղաքին Շամքորոյ, և արգելին զելող և զմտողն առ նա. իսկ քաղաքն այն էր յայնժամ ընդ իշխանութեամբ Վահրամայ և որդւոյ իւրոյ Աղբուղային, զոր առեալ էին յառաջագոյն 'ի Պարսկաց. և առաքեցին բնակիչք քաղաքին Շամքորոյ առ Վահրամ [2] և առ որդի նորա՝ զի օգնեսցէ նոցա, և ասացին թէ սակաւք են. իսկ նա ոչ օգնեաց, այլ և զորդին՝ որ կամեցաւ գնալ՝ ոչ եթող, այլ խափանեաց, բանս 'ի բերան դնելով եկելոցն, ասել թէ բազումք են. այլ և ոչ քաղաքացեացն հրամայեաց մարտնչել ընդ նոսա։ Իսկ զօրք այլազգեացն օր ըստ օրէ յաւելուին 'ի թիւն, մինչև եկն գլխաւորն իւրեանց, զոր Մօլարն կոչէին, և եդ պատերազմ ընդ քաղաքին, և զփոսն որ շուրջ զպարսպաւն էր քաղաքին՝ ելից փայտիւ և ցողնով, զի դիւրաւ ելցեն ընդ պարիսպն. և նոքա 'ի ներքուստ հուր ընկեցեալ 'ի գիշերի այրեցին զնա. իսկ 'ի վաղիւն իբրև ետես զայն Մօլար նուինն, հրամայեաց զօրացն բառնալ բեռն մի հող իւրաքանչիւրոցն և արկանել 'ի փոսն. և իբրև արկին՝ լցաւ հաւասար պարսպին, և դիմեաց զօրն իւրաքանչիւր հանդէպ երեսաց իւրոց 'ի քաղաքն, և առին զնա, և կոտորեցին զամենեսեան բերանով սրոյ, և այրեցին

1 Վ. 100։ 2 Վ. 144։

զշինուածն որ 'ի նմա, և առին զոր ինչ գտան. և ապա յարձակեցան 'ի վերայ այլ բերդիցն՝ որ ընդ իշխանութեամբ Սահրամայ, 'ի Տէրունականն, և յԵրգեվանքն, և 'ի Սամնաբերդն, զոր ունէր Կիւրիկէ Բագրատունի որդի Աղսարթանայ. և 'ի Գարդման և յայլ կողմանս, 'ի Չարեքն և 'ի Գետաբակս՝ այլ ամն գլխաւոր չոգաւ, որում անուն էր Պատաղան-Նուին: Իսկ Սահրամ՝ որ էր յայնժամ 'ի Գարդման, գաղտնագնաց եղեալ 'ի գիշերի փախեաւ՝ ուր և կարաց զերծանել. իսկ զօրքն այլազգեաց, մարտ եդեալ ընդ բերդիցն, որք 'ի ներքս էին՝ ակամայ ետուն զձիս և զանասունս, և զայլ զինչ խնդրեցին. հարկ եդեալ 'ի վերայ նոցա՝ թողին զնոսա յիւրեանց անուն: Բայց այնոքիկ որ առին զՇամքոր՝ եկին ամենայն ախուն իւրեանց 'ի Տաւուշ[1] և 'ի Կածարեթ, և 'ի Նոր բերդն, և 'ի Գագ, և որ շուրջ զնոքօք, և 'ի նեղ արկեալ պաշարեցին զնոսա:

## ԻԲ

### ՎԱՍՆ ԳԵՐՈՒԹԵԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՎԱՆԱԿԱՆԱՅ՝ ԵՒ ՈՐՔ ԸՆԴ ՆՈՍԱ

Ընդ ժամանակս ընդ այնոսիկ մեծ վարդապետն՝ որ կոչէր Վանական՝ իւրովք աշխատութեամբք փորեալ էր քարայրս 'ի կատարս բարձրագոյն քարի միոյ, որ կայ հանդէպ գեղջն՝ որ Լորուտն կոչի, 'ի հարաւոյ կողմանէ Տաւուշ բերդի. և շինեալ էր յայրի անդ եկեղեցի մի փոքրիկ, և անդ դադարէր դաղտութեամբ. իբրև աւերեցաւ առաջին վանք նորա, որ կայ հանդէպ բերդին Երգեվանից, 'ի Ջալալատին սուլտանին հինից, և անդ կայր զետեղեալ, ժողովեալ բազում գրեանս. զի յոյժ ուսումնասէր էր այրն այն, մանաւանդ թէ աստուածասէր. և բազումք գային առ նա և ուսանէին բան վարդապետական 'ի նմանէ: Եւ իբրև շատացան մարդիկն՝ հարկ եղև նմա իջանել յայրէ անտի, և առ ստորոտ քարին շինեաց եկեղեցի և սենեակս, և անդ դադարեալ էր: Իբրև եղև այս կործանումն 'ի Թաթարէն,

1 Տե՛ս զտեղեկացս 'ի Վ. 145:

և եկն Սոլար–նուռնն յայն սահմանս, բնակիչք գեղջն այնորիկ՝ անդր դիմեցին, և լցաւ արամբք և կանամբք, և մանկտով այրն. և եկեալ Սահաթարն պաշարեաց զնա յայրի անդ. և նոքա ոչ ամպարս ունէին և ոչ ջուր. և էր եղանակն ամառնային և տօթ յոյժ. և սկսան տապել յայրի անդ իբր 'ի քանոի. և մանկունքն պապակէին 'ի ծարաւոյ, և մերձ էին 'ի մեռանել. և թշնամիքն ձայնէին արտաքուստ, թէ ընդէ՞ր մեռանիք, ելէք առ մեզ, և տացուք ձեզ վերակացուս, և թողցուք ըզձեզ 'ի տեղւոջ ձերում. և կրկնէին երիցս երդմամբ ։ Ապա որք էին յայրի անդ՝ անկանէին առ ոտս վարդապետին, աղաչէին և ասէին. Գնեա զարիւն մեր ամենեցուն, և էջ առ նոսա և արա սէր ընդ նոսա ։ Իսկ նա ասէ ցնոսա. Ես զանձն իմ ոչ խնայեցից վասն ձեր, թէ գոյ հնար փրկութեան, զի և Քրիստոս զանձն իւր 'ի մահ ետ վասն մեր և փրկեաց զմեզ 'ի բռնութենէ սատանայի. ապա պարտիմք և մեք 'ի վերայ եղբարց մերոց զնոյն սէր ցուցանել ։ Ապա առեալ վարդապետն երկուս քահանայս ընդ իւր, անուն միոյն Սարկիս, և երկրորդին Սոսթենէս, որք ապա յետ այնորիկ առին զպատիւ վարդապետական 'ի նմանէ. զի անդ եաք մեք 'ի վարժս կրթութեան գրոց սրբոց ընդ աւուրսն ընդ այնոսիկ, և էջ առ նոսա ։ Եւ գլխաւորն կայր հանդէպ այրին՝ 'ի վերայ բլրակի միոջ. և հովանի ունէին 'ի վերայ գլխոյ նորա վասն տօթոյն, զի 'ի տօնի վարդավառին արգելլին զմեզ. իբրև մօտ եղեն 'ի զօրագլուխն՝ որք տանէին զնոսա՝ երիցս անգամ հրամայեցին երկիր պագանել 'ի վերայ ծնկաց իւրոց՝ իբրև ուղտուց՝ 'ի ժամ գձելոյն. զի այնպէս էր սովորութիւն նոցա ։ Իբրև եկին առաջի նորա հրամայեաց [illegible] կոյս երկիրպագել Խաղանին՝ արքային իւրեանց. և ապա մեղադիր եղև թէ Իմ լուեալ է զքէն՝ թէ այր իմաստուն և երևելի ես, և կերպարանք քո յայտ իսկ առնեն ըզքէն. զի այր բարի ես տեսլեամբ, հանդարտ օրինակաւ, փառաւոր մօրուօք, ծաղկեալ ալեօք. դու իբրև լուար զհամբաւ գալըս մերոյ՝ 'ի սահմանս մեր, ընդէ՞ր ոչ եկիր ընդ առաջ մեր սիրով և խաղաղութեամբ, և ես հրամայեալ էի զամենայն որ ինչ քո է անվնաս պահել 'ի մեծէ մինչև ցփոքր ։ Պատասխանի ետ վարդա-

պետն և ասէ. Մե՛ք զբարեմտութիւնն ձեր ոչ գիտեմք, այլ երկիւղիւ և դողմամբ պաշարեալ եմք յահէն ձերմէ, և լեզուիդ անտեղեակ գոլով, և 'ի ձէնջ ոչ ոք եկն առ մեզ կոչել զմեզ առ ձեզ. վասն այսր էր դանդաղումն մեր. և արդ իբրև կոչեցիք՝ եկաք առաջի ձեր. մեք ոչ զինուորք եմք և ոչ ընչից տեարք. այլ արք պանդուխտք և օտարականք, ժողովեալք յայլ և այլ աշխարհաց՝ վասն ուսման ինչ մերոյ պաշտամանս. արդ ահաւասիկ առաջի ձեր եմք, զոր ինչ կամ է ձեր արարէք ընդ մեզ, թէ կենօք և թէ մահու։

Յայնժամ ասէ ցնա իշխանն. Մի՛ երկնչիր. և հրամայեաց նոցա նստել առաջի իւր, և բազում ինչ հարցեալ 'ի նոսա վասն բերդիցն, և իշխանին Սահրամայ, թէ ուր իցէ, զի կարծէր զնա թէ մարմնական ինչ իշխան էր 'ի վերայ երկրի։ Իբրև ասաց զոր ինչ գիտէրն, և զայն ևս թէ ոչ է մարմնական ինչ գործակալ, ապա հրամայեաց նմա զի իջուսցէ զմարդիկն յամրոցէ անտի յաներկիւղս, և խոստացաւ իւրաքանչիւր յիւրում[1] տեղւոջ կալ՝ իւրովք վերակացուօք, և յանուն նորա շինել զգիւղսն և զագարակսն։ Ապա ձայնեցին առ մեզ երիցունքն՝ որք էին զհետ վարդապետին, եթէ Իջէք վաղվաղակի, և զոր ինչ ձեր է բերէք ընդ ձեզ. և մեր իջեալ դողութեամբ առ նոսա՝ որպէս գառինս 'ի մէջ գայլոց, երկուցեալք և զարհուրեալք, ակն ունելով մահու. իւրաքանչիւր 'ի մտի իւրում ասելով զհաւատս խոստովանութեանն՝ որ 'ի սուրբ Երրորդութիւն. զի յառաջ քան զիջանելն մեր յայրէ անտի՝ հաղորդեալ էաք պատուական մարմնոյ և արեան Որդւոյն Աստուծոյ։ Եւ տարան զմեզ 'ի փոքրագոյն աղբիւր մի որ կայր 'ի մէջ վանիցն, և ետուն մեզ ջուր. զի յոյժ ծարաւի էաք զաւուրս երիս. և ապա տարան զմեզ 'ի տեղի ինչ արգելանի, և զաշխարհականսն 'ի գաւիթս եկեղեցւոյն. և ինքեանք շուրջ զմեօք պահէին զմեզ զգիշերն, զի ընդ երեկս էր օրն։ Եւ 'ի վաղիւ անդր հանին զմեզ 'ի գլուխ վանիցն 'ի բարձրաւանդակ տեղի ինչ, և խուզեալ առին որ ինչ կայր առ ումեք՝ որ պիտոյ էր նոցա.

1 Օ. Իւրաքանչիւրում տեղ ողջ (կամ ոչ)։

և որ ինչ յայրի անդ էր, և որ ինչ սպասք էր եկեղեցւոյն, կամ շուրջառ կամ այլ անօթ ինչ կամ խաչ արծաթի, և երկուս աւետարանս ընդելուզեալ արծաթով, զայն ետուն վարդապետին. զոր յետոյ առին 'ի մէնջ. և ընտրեալ 'ի մէնջ զարս՝ որ կարող էին շրջել ընդ նոսա, և զայլսն հրաման ետուն տանել 'ի վանսն, և 'ի գիւղ անդր, և վերակացուս թողին յինքեանց, զի մի այլք խուեսցեն զնոսա: Հրամայեաց և վարդապետին 'ի վանս կալ. և եղբօրորդի մի էր նորա քահանայ Պօղոս անուն, հրամայեաց գալ ընդ մեզ զկնի նորա: Իսկ վարդապետն սուրբ խնայեաց յեղբօրորդին իւր, զի մանուկ տիօք էր. ինքն եկն զկնի նորա յուսացեալ թէ հնար իցէ և զմեզ զերծուցանել. և շրջեցուցանէր ըզմեզ զկնի իւր աւուրս բազումս՝ նեղութեամբ և տառապանօք, հետի և բոկոտն: Եւ որ կարգեալ էին պահել զմեզ՝ արք Պարսիկք էին, ծառաւիք արեան քրիստոնէից. նոքա առաւել նեղէին զմեզ ամենայն տառապանօք, ուղէգնացութեամբ այնքան ստիպով տանէին զմեզ, որպէս երիվարս յասպատակի. և թէ դէպ լինէր ումեք վասն տկարութեան մարմնոյ կամ խեղութեան սակաւ մի կասել 'ի գնացից, անխնայ ջարդէին զկառափունս, և ծեծէին զմարմինսն գանալից, մինչ զի ըզփուշս անգամ ոչ կարէին հանել յոտից, թէ ելանէր ընդ նա. և ոչ ջուր ըմպել ոք կարէր յստիպողացն: Իբրև իջանէին տանէին լնուին զմեզ 'ի տունս նեղս, և ինքեանք շուրջ նստեալ պահէին զմեզ. և ոչ տային ումեք ելանել արտաքս 'ի պէտս կարեաց մարմնոյ, այլ 'ի նոյն տունսն անցուցանէին զպէտսն. և 'ի նմին ագանէին զյոլով աւուրս. վասն որոյ ոչ կարեմ ընդ գրով արկանել զամենայն նեղութիւնս՝ որ անցին ընդ մեզ. և զվարդապետն ոչ թողին առ մեզ, այլ ուրոյն հեռի 'ի մէնջ՝ յայլս ոմանս յանձնեցին զգուշութեամբ պահել: Ապա առին և զիս յընկերաց իմոց զկնի իւրեանց 'ի պէտս դպրութեան՝ գրել թուղթ և ընթեռնուլ. զօրն զկնի իւրեանց շրջեցուցանէին, և յերեկոյն տանէին զմեզ առ վարդապետն՝ երաշխաւորութեամբ, և դարձեալ գային առնուին հետի; կամ մերկ 'ի վերայ կրմուղ գրաստու. և այսպէս առնէին զաւուրս բազումս: Իսկ իբրև անցին աւուրքն ամառնային, և եկն եղանակ

աշնանային, և հեռացեալ էին նոքա 'ի ծանրոց[1] յաշխարհէ մերմէ յօտարութիւն, ապա զանձինս 'ի մահ եդին ամենեքեան, և սկսան առ սակաւ սակաւ փախչել 'ի գիշերի, ուր և կարասցեն զերծանել. և այսպէս եղև շնորհօքն Քրիստոսի ամենեցուն զերծանիլ. բայց յերկուց երիցանց որք 'ի տունջեան կամեցան գաղտ երթալ և ոչ կարացին. զոր ըմբռնեալ ածին 'ի բանակն, և սպանին առաջի մեր յերկիւղ և 'ի զարմացումն. զի այսպէս առնէին ամենայն փախուցելոց:

Ապա յաւուր միում ասէ ցիս վարդապետն սքանչելի. Կիրակոս. և ասեմ. Օ՞ն ինչ հրամայես վարդապետ. ասէ ցիս. Արդեակ, գրեալ է թէ յորժամ 'ի նեղութիւս անկանիցիք համբերեցէք. արդ պարտ է մեզ զբան գրոյն ցուցանել յանձինս. զի ոչ լաւ եմք մեք քան զառաջին սուրբսն՝ Դանիէլ և զԱնանիաս, զԵզեկիէլ և զԵրեմիա, որք 'ի գերութեանն իւրեանց զբարեպաշտութենէ բուռն հարին, մինչև Աստուած այց արարեալ փառաւորեաց զնոսա 'ի գերութեանն: Արդ և մեք կացցուք և մնասցուք խնամոցն Աստուծոյ, մինչև ինքն այց արասցէ մեզ, որպէս և կամի: Իսկ ասեմ. Սուրբ հայր, որպէս հրամայես՝ այնպէս արասցուք:

Դէպ եղև ապա յաւուր միում գալ իշխանին այնմիկ որ գերեացն զմեզ՝ 'ի տեղին, ուր էաք մեք 'ի պահեստի: և տեսեալ զմեզ խոտորեցաւ առ մեզ. և մեր ընթացեալ ընդ առաջ նորա, ասէ ցմեզ. Օ՞ն ինչ պիտոյ է ձեզ, միթէ քաղցեա՞լ էք, տաց ձեզ միս ձիոյ. զի ինքեանք անխտիր ուտէին զամենայն անսուրբ անասունս, այլ և զմուկն և զամենայն սողունս: Նա ցնա վարդապետն. Մեք ձիոյ միս ոչ ուտեմք, և ոչ զայլ կերակուրս ձեր. թէ կամիս շնորհս առնել մեզ, արձակեա զմեզ 'ի տեղիս մեր, որպէս խոստացար. զի այր ծեր և հիւանդոտ եմ ես, և ոչ եմ՝ քեզ պիտանի 'ի գործս ինչ զինուորութեան և հովուութեան կամ այլ ինչ 'ի պէտս ձեր: Նա ցնա զօրագլուխն. Յորժամ եկեսցէ Ջաւչու ղան՝ հոգացից զձեզ վասն այդորիկ. և էր Ջաւչու ղանն այն վերակացու տան նորա. և երթեալ ընդ զօրս նորա յաւար: Նոյնպէս կացաք առա-

1 Բ. Գ. ծանօթ:

ջի նորա երկիցս և երիցս, և նա զնոյն պատասխանէր։ Եւ ապա եկն այրն 'ի Ճանապարհէն, և կոչեցին զմեզ 'ի դուռն իշխանին, և յղեաց զնոյն այրն առ մեզ Թարգմանաւ, և ասէ. Ո՞չ ապաքէն ասէք դուք Թէ ինչս տալ մեռելոյն՝ օգուտ է հոգւոյ նորա. արդ եԹէ մեռելոցն օգնէ, զկենդանիս ընդէ՞ր ոչ փրկէ. տուր զո՛ր ինչ ունիս և գնեա զհոգի քո. և երԹ նիստ 'ի տան քո։ Պատասխանի ետ վարդապետն և ասէ.. Մե՛ր ինչք այն էին զոր դուք առիք, խաչքն և աւետարանքն, բայց յայնմանէ մեր այլ ինչ ոչ գոյ։ Ասէ ցնա այրն. ԵԹէ ոչ ունիս ինչս՝ անհնար է քեզ երԹալ աստի։ Ասէ վարդապետն. Ճշմարտութեամբ ասեմ քեզ, մեր ոչ ինչ կայ, ոչ գին աւուր միոյ կերակրոյ. բայց եԹէ կամք իցեն ձեր, առաքեցէք զմեզ 'ի մի 'ի բերդից յայսցանէ, որ շուրջ կան զմեօք, և քրիստոնեայքն որ կան 'ի նոսա՝ գնեն զմեզ։ Իսկ նոցա հաւանեալ գինս ծանունս 'ի վերայ նոցա, և դարձեալ ԹեԹևացուցին յայնմանէ, և առաքեցին զնա 'ի բերդն՝ որ կոչի Դաղ [1]. իսկ նա խընդրեաց զմեզ գնոյ, զի ընդ իւրն և զմերն տացէ, և ոչ ետուն։ Ասէ. Սա 'ի պէտք են մեզ Թուղթ գրելոյ և ընԹերցման, Թէպէտ բազում գինս տայք ոչ տամք զսա։ Եւ բաժանեցաք 'ի միմեանց արտասուօք. և ասէ ցիս. Որդեակ, ես երԹամ անկանիմ առ ոտս սուրբ նշանին՝ որ յանուն սուրբ Սարգսի, խնդրել նովաւ 'ի Տեառնէ վասն քո, և այլ եղբարցն՝ որք կան 'ի ձեռս անօրինին, զի Թերևս զերծուսցէ և զձեզ Աստուած գԹուԹեամբ իւրով։ Զի էր 'ի Դաղն խաչ մի սքանչելագործ առ ամենայն նեղեալս, մանաւանդ առ գերիս. զի որք ապաւինէին 'ի նա բոլորով սրտիւ՝ ինքն իսկ Սարգիս բանայր զդրունս բանտից, և արգելլոցն լուծանէր զերկաԹս, և առաջնորդէր մարմնաւոր տեսլեամբ 'ի տեղիս իւրեանց. և համբաւ սքանչելեացն տարածեալ էր ընդ ամենայն ազգս. զոր կանգնեալ ասեն զնա սրբոյն Մեսրոպայ վարդապետին մերոյ։ Եւ եղև որպէս ասաց վարդապետն. գնեցին զնա ուԹսուն դահեկանի. և իբրև տարան զնա՝ 'ի նմին աւուր ասէ ցմեզ Ողարն. Մի տրտմիր ընդ գնալ մեծ երիցուն, զքեզ վասն այնորիկ

1 Վ. 145։

ոչ թողաք ընդ նմա, զի պիտանի ես մեզ. մեծացուցից զքեզ 'ի մեծամեծաց իմոց, և թէ կայ քո կին՝ բերից զնա առ քեզ, և թէ ոչ՝ տաց քեզ կին 'ի մէնջ. և առ ժամայն ետ մեզ վրան մի, և երկուս պատանիս սպասաւոր մեզ. և ասէ. Ի վաղիւն տաց քեզ ձի, և ուրախ արարից զքեզ, միամիտ կացջիր. և գնաց 'ի մէնջ: Խնամօքն Աստուծոյ պատահեաց մեզ 'ի նմին գիշերի գաղտագնաց լինել 'ի նոցանէ և զերծանել. և եկաք 'ի տեղի սննդեան մերոյ՝ 'ի վանքն որ կոչի Գետիկ, և նա աւերեալ էր 'ի նոցանէ, և այրեալ զշինուածս որ 'ի նմա, և անդ դադարեցաք:

## ԻԳ

### ՎԱՍՆ ԱՒԵՐՄԱՆ ՔԱՂԱՔԻՆ ԼՈՌԻ, ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԱՌԻՆ ԶՆԱ

Զօրավարն ամենայն գնդին հեթանոսաց՝ որում անուն էր Չաղաղա, լուաւ վասն ամրութեան քաղաքին Լօռոյ, և յոլովութեան գանձուցն որ 'ի նմա. զի 'ի նմա էր տունն իշխանին Շահնշահի[1] և գանձ նորա. առեալ ընդ իւր ընտիր սպառազէնս յոլով մեքենայիւք և ամենայն պատրաստութեամբ, չոգաւ անդ և նստեալ շուրջ զնովաւ պաշարեաց զնա: Իսկ իշխանն Շահնշահ, առեալ զկինն իւր և զմանկունսն՝ ել գաղտագողի. 'ի ձորն անդ, և ամրացաւ յայրս ուրեք, և զվերակացութիւն քաղաքին տայ 'ի ձեռս աներաց իւրոց. իսկ նոքա քանզի արք կանացիք էին՝ ուտելոյ և ըմպելոյ և արբեցութեան պարապեալ, յուսալով յամրութիւն պարսպացն և ոչ յԱստուած. և եկեալ թշնամեացն փորեցին 'ի ներքոյ պարսպացն և փլուցին. և ինքեանք շուրջ նստեալ պահէին, զի մի ոք փախիցէ: Իսկ բնակիչք քաղաքին իբրև տեսին թէ առաւ քաղաքն, սկսան մղիլ 'ի վախից, և 'ի ձոր անդր լնուին. և զայն տեսեալ թշնամեացն՝ սկսան մտանել 'ի քաղաքն, և կոտորել անխնայ զարս և զկանայս և զմանկունս, և աւար առեալ զինչս և զստացուածս նոցա՝ գտին և զգանձս իշխանին Շահնշահի, որ զրկեալ կողոպտեալ էր զիւր

1 Որդի մեծին Զաքարիայ սպասալարի:

հնազանդեալքն, և անդ կազմեալ տուն գանձուց ամրագոյն, զոր ոչ էր հնար ումեք տեսանել. զի նեղ առարեալ էր զբերան գբին, որ միայն արկանելոյն էր բաւական, իսկ հանելոյ ոչ ևս։ Սպանին և զաներսն Շահնշահին, և ինքեանք խոյզ արկեալ ամենայն ամրոցաց քաղաքին և գաւառին, զոր պատրանօք և զոր բռնութեամբ՝ առին զբազումս. զի տէր մատնէր զնոսա ՚ի ձեռս նոցա։

Նոյնպէս արարեալ և ընդ այլ քաղաքս, և ընդ Դումանիս և Շամշուլտէ, և ընդ մայրաքաղաքն Տփխիս, առեալ զամենայն առ յաւար, ՚ի կոտորումն և ՚ի գերութիւն, ասպատակ սփռեալ ընդ ամենայն կողմանս անխնայ յարձակմամբ և յափշտակութեամբ և կոտորմամբ. զի ոչ ոք էր որ ընդդէմ կայր նոցա, կամ պատերազմէր ընդ նոսա. վասն այնորիկ աներկիւղ էին յամենայն կողմանց, զի փախստեամբ փախեաւ Թագուհին Վրաց, որ Ռուզուդանն կոչէր, ուր և կարաց զերծանիլ. այսպէս և ամենայն իշխանքն անձնապահք եղեն ՚ի նոցանէն։

## ԻԴ

### ՎԱՍՆ ԱՆԿԱՆԵԼՈՑ Ի ՁԵՌՍ ՆՈՑԱ ԻՇԽԱՆԻՆ ԱՒԱԳԻ

Իսկ իշխանն մեծ՝ որդին Իւանէի՝ որ Աւագն կոչէին, իբրև ետես զայն ամենայն բազմութիւնս թշնամեացն՝ որք լցին զաշխարհս ամենայն, ամրացաւ և նա ՚ի բերդն ամուր՝ որ կոչի Կայեան. եկին և ամենայն բնակիչքն գաւառին, ամրացան և նոքա շուրջ զբերդովն։ Իբրև գիտացին զօրքն այլազգեաց թէ անդ ամրացաւ իշխանն, մի ոմն ՚ի գլխաւորացն՝ որում անուն էր Իտուղատայ, առեալ զօրս բազումս եկն և պաշարեաց զբերդն, և առհասարակ լցաւ աշխարհն ՚ի զօրաց այլազգեացն. զի ՚ի նմա գաղթեալ էին յամենայն կողմանց վասն ամրութեան վայրացն. և ածին շուրջ զստորոտով բերդին որմն յամենայն կողմանց. յղէին պատգամս առ Աւագն գալ ՚ի հնազանդութիւն ծառայութեան նոցա, և մի երկնչել. և բազում անգամ յղէին և զնոյն բանս ասէին։ Իսկ նորա կամեցեալ շահել ըզ֊

միթէ նոցա՝ տայ զդուստր իւր նոցա և ինչս բազում, զի թերևս թուլասցին 'ի պաշարմանէն. իսկ նոցա առեալ զայն՝ ևս պնդութեամբ խնդրէին զնա ։

Իսկ որք շուրջ զաբերդովն և որք 'ի ներքս՝ սկսան նեղիլ 'ի ծարաւոյ. ապա տարան զձի և զամենայն անասունս իւրեանց 'ի ձեռս Թաթարին, զի թողացուսցեն ոմանց 'ի նոցանէ երթալ բերել ջուր ախի իւրեանց. և նոցա յանձն առեալ՝ դիմեցին բազմութիւն մարդկան 'ի ջուր անդր. և նոցա արգելեալ զերթալսն[1] 'ի ջրէ, և ոչ սպանին զոք. այլ ասէին նոցա իջուցանել զընտանիս իւրեանց, և կեալ 'ի մէջ նոցա. և նոցա առ վշտին ակամայ իջուցեալ զնոսա. և նոցա արբուցեալ ջուր՝ արգելին 'ի մէջ իւրեանց, և առին զկանայսն որոյ ցանկացան, և սպանին զարս նոցա. և զկէսս թողին առ արս իւրեանց ։ Իսկ Ջալալն իբրև ետես թէ ոչ թուլանան նոքա 'ի պաշարմանէ և 'ի կոտորելոյն, կամեցաւ զանձն իւր տալ 'ի ձեռս նոցա, զի թերևս սակաւիկ մի դիւր լիցի մարդկան. և առաքեաց զԳրիգորն՝ զոր Տեղայն կոչէին գդուանօք, յազատացն Խաչենոյ, զվերակացու տան իւրոյ, յառաջ քան զինքն երթալ հանդիպիլ զլխաւորին նոցա՝ որ Չարմաղանն կոչէին, որ հարեալ էր զխորանն առ ափն ծովուն Գեղարքունոյ ։ Զոր իբրև լուաւ մեծ Նուինն՝ ուրախացաւ յոյժ, և առաքեաց վաղվաղակի առ Տուղատան՝ որ պաշարեալ էր զնա, փութով առ ինքն հասուցանել, և այլ մի նեղել զընակիչս բերդին և զաւառացն. և նորա առեալ զՋալալն վաղվաղակի հանդիպի նմա ։ Նա իբրև ետես զնա, ասէ ցնա. Դու ես Ջալալն. նա պատասխանի ետ թէ Ես եմ. ասէ ցնա զօրապետն. Ընդէ՞ր ոչ եկիր վաղվաղակի առ իս՝ իբրև եկի ես 'ի սահմանս ձեր ։ Պատասխանի ետ իշխանն, և ասէ. Մինչդեռ հեռի էիր և կենդանի էր հայր իմ, նա ծառայեաց քեզ բազում պարգևօք. իբրև մեռաւ հայրն իմ, և ես ծառայեցի քեզ ըստ իմում կարողութեանս. և այժմ իբրև եկիր յաշխարհս իմ, ահաւադիկ կամ առաջի քո, որպէս հաճոյ է քեզ արա ընդ իս ։ Ասէ զօրապետն. Ասեն 'ի խօսս առակաց, թէ յերդն եկի՝ չեկիր, 'ի դուռն եկի՝ ապա եկիր ։

1 ՕՕ. զերթեալն ։ Տպ. զերթեալսն և ոչ ։

Այլ հրամայեաց նմա նստել 'ի աթոռն քան զա̃մ մեծա-մեծս՝ որք նստէին առաջի նորա. և հրամայեաց ճաշ մեծ առնել 'ի պատիւ նմա. և բերին յոլովութի̃ մսոց 'ի սուրբ և յանսուրբ անասնոց, անգամ անգամ յօշեալ և ե-փեալ. և խմըրգս[1] 'ի կաթանէ ձիոց, ըստ սովորութեան իւրեանց բազում տիկս. և արկին առաջի և սկսան ու-տել և ըմպել. իսկ Աշագն և որք ընդ նմա՝ ոչ ուտէին և ոչ ըմպէին. եհարց զօրապետն թէ Ընդէ՞ր ոչ ուտէք. ասէ Աշագն ցնա. Քրիստոնէից ոչ է սովորութիւն ու-տել զայս կերակուր, և ըմպել զայս ըմպելի. այլ միս 'ի սուրբ կենդանեաց զենել, և գինի առ 'ի ըմպել. և հրամայեաց զայն տալ նոցա զոր և խնդրեաց: Այլ 'ի վաղիւն նստոյց զնա 'ի վերոյ յոլովից մեծամեծացն. և այսպէս օր ըստ օրէ յաւել 'ի պատիւ նմա. մինչև 'ի մե-ծամեծացն կարգի նստուցանել զնա. և հրամայեաց ա-մենայն զօրուն ոչ մարտնչել ընդ բերդսն և ընդ քա-ղաքսն՝ որ ընդ իշխանութեամբ նորա էին, և բազում դիւրութիւն արար աշխարհի նորա. և բազում գերիս ազատս արձակեցին վասն նորա. և զամենայն աշխարհն նորա ետ նմա, և այլ ևս աւելի. և անքակ սէր հաս-տատեաց ընդ նմա: Այլ առեալ զնա և զամենայն զօրն չոգաւ 'ի վերայ քաղաքին Անւոյ:

## ԻԵ

### ՎԱՍՆ ՔԱՂԱՔԻՆ ԱՆԻՈՅ՝ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ՄԱՏՆԵԱՑ ՏԷՐ Ի ՁԵՌՍ ՆՈՐԱ

Քաղաքս այս Անի լցեալ էր բազմութեամբ մարդ-կան և անասնոյ, և պարսպեալ ամրագոյն պարսպօք. և եկեղեցի բազում կայր 'ի նմա. մինչ 'ի կարգ խօսից երդման այսպէս երդնուին, Անւոյ հազար և մի եկեղե-ցին. և յոյժ փարթամ էր քաղաքն ամենայն իրօք. վասն որոյ յղփութիւնն յամբարտաւանութիւն ած զնոսա, և ամբարտաւանութիւնն 'ի կորուստ, որպէս սովոր է առնել յինկզբանցն և այսր: Առաքեաց Չար-մաղանն դեսպանս առ նոսա գալ նմա 'ի հնազանդու-

1 Մինչև ցարդ այսպէս կոչեն թաթարք զչիճուկ կամ զըմպելին 'ի ձիոյ կաթանէ:

թիւն. և որ գլխաւորքն էին 'ի քաղաքին' ոչ իշխեցին պատասխանի առնել պատգամին, առանց հարցանելոյ զիշխանն Շահնշահ. քանզի ընդ իշխանութեամբ նորա էր քաղաքն: Իսկ ամբոխ քաղաքին և ռամիկքն ըսպանին զպատգամաւորսն: Այլ զայն տեսեալ զօրքն այլազգեաց' 'ի բարկութիւն բրդեցան. և պաշարեալ ըզքաղաքն յամենայն կողմանց, կանգնեցուցին փիլիկուանս[1] բազում' արուեստագիտութեամբ, և մարտուցեալ ընդ քաղաքին զօրեղապէս' առին զնա:

Այլ և ոմանք յիշխանացն քաղաքին ձեռնտու եղեն առ Թշնամիսն, զապրուստ անձանց իւրեանց շահելով. և նոցա կոչեցեալ արտաքս 'ի քաղաքէն զբազմութիւնն' խոստացան ոչ ինչ առնել նոցա չար: Այլ իբրև ելին արտաքս առ նոսա ամենայն բազմութիւնն' բաժանեցին զնոսա յինքեանս, և սուր 'ի վերայ եդեալ կոտորեցին զամենեսեան առ հասարակ անողորմաբար. սակաւ[2] կանայս և մանկունս թողեալ, և արս արուեստագէտս, զոր վարեցին 'ի գերութիւն: Այլ ապա ինքեանք մըտեալ 'ի քաղաքն' առին զինչս և զստացուածս ամենայն. կողոպտեցին և զամենայն եկեղեցիսն, և աւերեցին քանդեցին զամենայն քաղաքն. եղծին և ապականեցին զփառս վայելչութեանն նորա: Անդ էր տեսանել տեսիլ ողորմագին. առհասարակ կոտորեալք ծնօղքն և ծնունդք ընդ նոսին, դիզեալք 'ի վերայ միմեանց իբրև զդէրբուկս քարանց կուտեալք, քահանայք և սարկաւագունք և պաշտօնեայք եկեղեցականք, ծերք և տղայք և հասակաւ մանկունք և երիտասարդք և կուսանք շատք. ըստ աւետարանին սրբոյ, եթէ մատնիջիք 'ի սուր և 'ի գերութիւն. նոյն հրաման եհաս 'ի վերայ սոցա, զի ցիր և ցան անկեալք ընդ երեսս դաշտացն, արբեալ երկիրն յարենէ և 'ի ձարպոյ վիրաւորացն. փափուկ մարմինքն և անձառովք լուացեալք[3], սևացեալք և այտուցեալք, և այնոքիկ որ ոչ[4]

1 Փիլիփոն ըստ Տաճկաց, որոց թուի առեալ և զգործին և զանունն 'ի Հոռոմոց, առ որս' և 'ի մեզ ծանօթ է բաղխատրն, թէպէտ և ոչ ամենայնիւ. իսկ փիլիկուանդ կամ ֆիլիկոն' նետաձիգ կամ քարաձիգ' նոյն թուի կոչեցեալն գատափէլտէս 'ի Յունաց, καταπέλτης. գատա-բուլտա catapulta 'ի Լատինաց, որք և զմեծամեծ նետսն կոչէին բիլում pilum.

2 ՕՕ. տակայն:

3 ՕՕ. լուացեալք:

4 ՕՕ. որոց:

ելեալ էին արտաքս քան զդուռն քաղաքին, բոկ և հետիոտս ընթացեալք 'ի գերութիւն. և որք հաղորդէին 'ի պատուական մարմնոյ և յարենէ որդւոյն Աստուծոյ, ուտէին զմիս անսուրբ և հեղձուցիկ[1]. և ըմպէին 'ի կաթանէ ձիոց պղծոց. կանայք պարկեշտք և ողջախոհք՝ մատնեալք 'ի խայտառականս ճակաճան և վաւաշ մարդկան. կուսանք սուրբք որք ուխտեալ էին Աստուծոյ (սրբութեամբ) պահել զմարմինս և անախտ զհոգիս, պղծեալք պէսպէս (պոռնկութեամբք) և ապականեալք անկարգութեամբ.՝ և այսպէս եղև զրաւ գործոյն։

## ԻԶ

### ՎԱՍՆ ԱՒԵՐՄԱՆ ԿԱՐՈՒՑՆ

Այս քաղաքս իբրև ետես որ ինչ գործեաց Թաթարն ընդ բնակիչս Անւոյ, փութացան և աճապարեալ տարան զբանալի քաղաքին ընդ առաջ նոցա, զի թերևս խնայեսցեն 'ի նոսա. իսկ նոքա քանզի խանձեալ էին աւարաւ, և ոչ յումեքէ ունէին երկիւղ, զնոյն անցս և ընդ նոսա անցուցին, որպէս ընտանի, յափշտակութեամբ ընչից և ստացուածոց և կոտորմամբ բնակչաց, և աւերմամբ քաղաքաց անզարգացուցեալ զվայելչութիւն նորա, և գերի վարեալ զբնակիչս, և սակաւ սինլքորս թողեալ գնացին 'ի բաց.. զոր յետոյ եկեալ զօրք[2] սուլտանին Հոռոմոց՝ զերծեալսն 'ի Թաթարէն մատնեցին 'ի գերութիւն և 'ի սուր անողորմաբար. ըստ գրեցելումն, թէ ահ, գուբ և որոգայթ 'ի վերայ ձեր՝ բնակիչք երկրի. և որ փախիցէ յահէն անկցի 'ի գուբն. և որ ելանիցէ 'ի գբէն՝ անկցի յորոգայթ. և որ փախիցէ յայնմանէ՝ հարցէ զնա օձն. այսպէս եղև տառապեալ բնակչացն Կարուց։ Նոյն զօրքն առին և զքաղաքն Սուրբ-Մարի[3], զոր սակաւ ամօք յառաջ առեալ էր զնա 'ի Տաճկաց Շահնշահի և Աւագին, և դեռ ևս կարկատեալ էին. յանկարծակի եհաս 'ի վերայ նոցա մի ոմն յաւագացն զօրօք բազմօք, որում անուն էր

1 ՕՕ. հեղձուցիկ։
2 ՕՕ. զօրք։
3 Սուրմառի կոչի յայլոց և այժմ Սիւրմէլի, գեօղ 'ի հարաւոյ արևմտից Էջմիածնայ առ Երասխաձորով, 'ի հին Ճակատք գաւառի։

Պարա Բահատուր. և վաղվաղակի առ զնա, և զոր ինչ եգիտ 'ի նմա՝ յափշտակեաց։ Եւ իբրև այսպէս այս գործեցաւ ընդ աշխարհս ամենայն, ապա հրաման ետուն մնացորդացն՝ որ ապրեալ էին 'ի սրոյ անտի և 'ի գերութենէ՝ գնալ յիւրաքանչիւր տեղիս, 'ի գիւղս և՛ յագարակս, և շինել իւրեանց տուն[1] և ծառայել նոցա. և սկսաւ երկիրն սակաւ սակաւ շինիլ և շինութիւն առնուլ։ Բայց Աստուած որպէս սովոր է՝ 'ի ժամանակի բարկութեան զողորմութիւն յիշել, զոր և աստ արար. զի ոչ ըստ մեղաց մերոց արար Տէր, և ոչ ըստ անօրէնութեան մերում հատոյց մեզ. զի ժամանակն ամառնային էր՝ յորում ապստամբեցին նոքա 'ի մեզ, վաստակն չև ևս էր հնձեալ կամ ժողովեալ 'ի շտեմարանս. և նոքա եկեալ ուղտիւք և անասնովք կերան և կոխեցին զամենայն։ Իսկ մերձ յեղանակն ձմեռնային, իբրև գնացին նոքա 'ի դաշտն որ կոչի Մուղան, յաշխարհն Աղուանից. քանզի անդ կային զձմեռնային ժամանակն, և ապա ընդ գարունն սփռէին ընդ կողմանս կողմանս. մարդիկն՝ որ մնացին 'ի սրոյ անտի՝ մերկք էին և առանց կերակրոյ. 'ի հասկից անտի անկելոց և կոխելոց՝ ունէին զպէտս իւրեանց. և ձմեռն ոչ ցուրտ եղև սաստիկ, որպէս յայլ ժամանակսն, այլ կակուղ և ըստ միտս. և զի ոչ ունէին եզինս՝ որ գործէին զերկիր, և ոչ սերմանս՝ զոր եթէ ցանէին, 'ի գալ գարնան՝ հրամանաւ Աստուծոյ, երկիրն բուսոյց ինքնեակս[2], որ բաւական էր լնուլ զպէտս մարդկան. այլ և ընդ ամենայն կողմանս լիութիւն եղև հացի, որով ապրէին փախուցեալքն 'ի տեղիս. այլ և անողորմ ազգն Արաց բազում գութ և խնամս ցուցանէին երթելոցն առ նոսա պանդխտանալ. և այսպէս ողորմածն Աստուած մխիթարեաց զվշտագնեալքն։

1 Օր. տունս։ 2 Տպ. ինքնէկս։

# ԻԷ

## ՎԱՍՆ ՅՈՒՂԱՐԿԵԼՈՅ ԶԻՇԽԱՆՆ ԱՒԱԳ ԱՌ ՂԱՆՆ ՅԱՐԵՒԵԼՍ

Իբրեւ սակաւ ինչ ժամանակք անցին 'ի վերայ՝ առաքեցին զԱւագն առ արքայն իւրեանց, զոր Պանն կոչէին, ընդ հեռաւոր ճանապարհս, յարեւելս հիւսիսոյ. քանզի այսպէս առնէին, զամենայն մեծամեծս զոր կամէին պատուել՝ առ նա յուղարկէին, եւ հրամանաւ նորա առնէին զոր ինչ եւ գործէին. քանզի սաստիկ հրամանակատարք էին արքային իւրեանց։ Այլ եւ ինքն իշխանն յօժարեաց գնալ, զի թերեւս ինչ դիւր լիցի իւր եւ երկրին. եւ ամենայն ուք աղօթս մատուցանէր վասն նորա առ Աստուած՝ խաղաղութեամբ դարձուցանել զնա այսրէն. զի ինքն բարի էր բնութեամբ, եւ առաւել եւս զի յուսային եթէ գալստեամբ նորա շահեսցին ինչ։ Իսկ նորա երթեալ յանդիման լինէր մեծի արքային, եւ ցուցանէր նմա զգիրս զօրագլխաց իւրոց, եւ յիշեցուցանէր զպատճառս գալոյն առ նա, թէ 'ի ծառայութիւն եկեալ է նմա։ Իբրեւ լսէր զայն մեծ արքայն՝ սիրով ընդունէր զնա եւ տայր նմա կին 'ի Թաթար ազգէ, եւ յուղարկէր զնա յիւր աշխարհն. եւ գրէր առ զօրավարսն՝ տալ զնա 'ի ձեռս նորա, եւ նովաւ նուաճել զամենայն ապստամբսն, որ եւ եղեւ իսկ։ Զի իբրեւ եկն նա յաշխարհն իւր, եւ արարին զօրագլուխք զհրամանս արքային իւրեանց. եկին 'ի հնազանդութիւն ծառայութեան՝ Շահնշահ որդի Զաքարէի, եւ Վահրամն իշխանն, եւ որդին իւր Աղբուղայն, եւ Հասան որ Պռոշն կոչէին՝ իշխան կողմանցն Խաչենոյ, եւ այլք բազումք. եւ զիւրաքանչիւր երկիր տային նոցա, եւ առ ժամանակ մի ներումն։ Այլ ապա սկսան հարկապահանջութեամբ եւ երթեւեկութեամբ եւ զինուորութեամբ նեղել զնոսա. սակայն թէպէտ այսու ամենայնիւ եւ որ առաւել քան զայս էր՝ նեղէին զնոսա, բայց զոք ոչ սպանանէին։ Այլ իբրեւ անցին ամք ինչ՝ նեղեցաւ 'ի նոցանէ իշխանն Աւագ. զի կարի ժլատք էին, եւ ոչ կարէր զամենեսին ըստ մտաց նոցա հաճել. զի ոչ միայն ոչ բաւականային ուտելով կամ ըմպելով, այլ եւ պահան-

ջէին երիվարս և հանդերձս մեծագինս. զի կարի յոյժ ձիասէրք էին. վասն այսորիկ և քաղեցին զձի յամենայն երկրէ, և ոչ ոք իշխէր համարձակ պահել զձիս և զջորիս, բայց թէ 'ի ծածուկ ուրեք վասն հարկին զինուորութեան. զի ուր և գտանէին յափշտակէին. և աւելի ևս՝ յորում գտանէին զնշանն իւրեանց. և զոր առնուին՝ իւրաքանչիւր զօրագլուխ իւրով նշանով կընքէր, խարելով 'ի մի անդամն. և թէպէտ գնէին 'ի նոցունց՝ և այլ ոք հանդիպէր յայլմէ գնդէ, առնուին 'ի նոցանէ, և պատժէին զնոսա իբրև զգողս, և զայս ոչ միայն մեծամեծ մարդիկն առնէին, այլ և փոքունքն ևս. և մանաւանդ աւելի ևս առնէին զայս յորժամ մեռաւ զօրավարն զօրուն, որում անուն էր Չաղատա. քանզի սպանին զնա 'ի գիշերի՝ որ Մուլհէտքն անուանէին. և վասն այսորիկ կոտորած սաստիկ եղև գերւոյն՝ որ էր 'ի զօրսն [1]. և այրս այս բարեկամ էր Աւագին. իբրև մեռաւ նա՝ թշնամիք բազումք յարեան 'ի վերայ նորա:

Յաւուր միում 'ի տան Աւագին մի ոմն 'ի նոցունց եկն 'ի խորանն ուր նստէր Աւագն. և իբրև ոչ վաղվաղակի ել ընդ առաջ նորա, վարոցիւք երիվարին՝ որ 'ի ձեռին նորա՝ ծեծեաց զգլուխ նորա. զայն տեսեալ սպասաւորաց իշխանին՝ բարկացան ընդ անարգանս տեառն իւրեանց, յարեան հարկանել զայրն, և իշխանն արգել զնոսա՝ թէպէտ զայրացեալ էր. և երթեալ առն այնորիկ՝ որում անուն էր Գօջբուղա, առեալ ընդ իւր և այլ ընկերս՝ կամեցաւ 'ի գիշերի սպանանել զիշխանն. և նորա գիտացեալ փախեաւ առ թագուհին Վրաց, զի դեռ ևս ապստամբ էր նա՝ գայթեալ յամրագոյն ամրոցս յաշխարհին Վրաց. և առաւել ևս այսպիսի անկարգութիւնս վասն այնորիկ գործէին, զի մեծ զօրավարն՝ որ գլուխ էր ամենեցուն, զոր Չարմաղանն կոչէին, համրացեալ էր 'ի դիւէ և 'ի ցաւոց. բայց զիշխանութիւն ոչ էին բարձեալ 'ի տանէ նորա. զի կին նորա և որդիք հանդերձ գործակալօք տանն նորա վարէին զիշխանութիւնն. զի Խաղանն այսպէս հրամայեաց, թէ և մեռանի զոսկերս ևս շրջեցուցանել ընդ զօրսն, զի

1 ՕՕ. ու եր դբ :



կարի յոյժ աջողած է այրդ և շնորհաւոր։ Եւ իբրև փախեաւ Աւագն՝ տրտմեցան մեծամեծք, և մեղադիր եղեն առն այնմիկ, և յղեցին դեսպանս զկնի նորա, մի ապստամբիլ 'ի նոցանէ. և երդնուին ոչ ինչ առնել նմա չար. և եառուն զաշխարհս նորա 'ի ձեռն Շահնշահի, իբր թէ եղբայր նորա իցէ. և զայս առնէին վասն առաւել հաւատարմութեանն։ Իսկ Աւագն գրեաց թուղթ և առաքեաց առ Նոյանն, թէ Ի ծառայութենէ քումմէ ոչ եմ ելեալ, այլ 'ի սպանմանէ փախուցեալ եմ, և անսամ քում հրամանիդ։ Եւ մինչ նա յամէր զգալն և մնայր պատասխանւոյ մեծի թագաւորին, սոքա ըղձանձ նորա որ թագուցեալ կայր 'ի բերդորայս՝ զամենայն հանին 'ի խոյզ արկեալ. և դարձեալ պատգամս յղէին մի զկնի միոյ առ Աւագն՝ գալ առ նոսա, զի երկընչէին յարքայէն իւրեանց։ Եւ իբրև եկն Աւագն 'ի զօրն՝ իսկոյն եկն հրաման յարքայէն առ զօրսն, զի մի ոք իշխեսցէ չար ինչ առնել Աւագին. և թուղթս առ Աւագն, և պարգևս նմա՝ գալ համարձակ և մի երկընչել։ Ապա մեծարանս արարեալ հանին արտաքս 'ի զօրէն զարսն՝ որք կամէին սպանանել զնա, և առաքեցին զնա. և զոմն մի գլխաւոր Տօնղուզ-աղա անուն՝ որ եկեալ էր ընդ նմա՝ հարկս պահանջել յամենեցունց, հրամանաւ Ղանին՝ առ թագուհին Վրաց Ռուսուդան, գալ 'ի հնազանդութիւն մեծի արքային. որոց երթեալ առ նա յորդորեցին զնա կալ 'ի հնազանդութեան, և մի երկնչել. և առեալ 'ի նմանէ զօրս, եկին առ առաքիչսն պայմանաւ և սիրով խաղաղութեան՝ թագուհւոյն կալ 'ի հնազանդութիւն, հանդերձ որդւովն՝ Դաւթաւ մանկամբ, զոր նորընծայ թագաւորեցուցեալ էր. և նոցա ոչ ստել ուխտին։

## ԻԲ

### ՎԱՍՆ ԿՈՏՈՐԱԾԻՆ ՈՐ Ի ԿՈՂՄԱՆՍ ԽԱՉԵՆՈՅ, ԵՒ ՎԱՍՆ ԲԱՐԵՊԱՇՏ ԻՇԽԱՆԻՆ ՋԱԼԱԼԴՕԼԱՅ

Ցուցաք սակաւիկ մի համառօտիւք որ ինչ գործեցաւ ընդ աշխարհս 'ի մօլեկան զօրացն՝ որ Թաթարն կոչի. ասասցուք արդ և վասն կողմանցն Խաչենոյ, և որ

ինչ անդ գործեցաւ. քանզի ընդ ամենայն կողմանս սփռեալ էին զասպատակս իւրեանց, այլ և վիճակաւ ևս բաժանեալ՝ հասին անդ ոմանք 'ի գլխաւորացն զօրու ծանու և զինու, և ամենայն ախիւ բանակին. գերեցին, և զբազումս սպանին որ յարձակ վայրսն: Ապա մարտիւք մարտեան և ընդ գաղթականսն և որ յամուր վայրսն, զոմանս խաբէութեամբ և զկէսս բռնութեամբ իջուցին. էր զոր սպանին և էր որ գերեցին. բայց յողովքն այն էին՝ որ ամրացեալ կային յանկասկած վայրսն՝ զոր վասն դժուարութեան տեղւոյն Հաւախաղաց կոչէին, որք ապաստանեալ յամուրսն անկասկած կային. բայց քանզի 'ի Տեառնէ էր բեկումն՝ յեղակարծում ժամու գաղտագողի ելեալ մտին յամուրսն, և սրոյ ճարակ ետուն զբազմութիւնն, և զկէսն գահավէժ արարին. և 'ի բազմութենէ անկելոցն ծածկէր երկիրն, և արիւնն առու եղեալ[1] իբրև զջուր երթայր. և յոչ ոք խնայեցին. և ոսկերքն ևս յետ բազում ժամանակաց իբրև զդերբուկս քարանց կուտեալ երևէին:

Զօգան և 'ի վերայ բարեպաշտ իշխանին Հասանայ՝ զոր Ջալալն կոչէին. քուերորդի էր սա մեծամեծ իշխանացն՝ Զաքարէ և Իւանէ, այր բարեպաշտ և աստուածասէր, հեզ և հանդարտ, ողորմած և աղքատասէր, ճգնող յաղօթս և 'ի խնդրուածս, իբր զայնս՝ որ յանապատս կային. զպաշտօն տունջեան և գիշերոյ անխափան կատարէր՝ ուր և լինէր, իբրև զվանորայսն, և յիշատակ յարութեան փրկչին յաւուր միաշաբաթոջ՝ յոտանաւոր տքնութեամբ անցուցանէր անքուն. և էր յոյժ քահանայասէր և ուսումնասէր, և ընթերցօղ աստուածային կտակարանացն: Այլ և բարեպաշտուհի մայր սորա յետ մահուան առն իւր Վախթանկայ, զոր Տօնկիկն կոչէին, կարգաւորեաց զերիս որդիսն իւր՝ զՋալալն, զԶաքարէ և զԻւանէ. չոգաւ նա 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ և զամս բազումս անդ կացեալ մեծաւ ճգնութեամբ, զարմացուցանէր զամենայն տեսօղսն. քանզի ծախեալ զամենայն գոյս իւր զոր ունէր՝ յաղքատս և 'ի կարօտեալս, նման Հեղինէի կնոջն Աբգարու, և ինքն ձեռագործով իւրով կերակրէր, և անդ

[1] ՕՕ. Էլէւ:

տուած երկու մարդով, և փոխեցան յաստեացս առ Քրիստոս, և կան 'ի պահեստ 'ի տանն աստուածափառ Խաղայի. առաջնոյն 'ի թուին վեցհարիւր ութսուն և հինգ, և Եղիայի 'ի վեցհարիւր իննսուն և ութ. և բազում քահանայիւք որ ասէին զթիւ երիցանց եօթն հարիւր: Իբրև կնքեցաւ օծմամբ, ճաշ մեծ յօրինեալ՝ ինքնին իսկ ձեռօք իւրովք պաշտէր զբազմեալսն. և տուրս տուեալ ըստ իւրաքանչիւր պատուոյ առատութեամբ՝ արձակէր զամբոխն[1]. որ եղև այս 'ի վեցհարիւր ութսուն և ինն թուին Հայոց, յաւուր մեծի տօնի վարդավառին: Շինեաց և կին նորա Մամքան՝ ըզգաւիթն հրաշալի 'ի դուռն եկեղեցւոյն. և ինքն զանձն ամենայն առաքինութեան տուեալ, ձգնէր հանապազ պահօք և աղօթիւք, և ընթերցասիրութեամբ խոկայր զպատուիրանս տեառն 'ի տուէ և 'ի գիշերի, ըստ գրեցելումն:

## Լ

### ՎԱՍՆ ՑՈՒՑՄԱՆ ԿԵՐՊԱՐԱՆԱՑ ԹԱԹԱՐԻՆ ԲԱՑԱՅԱՅՏՈՒԹԻՒՆ ՍԱԿՑԻ

Վասն զի յօժարեցաք մեք յիշատակ թողուլ յազգս՝ որ գալոց են, քանզի ակն ունիմք մեք յուսովք փրկութեան 'ի նեղութենէ աստի որ պաշարեալս է զմեզ, սակաւիկ մի ցուցցուք քննասիրացդ՝ զկերպարանս և զխօսս նոցա: Էին տեսլեամբ կերպարանաց դժոխատես և ահագնալուր. մօրուս ոչ ունելով բայց սակաւուց ոմանց կամ 'ի կլափն կամ 'ի շուրթն. ակն նեղ և արագատես, ձայնն նուրբ և սուր, բազմակեացք և տևողք. յորժամ անկանէր՝ յաճախ ուտէին և ըմպէին անյագ, և յորժամ ոչ անկանէր՝ ժուժկալք էին. ուտէին զամենայն կենդանիս, զսուրբս և զանսուրբս, և զմիսն ձիոյն առաւել մեծարէին, անդամ անդամ յօշեալ և կամ եփեալ և խորովեալ առանց աղի, և ապա մանր կտրատեալ և թացեալ յաղաջուրն, այնպէս ուտէին. ոմանք 'ի գուճ ըստ նմանութեան ուղտուց. կէսք

[1] ՕՕ. զամբոխէր :

նստելով ուտէին, և յուտելն հասարակ բաշխէին տեարանց և ծառայից. և յըմպելն զ՚ղմուզ[1] կամ զգինի՝ առեալ մի ոմն մեծ ամանով՚ի ձեռն իւր, և փոքր բաժակաւ առեալ՚ի նմանէ՝ ցանէին ընդ երկինս, և ապա յարևելս, յարևմուտս, ՚ի հիւսիս և ՚ի հարաւ. և ապա իւր իսկ ցրողին զայն՝ սակաւ մի ըմպեալ՚ի նըմանէ, մատուցանէր աւագագունին. և թէ ոք բերէր նոցա կերակուրս կամ ըմպելիս՝ նախ բերողին տային ուտել և ըմպել, և ապա ինքեանք ուտէին և ըմպէին, զի մի ՚ի մահացու դեղոց ինչ դրժիցին[2]: Որչափ և կամէին կանայս առնէին. բայց զպոռնիկս ամենևին ոչ ապրեցուցանէին ընդ իւրեանց կանայս. բայց ինքեանք ուր և հանդիպէին այլազգեաց՝ անխտիր խառնակէին, և գողութեան ատելիք էին, մինչ զի չարաչար մահուամբ սատակէին. և պաշտօն ինչ ոչ գոյր առ նոսա կամ երկրպագութիւն, բայց սոսկ զանունն Աստուծոյ յիշէին յամենայն իրս. զայս թէ զԱստուծոյ գոհանային, և կամ թէ զայլ ոմն Աստուած կոչէին, մեք ոչ գիտեմք և ոչ ինքեանք ևս:

Բայց սովորաբար զայս ասէին, և զարքայն իւրեանց՝ ազգային Աստուծոյ, զերկինս առեալ իւր բաժին, և զերկիրս տուեալ Խաղանին. զի ասէին զՉանկզխանն՝ զհայր Խաղանին, ոչ ծնեալ՚ի սերմանէ առն, այլ լոյս իմն եկեալ յաներևութից և մտեալ ընդ երդս տանն, և ասացեալ մօրն՝ թէ յղասջիր և ծնցես որդի ինքնակալ երկրի. և յայնմանէ ասէին ծնեալ զնա: Զայս պատմեաց մեզ Գրիգոր իշխանն՝ որդի մարզպանին, եղբայր Սըլան-պէկին, Սարգսի և Ամիրային, յազգէ Մամիկոնէից, զոր իւր իսկ լուեալ էր յառնէ միոջէ մեծէ և՚ի կարի աւագացն, որում անուն էր Գութուն-նուին, յաւուր միում յուսուցանել նորա զմենկագոյնս: Եւ յորժամ ոք մեռանէր՚ի նոցանէ՝ կամ սպանանէին, էր որ բազում աւուրս շրջեցուցանէին ընդ իւրեանս, քանզի մտեալ դեւի խօսէր անդուստ բազում բարբաջմունս, և էր զոր այրէին, և զկէսն թաղէին յերկրի խորափոսիւք, և ընդ նմին դնէին զզէնս

1 Տես ՚ի ծանօթ. էջ 138:

2 ՕՕ. Ձ՝ մահացու դեղոց ինչ դըժիցն:

քուր, և զհանդերձն և զոսկին և զարծաթն, որ ինչ բաժին իւր էր. և թէ 'ի մեծաց ոք լինէր՝ 'ի ծառայից և յաղախնեաց ևս դնէին ընդ նմա 'ի գերեզմանի, զի սպաս կալցի ասէին նմա. այլ և զձի ևս, զի ասէին անդ պատերազմ սաստիկ լինել. զոր յիշատակ կամէին առնելոյ մեռելոյ՝ ձեղքէին զփոր ձիոյն, և քարշէին ընդ այն զամենայն միսն առանց ոսկեր, և ապա զփորոտին և զոսկերս այրէին հրով. և կարեալ զմորթն ձիոյն՝ իբր թէ զամենայն մարմինն ունիցի, սրեալ փայտ մի մեծ՝ հարեալ ընդ որովայնն, և հանեալ ընդ բերանն՝ այնպէս վերացուցանէին 'ի ծառ կամ 'ի բարձրաւանդակ տեղի ինչ: Այլ և կանայք նոցա կախարդք էին, և զամենայն ինչ հմայէին, և առանց հրամանի կախարդաց և դիւթից ոչ երթային 'ի ճանապարհ ուրեք. բայց նոքա հրամայէին:

Այլ և խօսք նոցա խժականք անծանօթք 'ի մէնջ[1]. քանզի կոչէին զանուանն Աստուծոյ Տանկրի. և զմարդն՝ էրէ[2]. և զկին՝ եմ աչճի[3]. և զանուն հօր՝ էչգա[4]. և ըզմօրն՝ աքա. և զեղբայրն՝ աղա. և զքոյր՝ աքաճի. և զգլուխ՝ թերուն. և զաչս՝ նիդուն. և զականջս՝ չիքին[5]. և զմօրուս՝ սախալ. և զերես՝ չիրայ-նիւուր[6]. և զբերանն՝ աման. և զատամն՝ սիդուն-սիդուր[7]. զհացն՝ օթմաք. և զեզն՝ օքար[8]. և զկով՝ ունէն. զոչխար՝ ղոյնա. և զգառն՝ ղուրղան. և զայծ՝ իման. և զձի՝ մօրի. զջորի՝ լուսա. զուղտ՝ թամա. և զշուն՝ նօխա. և զգայլ՝ չինա. և զարջն՝ այիթղա. և զաղուէս՝ հունեգան. և զնապաստակն՝ թօլայ-թաուլայ[9]. և զհաւ՝ թախեա. և զաղաւնին՝ քօքուչին. և զարծիւ՝ բարքուտ-ղուշ. և զջուրն՝ ուսուն. զգինի՝ դարասուն. և զծով՝ նաւուր տանկըզ[10]. և զգետ՝ մօրան ուլանսուն. և զթուր՝ իլդու. և զաղեղն՝ նըմու[11]. և զնետն՝ սըմու. և զթագաւորն՝ մելիք. և զպարոն՝ նուին. և զմեծ պարոն՝ էքա-նուին. և

1 Մեծաւ մասամբ Մուղալ բարբառոյ Թաթարաց են բառքդ, այլ գտանին և Թուրքք և արաբիկ ձայնք:

2 Տպագ· հարէրէան :

3 Տպ· միայն աչճի :

4 ՕՕ· էչքա : Տպ· էչկա :

5 ՕՕ· չիքի :

6 Տպ· չիօղ:

7 Ա· Գ· սխուրսիդուն : Տպ· սիդուն :

8 Տպ· աքար :

9 Թուլին երկու անուանք համանիշք, զի յայլ ՕՕ· կամ մին կամ միւսն գրի :

10 Տպ· միայն տանկըզ, որ է Թուրքացի տենկիզ· دڭز :

11 ՕՕ· նմօ :

զերկիր՝ էւ էրչան[1] . և զերկինք՝ գօգ[2] . զարեգակն՝ նառրան . և զլուսին՝ սարա . զաստեղս՝ հոտաստաք-սարղա[3] . ըզլոյս՝ օթառր . և զգիշեր՝ սոյնի . և զգրագիր՝ բիթիւջչի . և զսատանայ՝ բառաահոտա էլչէղ[4] : Նա զայլ այսպիսի խժական անուանս, զոր 'ի բազում ամաց մեզ անծանօթ՝ իսկ այժմ ակամայ ծանուցեալ : Նա գլխաւորք երևելիք, որք յառաջադէմք էին՝ այսոքիկ են . առաջին մեծ՝ որ գլուխ և հրամանատուն էր ամենայն զօրուն՝ Չարմաղան-նուինն, այր իրաւարար և դատաւոր . և որ աթոռակիցք էին նորա, Խորար-նուին, Ղութուն-նուին, Տութուն-նուին և Չաղատայն՝ որ զօրագլուխն էր զօրուն, զոր սպանին Մուլհեդքն . և այլ բազում գլխաւորք էին և անթիւ զօրք :

## ԼԱ

### ՎԱՍՆ ՌԱԲԱՆԻՆ ԱՍՈՐԻՈՅ

Նախախնամողն Աստուած՝ որ զամենեցուն կեալն կամի՝ նա մարդասիրութեամբ իւրով երևեցոյց այր մի 'ի մէջ նոցա երկիւղած և աստուածապաշտ, ասորի ազգաւ, որ հայր անուանեալ արքային նոցա՝ որ Խաղանն[5] կոչէին . (անուն նորա Սիմէոն, զոր Ռաբան-աթա կոչէին .) ռաբան, ասորերէն՝ վարդապետ, և աթայն՝ թաթարերէն հայր . (իբրև լուաւ զանխնայ կոտորումն քրիստոնէից՝ որ 'ի զօրաց Թաթարին), մատուցեալ առ Ղանն խնդրեաց 'ի նմանէ թուղթ առ զօրսն իւր, զի մի այնպէս առ հասարակ կոտորեսցեն զանմեղ մարդիկ, որք ոչ պատերազմին ընդ նոսա . այլ թողուլ զնոսա զի ծառայեսցեն նմա : Իսկ նա զնոյն ինքն առաքեաց մեծ և երևելի շքով, գրեալ հրովարտակ առ զօրագլուխն իւր, զի ամենեքեան անսայցեն հրամանի նորա . և նա եկեալ բազում ինչ նպաստ եղև քրիստոնէից, թափելով 'ի մահուանէ և 'ի գերութենէ, շինեաց և եկեղեցիս 'ի քաղաքս Տաճկաց, որ ոչ իշխէին զՔրիստոս ա-

1 Տպ. էւ:

2 Տպ. գօգայ :

3 Ա. Գ. սարղա-հոտաքաք : Տպ. սաղըա :

4 Ա. Գ. պէտաէլչէպանտա : Տպ. բառաահոտաէ :

5 Ուղիղն Խաքան, յորմէ համառօտեալ է Խան կամ Ղան :

նուաճել. եւս առաւել 'ի Թաւրէժ եւ 'ի Նախճաւան, ուր առաւել թշնամիք էին քրիստոնէից, զի ոչ իշխէին յայտնի երեւիլ կամ շրջել քրիստոնեայք, թող թէ եկեղեցիս շինել կամ խաչ կանգնել. իսկ նորա կանգնեալ խաչ եւ եկեղեցիս, եւ ժամահար հնչեցուցանել 'ի տուէ եւ 'ի գիշերի, եւ յայտնապէս տանել զմեռեալս 'ի թաղումն՝ խաչիւք, աւետարանաւ եւ մոմեղինօք եւ պաշտմամբ, որպէս օրէնն է քրիստոնէից. եւ զընդդիմացեալսն՝ մահու վախճանէր, եւ ոչ ոք իշխէր հակառակ կալ հրամանին նորա. այլ եւ ամենայն զօրք Թաթարին պատուէին զնա որպէս զարքայն իւրեանց, եւ առանց նորա ոչ ինչ խորհէին կամ առնէին. եւ մարդիկ նորա վաճառականք՝ որք ունէին զտամղա նորա, այսինքն զնշան եւ զգիր՝ համարձակ շրջէին ընդ ամենայն աշխարհս. եւ ոչ ոք իշխէր մերձենալ առ նոսա, որք ասէին զանունն Սադունին. այլ եւ ամենայն զօրագլուխք Թաթարին ընծայ մատուցանէին նմա յաւարէ իւրեանց։ Նա ինքն էր այր պարկեշտ վարուք, նոյնպէս 'ի կերակուրս եւ յըմպելիս. յաւուրն միանգամ ճաշակէր ընդ երեկս սակաւ ինչ կերակուր։ Նոյնպէս այց արար Աստուած ժողովրդեան իւրում 'ի նշդեհութեան անդ՝ 'ի ձեռն առնս այսորիկ, եւ զբազումս մկրտեաց նա 'ի Թաթարէ անտի. եւ ամենայն ոք վասն սքանչելի վարուց նորա եւ մեծաշուք պատուոյն՝ զարհուրէր եւ դողայր 'ի նմանէ։

Նա յորժամ եղեւ այս գծագրութիւն՝ որ յայսմ վայրի, 'ի վեցհարիւր իննսուն թուականին Հայոց, 'ի թագաւորութեանն Հայոց որ 'ի կողմանս Կիլիկեցւոց՝ Հեթմոյ բարեպաշտի, եւ 'ի զօրապետութեան եղբօր իւրոյ Սմբատայ քաջի, եւ իշխանաց իշխանի Կոստանդնի հօր նորա, եւ 'ի կաթուղիկոսութեան սուրբ աթոռոյն Գրիգորի՝ Կոստանդեայ ծերունւոյ եւ առաքինւոյ, որ նստէր 'ի Կլայն–հռոմէական, եւ յարքեպիսկոպոսութեան տեառն Բարսղի եղբօր թագաւորին Հեթմոյ, զոր պահէին փոխանորդ սուրբ աթոռոյն կաթուղիկոսութեան. եւ յԱղուանից կաթուղիկոսութեան տեառն Ներսէսի հեզոյ եւ մարդասիրի, որ յայս աւուրս նստէր 'ի վանքն՝ որ կոչի Խամշի, 'ի գաւառն Միափորի, եւ յարքեպիսկոպոսութեանն եղբօրորդւոյ նորա՝ տէր Յո-

վաննիսի՝ նոր ձեռնադրեցելոյ, և 'ի բռնակալութեան հանուրցս՝ Խուաթարին. և 'ի ժամանակի կենաց մերոց՝ ամս քառասուն պակաս կամ աւելի։

## ԼԲ

### ՎԱՍՆ ԱՒԵՐՄԱՆ ԹԷՈԴՈՒՊՕԼՍԵԱՑ

Արդ 'ի սկսանել վեցհարիւրերորդի իննսներորդի և առաջներորդի թուին Հայոց, գայր հասանէր հրովարտակն 'ի Խաղանէն՝ առ զօրս և զօրագլուխս յարեւելս, զօրավար և առաջնորդ կացուցանել փոխանակ Չարմաղունին՝ որ համրացեալ էր, զոմն մի 'ի զօրացն՝ Բաչու–Խուրչի անուն[1]. նմա անկեալ վիճակ առաջնորդութեան, քանզի հմայիւք վարէին։ Արդ իբրև ա՛ռ նա զիշխանութիւնն, իսկոյն զօր գումարեաց յամենայն ազգաց՝ որ ընդ ձեռամբ նորա, և գնաց յաշխարհն Հայոց, որ ընդ իշխանութեամբ սուլտանին Հոռոմոց. և հասեալ 'ի Կարին գաւառ՝ պաշարեաց զնա, որ այժմ կոչի Թէոդուպօլիս[2]. և նստեալ շուրջ զնովաւ, առաքեաց զդեսպանս առ նոսա գալ 'ի հնազանդութիւն. և նոքա ոչ կամեցան գնալ. այլ անարգանօք դարձուցին զդեսպանսն, և ինքեանք ելեալ 'ի պարիսպն նախատէին զնոսա։ Իսկ նոքա իբրև տեսին թէ ոչ ողջունեցին զխաղաղութիւն, յամենայն կողմանց բաժանեալ զպարիսպ քաղաքին գլխաւորացն՝ զի փլուսցեն առ հասարակ. և նոցա փոյթ յանձին կալեալ՝ կանգնեցին փիլիկուանս բազումս և կործանեցին զպարիսպն, և մտեալ 'ի ներքս սրոյ ճարակ տուեալ զամենեսեան անողորմաբար. և յափշտակեալ զինչս և զստացուածսն՝ հրով այրեցին զքաղաքն. և զի յոյժ բազմամբոխ էր քաղաքն 'ի ժամանակին յայնմիկ՝ լցեալ քրիստոնէիւք և տաճկօք, և այլ ամենայն գաւառն անդր հաւաքեալ էր, անթիւ գոյին կտակարանք աստուածային գրոց մեծամեծաց և փոքունց. զայն առեալ այլազգեացն ծախէին քրիստոնէից՝ որ 'ի զօրուն էին, զյաճախագինն

1 Պայճու՝ յԵխսաուդ տոհմէ Թաթարաց։

2 Տաճ. պաշարեաց զԹէոդուպօլիս, որ այժմ կոչի Կարնոյ քաղաք։

ընդ դուզն գնոյ. և նոցա խնդութեամբ առեալ սրբութիւն յիւրաքանչիւր գաւառս՝ բաշխելով յեկեղեցիս և 'ի վանորայս. այլ և 'ի գերելոց անտի զբազումս գնեցին զարս և զկանայս և զմանկտի, և զեպիսկոպոսունս և զքահանայս և զվարդապետս՝ որքան հնար էր գնեցին իշխանքն քրիստոնեայք, Աւագն և Շահնշահն և Աղբուղայն՝ որդին Վահրամայ, և Գրիգոր խաչենեցի՝ Դոփին որդին, որ էր այր երկիւղած 'ի տեառնէ, և զօրք նոցին. որոց վարձահատոյց նոցա Քրիստոս եղիցի. և զամենեսեան ազատ արձակեցին, թողլով 'ի կամս անձանց ուր և կայցեն։ Եւ ոչ միայն թէ զքաղաքն Կարնոյ աւերեցին, այլ և զբազում գաւառս՝ յիշխանութենէ սուլտանին. և սուլտանն ոչ ինչ կարաց օգնել. քանզի զօղեալ թագուցեալ էր յերկիւղէ նոցա, այլ և վաղճանեալ ևս անէին զնա։ Իսկ զօրն Թաթար իբրև գործեաց նա զայս իր, դարձաւ բազում աւարաւ և խնդութեամբ յաշխարհն Աղուանից՝ 'ի կայս ձմերոց[1] իւրոց, յարգաւանդ և 'ի բերրի դաշտն՝ որ կոչի Մուղան, և անդ ձմերեաց։

## ԼԳ

### ՎԱՍՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՈՐ ԵՂԵՒ ԸՆԴ ՍՈՒԼԴԱՆՆ ԵՒ ԸՆԴ ԹԱԹԱՐՆ

Մինչդեռ զետեղեալ յապահովն նստեալ կայր զօրն Թաթար՝ ընդ դաշտս ամենայն Հայոց և Աղուանից, գայր դեսպան 'ի Ղիաթատին[2] սուլտանէն՝ խրոխտ և սպառնական բանիւք, որպէս սովորութիւն է Տաճկացն. թէ Այսպէս համարեցայք դուք աւերմամբ քաղաքի միոյ՝ եթէ յաղթեցայք նմա, և զօրութեան նորա. քաղաքք իմ անթիւք են 'ի բազմութենէ, և զօրաց իմոց չիք համար. արդ կաց մնաց դու ուր ես. և ես ինքնին եկեալ տեսից զձեզ մարտիւ պատերազմաց։ Եւ այլ բազում բանիւք որ նման է սոցին՝ մեծամեծս փքայր. և զայս ասէր պատգամաւորն, թէ հանդերձեալ է սուլտանն զձմեռն որ գալոց է զկնի ամարանս՝ 'ի դաշտի աստ Մուղան ձմերել, կանամբք և զօրօք։ Իսկ նորա լուեալ

1 ՕՕ. ձմեռոց։ 2 ՕՕ. Ղիաթադին։

ոչ ինչ ըմբոստանայր կամ խրոխտս ինչ խօսեցաւ ընդ-դէմ նոցա. այլ միայն զայս պատասխանի ետ գլխաւորն նոցա Բաչու-նուինն, եթէ Մեծամեծս բարբառեցայք. սակայն ում Աստուած տացէ զյաղթութիւնն՝ նմա լի-ցի: Եւ այսպէս մի զմիոյ կնի գայլին[1] դեսպանք՝ փու-թացուցանել զնոսա 'ի մարտ: Իսկ նոցա ոչ ինչ շտա-պեալ՝ այլ մեղմով գումարեալ զզօրսն իւրեանց, և որք ընդ ձեռամբ նոցա եկեալ յաշխարհս Հայոց, 'ի խս-տաւէտ վայրս՝ ամենայն ախիւ, գիրացուցեալ զերի-վարս. և ապա մեղմով մօտ հասեալ՝ ուր էր բանակ սուլտանին. քանզի և նա 'ի վեր էր եկեալ 'ի տեղւոջէ իւրմէ յաշխարհն Հայոց, որ ընդ իւրով իշխանու-թեամբ՝ հուպ 'ի քաղաքագիւղ մի՝ զոր Զմանկա-տուկն[2] անուանեն, անթիւ բազմութեամբ, կանամբք և հարճիւք, ոսկւով և արծաթով. և որ ինչ սպասք էին նորա մեծութեանն՝ զամենայն ընդ իւր բարձեալ բերեալ էր. այլ և զբօսանաց աղագաւ՝ սնուցեալ երէ վայրի, և յայլոց սողնոց բազումս, մինչև 'ի մկունս և կատուս. զի այնպէս աներկիւղ կամէր ցուցանել զինքն զօրացն: Իսկ զօրավարն Բաչու ըստ խորագէտ իմաս-տութեանն իւրոյ բաժանեալ զզօրս իւր 'ի բազում ա-ռաջս, 'ի ձեռն գլխաւորաց քաջաց, և զեկամուտ զօրսն՝ որ յազգաց ազգաց եկեալս՝ ցրուեաց, զի մի՛ նենգ ինչ գործեսցեն, և ընտրեալ յամենեցունց զարիսն և ըզ-քաջսն՝ յառաջապահս կարգեալ ինքեանց, որք երթեալք հանդիպեցան զօրացն սուլտանին, և մարտուցեալք 'ի փախուստ դարձուցին զնոսա. փախեաւ և սուլտանն մազապուր, թողեալ զկահ և զկարասի անդէն 'ի տե-ղւոջն. և սոցա զհետ մտեալ կոտորեցին զզօրսն անխը-նայ սրոյ ճարակ տուեալ, և ապա դարձան 'ի կապուտ անկելոցն: Իսկ իբրև եկն 'ի բանակն՝ ետես զի փախու-ցեալ էր սուլտանն և հարեալ զօրք նորա. ապա սկսան ասպատակ սփռել ընդ կողմանս կողմանս յաւարի առ-

1 ՕՕ. գայլ:

2 Անծանօթ է քաղաքագիւղս, այլ թուի յանուն լերին միոյ կո-չեցեալ ըստ թուրք ձայնի Չիմէն-կեփէ (մարգաւէտ լեռնանցք). և սահմանքն են յարևմտից հիւսի-սոյ Երզնկայ յԱշխարօվա կամ Աշչէհրօվա, ըստ պատմութեանն Թաթարաց, որ և Ալաքուհ կամ Քէօսէտաղ կոչէ զլեառնն: Ի Նոր Հայաստան (էջ 108) յիշի Չիմեն տաղ 'ի Գալքիւթ (Գայլ-գետ) վի-ճակի:

նուլ, և քանդել զբազում գաւառս, և ժողովել զոսկի և զարծաթ և զհանդերձս մեծագինս, ուղտս, ձիս, և ջորիս և անթիւ անասունս. և եկին պատեցին զքաղաքն Կեսարիա Կապադովկացւոց, և պաշարեցին զնա. և զի ոչ եղեն ձեռնտու բնակիչքն, առեալ բռնութեամբ 'ի սուր սուսերի մաշեցին զբնակեալսն, և յափշտակեալ որ ինչ 'ի նմա՝ և թողեալ ամայի զքաղաքն՝ եկին 'ի Սեբաստիա. և զի (յառաջագոյն ձեռնտու էին լեալ բնակիչք քաղաքին առ նոսա, և ընդ) առաջ երթեալ ընծայիւք և պատարագօք՝ մարդոյ ինչ ոչ մեղան, այլ յափշտակեալ մասն ինչ յաւարէ քաղաքին՝ յիւրեանց անունն գրաւեալ զքաղաքն, վերակացուս կացուցեալ դարձան: Եւ եկին պաշարեցին զԵզնկայն, և մարտիք բազում մարտեան ընդ նմա, և բնակիչք քաղաքին բազում հարուածս հասուցեալ 'ի վերայ զօրաց Թաթարին, ապա սկսան խաբէութեամբ արտաքս կոչել սիրոյ աղագաւ, և նոցա հաւանեալ եկին, քանզի ոչ ունէին ուստեք օգնական. յորոց սուր 'ի վերայ եդեալ կոտորեցին առհասարակ զարս և զկանայս, և սակաւ մանկունս և աղջկունս ապրեցուցեալ՝ վարեցին 'ի գերութիւն և ստրկութիւն: Եւ այսպէս բազում գաւառս և աշխարհս աւերեալ և գերեալ եկին 'ի քաղաքն՝ որ կոչի Տիւրիկէ. իբրև գիտացին բնակիչքն եթէ անհնար է զդէմ ունել նոցա պատերազմաւ, կամաւ ձեռնտու եղեն նմա. որոց առեալ ինչս բազումս՝ թողին զքաղաքն առանց վնասու, և դարձան բազում աւարաւ և մեծաւ խնդութեամբ 'ի կայս ձմերոց իւրեանց՝ որ 'ի Հայս և որ 'ի յԱղուանս, ողջանդամ և առանց վնասու. զի 'ի տեառնէ էր խորտակումն ամենայն ազգացս և կործանումն նոցա: Բայց քրիստոնեայքն որ էին ընդ նոսա զինուորեալք՝ զբազումս ազատեցին 'ի գերելոցն, որ յայտնի և որ 'ի ծածուկ, զքահանայս և զկրօնաւորս. մանաւանդ մեծամեծ իշխանքն Աւագ և Շահնշահ, Վահրամ և որդի իւր Աղբուղայն, և Խաչենեցիքն Ջալալն և Հասանն և զօրք իւր և ազգականք, և Գրիգոր Դուփին՝ որդի մօրքուեր Ջալալին. և այլ իշխանք և զօրք նոցին, ըստ կարի իւրեանց. և այս եղև 'ի թուին Հայոց վեցհարիւր իննսուն և երկու:

## ԼԴ

### ՎԱՍՆ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀԱՅՈՑ ՀԵԹՄՈՅ, ԵՒ ԶՈՐ ԻՆՉ ԳՈՐԾԵԱՑ[1] ԱՆԴ

Իբրեւ այս ամենայն գործեցաւ՝ Հեթում արքայն որ Կիլիկեցւոց եւ այնոցիկ նահանգացն իշխէր, յորժամ ետես թէ պարտեցաւ սուլտանն առաջի նոցա, առաքեաց դեսպանս առ նոսա, եւ պատարագս արժանաւորս, դնել նոցա ուխտ ընդ նմա խաղաղութեան, եւ նմա կալ նոցա 'ի հնազանդութիւն. որ եկեալ 'ի մեծ Դուռն[2] յանդիման եղեն Բաչու-նուինին եւ Ալթինայ խաթունին կնոջ Չարմաղունին[3] մեծամեծ աւագանոյն, միջնորդութեամբ իշխանին Ջալալին: Իբրեւ լուան զպատգամս արքային, տեսին եւ զընծայսն, խնդրեցին 'ի նմանէ տալ 'ի ձեռս նոցա զմայր սուլտանին եւ զկին եւ զդուստր, որ գաղտականութեան աղագաւ անդ փախուցեալ էին. եւ իբրեւ լուաւ արքայն Հեթում, յոյժ տրտմեցաւ, եւ ասէ. Լաւ էր ինձ եթէ զորդին իմ ըզԼեւոն խնդրէին յինէն՝ քան թէ զնոսա: Սակայն քանզի երկնչէր 'ի նոցանէ, զի մի մեծ չարեաց պատճառ լիցի այն, ակամայ կամաւ ետ 'ի ձեռս նոցա, այլ եւ ընծայս բազումս այնոցիկ՝ որ եկեալ էին տանել զնոսա. որք բերեալ ցուցին Բաչուին եւ այլոց գլխաւորացն. որք իբրեւ տեսին ուրախ եղեն, եւ մեծարանօք յարգեցին զդեսպանս արքային, եւ կարգեցին նոցա ռոճիկս եւ երիվարաց նոցա՝ զժամանակս ձմեռանն. զի 'ի լինել գարնայնոյն ընդ նոսին երթիցեն յաշխարհն իւրեանց. Հաստատեցին եւ սէր ընդ արքային, ետուն եւ գիր ըստ դենին իւրեանց, զոր Ալ-տամղայն[4] կոչէին. եւ այսպէս սպասէին մնալով յեղանակին գարնան, յորում միւսանգամ երթիցեն 'ի վերայ սուլտանին եւ աշխարհին նորա:

1 ՕՕ. Գործեցաւ:

2 Ի զօրանիստ բանակին. ըստ արեւելեայց Դուռն կոչելով զիշխանանիստն:

3 Չարմաւղին:

4 Այսինքն հրովարտակ կնքեալ նշանաւ մեծի իշխանին:

# ԼԵ

## ՎԱՍՆ ԿՈՍՏԱՆԴԵԱՅ ԻՇԽԱՆԻՆ ԼԱՄԲՐՕՆԻՑ, ԵՒ ԶՈՐ ԻՆՉ ԳՈՐԾԵԱՑ ՆԱ ԸՆԴ ԱՇԽԱՐՀՍ ԿԻԼԻԿԵՑԻՈՑ

Արքայն Լեւոն մինչ կենդանի էր՝ էր բերդ մի 'ի նորա աշխարհին, յոյժ անառիկ, որում անուն էր Լամբրօն, և իշխանն որ տիրէր բերդին՝ ապստամբեաց 'ի նմանէ, որում անուն էր Հեթում. և նա բազում անգամ ջանացեալ՝ ոչ կարէր նուաճել զապստամբն. ապա յետոյ խորամանկութեամբ խաբեալ զնա խնամութեան աղագաւ, որպէս թէ տացէ զդուստր եղբօր իւրոյ՝ որդւոյ նորա Օշնի կնութեան, ըմբռնեալ զնա և զորդիս նորա չարչարեալ, ետուն 'ի նա զամրոցն. և նորա առեալ եդ 'ի նմա զմայրն իւր զտիկնանց տիկին. և գրեաց նզովս ոչ և ս այլ տալ զնա իշխանի ումեք, բայց միայն արքունի լծի, զի հանապազ, ասէ, տեարք նորա ապստամբք են լեալ վասն ամրութեանն։ Երբև վախճանեցաւ Լեւոն և թագաւորութեան նորա իշխէր դուստրն Զապէլ, Կոստանդին իշխանաց իշխանն ընդ իւր միաբանեալ զկաթուղիկոսն և զայլ իշխանսն՝ թագաւորեցոյց զորդին իւր զՀեթում մանուկ տիօվք. ածեալ զնա այր դստերն Լեւոնի, փոխանակ որդւոյ բըրինձին[1], զոր ըմբռնեալ եդին 'ի բանտի. կամեցաւ թիկունս օգնականութեան իւր առնել զորդին Հեթմոյ զԿոստանդին համանուն իւր, զորդին Հեթմոյ՝ զաներն իւր. և տայ 'ի նա զԼամբրօնն՝ զսեփականն իւրեանց, և եդ զնա թագադիր որդւոյ իւրոյ։ Իսկ նա յետ աւուրց ինչ ըստ հայրենի սովորութեան իւրեանց ապստամբեաց 'ի քեռորդւոյ իւրոյ յարքայէ Հեթմոյ, և թէպէտ շատ ջանաց Կոստանդին հայր արքային, և ինքն իսկ արքայ՝ ոչ կարաց ածել զնա 'ի հաւանութիւն հնազանդութեան. զի ձեռն ետ նա 'ի սուլտանն Հոռոմոց, և այսպէս կայր նա ապստամբ։

Երբեւ՝ փախեաւ սուլտանն Հոռոմոց 'ի Թաթարէն, արքայն զամենայն զիւղս և զանդաստանս Լամբրօնին

1 Իշխանին Անտիոքու։

տարար 'ի ներքոյ հրամանաց իւրոց, և միայն մնաց նմա բերդն՝ որ ապստամբեալ էր. ապա յղեաց Կոստանդին դեսպանս առ արքայն՝ խնդրել զհաշտութիւն և տալ զորդիս իւր արքայի 'ի ծառայութիւն, և ինքն մնալ 'ի բերդին, և արքայն ոչ կամեցաւ. երկիցս և երիցս յղեաց, իսկ արքայն և հայրն ոչ կամեցան: Ապա գնացեալ Կոստանդնի 'ի Կոնն, և առեալ զօրս սուլտանին Հոռոմոց, որք յայնժամ թշնամիք էին արքային, զի ետ զմայր սուլտանին 'ի Թաթարն, գայ յեղակարծում ժամու մինչ դեռ ցրուեալ էին զօրքն արքունի յիւրաքանչիւր տեղիս, և մտեալ յաշխարհն աւերեաց զբազում աւանս և գաւառակս այրմամբ և սպանմամբ և գերութեամբ, զբազում քրիստոնեայս կոտորեալ. և այսպէս բազում չարիս անցուցեալ ընդ աշխարհն քինահանութեամբ: Իսկ արքայն իբրև ետես զայն չարիս՝ ժողովեալ զզօրս իւր՝ արիութեամբ հասեալ 'ի վերայ բազմութեանն, որոյ ճարակ ետ զամենեսեան. և փախեաւ միայն ապստամբ իշխանն և սակաւք ընդ նմա. այսպէս եօթն անգամ հարաւ 'ի նմանէ, ապա եմուտ յամրոցն իւր և ոչ իշխէր համարձակիլ յաջ կամ յահեակ:

## ԼԶ

### ՎԱՍՆ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ ԴԱՒԹԻ

Բազմահնար և խորամանկ ազգն ՙՆետողաց՝ յոլով անգամ յղեցին առ Թագուհին Վրաց Ռուզուդան՝ գալ առ ինքեանս, կամ տալ զորդի իւր զԴաւիթ մանուկ՝ զօրօք՝ առ նոսա: Իսկ նա զայս ոչ արարեալ՝ տայ սակաւ զօրս, և 'ի ձեռն Աւագին որդւոյ Իւանէի՝ որ էր ընդ Թաթար զօրուն, յղէ առ նոսա ասելով. Մինչև է եկեալ դեսպանն իմ՝ զոր յղեցի առ Խաղանն արքայ ձեր, ոչ կարեմ գալ առ ձեզ. իսկ նոքա իբրև հարին զսուլտանն Հոռոմոց՝ զփեսայ նորին, և առին զյոլովս 'ի քաղաքաց նորա, առաքեցին առ նա պատգամաւորս՝ զիշխանն Վահրամ, գալ նոցա 'ի հնազանդութիւն. և նա 'ի գալն իւր եբեր ընդ իւր զորդին Դաւթայ Լա-

շայ արքային Վրաց, զճեղքոր[1] Ռուզուդանայ թագուհւոյն, զոր յղեալ էր զհետ դստերն իւրոյ առ սուլտանն Հոռոմոց դաւով, զի կորուսցէ զնա, զի մի նենգ ինչ գործեսցէ թագաւորութեանն. և էր առ սուլտանին յարգելս: Եւ բերեալ Վահրամայ ծանոյց Թաթար զօրուն, թէ որդի արքայի մերոյ է, և տարապարտ զրկեալ է 'ի տէրութենէ իւրմէ. իսկ նոքա հակառակ հօրաքեռ իւրոյ թագաւորեցուցեալ զնա՝ հրամայեցին ըստ օրինի քրիստոնէից՝ օծանել զնա, և կալ ամենայն իշխանաց հօր նորա նմա 'ի հնազանդութեան, և նըստել 'ի Տփխիս քաղաքի: Եւ առեալ զնա մեծամեծ իշխանաց՝ որք էին հնազանդ Թաթարին, Աւագին՝ որ զօրավարն էր, և Շահնշահի որդւոյ Զաքարէ, և Վահրամայ և որդւոյ իւրոյ Աղբուղին, տարեալ 'ի Մծխիթա՝ կոչեցին և զկաթուղիկոսն Վրաց, և օծին զնա թագաւոր. և էր անուն նորա Դաւիթ: Իսկ հօրաքոյր նորա Ռուզուդան՝ իբրև լուաւ զայն փախեաւ յԱփխազէթ, և 'ի Սոնէթ[2] որդւոյն իւրով միւս Դաւթիւ. և յղեաց դեսպանս առ միւս զօրագլուխ Թաթարին՝ որում անուն էր Բաթու[3], ազգական ղանին, որ իշխէր 'ի վերայ այնց զօրացն՝ որք էին Ռուզք, և 'ի Դարբանդ, և յՕսէթք[4]. քանզի նա էր յետ ղանին, կալ նմա հնազանդ. և նա հրամայեաց նմա նստել 'ի Տփխիս. և նոքա ոչ ընդդիմացան, քանզի ընդ աւուրս ընդ այս մեռեալ էր ղանն:

## ԼԷ

### ՎԱՍՆ ԿՈՉԵԼՈՑՆ Ի ՄԵԾ ԴՌՈՒՆ ԶԿԱԹՈՒՂԻԿՈՍՆ ԱՂՈՒԱՆԻՑ ԶՏԷՐ ՆԵՐՍԷՍ

Եւ մինչդեռ զետեղեալ նստեալ կայր զօրն Թաթար 'ի ձմերոցս 'ի դաշտն Հայոց և Աղուանից, Ռաբանն ասորի՝ զոր վերագոյն յիշեցաք՝ լուաւ վասն կաթուղիկոսին Աղուանից, և ծանոյց Ելթինայ խաթու-

1 Ցայ. [illegible]:
2 Վ. 119:
3 Վ. 149:
4 Օսէթք են Ալանք: Պագուրի նստէր 'ի սահմանս Դարբանդայ և իշխէր կովկասեան և հիւսիսական կողմանց, յորս գտանէ և ըզՌուսս:

ւյին՝ կնոջն Զարմուղանին, որ վարէր զիշխանութիւն նորա՝ յետ համբառնալոյն, եթէ գլխաւորն քրիստոնէից կողմանցս այսոցիկ՝ գաղտութեամբ նստեալ կայ, և ոչ տեսանէ զմեզ. յղեցին առ նա, թէ ընդէ՞ր դու միայն ոչ տեսանես զմեզ. եկ վաղվաղակի առ մեզ. և թէ կամիս զայդ ոչ առնես՝ ահամայ ածցուք զքեզ նախատանօք: Իսկ նա քանզի նստէր 'ի գաւառն Միափորոյ, 'ի վանքն որ կոչի Խսամշի, և էր ընդ իշխանութեամբ Ապագին, առանց զնա հարցանելոյ՝ ոչ իշխեաց երթալ, զի մի ծանր թուեսցի երթ նորա. թագեաւ 'ի նոցանէ, և ասաց պաշտօնէիցն պատասխանել՝ թէ ոչ է 'ի տան, այլ երթեալ է առ Ապագն. և նոքա երկիցս և երիցս յղեցին՝ սպառնալեօք գալ առ նոսա:

Ապա հրաման առեալ յԱպագէն չոգաւ առ նոսա 'ի դաշտն Մուղան, ընծայիւք ըստ կարի իւր. բայց ոչ հանդիպեցաւ անդ Օքանն, զի գնացեալ էր նա 'ի Թարվէժ. և գնացեալ 'ի մեծ դուռն յանդիման լինի Եղթինայ խաթունին. և նորա սիրով ընկալեալ զնա, և մեծաւ մեծարանօք պատուեաց՝ 'ի վեր նստուցեալ ամենայն մեծամեծացն, որք հաւաքեալ էին առ նա յաղագս հարսանեաց որդւոյ նորա Խօրա-նուինի, քանզի առեալ էր զդուստր ուրումն մեծի Պուլթուն-նուին կոչեցեալ, կին որդւոյ իւրոյ, և զդուստր իւր տուեալ էր կին միւս աւագագունի՝ Ասուա-նուին կոչեցելոյ. և տօն մեծ էին առ նոսա աւուրքն այնոքիկ ուրախութեան հարսանեացն. վասն որոյ ասէ ցկաթուղիկոսն. Ի շնահաւոր աւուր եկիր. և նա իմաստաբար պատասխանեաց, թէ Եւ ես իսկ ընտրեցի զաւուրս զայսոսիկ ուրախութեան ձեր, և ապա եկի. իսկ նա յանձնեաց զնա և զպաշտօնեայս նորա յեղբարցն իւր, 'ի Սադեղաղայն և 'ի Պորգողն, որք էին քրիստոնեայք հաւատով, նորոգ եկեալ յաշխարհէն իւրեանց, մինչ ինքն հոգասցէ ըղհոգս հարսանեաց իւրոց, զաւուրս ուրախութեանն. որք առեալ մեծաւ պատուով պատուէին զնա: Նա իբրև սակաւ մի պարապեցաւ 'ի հոգոցն, ետուն նմա պարգևս և էլ-տամղայս, զի մի ոք նեղեսցէ զնա. և ետուն նմա Մողալ-Թաթար[1] առաջնորդ, որ տարեալ շրջե-

[1] ՕՕ. Մօղալ:

ցոյց զնա յաշխարհն Աղուանից 'ի վիճակն իւր, զի յոլով ժամանակք էին՝ որ ոչ նա և ոչ այլ ոք յառաջ քան զնա՝ ոչ իշխէին շրջել 'ի վիճակս իւրեանց, յաղագս արեանարբու և գազանաբարոյ ազգին . . . ։ Իսկ նորա շրջեալ ընդ վիճակեալսն՝ դարձաւ անդրէն խաղաղութեամբ 'ի տեղի իւր 'ի վանսն Խյամշի ։

## ԼԸ

### ՎԱՍՆ ԱՍՊԱՏԱԿԵԼՈՑ ՆՈՑԱ ԸՆԴ ԿՈՂՄԱՆՍ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ Ի ՎԵՐԱՅ ԲԱԶՈՒՄ ԳԱՒԱՌԱՑ

Դարձեալ 'ի մտանել ամին երկրորդի փախուցանելոյ զՂիադատին սուլտանն, խաղացին գնացին ընդ կողմանս Բզնունեաց 'ի քաղաքն Խլաթ. և առեալ զնա տան 'ի ձեռս Թամթայ՝ քուեր Աւագին, որ էր յառաջ տէր լեալ քաղաքին այն, մինչ կին էր նա Աշրափ Մելիքին, և գերեցաւ 'ի Խորազմենի սուլտանէն Ջալալադնէ, և 'ի նոցունց դարձեալ առաւ գերի, և առաքեցաւ[1] առ ղանն, և եկաց անդ զյոլով ամս. և իբրև առաքեաց Թագուհին Վրաց Ռուզուդան զիշխանն Համադոլա՝ դեսպանութեամբ առ ղանն, 'ի դարձին իւրում Համադոլան խնդրեաց 'ի ղանէն զԹամթի. և եբեր ընդ իւր հրովարտակօք 'ի ղանէն, զի զոր ինչ լեալ իցէ նորա՝ մինչ կին էր Մելիք Աշրափին՝ տացեն նմա. և նոքա արարին զհրամանս արքային իւրեանց. տան 'ի ձեռս նորա զԽլաթ և զգաւառսն որ շուրջ ըզնովաւ. և ինքեանք ասպատակ սփռեալ ընդ կողմանս կողմանս, 'ի Միջագետս Ասորւոց, յԱմիթ և յՈւռհա և 'ի Մծբին և 'ի Շամբին երկիրն[2], և յայլ բազում գաւառս, և դարձան ունայն. զի թէպէտ ոչ ոք էր ընդդէմ նոցա պատերազմաւ, սակայն վասն տօթոյն ամարայնոյ բազումք 'ի նոցանէ խոշակահարք եղեալ մեռան, մարդ և երիվար. և եկեալ 'ի տեղի իջևանի իւրեանց՝ դադարեցին զաւուրս ձմերան. և տան հրաման վասն շինութեան քաղաքին Կարնոյ. և ժողովեցան

1 Օ. ափէցաւ ։

2 Շամ, Դամասկոս ։

ցրուեալքն զօղեալք և զերծեալքն 'ի գերութենէ. կոչեցին և զեպիսկոպոսն քաղաքին՝ զտէր Սարգիս, զոր եբեր իշխանն Շահնշահ՝ որդին Զաքարէ. չոգաւ և վերստին շինեաց զաւերեալ և զկործանեալ քաղաքն:

## ԼԹ

### ՎԱՍՆ ԿԱՆՈՆԱԿԱՆ ՀՐԱՄԱՆԱՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻՆ ՀԱՅՈՑ

Իսկ առաջինի կաթուղիկոսն Հայոց Կոստանդին, իբրև ետես զաւերն աշխարհին Հայոց և զտառապանս՝ զոր կրէին 'ի հարկահանացն և 'ի զօրաց Թաթարին, և մտախոհ եղեալ իմացաւ թէ մեղքն են այսմ ամենայնի պատճառ, զի ամենայն մարդ խնամով խոկայր 'ի գործել զհաճոյս կամաց իւրոց: Զի կարգ ամուսնութեան սուրբ օրինացն բարձաւ, և հեթանոսօրէն արիւն ընդ արեան խառնէին, զազգականս առնելով, և զորս կամէին թողուին, և զորս կամէին առնուին. և պարկեշտութեան պահոց փոյթ ինչ ոչ ունէին, և ընդ հեթանոսս խառնակէին անխտիր. նաև որ մեծն է քան զամենայն չարիս՝ եպիսկոպոսք արծաթով առնէին ձեռնադրութիւն, զպարգևս Աստուծոյ անարժանիցն տալով. և զմանկունս և զտղայս՝ որ ոչ մարթէին ուղղակի խօսել առաջի մարդկան, միջնորդ ընդ Աստուած և ընդ մարդիկ կացուցանէին, և անարժան քահանայք և պոռնկեալք, և յայտնի բոզս նստուցեալ՝ առնէին քահանայութիւն. և այլ բազում չարիս՝ զոր գործէին 'ի մեծամեծաց մինչև ցփոքունս. (ըստ այնմ՝ թէ քահանայք) և ժողովուրդք 'ի միասին յիմարեցան, և կշտամբիչ ոչ ոք: Վասն այսր պատճառաց փութացաւ գրել թուղթս շրջաբերականս, և կանոնս համաշխարհականս: Առաքեաց ընդ թղթոյն զիմաստուն և զհանճարեղ վարդապետն[1], որ աղօթականութեան աղագաւ երթեալ էր յԵրուսաղէմ երկրպագել սուրբ տեղեացն տնօրէնութեան. և շրջեալ ընդ սրբոց տեղիս, և եկեալ յաշխարհս Կիլիկեցւոց՝ առ քրիստոսապսակ արքայն

1 Պակասէր յՕՕ. անուն վարդապետին՝ որ է Վարդան, որպէս դնէ և տպագիրն, պատմիչն և ուսումնակից Կիրակոսի:

Հեթում և առ Ներսէս եղբայրս, չոգաւ և առ սուրբ կաթուղիկոսն. զոր տեսեալ ուրախացաւ յոյժ, և առ իւր պահէր յոլով ժամանակս, սիրով կապեալ ընդ նմա. և զի ոչ կամէր երբէք մեկնել 'ի նմանէ, վասն այսորիկ արձակեաց զնա և յիւրոց սպասաւորաց ընդ նմա, գրեալ յամենայն քաղաքս, յաւանս և 'ի վանորայս երևելիս, (և առ) իշխանս փառաւորս, զի մի՛ անփոյթ առնիցեն զսահմանացն եդելոց, որ վասն հոգւոց նոցա փրկութեան. և զի ծերացեալ էր նա՝ զվարդապետն փոխանակ նորա ընդունիցին. և գրեալքն առ 'ի նմանէ են այսոքիկ։

## Խ

### ԹՈՒՂԹ ՏԵԱՌՆ ԿՈՍՏԱՆԴՆԵԱՅ ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ

Ազդմամբ խնամոցն ամենակալ Հոգւոյն սրբոյ, այս գիր ձեռին իմոյ Կոստանդեայ ծառայի Քրիստոսի և շնորհօք նորին կաթուղիկոսի ամենայն Հայոց, զոր գրեցի յուսով հոգւոյ իմոյ առ Հայաստանեայսդ՝ ընդհանուր լման կողմանցդ արևելից. նախ առ սրբազան եպիսկոպոսունսդ, և ապա առ երկնագնացումար վանորայսդ, և առ մենաստանս ճգնաւորաց քրիստոսազգեցից, առ բանին սպասաւորսդ և միայար եղբայրութիւնսդ, այլ և առ քրիստոսասէր իշխանսդ՝ և որք ընդ ձեռամբ ձեր են, պատուական քահանայք և քրիստոսասէր ժողովուրդք, արս և կանայս, ծերս և տղայս, և առ ամենայն հօտդ Աստուծոյ. որ էք ընդ իշխանութեամբ գաւազանի սրբոց առաքելոցն Թադէոսի և Բարթողիմէոսի, և մեծավաստակ նահատակին մերոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, զորս ես ինձ ողորմութիւնն Աստուծոյ յորդէգրութիւն հոգևոր և պարգևական զաւակս. զորս և ողջունեմ երկնաւոր պարգևօք եռափափագ կարօտիւք և ծնողական սիրով, 'ի հովանիս խնամոց ամրապահ սրբոյ Երրորդութեան, և զօրութեամբ աստուածընկալ սրբութեանցս և շնորհացն առաքելական աթոռոյս. այլ և ընդ իս առեալ զամենայն սուրբս 'ի բարեխօսութիւն՝ աղօթեմ առ Աստուած՝ արտաքոյ

լինել ձեզ, ամենայն անախորժելի[1] պատահարաց կըրկին տեսակօքն ։

Գիտութիւն լիցի ձեզ, զի պարտական գթովք հօգամք զձեզ զտիւ և զգիշեր, և հաղորդիմք կրից ձերոց, խնդականաց՝ ըստ հայրենի օրինաց և հրամանաց սրբոց պատուիրանաց. որ և ըստ յաճախելոյ յանցանաց մերոց 'ի վաղ ժամանակաց յաճախեաց և տրտմականն մասն. 'ի հարուածս գաւազանի հարմանն Աստուծոյ, և արբոյց մեզ Տէր մրուր ուշաքարձ և արտասուս չափով, 'ի վիշտն զոր կրեաց աշխարհդ այդ. կոտորումն և կողոպուտ եկեղեցեաց՝ հոգևոր գանձուց, մարմնական տանց և գոյից, մանաւանդ 'ի գերութիւն գառանցն Քրիստոսի, մերոց աղեաց և անդամոցս, յորոց վերայ՝ կարօտացաք գետաքուխ արտասուաց, և խաւարատան սենեկացն, թափել զշաւն կսկիծ վիրին մեր 'ի խորոց ժողովեալ։ Այլ քանզի 'ի տեառնէ էր պատուհաս, որոյ բազում են գթութիւնք[2] նորա. ոչ ըստ մեղաց մերոց արար մեզ և ոչ ըստ անօրէնութեան մերում վճարեաց մեզ, այլ պահեաց մեզ գթութիւն նորա մնացորդ նշխար յիշատակի, և սերմն զաւակի ազման հայկական[3] զարմից. և ճիռ օրհնութեան ողկուզաց՝ հայրատունկ որթոյն քրիստոսարկու ուռոցն. որոց համբաւ աճմանն և զարգացման որդեկաց մեր մնացելոց, կարկատման և վերստին շինուածոյ աւերեալ տեղեացդ, առ սակաւ սակաւ թափէ զտրտմութիւնն մեր, և փարատէ զմութ սգոյն 'ի մտաց մերոց, և կազդուրեալ մխիթարիմք, և կանգնեալ գոհանամ զԱստուծոյ, հարկանողի և բժշկողի ձեռին նորա՝ տալով օրհնութիւն յաւիտեանս։ Բայց և երկիւղ կասկածանաց առաջիկայ ժամանակին ոչ թողու զիս. քանզի նոյն նիւթ բարկութեանն Աստուծոյ մեղքն մեր՝ 'ի մեզ հաստատեալ է յեկամուտ չարեաց որոմանցն ցանողի՝ գտանելով առ մեզ յեկեղեցիս, և առ իշխանս և իշխեցեալս, գտանիմք արտաքոյ կանոնաց սահմանաց հարցն մերոց՝ առաքելոց և հայրապետաց. և վասն այսորիկ հարկի մեծագունի ցանկացայ խնդրել ճանապարհ, և

1 ՕՕ. ախորժելի ։
2 ՕՕ. որոյ բազմագթութիւնք նորա ։
3 ՕՕ. հայրական ։

անձամբ գալ և զգուշութիւն առնել հօտիս իմոյ Քրիստոսի Աստուծոյ յիս վստահացեալ ժողովրդեանդ, աղաչանօք և բանադրութեամբ և սպառնալեօք, և ամենայն հնարիւք հանել 'ի ձէնջ զտեսակ ատելի գիմաց չարին որ են մեղք, և երկնել զձեզ վերստին ցաւովք՝ մինչև նկարեսցի Քրիստոս 'ի ձեզ :

Ունէի և այլ պատճառ հարկաւոր գալստեան իմոյ, զի այր ծեր եմ ես, և հասեալ 'ի դրունս գերեզմանի, և կարօտիմ 'ի կատարածի կենաց իմոց տեսանել զորդեակս իմ 'ի Տէր. տալ ձեզ զյետին օրհնութիւն, և պահանջել 'ի ձէնջ աղօթս և պատարագս թոշակի ճանապարհի իմոյ առ Քրիստոս, և լինել ձեզ ինձ յիշատակ բարի անուանի վարուք և անսղալ կրօնիւք առաջի Աստուծոյ : Եւ քանզի ժամանակս այս կասկածոտ և սխալական՝ այսմ ինձ ոչ ներեաց անձամբ գալ և կատարել զբաղձանս իմ, այլ այլօք հնարիւք հաստատեաց Աստուած զսիրտս իմ զարհուրեալ. և առաքեցի առ ձեզ զարդիւնական վարդապետն զՄարգան փոխանակ անձին իմոյ, զոր ետ ինձ նախախնամութիւնն Աստուծոյ, ձգելով առ իս 'ի կողմանց ձերոց 'ի հինգ ամաց հետէ. զոր իբրև տեսի՝ ճանաչեցի ըստ կարի, կապեցի զդա միջնորդութեամբն Աստուծոյ ընդ անձին իմոյ կենօք և մահուամբ, մեծաւ հարկիւ և սիրով բևեռեալ ընդ իս յաւիտեան :

Իսկ վասն մեծ և հարկևոր կարեաց երկոցունց՝ զոր գրեցի վերագոյնն, առաքեցի զդա առ ձեզ յուսովն Աստուծոյ լնուլ զտեղի իմ, ոչ 'ի դորա կամաց և 'ի խնդրոյ, այլ յիմմէ սրտէ և յօժար կամաց և 'ի հրամանէ հարկեալ. և որպէս անդամ 'ի կենդանի մարմնոյն՝ ցաւօք հատեալ է, որ ունի (զիմ) սիրտ և զբան՝ յամենայն իրս 'ի պատեհս պատուիրանացն Աստուծոյ. և դայ բերէ առ ձեզ սահման չափաւոր և դիւրագործ քաղեալ 'ի կանոնաց և 'ի հրամանաց հարցն սրբոց, 'ի պէտս եկեղեցականաց և աշխարհականաց : Զոր աղաչեմ բարեխօսութեամբ սրբոցն, և փոխան ասեմ զանձն իմ, զի ընդունիցիք զդա սիրով, և զհրամայեալս գրովք սրբովք. և կատարեցէք 'ի փրկութիւն ձեզ և յանդատապարտութիւն յատենին Աստուծոյ : Իսկ եթէ ստունգանիցէ ոք և ոչ ընկալցի և կատարեսցէ, մեղս առցէ

աններելիս, և արիւնն իւր և կործանումն աշխարհի՝ պահանջեսցի 'ի նմանէ առաջի ատենին ահաւորի և մեծին։ Բայց մեծ յուսով եմ յԱստուած չընդդիմանալ ումեք իւրում կենաց և փրկութեան. և 'ի հաւանելոյդ պահանջեմ աղաչանօք՝ փոխել իւրաքանչիւր ումեք զԹուղթս կանոնական. և պահել զգուշութեամբ յաւիտեան, և ամենայն ումեք դիւրելի առնել, և զիմ առաքեալ Թուղթս ձեռնագրել ամենայն եպիսկոպոսաց, և առ իս առաքել ձեռօք իմոյ վարդապետիս։ Այլ և ամենայն պաշտելի և երկրպագելի սրբութիւնդ՝ իմով երեսօք ընկալցի երկրպագութիւն և աղօթս, դիմօք Սարդան վարդապետիդ իմ, և ձերով։

Նոյնպէս ընկալարուք և դուք որպէս յիմմէ սրտէ և 'ի հաւատոյ, բերանով դորա զհայցուածս աղօթից և պատարագաց՝ զոր մաղթեմ յուսով 'ի մեծէ և փոքուէ, քաւութիւն պարտեաց յանցանաց իմոց. քանզի որպէս հարք պարտին որդւոց գութ և օրհնութիւն, նոյնպէս և որդիք օրէնս ունին[1] զպարտս հարց վճարել. և ես լի հաւատով տարածմամբ ձեռաց իմոց խնդրեմ յԱստուծոյ միջնորդիւ կենսակիր սրբոցս, և յաղօթս երանուհոյ Աստուածածնի, զի ամենայն աստուածաշարժ պարգևք և օրհնութիւնք և շնորհք, զոր ետ Հայրն երկնաւոր Որդւովն և սուրբ Հոգւովն աշխարհի և եկեղեցւոյ, և եկն 'ի հարց յորդիս, այն ամենայն եկեսցէ և հանգիցէ յոգիս ձեր, յեկեղեցիս և յաշխարհս ձեր և յիշխանութիւնդ, և 'ի հոգիս ննջեցելոց ձերոց, և 'ի հանգիստ նոցա, և կենդանեաց՝ 'ի փրկութիւն հոգւոյ և մարմնոյ. յաճումն և 'ի բազմանալ. նորոգս Իսրայէլի՝ քրիստոսական հօտիդ, առաւել քան զբազմութիւն և զպայծառութիւն աստեղացն. օրհնեսցին երկնաւոր շնորհօք ամենայն գոյք ձեր՝ կայուն և անկայուն. պարարտասցին և պտղաբերեսցեն անդաստանք և այգեստանք ձեր. և ամենայն պտղաբերք երկնաւոր ցօղովն և շնորհօք Աստուծոյ լցեալք, երկնաւորք և երկրաւորք. եղիցի եղիցի։ Ողջ լերուք, և անյարմար գրոյս անմեղադիր լիջիք, զի փափագեցի իմովս ձեռամբ դրել առ ձեզ։

[1] Oo. օրէն ունել։

Գրեաց և միւս թուղթս կանոնականս եկեղեցականաց, և առաքեաց ընդ շրջաբերական թղթին 'ի ձեռս նոցունց այսպէս ։

## ԽԱ.

### ՍԱՀՄԱՆՔ[1] ԿԱՆՈՆԱԿԱՆՔ ՏԵԱՌՆ ԿՈՍՏԱՆԴԵԱՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ՀԱՅՈՑ

Կոստանդին ծառայ Քրիստոսի և շնորհօք նորին կաթուղիկոս ամենայն Հայոց, օրհնութեամբ ողջունի և սիրով Աստուծոյ՝ ծանուցանեմ լման եկեղեցւոյդ Հայաստանեայց, վիճակելոց ընդ իշխանութեամբ գաւազանի սրբոց առաքելոց Թադէոսի և Բարթողիմէոսի, և մեծավաստակ նահատակին Քրիստոսի Գրիգորի, և մերում կրսերութեանս ։

Հրաման է այս առաքելադիր, որ 'ի տարւոջն երեք անգամ առաջնորդք եկեղեցւոյ ժողովել տեսանեն ըզկարգս եկեղեցւոյ, թէ որպէս ունիցին զսահմանս յաւիտենականս՝ զոր Հոգին սուրբ հաստատեաց, զպականն ընուլ, և զեկամուտ որոմն խլել. և այս պատուիրանս 'ի բազում ժամանակաց խափանեալ եղև, յաղագս ազգիս ցիր և ճապաղ լինելոյն, և հեռաւորութեան և մուխաթրայ[2] ճանապարհաց ։ Այլ զի իրաւունք արդար դատաստանին Աստուծոյ յիշատակ արար անկարգութեան և անխրատութեան աշխարհի, յետ բազում երկայնմտութեանն և ներողութեանն՝ արբոյց զբաժակ բարկութեան իւրոյ յոլովից ազգաց և ժողովրդոց, ընդ որս և մեք գտաք դատապարտք, և տուաք տոկոսիս ազգակցօք մերովք, և հոգևոր ուստերօք և դստերօք. քանզի աշխարհ՝ որ լի էր մեղօք և անիրաւութեամբք՝ լցան արեամբ և արտասուօք և դիակոյտ ոսկերօք կոտորուածովք գազանակուր եղելոց. և մնացեալքն 'ի սրոյ՝ անընտել ճանապարհաւ վաճառակուր եղեն յազգս հեռաւորս, և փախուցեալքն մեր և ազատք որդիք Սիոնի և գառինք Քրիստոսի, զուգա-

1 ՕՕ. Սերմանք ։

2 Մուխաթարէ՝ արաբերէն լսի վտանգ, վտանգաւոր ։

կշիռքն ոսկւոյ և ականցն պատուականաց, իբրև զօղս անպիտան և ընկեցիկք և արհամարհք և անծանօթք եղեն. այլ և երկրպագելի և պատկառելի նշանք և բապաւք սրբութեան՝ անարգեցան, և անարժանից ձեռօք յանարժան [1] պէտս վարեալք, հանդերձ տապանամբք քաղաքաց, և ամայութեամբ գաւառաց, զորս ոչ ոք կարէ զբովանդակն պատմել և արժանապէս ողբալ: Բայց քանզի ողորմութիւնն Աստուծոյ եթող սակաւ սերմն կենաց, և զաւակ յուսոյ՝ յաշխարհդ արևելից, յիշատակ առ մեզ երախտեացն Աստուծոյ, որ [2] վասն աղօթից նախնեաց մերոց սրբոց՝ մխիթարութիւն մեզ վասն բազում գթութեան իւրոյ. և էք դուք ժողովրդապետք այսօր և ժողովուրդք, վանորայք, քաղաքք և գաւառք. յետ բազմադիմի վշտացն զոր կրեցէք, և գոյ 'ի ձեզ օրհնութիւն և յոյս անձման և վերացման 'ի փառսն առաջին. և էք Քրիստոսի և մեր սեփհական ժառանգութիւն և պարծանաց զաւակք, և յանձնեալք մեզ 'ի պէտս հոգևորս. վասն որոյ 'ի վերայ բազում արտասուացն՝ զոր հեղաք վասն ձեր 'ի բեկման ուսուրս և յաւերման և կոտորման մեղաքեր սրոյն, և այսօր մխիթարիմք ձեօք մնացելովք, և գոհանամք զԱստուծոյ. այլ միշտ զարհուրիմք և դողամք յերկիւղ կասկածանաց նոյն անցիցն՝ զոր կրեցաք. քանզի և նոյն պատճառք բարկութեանն Աստուծոյ գտանին և այսօր առ բազումս, որ է կեանք և վարք արտաքոյ կամացն Աստուծոյ և կանոնաց հրամանաց: Վասն որոյ յառաջ քան զերիս ամս գնացաք մեր դրան սպասաւորացս լրմամբ, հանդերձ ամենայն մերձակայ գաւառաց եպիսկոպոսօք, յաշխարհն Կիլիկեցւոց, առ քրիստոսապսակ Թագաւորն մեր Հեթում. և նորին հրամանաւ և ձեռնտուութեամբ ժողովեցաք զեպիսկոպոսունս, զվարդապետս, զմիանձունս և զվանաց առաջնորդս, զիշխանս և զիշխեցողս՝ արս երևելիս. և արարաք հանդէս մեծ, քննեցաք զպատուէր և զհրամանս Աստուծոյ, և զԱստուծոյ մերձակայից՝ առաքելոց և հայրապետաց, և գտաք զմեզ բազում մասամբք մոլորեալք և դատապարտեալք և անպատասխանիք. և որքան կա-

1 Ա. անարժանապէս:   2 Օ. այլ:

րացաք. աւաղեցաք զմեզ և ողբացաք. և զկնի յոլով քննութեան՝ ամենեցուն կամակցութեամբ և ձեռնագրով՝ գրեցաք սահման և կանոն չափաւոր և դիւրընթաց, և կարելի գործելոյ, 'ի զօրութենէ գրոց հաւաքեալ, և ուխտեցաք առաջի Աստուծոյ և հրեշտակաց և մարդկան. յանձն առնուլ ամենայն կարողութեամբ զեդեալ սահմանս, և եդաք զյոյս մեր յօգնութիւնն[1] Աստուծոյ. և մնացաք ժամանակի թէ հնար գոյ գալ անձամբ և այդր, լնուլ զփափաք կարօտութեան իմոյ առ ձեզ, և պահանջել 'ի ձէնջ ձեռագիր սահմանիդ եդելոյ, որպէս և մեք. և զի չեղև հնար՝ առաքեցաք զսահմանեալ կանոնսդ, չափաւոր քարտիսիւ, և պահանջանեմ 'ի ձէնջ վկայութեամբն Աստուծոյ, և շնորհիւ և զօրութեամբ առաքելական աթոռոյս և աստուածընկալ սրբութեանցս, և առաջի առաքելոց սըրբոց, և սուրբ Լուսաւորչին մերոյ, զոր առնիցէք անթերի։ Եւ եդեալ սահմանն այս է.

Ա. Ամենայն ձեռնադրութիւն յեկեղեցիս՝ որ է պարգևք Հոգւոյն սրբոյ, զոր տայ արժանաւորաց, առանց արծաթոյ լիցի, ըստ կանոնաց. զի այն ախտ Յուդայի և Սիմոնի կախարդի է, որ խոտեցան և ոչ միաբանեցաւ ընդ նոսա շնորհք, որ 'ի տեղիս տեղիս վասն աղքատութեան լուծեալ է և տկարութեան[2]։

Բ. Այսուհետև արժանաւորքն միայն և գիտունքն առցեն զաստիճան եպիսկոպոսութեան, մեծաւ քննութեամբ և վկայութեամբ և թեմին կամակցութեամբ. առանց կաշառոյ. և հասակաւ մի պակաս քան զերեսուն ամն ։

Գ. Նաև առաջին գործ եպիսկոպոսին՝ որ զուսուցիչս և զուսումնականս ուսման եկեղեցւոյ՝ ինքն սահմանեսցէ մեծաւ հոգաբարձութեամբ, անդայթակղ, և գիտունք և ուսումնականք ուսուցիչք լինիցին տղայոցն ։

Դ. Այլ զեկեղեցին 'ի չափ հասակի՝ նև ուսմամբ նև սրբութեամբ՝ ածցէ յաստիճան, վկայութեամբ անձանց իւրեանց և մնուցողացն, առանց արծաթոյ՝ տիօք մի պակաս քան զքսանհինգ ամն երէցն, և սարկաւագն քսան ամ ։

1 ՕՕ. օգնութեամբն ։ 2 Տպ. փոփոխութեան ։

Ե. Իսկ քահանայքն զպատակն և զկնունքն նօթութեամբ արասցեն յեկեղեցիս և հաղորդեսցեն. բայց թէ մահու երկիւղ իցէ երեխային՝ յորժամ և իցէ արասցէ, առանց դրամի ։

Զ. Ամենայն քահանայագործութիւն, կնունք, պսակ և թաղումն, երկիւղիւ լիցի, առանց զրուցի և ծաղու, մեծաւ յուսով, և աղօթիւք մերձակայիցն ։

Է. Նշազանն հաստատուն լիցի և անշարժ, և վարագուրաւ ծածկած, զի մեծ է խորհուրդն ։

Ը. Զպսակն ընտրութեամբ արասցեն, վեց ծննդովք հեռացեալք յազգակցութենէ արեան. և փեսայն մի պակաս քան զչորեքտասան ամն, և հարսն զերկոտասան ։

Թ. Յօտար[1] աշխարհէ եպիսկոպոս, վարդապետ, կամ երէց, կամ գերոյ տէր, առանց թղթի եպիսկոպոսին մի շրջեսցեն կամ չինեսցեն, այլ նորա հրամանաւ՝ ըստ պատշաճի. բայց ճշմարտացն մի հակառակեսցեն և ընդդիմասցին. և եթէ յանդգնի ոք՝ նզովեալ եղիցին ։

Ժ. Գերոյ[2] դաստառացք բազմաց վկայութեամբ լիցի, որ լինին գիտունք և ամենայն գրոց վարժք և տեղեակք և փորձ ամենայնիւ. նոյնպէս և գրոց աշակերտքն ընտրութեամբ նորին և առաւել փորձիւ, և վկայութեամբ կատարելոց ։

ԺԱ. Եւ հրամայեսցէ եպիսկոպոսն զսուրբ գիրս եկեղեցւոյ գրել արուեստաւորաց, և գիտնոց և ուղղափառաց ։

ԺԲ. Երկիցս անգամ շրջեսցի եպիսկոպոսն 'ի տարւոջն յիւր թեմն, և հանդէս արասցէ իւր հօտին, և սուրբ և գիտուն քորեպիսկոպոս դիցէ, որ զեկեղեցւոյ դատաստան ըստ կանոնաց առնել մարթասցի, երկիւղած և անաչառ ։

ԺԳ. Ուսեր և գիտուն խոստովանահայրս կարգեսցեն, որ յամէն կիւրակէի առանց դրամի խոստովանութիւն կոչեսցէ վասն շաբաթուն յանցանացն, և քահանայքն՝ խոստովանահայրցն հրամանաւ զիւրեանց ժողովրդեան զարժանաւորն հաղորդեսցեն՝ առանց դրամի, նոյնպէս և զհիւանդս առանց դրամի ։

[1] Օ. Զօտար ։ [2] Օ. Որոց ։

ԺԴ․ Զհաղորդն առանց բուրվառի և մոմեղինի մի՛ տարցեն առ հիւանդն, այլ մեծաւ երկիւղիւ․ իսկ ժողովրդեան չեն իւրեանց հրամանքն ում և կամին ծուխ լինել, այլ որպէս եպիսկոպոսն հրամայեսցէ։

ԺԵ․ Առաւել ջան տարցին եպիսկոպոսք և քորեպիսկոպոսք՝ զպոռնիկս, զշնացողս և զհմայս, և զամենայն յանցաւորսն՝ երկիւղիւ գեհենին ՚ի դարձ ածել․ իսկ զանդարձսն՝ մարմնաւոր պատուհասիւ և հոգևորաւ խրատել և տուգանել, մանաւանդ զայնպիսիսն՝ որ այր և կնոջ մէջ մտցեն, կամ բոզ ունիցին կին, կամ ըղկինն թողուցուն զօրինաւոր և առ բոզս երթան, կամ ատելութեան պատճառաւ թողուն զկանայս առանց բանի պոռնկութեան․ զայնպիսիս առանց խղճի անողորմ խրատեսցեն տուգանօք․ և թէ պատուաւոր է մարդն, և ընդդէմ ասէ եկեղեցւոյն օրինաց լրբութեամբ, թագաւորն խրատեսցէ զալանի[1] մեղքն, և իշխանքն զմեղադրանքն․ եթէ ոչ առնեն զայս և նզովք[2]․ և թէ կինն լրբի և մարդ խաբէ, կամ աղապ կամ կանամբի՝ խրատեսցէ երէցն։

ԺԶ․ Ամենայն պահք՝ ըստ կանոնաց առանց ձկան և ձիթոյ և գինւոյ եղիցի, բայց ՚ի հարկէ հիւանդութեան, առաւել աղուհացիցն և ուրբաթ և չորեքշաբաթին, որ Քրիստոսի չարչարանաց աւուրք են․ որ զայս լուծանէ՝ տուգանեսցեն և յաղքատս տացեն, և պահօք վճարեսցեն Աստուծոյ։

ԺԷ․ Նախ քան զամենայն և յառաջ քան զամենքդ, զայս եմք հոգացեալ առաջի արքային Հեթմոյ և հօր իւրոյ Կոստանդեայ, և ամենայն իշխանօք, և բանադրանօք բանադրեալ՝ որ յամենայն տեղի մեծ և փոքր՝ յիշոցաւագ[3] դնեն, ՚ի դարպաս, ՚ի գիւղ, ՚ի քաղաք, ՚ի բերդ, զԱստուծոյ բարկութիւն շարժողսն և զաններելի անօրէնս՝ որ անարգեն զհաւատս, զստեղծողս, զկնունք, հրեշտակք, քահանայ, բերան, երես, գերեզման, և այլ այսպիսի․ զնոր բուսեալ չարիդ, զայնպիսեացն զլեզուն հատցեն, և կամ ծակեսցեն և լար

1 Այսինքն՝ զյայտնի։

2 Այսպէս ՕՕ․ յորս պակաս կամ աղաւաղութիւն։

3 Եթէ տողդ իցէ ընթերցուածդ՝ թուի զքննիչս կամ զատաւորս անել յիշոցատուաց։

'ի ներս ածցեն, և ծեծելով 'ի շուրջ ածցեն օր մի, և ըստ գոյին տուգանս առցեն և յաղքատսն տացեն :

ԺԸ. Թէ քահանայ գտանի 'ի վերոյ գրեալ մեղս՝ կրկին պատուհասիւ պատժեսցի, հանդերձ կարգիւն :

ԺԹ. Քահանայ որ զատ եկեղեցւոյ գործոյ՝ այլ գործս առնէ, նոտարութիւն կամ որսորդութիւն, զժողովուրդն 'ի բաց առցեն, նոյնպէս զանուասանս երիցանց, մինչ աղէկ ուսցին, առցեն և յանարժանիցն :

Ի. Քահանայն 'ի տարւոջ ժողովեսցէ յեկեղեցւոջն զարս և զկանայս՝ առանձինս, և որիշ զկուսան աղջկունս, և որիշ զմանր տղայսն. և ըստ իւրաքանչիւր պատշաճի խրատեսցէ՝ աղաչանօք և սաստիւ, և իմասցի զիւրաքանչիւրոցն վարքն, և դիտեսցէ համապազ. և թէ ինքն չիցէ բաւական՝ 'ի ձեռն այլ կատարելոյ արասցէ, որպէս ասէ սուրբն Աթանաս յիւր կանոնքն :

ԻԱ. Ժողովրդականք յօժարութեամբ և աղաչանօք տացեն զհաս քահանայիցն, յամ արմտեաց պտուղս, և զկարգեալ բաժին մատաղին և պսակին ընծայիւք, և թաղման հանդերձ, և ժամու դրամ. ոչ գին պատարագին, այլ երիցուն հանդերձ և կերակուր, որ աղօթից և պատարագի և եկեղեցւոյն պարապէ :

ԻԲ. Երիցունք ընդ ժողովրդեանն ծառայեսցեն զեպիսկոպոսն, սահմանեալ հասիւն և ընծայիւ ըստ պատշաճին :

ԻԳ. Եպիսկոպոսքն ծառայեսցեն զհայրապետական աթոռն, կարգեալ հասիւն և ընծայիւք արժանաւորօք, ըստ կանոնաց. զի սուրբ Լուսաւորիչն գրեալ է, որ քահանայն զժողովուրդն տեսանորդէ, և եպիսկոպոսն զքահանայսն, և հայրապետն զեպիսկոպոսունս. արդ թէ և զայն չառնէք՝ զչափաւորն արարէք. և ըղպակասն զոր գրեցաք՝ խնդութեամբ տուք իբրև զօրհնութիւն և մի իբրև զագահութիւն. որ աթոռքն հաստատ և անկար[1] մնան, և եկեղեցիքն պայծառ, և Աստուծոյ օրհնութիւն խառնի յարդիւնս արդարութեան ձերոյ. զի Աստուծոյ տայք և ոչ մարդոյ, և մարդոյ մի երախտէք :

ԻԴ. Զայն երկու աղօթքն՝ յորոյ վերայ սուրբ Աս-

1 Այսպէս յՕՕ. Թուի՝ անկարօղ կամ անկարելի :

տուած ասեմք, զփառքն 'ի Հայր և յՈրդի և 'ի սուրբ Հոգին աւարտէք, զի մի Նորոգութեանն վերայ Թըլւեսցի խաչն. զկատարած՝ լոյր [illegible]՝ ասել պիտի. «[illegible] մեզ 'ի [illegible] [illegible] [illegible] [illegible], այժմ և մեզ»: Օգնականին վերջքն. «[illegible] [illegible] և [illegible] [illegible] [illegible] շնորհացդ, և [illegible] [illegible] [illegible] ընդ Հօր». և այլն։

ԻԵ. Ի Փռանկաց գրեալ են առ մեզ, թէ զՏեառնեղբօրն հրաման ընդէր ոչ առնէք, զհիւանդն՝ ժամուն օրհնել, ձիթով օծանել[1], որ թէ մեռանի՝ օծումն լինի թաղմանն. և թէ ապրի՝ լինի քաւութիւն մեղաց, և պատճառ առողջութեան. և գիտէք որ Ծննեցին Յովհան, որ զատեալ է զմեզ յազգացդ[2], գրեալ է որ առնենք, և պարտ է առնել, և արարէք ստուգիւ։ Միայն զգուշասցի քահանայն, և սակաւ օրհնեսցէ՝ որ աւելի չգայ, և նզովք առցէ յՍատուծոյ և 'ի մէնջ, և լինի պատճառ գայթագղութեան. զայս պատեհ տեսաք և գրեցաք յետոյ և հարկաւոր։ Մ'ղջ լիցիք տէրամբ։

Որ զայս չափաւոր բանքս գրէ և պահէ, հաստատնէ և գործովք կատարէ՝ պահեսցէ նմա տէր Աստուած զգութ և զողորմութիւնն իւր. և որ կորուսանէ և արհամարհէ՝ յանցաւոր լիցի առ մեզ, և առ ալքայն. և Աստուծոյ ատենին տացէ պատասխանի ամենին։

Նա եկեալ Մարդան վարդապետն, և որք ընդ նմա առաքեալք 'ի կաթողիկոսէն՝ յարևելս, և շրջեալ ընդ գաւառս Հայոց, 'ի յեպիսկոպոսս և վանորայս և յիշխանս, և տուեալ ամենեցուն զկանոնական հրամանս, և պահանջեալ յամենայնէ ձեռագիր հաւանութեան սահմանին եդելոյ։ Նա զի ամենայն ոք խոտորեալ էր 'ի ճշմարտութենէն և ըմբռնեալք ախտիւ ագահութեան և արծաթսիրութեան, ծանր թուեցաւ հրամանն. բայց սակայն ոչ իշխեցին արհամարհել, այլ 'ի վերին երեսս մեծարեցին. և ետուն ձեռագիր երդմամբ և նզովիւք առնել զհրամանն. եպիսկոպոսն Կարնոյ քաղաքի Սարգիս.

1 Յակ. Թուղթ կաթ. Ե. 14։
2 Ըստ յունակից անստոյգ վար. կածոյ էն բանքդ զՅովհաննէ Իմաստասէրէ։

և եպիսկոպոսն Անուց միւս Սարգիս. եպիսկոպոսն Կարուց Յակոբ. եպիսկոպոսն Աջնայ Սանահին և Գրիգոր. և եպիսկոպոսն Հանբերդայ Մկրտիչ. և եպիսկոպոսն Հաղբատայ Համազասպ. և այլ եպիսկոպոսունքն որ 'ի կողմանս կողմանս. և գլխաւոր վանորայքն՝ Սանահին և Գետիկ և Հաւարծին[1], և Կեչառու, և Հաւուց Թառ, և Այրի վանք, և Յովհաննու վանք, և Սաղմոսայ վանք և Հոռոմոսի վանք, և որ շուրջ զնոքօք։ Նա և կաթուղիկոսն Աղուանից տէր Ներսէս, և եպիսկոպոսն Յովհաննէս՝ զոր Տուեցին կոչէին, և մեծ հռչակաւոր վարդապետն Վանական, և իշխանաց իշխան Աւագն, և այլ իշխանք։ Եւ առեալ զայս գիր հաւանութեան իմաստնոյն Վարդանայ՝ (առաքէ) առ կաթուղիկոսն Կոստանդին, 'ի Կլայն Հռոմէական. և ինքն եկեալ 'ի ձորն Կայենոյ 'ի միայնարանն իւր, զոր սուրբ Անդրէն կոչէին՝ հանդէպ անառիկ բերդին Կայենոյ, և անդ դադարեալ ուսուցանել զբազում, որք աշակերտէին նմա վարդապետական բանին։

Եւ 'ի գալ երկրորդ ամին՝ յորժամ վեցհարիւր յի-սուն և վեց էր թուականն Հայոց, տառաքինի կաթուղիկոսն Կոստանդին առաքէ յարեւելս եկեղեցեացն ընծայս՝ մետաքսաւէջս 'ի կերպասուց պէսպէս գունոց, և մեծագինն նափորտս 'ի սպաս պատարագին սրբոյ, 'ի ձեռն Թէոդոսի սպասաւորի իւրոյ՝ 'ի պատուաւոր վանորայս, և շրջաբերական նամակ շիրմի առաքելոյն Թադէոսի[2], տալ նմա վիճակ զշրջակայ գաւառն և զքաղաքս, և ոսկի յոլով 'ի շինութիւն գաւթին՝ զոր շինէր վարդապետն Յովսէփ, յետ աւերածոյն որ 'ի Թուրքացն, և 'ի հինին Սրբոց, քանզի յոլով ժամանակս անբնակ էր 'ի մարդոյ, և ամայի։ Եւ Յովսէփայ երթեալ առ զօրագլուխ Թաթարին, որում անուն էր Անգուն-նուին[3], որոյ իշխանքն իւր յաւուրսն ամարայնոյ հուպ էր 'ի գերեզմանն առաքելոյն Թադէոսի, և նորա հրամանաւ սըրբեալ զեկեղեցին և նաւակատիս կատարեալ՝ շինեաց զվանս, և ժողովեաց 'ի նա կրօնաւորս բազում. և այրն Թաթար ընդարձակեաց զճանապարհս յամենայն կող-

1 Որ յաճախ Հաղարծին գրի։

2 Որ յԱրտազ գաւառի։

3 Ցայ. Ախագուրքայ նուին։

մանց, աներկիւղ գալ ուխտաւորաց՝ որ ընդ մէջ զօրաց նորա. պատուէր հրամանի տուեալ[1] մեծաւ սաստկութեամբ՝ մի՛ զոք զզուել և նեղել որ կամիցին գալ. և ինքն սիրով խոնարհէր առ նոսա. և բազումք 'ի նոցունց գային և մկրտէին զուստերս և զդստերս իւրեանց, և բազում պատահարք և հիւանդք բժշկէին, և փառաւորէր անուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Այլ և ամենայն զօրքն Թաթար ոչ էին թշնամի խաչի և եկեղեցւոյ, այլ յոյժ պատուէին, և ընծայս մատուցանէին, քանզի նախանձ հակառակութեան առ նոսա ոչ գտանիւր:

## ԽԲ

### ՎԱՍՆ ՀԱՐԿԱՀԱՆԱՑՆ՝ ՈՐՔ ԵԿԻՆ Ի ՂԱՆԷՆ

Իբրև առ զմեծ թագաւորութիւնն Թաթար զօրուն՝ որ յաշխարհն իւրեանց՝ զանն Գիւգ, իսկոյն առաքեաց զարս հարկապահանջս 'ի զօրս իւր՝ որ 'ի կողմանս և յաշխարհս՝ որ հնազանդեցան նոցա, առնուլ տասանորդս ամենայն ստացուածոց զօրուն, և հարկս 'ի գաւառացն և 'ի թագաւորութեանց, որք նուաճեալ էին նոցա, 'ի Պարսից, 'ի Տաճկաց, 'ի Թուրքաց, 'ի Հայոց, 'ի Վրաց և յԱղուանից. և հարկահանք՝ արք խիստք և յափշտակողք, անուն միոյն Արղուն, որ ամենին իշխէր, և երկրորդին Բուղա, որ չարագոյն ևս էր քան զայն Բուղայն՝ որ յաւուրս Ջափրին իսմայելականին՝ եկ 'ի Հայս և աւերեաց զբազում աշխարհս. նմանապէս և այս Բուղայս եկեալ 'ի զօրսն Թաթար, մտանէր 'ի տունս աւագանոյն, և զոր ինչ ախորժ թըւէր՝ առնոյր անխնայ, և ոչ ոք իշխէր ասել ինչ նմա. զի ժողովեալ էր առ իւր արս սրիկայս 'ի Պարսից և 'ի Տաճկաց, որք անխնայ գործէին զգործս խակութեան, և թշնամիք էին առաւել քրիստոնէից. վասն որոյ չարացուցին զնա 'ի վերայ բարեպաշտ իշխանին Ջալալ-Հասանին[2]. որ ըմբռնեաց զնա 'ի մեծ դրանն առաջի ամենայն աւագայնոյն, և ընդ բազում պատժօք զնա

1 ՕՕ. տուեալ:

2 Որ էր իշխող Խաչենոյ:

արկեալ՝ քակեաց զանմարանչելի բերդս նորա, զոր Խոյտախանայ բերդ[1] կոչէին՝ ըստ Պարսից լեզուին, և ըզՊնեգ և զՕվիրանաքարն, և զայլ ամրոցս նորուն. և այնպէս յատակեաց զնոսա՝ մինչև հետք անգամ ոչ երևէին, թէ բնաւ չէին լեալ իցէ. և բազում ոսկի և արծաթ առեալ 'ի նմանէ՝ հազիւ զերծաւ 'ի նմանէ. և մեծամեծ աւագանին ոչ կարացին օգնել նմա. այսպէս ահարկու ամենայն տեսողացն էր: Կամեցաւ և զիշխանաց իշխանն զԱւագ՝ նոյնպէս ըմբռնել 'ի տանջանս և 'ի ձաղանս. և ազդեցուցին նմա մեծամեծ աւագանին, թէ մի՛ երկնչիր, այլ զամենայն զօրս քո ժողովեա, և այնպէս երթ 'ի տեսութիւն նմա. և թէ դէպ լիցի ըմբռնել զքեզ՝ կալջիր և դու զնա. և այնպէս արարեալ չոգաւ առ նա բազում զօրօք. զոր տեսեալ Բուղայն՝ երկեաւ, և ասէ ցնա. Օ՜րինչ է այդ բազմութիւն զօրաց, մի թէ ապստամբ իցես 'ի ղանէն, և եկիր սպանանել զմեզ. և ասէ ցնա Աւագն. Այլ դու ընդէ՞ր ժողովեցեր զբազմութիւն արանց չարագործաց Պարսից, և եկիր նենգիւ ըմբռնել զմեզ: Այլ իբրև գիտաց Բուղայն թէ յայտնի է նմա նենգութիւն նորա, խօսեցաւ ընդ նմա 'ի խաղաղութիւն. բայց հանապազ խորհէր 'ի միտ իւրում չարութիւն, գտանել դիպող ժամանակ և կատարել զկամս չարութեանն: Այլ մինչդեռ զայսպիսի չարիս խորհէր՝ ժամանեցին նմա արդար դատաստանքն Աստուծոյ. եւ վէրք 'ի փող նորա յանկարծակի, և հեղձամղձուկ սատակեցաւ չարն չարաւ, և այսպէս բարձաւ ամբարիշտն յերկրէ, և մի տեսցէ զփառս Աստուծոյ:

## ԽԳ

### ՎԱՍՆ ԹԱԳԱՒՈՐԱՑՆ ՎՐԱՑ ԵՐԹԱԼՈՅՆ ԱՌ ՂԱՆՆ

Թագաւորութիւնն Վրաց յայնմ ժամանակի նըւաղեալ էր, որ յառաջն ձոխ էր, եմուտ ընդ ծառայութեամբ Թաթար ղանին՝ որ յարևելս, որոց գլխաւոր

1 Որ և Խօխան բերդ, այժմ աւերակ, մերձ 'ի Գանձասար. յորմէ ոչ հեռի Թալին և միւս երկուքն:

էր Ռաչու-նուլին, յետ մահու Զարմաղունին. էր յայնժամ Թագաւոր Վրաց կին մի Ռուզուդան անուն, որ ղօղեալ ամրացաւ յանառիկ ամրոցս Սուանեթայ, և գային առ նա դեսպանք երկուց կողմանց՝ 'ի զօրաց Թաթարին, 'ի մեծ զօրավարէն՝ որ 'ի կողմանս Հիւսիսոյ, որում անուն էր Ռաւթու, մեծաւոր ազգական ղանին՝ որ ամենից իշխէր, այլ և ղանն առանց հրամանի նորա ոչ նստէր յաթոռն. և 'ի միւս զօրավարէն՝ որ 'ի կողմանս Հայոց, որ Ռաչուն կոչէր. գալ առ նոսա սիրով խաղաղութեամբ, և իշխել տէրութեան իւրոյ նոցին հրամանաւն: Իսկ նա քանզի կին գեղեցիկ էր, ոչ իշխեաց առ մի ոք 'ի նոցանէ երթալ, զի մի խայտառակեսցի 'ի նոցունց, այլ զորդի իւր մանուկ տիովք Թագաւորեալ՝ որում անուն էր Դաւիթ, առաքեաց առ Ռաւթու զօրավարն: Իսկ այս գլխաւորքս որ ընդ Ռաչու-նուլինին էին՝ 'ի կողմանս արևելից, ոյք ըմբռնեալ էին զամենայն աշխարհս Հայոց, և Վրաց իշխանութեանն իշխանք առ նոսա կային, իբրև տեսին թէ ոչ եկն նա առ նոսա, (այլ) առ զորդին իւր (և) առաքեաց առ Ռաւթուն, դժկամակ եղեալ ընդ իրսն, առաքեն առ Ղիաթատին սուլտանն Հոռոմոց, և բերեն անտի զեղբօրորդին Լաշա Գիորգայ Վրաց թագաւորին, զոր նոյն Ռուզուդան առաքեաց զհետ դստերն իւրոյ, որ էր կին Ղիաթատին սուլտանին, և ետ զնա յարգելս, զի մի դաւ լիցի զոքանչին իւրոյ վասն Թագաւորութեան. և սոցա ածեալ զնա անտուստ՝ տան զիշխանութիւն հօր նորա, և առաքեն զնա առ արքայն[1] ղանն հաստատել զնա յիշխանութեան. և ինքեանք դեսպանս առաքեն ստիպով մի զկնի միոյ առ Թագուհին Ռուզուդան՝ գալ առ նոսա կամաւ և ակամայ. նոյնպէս և Ռաւթուն առաքեաց զորդի նորա առ ղանն, և ինքն կոչէր զՌուզուդան երթալ առ նա. և նորա նեղեալ յերկուց կողմանց՝ իւրովի դեղ մահու էառ և վճարեցաւ 'ի կենաց. և գրեաց գիր կտակի առ իշխանն Աւագ և յանձնեաց 'ի նա զորդին իւր, եթէ դարձցի 'ի ղանէն: Իսկ նոցա երթեալ առ ղանն Գիւուգ, և նա սիրով ընկալաւ զնոսա, և սահմանեաց նոցա ըստ կարգի

1 Գիւուգ մեծ խաքանն:

ունել զթագաւորութիւն. նախ որ աւագն էր 'ի նոցունց Դաւիթ, որդի Լաշային Գէորգայ, և յետ վաղճանի նորա՝ թէ կենդանի իցէ՝ միւս Դաւիթ, որդին Ռուզուդանայ, նորին հօրաքեռորդի: Այլ զգանձ թագաւորութեանն յերկուս բաժանել. զտախտն պատուական և զմնդլին, և զթագն հրաշալի՝ զոր ոչ ունէին այլ թագաւորքն, զոր Խոսրովու լեալ մեծի՝ հօրն Տրդատայ արքային Հայոց, և անդ մնացեալ գաղտականութեամբ վասն ամրութեան տեղւոյն, և 'ի թագաւորսն Վրաց անկեալ և մնացեալ մինչև ցայսօր, զայն և զայլ պատուականս 'ի գանձուցն առաքել զանին, և զայլսն բաժանել 'ի վերայ ինքեանց: Զոր եկեալ արարին այնպէս, միջնորդութեամբ Աւագին, որդւոյն Իւանէի. և նստէր Դաւիթ որդի Լաշային 'ի Տփխիս քաղաքին և միւս Դաւիթն 'ի Սուանէթ:

## ԽԴ

### ՎԱՍՆ ԽՐԹԱԼՈՅ ԱՌ ՂԱՆՆ՝ ՍՄԲԱՏԱՅ ԶՕՐԱՎԱՐԻՆ ՀԱՅՈՑ, ԵՒ ՈՐԴՒՈՅ ՂԻԱԹԱՑԻՆ ՍՈՒԼԴԱՆԻՆ

Արքայն Հայոց Հեթում որ 'ի Կիլիկիա, առաքեաց զեղբայր իւր Սմպատ զօրավարն առ ղանն՝ երևելի պատարագօք. և նորա երթեալ խաղաղութեամբ զերկայնութիւն ճանապարհին, և յոյժ մեծարեալ 'ի նմանէ՝ դարձաւ երևելի փառօք և հաւատարիմ հրովարտակօք, տուեալ նմա գաւառս բազումս և բերդս յոլովս, զոր յառաջ լեալ էր Լևոնի արքային, և զկնի մահուանն առ 'ի նոցունց Ալայատինն սուլդան Հոռոմոց: Մեռաւ Ղիաթատին[1] սուլդանն. և մնացին նորա որդիք երկու մանուկ տիոյք, և ընդ հակառակս լեալ նոցա՝ չոգաւ մինն 'ի ղանն, և առ 'ի նմանէ զիշխանութիւն հօր իւրոյ, և դարձաւ ընդ Սմբատայ զօրավարին Հայոց. և եկին առ Բաչու-նուինն և առ այլ աւագանին. և նոցա հաստատեալ զհրամանս արքային իւրեանց՝ տան զօրս զկնի նոցա, տանել զնոսա յերկիրն իշխանութեան իւրեանց: Այլ իբրև հասին 'ի

1 Եւ ստորև Ջիաթատին գրէ:

քաղաքն՝ որ կոչի Եզնկայ, լուան եթէ եղբայրն Ղիաթատին սուլդանին փեսայացեալ Լեշքարեայ[1] Հոռոմոց Թագաւորին յԵփեսոս, և նորին օգնականութեամբ սուլտանացաւ յԻկոնն. և եղբայր նորին տղղայոյն[2] յԱլայիայ[3]. 'ի բուն յաթոռն երկեաւ երթալ, անդրէն դարձաւ յԵզնկայն, տեսանել թէ զինչ լինիցի վաղճան գործոյն:

## ԽԵ

### ՎԱՍՆ ԿՈՏՈՐԱԾԻՆ ԶՈՐ ԱՐԱՐ ԹԱԹԱՐՆ ՅԱՇԽԱՐՀՆ ՎՐԱՑ

Եւ մինչդեռ սակաւ մի կազդուրեալ էր երկիրս 'ի հինից և յասպատակէ բորբոքեալ աշխարհակուլ հրոյս, և մարդիկ 'ի սոսա ապաստանեալ էին առաւել քան յԱստուած, և իշխանքն կողոպտէին և զրկէին զաղքատս, և 'ի զրկանաց անտի գնէին հանդերձս մեծագինս և ագանէին, ուտէին և ըմպէին և մեծամեծս փքային, որպէս սովորութիւն է ամբարտաւանութեան Վրաց. թոյլ ետ Աստուած խոնարհիլ 'ի բարձրութենէ՝ և ճանաչել զչափ տկարութեանց, որք առաջնովն ոչ խրատեցան: Յարոյց նոցա սատանայ զնոսա՝ յորս նոքա յուսային. յանկարծակի խորհուրդ արարեալ աւագանին Թաթար զօրուն՝ և վառեցան զինու, և կազմեցան առ հասարակ կոտորել զաշխարհս Հայոց և Վրաց և զհնազանդեալս իւրեանց, վասն այսպիսի պատճառի. թէ ապստամբել կամի Թագաւորն Վրաց ամենայն զօրօք, և զօրաժողով (լինի) գալ կոտորել զնոսա. քանզի երևէր իսկ՝ զի զօրաժողով եղեն ամենայն իշխանքն առ Թագաւորն Վրաց Դաւիթ 'ի Տփխիս. և մինչ ըմպէին գինի՝ բարձրացան սիրտք իւրեանց, և ասացին 'ի նոցանէ արք խակք. Ընդէր ծառայեմք մեք սոցա ունելով զայսքան բազմութիւն զօրաց, այլ եկայք յանկարծակի անկցուք 'ի վերայ նոցա և կոտորեալ ջնջեսցուք զնոսա, և մեք ընկալցուք զաշխարհս մեր: Եւ խափանեաց զայս խորհուրդս մեծ իշխանն

1 ՕՕ. Լեշկայ, այսինքն է Լասկարիս կայսր Յունաց 'ի Նիկիա:

2 Տպ. Եղբայր նորին փոքուն:

3 Յարևմտակողմանս Գարամանու:

Աշոտ. և Թաթար զօրուն պատահեալ 'ի տեղւոջն այն[1], և ազդեցուցին գլխաւորացն: Եւ իբրև ցրուեցան զօրք իշխանացն յիւրաքանչիւր տեղիս, ապա նոցա այսպէս զինեալ՝ կամէին առ հասարակ կոտորել զամենեսեան. և յիշխանացն զորս գտան առ իւրեանս՝ 'ի կալանս արարին, և որք ոչ էին անդ՝ հրաւիրակս առաքեցին փութով առ իւրեանս կոչելով: Իսկ ողորմածն Աստուած ոչ ետ թոյլ իսպառ լինել իրին, խափանեաց այսպիսի պատճառաւ: Մի ոմն յաւագ գլխաւորացն՝ որ զօրավար էր ամենայն զօրուն, Զաղատա անուն նորա, որ բարեկամ էր Աշոտին, եկաց 'ի մէջ վառեալ զօրացն, և ասէ ցնոսա. Մեք ոչ ունիմք հրաման 'ի ղանէն կոտորել զայնոսիկ՝ որ հնազանդ են մեզ, և կան մեզ 'ի ծառայութեան և հարկատուք են ղանին, և իրք ապստամբութեան նոցա ոչ է ճշգրտեալ. արդ եթէ կոտորէք զնոսա առանց պատճառի, դուք տայք պատասխանի ղանին: Եւ լուեալ զայս դադարեցին՝ ըսպուգել զիրն: Եւ գնացեալ առ նոսա մայրն Աշոտին, որում անուն էր Խօշաք, երաշխաւոր լինէր վասն որդւոյն իւրոյ միամտութեան առ նոսա, և թէ ինքն հուպ քակ գալոց է առ նոսա, որ եղեն իսկ. զի եկն վաղվաղակի իշխանն Աշոտն, և եցոյց նոցա զիւր մտերմութիւնն առ նոսա՝ բազում վկայիւք:

Եկն և Թագաւորն Դաւիթ և այլ իշխանքն. և կապեալ զամենեսեան ուժգին ըստ օրինի իւրեանց զձեռս և զոտս բարակ չուանօք. և թողեալ այնպէս կապեալ զերիս աւուրս՝ ճաղէին և անարգէին զնոսա, վասն հըպարտութեն և ապստամբ խորհրդոյն. և ապա առեալ զերիվարս և զգինս գլխոց նոցա՝ թողին զնոսա. և ինքեանք յարձակեցան 'ի կողմանս Սըրաց 'ի վերայ բազում գաւառաց՝ որք ապստամբք և որք ոչ, և զբազումս կոտորեցին, և զեւս բազմագոյնս գերի վարեցին զարս և զկանայս, և զմանկունս գետամոյն առնէին անթիւ 'ի բազմութենէ. և այս գործեցաւ 'ի վեցհարիւր իննսուն և ութ թուին Հայոց: Յետ այսորիկ մեռաւ իշխանաց իշխան Աշոտն, և թաղեցաւ 'ի Պղնձահանքն՝ 'ի գերեզմանի հօր իւրոյ Իւանէի. և ետուն զիշխանութիւն

1 Տպ. չունի զայն և:

նորա Օտաքարէ որդւոյն Րահնշահի հօրեղբօրորդւոյ Խուանէ, զի Լուագն որդի ոչ ունէր, բայց մի դուստր երախայ, և 'ի պոռնկութենէ որդի մի երախայ. զոր յետ մահու նորա ասացին թէ 'ի նմանէ է, զոր առեալ քոյր նորա սնուցանէր. և ապա հանեալ 'ի Օտաքարէէ՝ ետուն կնոջ Լուագին՝ որում անուն էր Պոնցա։

## ԽԶ

### ՎԱՍՆ ԴԱՒԹԻ ՄՈԼՈՐԵՑՈՒՑՉԻ

Կատարած աշխարհիս մօտեալ է, և վասն այնորիկ կարապետք Նեռին բազմացան, որպէս յառաջագոյն ասաց կենարարն, թէ մերձ 'ի կատարածն յարիցեն սուտ քրիստոսք և սուտ մարգարէք, տալ նշանս և արուեստս դիւականս, մինչև մոլորեցուցանել թէ հնար ինչ իցէ և զընտրեալսն։ Արդ 'ի վեցհարիւր իննսուն և ինն թուականիս Հայոց եղև այսպիսի ինչ. զի համբաւ հանին թէ 'ի սահմանս Խաչենոյ կարկուտ եկն և խառն ընդ կարկտին ձկունք բազումք անկան յերկիր, չափ թզոյ միոյ. մեք աչօք ոչ տեսաք, բայց բազումք էին որ հաւատարմացուցանէին թէ ականատես լեալ եմք։ Ընդ այսոսիկ և միւս ևս յօդուած բանի հանգոյն առասպելեաց, ասէին. թէ յեզր ծովուն Գեղամայ աւան մի է Կոթ անուն. 'ի սահմանս այնր գեղջն հուպ 'ի լեառն՝ գտին մարդ մի հսկայաձև մեռեալ և կիսաթաղ, նոր հանդերձ ունելով և կօշիկս նորս, և հանդէպ սրտին ծակ, որպէս թէ խոցած է աշտէիւ, և 'ի վերայ սակաւ մի բամբակ. և յորժամ առին զբամբակն՝ սաստիկ վիժէր արիւնն, և իբրև դնէին 'ի վերայ՝ դադարեալ արգելոյր արիւնն, և թէ այլ նոր բամբակ դնէին և ոչ զիւրն՝ նոյնպէս հոսէր[1] արիւնն, մինչև դնէին զառաջինն. զայսոսիկ յոլովք շաղակրատէին, թէ ճշմարիտ և թէ սուտ մեք ոչ գիտեմք։ Բայց այս եղև ստուգութեամբ զի 'ի սոյն ամի յարեաւ մոլար ոմն Պաւլիթ անուն, դիւական հոգւով շարժեցեալ՝ հանգոյն Յուդայի և Թևդայ մոլորեցուցչիցն։

[1] Օ. հոսեալ հոսէր։

Գիւղ մի է 'ի սահմանս Գեղաքունեաց ծովուն՝ 'ի կողմն Արաչենոյ, հուպ 'ի բերդն Հանդաբերդ, ուր ջերմուկն է Օձար[1] անուն. 'ի նմա էր այր այս 'ի չքաւորաց և 'ի տնանկաց. պահէր զջրաղաց նոցա, և յայնմանէ կերակրէր ինքն և կին և որդիք իւր. և 'ի գիշերի միում երևեալ նմա սատանայ 'ի կերպս լուսոյ և իշխեաց ասել, թէ ես եմ Քրիստոս, և եկի առնել զքեզ ինձ քարոզ, և ածից առ քեզ յամենայն կողմանց զմարդիկ. և որք գան առ քեզ 'ի պէտս բժշկութեան՝ համարձակ դիր 'զձեռն քո 'ի վերայ նոցա, և առ զգերան ձիթահանաց գեղջդ և արա խաչ, և կանգնեա 'ի դուրս եկեղեցւոյն. և զայլ ամենայն հնարս խորամանկութեան ուսոյց նմա: Եւ նա սկսաւ քարոզել, թէ Քրիստոս երևեցաւ ինձ և ասաց, թէ դարձո զաշխարհս, և բժշկութիւնս կատարեա: Եւ յարեցան 'ի նա այլք. և նոքա սկսան համբաւել զնա, և կոչէին զնա Գաւիթ միայնակեաց և սքանչելագործ. և առեալ բռնութեամբ զգերան ձիթահանաց 'ի տանէ իւրմէ՝ արարին խաչ բարձրաբերձ, և կանգնեցին զնա 'ի դուռն եկեղեցւոյն, և զենին նմա զուարակս, և տային 'ի մսոյն և յոսկերացն զուարակին, և 'ի տաշեղէ խաչին և 'ի հատէ կորեկոյն՝ որ 'ի ջաղացքն՝ որպէս նշխարս օրհնութեան ամենայն ուխտաւորաց, որք գային յամենայն կողմանցն: Քանզի նոյն բանսարկուն՝ որ յորդորեացն զնա յայն՝ դրդեաց և զամենայն գաւառս երթալ 'ի համբաւն այն, արք և կանայք և մանկտի, նա և երիցունք ևս, և ազատ մարդիկ, և ախտացեալք և ամենայն ցաւագնեալք. և նա զառաջինն կեղծաւորեալ ոչ ինչ առնոյր յումեքէ, ըստ նմանութեան դերաքրիստոսին. այսպէս քարոզէր, Ո՞վ եմ ես, աղքատ մեղաւոր. բայց Քրիստոս հրամայեալ է ինձ քարոզել, զերկուշաբաթի օրն պահեցէք. յիշոցք մի տայք. և եկայք համբուրեցէք զխս, և թողեալ լիցին մեղք ձեր և ազգին ձեր, մինչև յեօթն ազգ: Եւ յորժամ դիւահարք գային՝ առնոյր բիր մի հաստ հարկանէր անխնայաբար, և կոխէր ոտիւք ըղփողսն և ասէր. Ել շուն, ել շուն. Գաւիթ միայնա-

1 Ցելս սահմանաց Սոթից գաւառի Սիւնեաց, և 'ի գլուխ Արցախոյ նահանգի:

կեացն հրամայէ քեզ. և ասէր ցայրն այսակիր. Ահա այլ մի երկնչիր, բժշկեցար. և նա երթայր զնոյն չար ունելով ևս բազմագոյն 'ի նմա. և որք հարցանէին՝ ոչ իշխէր ասել թէ ոչ բժշկեցայ. քանզի պատուէր տայր՝ թէ յորժամ ասես ոչ բժշկեցայ, առ ժամայն լլկիս 'ի դիւէն, և նա թէպէտ ոչ իշխէր ասել, արդիւնքն իսկ յայտ առնէին, որ հանապազ լլկէին. որ յառաջն ամսով և շաբաթով կրէին զնեղութիւնն, յետ գնալոյն առ նա՝ յամենայն աւուր չարչարէին: Եւ լեկրոտք[1], որ երթային առ նա՝ ասէր, թէ խաղացէք առաջի իմ, և պարեցէք. և նոքա առնէին զայս յօժարութեամբ. քանզի այս ազգ դիւաց[2] տխորժեն զխաղ և զպար. և ասէր. Եկայք համբուրեցէք զիս և զկին իմ, և երթայք, և այլ մի երկնչիք: Եւ գողեացն ասէր. Այդ ցաւոյդ չկայ հրաման Աստուծոյ բժշկելոյ, բայց զմեղս քո թողում, զի եկիր առ իս: Եւ զկարկամեալս և զկըղացեալս՝ հրամայէր արանց չորեցունց՝ ունել երկուցն զգլուխն, երկուցն զոտսն. և ասէր, ձգեցէք և պարզեցէք. և նոցա ձգեալ ուժգնակի՝ ճարճատէին ամենայն յօդուածք մարմնոյն. և այրն վայէր ուժգնակի առ վըտանգի ցաւոցն. և նա ելեալ կոխէր զթիկունս և զմկանունս, և ցաւագնեալն անշնչանայր իբրև զմեռեալ և կամ մեռանէր իսկ. և նա ասէր վասն այնոցիկ՝ որ մեռանին, եթէ չափ ժամանակի դորա լցեալ էր և չէր մարթ կեալ դմա, բարիոք է զի մեռաւ, և հանգչի 'ի վշտացն. և որք ապրէին՝ կիսամահ մնացեալք ոչ բըժըշկեալ, ասէր վասն նոցա, թէ Ոչ ունին կատարեալ հաւատ առ մեզ, վասն այն ոչ բժշկին: Դիւահարաց՝ զորոց զփողսն կոխէր, և նոքա մեռանէին, վասն նոցա ասէր. Սա վաղուց էր մեռեալ, և այն որ շրջեցուցանէր զնա՝ դևն էր, զոր հանի այժմ: Եւ կուրացն ասէր. Ո՞ր կամիս, բանամ զաչսդ թէ թողում զմեղսդ. և գիտեմ որ ժամանակդ մերձ է, և վաղվաղակի մեռանիս. և նա ասէր, թէ այդպէս է՝ լաւ է ինձ որ թողուս զմեղս իմ. և նա ասէր, թողեալ եմ զմեղս քո: Եւ այսպէս ամենեցուն զմիտս յինքն ձգէր. մինչև այնքան

1 Ա. Գ. ընկոյթ. Թուին ուռնառեալք կամ պատագրոտք:

2 Լաւ ևս ասել՝ դիւահարաց:

լինէր առ նա ժողով բազմութեան, զի տեղիք վայրացն ոչ բաւէին տանել զմարդիկ։ Այլ զի ամառնային էր ժամանակն, 'ի մարգս և 'ի սարս ելեալ՝ անդ դադարէին զգիշերն, և գործէին զամենայն չարիս. զի կանայք որք ոչ իշխէին շնալ՝ յարանց կամ 'ի ծնողացն՝ 'ի տան իւրեանց, ելանէին ուխտիւ պատճառաւ, և շնային համարձակ ընդ որս և կամէին. նոյնպէս և արքն չարք զնոյն առնէին՝ որոց ցանկային։ Այլ գնային բազում պատարագօք, ոսկով և արծաթով, զուարակաւ և ոչխարաւ. և որք երթային և գային՝ զոչ գնացեալսն կշտամբէին, և գարշէին 'ի նոցունց՝ որպէս 'ի մեղաւորաց և յանարժանից նորա տեսութենէն։ Նայլ և երիցունք եկին և յարեցան 'ի նա, ընչից և զօշատութեան աղագաւ, և կային նմա 'ի սպասու, լուանալով զոտս նորա, և զջուրն ցանէին 'ի վերայ ինքեանց և ժողովրդոցն բազմութեան. և ինքն կեղծաւորեալ ոչ ինչ առնոյր յումեքէ. այլ 'ի ձեռն քահանայից և արբանեկաց իւրոց առնոյր։ Այլ տէր գեղջն քանզի Պարսիկ էր, առնոյր զբաժին իւր ընչիցն. քանզի յոյժ տանէին բազումք և յօժարութեամբ տային։ Եթէ ոք 'ի վարդապետաց կամ երիցանց արգելոյր կամ խափանէր զնոսա յերթալոյ՝ հայհոյէին և բամբասէին իբրև զնախանձոտս և զյաչաղկոտս, թէ ինքեանք ոչ կարեն գործել զգործս նորա, և ոչ զսրբոյն բարեգործութիւնս կամին։ Նա գրեաց գիր սաստից և մեղադրանաց մեծ վարդապետն Սանական՝ որ բնակէր 'ի վանս Այորանաշատոյ, հանդէպ Արգէվանից բերդին, թէ ընդէր զերեւումն դիւին Քրիստոսի համարիք՝ ով քրիստոնեայք, զի և սատանայ սովոր է կերպարանիլ 'ի հրեշտակ լուսոյ. և բանադրեաց զայնոսիկ, որ 'ի պեղծ մոյ անտի կերեալ էին, և կամ ունէին նշխար 'ի տաշեղէն և 'ի կորեկոյն, և մի քառասուն պահք, հինգհարիւր ծունր եդ 'ի վերայ նոցա, և ապա արժանի լինել սուրբ խորհրդոյն։ Գրեցաք և մեք նմանապէս նովին սաստիւ և բանադրանօք, և առաքեցաք յոլով տեղիս. նոյնպէս և եպիսկոպոսն Հաղբատայ գրեաց տէր Համազասպ. եկն և Գոդի վանից եպիսկոպոսն տէր Գրիգորիս, և վարդապետն Սարդան, զոր Յօժար-որդիք կոչէին, բազում քահանայիւք 'ի գիւղն այն, քանզի նոցա վիճա-

կին էր, խաչիւ և աւետարանօք, և արարեալ գիշերապաշտօն, և կանգնեցուցին զայրն խաբեալ 'ի միջի, զի թերևս ելցէ 'ի նմանէ ոգին պիղծ. և յորժամ հարցանէին թէ զինչ տեսանես, ասէր. Թէ Երբ անկանիմ 'ի վերայ երկրի բերանսիվայր՝ յերկրէ աստի երևի ինձ և խօսի ընդ իս:

Ապա ձեռն արկեալ եպիսկոպոսին և երիցանց կամէին կործանել զխաչն՝ զոր կանգնեաց մոլարն. յարեաւ ամենայն ամբոխ բազմութեանն սրովք և բրօք, կամէին սպանանել զնոսա, և նոքա արտաքս ելեալ յամբոխէն, անիծիւք սաստիկ նզովէին զյանդգնողսն: Ապա ոմանք 'ի նոցանէ զղջացեալք չոգան աղաչեցին զեպիսկոպոսն և զերիցունս՝ արձակել զնոսա 'ի կապանաց անիծից, և զայրն ետուն 'ի ձեռս նոցա. և մինչ տանէին զնա՝ հանդիպեցան արք Գառնեցիք, որ գային 'ի մեծ դրանէն. աղաչեաց այրն զնոսա, զի խնդրեսցեն զնա յեպիսկոպոսէն. քանզի ասէր զինքն ազգակից նոցա և 'ի Գառնոյ. զի այսպէս ասէր նա յառաջն ժողովրդեան, թէ յՈրշակունեաց ազգէն եմ ես, և պարտ է որդւոց իմոց՝ միոյն լինել թագաւոր և միւսոյն կաթուղիկոս, և սրբոյն Սահակայ տեսիլն[1] 'ի վերայ նոցա կատարել: Ապա ետ զնա եպիսկոպոսն ցնոսա, երդումն պահանջեալ, զի մի այլ մոլորեցուսցէ զմարդիկ. և այսպէս հազիւ շիջաւ չարն:

# ԽԷ

## ՎԱՍՆ ԴԻՒԻՆ՝ ՈՐ Ի ԿԵՐՊԱՐԱՆՍ ԿՆՈՋ ԼԵԱԼ՝ ԽԱՌՆԱԿԷՐ ԸՆԴ ՄԱՐԴԻԿ

Պատմեաց մեզ վարդապետն Յովսէփ[2], որ շինեաց զվանս գերեզմանի Թադէոսի առաքելոյն յՈրտաւազն գաւառի, յետ աւերածոյն և ամայի լինելոյն, թէ չոգայ ես 'ի գաւառն Գողթան, 'ի պէտս ինչ իրաց. ասացին ինձ 'ի գիւղ մի, թէ է աստ այր մի՝ որ ունի կին դև, և մեր անհաւան լեալ ասացելոցն՝ չոգաք 'ի տուն

1 Տպ. փեղջանն մօրթ է 'ի վերայ նոցուն:

2 Աշակերտակից հեղինակին:

առն և ոչ տեսաք զկին. և իբրև հարցաք զայրն՝ նա ասաց զպատճառն. թէ կին ունէի ես և մեռաւ, և թող ինձ մանկունս մանունս, և ես նստեալ լայի թէ ո՞ սնուցանէ զոսսա ինձ։ Եւ ահա երևեցաւ կին մի յանկարծակի և ասէ. Մ՛ի լար, ես եղէց քեզ կին, և սնուցից զմանկունսն. և յայնմհետէ հանապազ էր 'ի տան իմում, և առնէր մեզ կերակուր, և զամենայն պէտս մեր լնու, և սաստիկ սիրով հարեալ եմ 'ի սէր նորա, և հանապազ խառնակի ընդ իս. և զշաբաթ ամենայն անգործ կայ և յաւուր հինգշաբաթի առնէ մանած երեք լիտր։ Եւ իբրև հարցի թէ ո՞ւր է այժմ. և նա մատամբն եցոյց թէ աւանիկ է, երևի ինձ և մանկանց իմոց, և ոչ այլ ումեք. և յոլով ժամանակք են՝ զի ընակեմք 'ի միասին։ Եւ ես յարեայ աղօթել և աւետարան ընթեռնուլ, զի թերևս հալածեսցի ոգին մեղասէր և պեղծ. իսկ նորա ոչ ինչ փոյթ արարեալ զայնմանէ, այլ նստեալ ծիծաղէր, որպէս այրն պատմեաց։ Եւ մեր ոչ տեսեալ զնա՝ ելեալ գնացաք։

## ԽԸ

### ՎԱՍՆ ԽՆԴՐՈՑՆ ՈՐ ԵՂԵՒ Ի ՄԷՋ ՔՐԻՍՏՈՆԷԻՑ ՎԱՍՆ ՍՈՒՐԲ ՀՈԳՒՈՑՆ ԱՍՏՈՒԾՈՅ, ԹԷ Ի ՀՕՐԷ՞ ՄԻԱՅՆ ՊԱՐՏ Է ԱՍԵԼ ԹԷ Ի ՀՕՐԷ ԵՒ ՅՈՐԴՒՈՅ

Ի Հռովմայեցւոց ազգաց շարժեցաւ այս խնդիր 'ի մէջ քրիստոնէից. քանզի գրեաց փափն Հռոմայ[1], առ մեծ կաթուղիկոսն Հայոց տէր Կոստանդին; որ յայնմ ժամանակի նստէր 'ի Կլայն-Հռովմէական, քանզի անդ էր աթոռ սրբոյն Գրիգորի՝ 'ի ժամանակս Գրիգորի և Ներսէսի՝ երկուց եղբարց, որք էին յազգէն Արշակունեաց, արք գիտնականք և վրէժխնդիրք օրինացն Աստուծոյ. թէ ո՞րպէս խոստովանիք դուք զամենասուրբ Հոգին Աստուծոյ, 'ի Հօրէ՞ միայն բղխեալ և երևեալ, թէ 'ի Հօրէ և յՈրդւոյ. քանզի Հռոմայեցիք այսպէս խոստովանին 'ի Հօրէ և յՈրդւոյ։

Նմանապէս և առ Թագաւորն Հեթում գրեցին և

1 Ինոկենտիոս Դ։

պատասխանի խնդրէին։ Եւ նոցա ժողովեալ զիմաստունս իւրեանց աշխարհին՝ 'ի քաղաքն Սիս որ 'ի Կիլիկիա, 'ի Հայոց, Յունաց և յԱսորւոց, և այլազգեաց քրիստոնէից որք գտան անդ. Յոյնք՝ 'ի Հօրէ միայն ասացին, և յԱսորւոց ոմանք այլ. իսկ Հայոցն ժողով գրեցին 'ի կողմանս արևելից 'ի մէջ Մեծ Հայոց, և առ գիտնական վարդապետն Վանական, քանզի 'ի ժամանակին երևելի էր, և առ Յովսէփ[1], և առ այլս, թէ նոքա զինչ ասեն. և ապա պատասխանի արասցեն Հռոմայեցւոցն։ Եւ նոքա քննեալ զաստուածաշունչ գիրս առաքելոց, մարգարէից և սրբոց վարդապետաց եկեղեցւոյ, որք մաքրեցին զեկեղեցիս հերձուածոց, ըստ պիտոյիցն վարեցեալ երկոքումբ ձայնիւք, և ուղղակի զՀռովմայեցւոց խոստովանութիւնն. և լի են ամենայն աստուածաշունչ գիրք այնպիսի ձայնիւք։ Որպէս գրեաց վէմն հաւատոյ երանելի առաքեալն Պետրոս, որ վասն ճշմարիտ հաւատոյն երանեցաւ 'ի Տեառնէ, թէ Յորում և յորպիսի ժամանակի գուշակէր 'ի նոսա Հոգին Քրիստոսի. և Յովհաննէս աւետարանիչն ասէ. Որ զՀոգին Քրիստոսի ոչ ունի՝ նա չէ նորա։ Եւ մեծն Պօղոս. Առաքեաց Աստուած զՀոգի Որդւոյ իւրոյ 'ի սիրտս մեր, որով աղաղակէ Աբբա, հայր։ Եւ այլ բազում այսպիսիս 'ի գիրս առաքելոց։ Իսկ սուրբ Լուսաւորիչն մեր Գրիգոր, (որ) ուսոյց մեզ զհաւատոյ խոստովանութիւն, այսպէս ասէ. Հայր յինքենէ, Որդի 'ի Հօրէ, սուրբ Հոգին 'ի նոցունց էութենէ։ Իսկ յաղթող ախոյեանն Քրիստոսի Աթանաս՝ ընդդէմ Արիանոսացն այսպէս քարոզէր և ուսուցանէր. Անսկիզբն Հայր ոչ յումեքէ, Որդի 'ի Հօրէ, և Հոգին սուրբ 'ի նոցունց էութենէ. զի երկրորդէ Սոկրատ պատմագիր։ Եւ Գրիգոր աստուածաբան 'ի Ճառին՝ որոյ սկիզբն է[2] Երեկ զլուսաւոր պայծառութեանցն զօր տօնեցաք, ասէ զսաղմոսն առեալ, Ի քէն է տէր աղբիւր կենաց և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս. այս է Հոգւով Որդի. և դարձեալ՝ Որ 'ի Հօրէ ելանէ, որ ըստ որում անտի առաքի՝ ոչ է ստացուած, ըստ որում ոչ ծնեալ՝

1 Վերոյիշեալն։

2 Ճառս որ 'ի Մկրտութիւն Տեառն՝ ոչ բովանդակ Թարգմանեալ գտանի առ մեզ, և ոչ յառաջբերեալ վկայութիւնք։

ոչ որդի, և ըստ որում յոչ ծնիցելոյ և 'ի ծնիցելոյ 'ի մէջ՝ Աստուած է։ Եւ Գրիգոր՝ Նիւսացի, և մեծն Բասիլիոս, և Աբբա Եփրեմ, և Յովհան Ոսկեբերան, 'ի բազում տեղիս յիւրեանց գիրսն. զոր թէ աշխատութեամբ ոք խնդրէ՝ յոլովս գտանէ. և Սեբիանոս Եմեսու եպիսկոպոսն 'ի ճառին որոյ սկիզբն է՝ Ի մէջ քրիստոսասիրաց, զՔրիստոսէ խոստացաք ճառել, 'ի կատարածին ասէ. Ծննդին Աստուծոյ, և ծնիցելոյն 'ի նմանէ՝ Որդւոյն միածնի, և սուրբ Հոգւոյն՝ ելոյին 'ի նոցունց էութենէ, երիցն 'ի միում աստուածութեան, ամենայն փառք յաւիտեանս. ամէն։ Եւ Մովսէս Խորենացին ասէ 'ի մեկնութեան քերականին. Սուրբ Հոգին առինչունակ է, զի որումն հոգի է. զի 'ի դէմս Հօր և Որդւոյ ասի Հոգի։ Եւ Ստեփաննոս Սիւնեաց եպիսկոպոսն ասէ[1]. Քանզի բղխէ 'ի Հօրէ իբր յականէ անհատաբար, դադարէ յաղբեր. 'ի յՈրդւոյ ելանէ անմեկնելի խոհականագոյն գետ արփիաբաշխ, լուսապարգև, ասպնջական զծովն ունելով, զհրեշտակաց և զմարդկան գիտութիւն ունելով. տեհնա, զի հարուստ Որդին իբրև զՀայր. զի թէպէտ սուղ որդի, զի սկիզբն նոյն փարթամ, զի պատճառ է Հոգւոյ ելողութեան. Հոգին սուրբ հարուստ, զի պատճառ է մարգարէական տառից։ Եւ սքանչելին Եպիփան 'ի գիրս մեկնութեան Սաղմոսաց[2]։ Եւ գլուխ բանիցս՝ ամենասրբուհի Աստուածածնին Մարիամ՝ 'ի բանն հաւատոյ զոր հրամայեաց աւետարանչին Յովհաննու ուսուցանել Սքանչելագործին Գրիգորի, ասէ. մի Աստուած Հայր Բանին կենդանւոյ, իմաստութեանն անձնաւորի և զօրութեան, և կերպարան էութեան. կատարեալ կատարելոյ ծնօղ, Հայր Որդւոյ միածնի, տէր միայնոյ, Աստուած Աստուծոյ, կերպարան և պատկեր աստուածութեան. բանն Աստուած ներգործական յամենայնի, և եղելոցս ամենայնի բովանդակիչ, և զօրութիւն անսահմանելի, և ամենայն ստացականացս արարիչ։ Որդի ճշմարտի Հօր, անտեսանելի անտեսանելւոյն, անապականին անապական, անմահ անմահի։ Մի

1 Եւ սա 'ի մեկնութեան քերականին։

2 Պակասէ վկայութիւնն։

Հոգի սուրբ առ 'ի յԱստուծոյ զէութիւն ունելով. և 'ի ձեռն Որդւոյ երևեալ և յայտնեալ մարդկան, պատկեր Որդւոյ. կատարեալ կատարելոյ, կեանք կենդանեաց պատճառ. սրբութիւն և սրբութեան պարգևիչ. որով յայտնի Աստուած Հայր, որ 'ի վերայ ամենեցուն և յամենեսին, և Աստուծոյ որդին՝ որ 'ի ձեռն որոյ ամենայնք: Երրորդութիւն կատարեալ՝ փառօք, մշտընջենաւորութեամբ և անբաժանելի թագաւորութեամբ, և անօտարանալիք: Ոչ ապա ստացական ինչ, և ոչ ծառայ Երրորդութեան, և ոչ 'ի ներքսածական, որպէս թէ յառաջագոյն ոչ գոլով և յետոյ 'ի ներքս մտեալ: Ոչ նուազ Որդին 'ի Հօրէ, և յՈրդւոյ՝ Հոգի. անայլայլելի, անփոփոխելի, նոյն ինքն Երրորդութիւն միշտ:

Այսպիսի խոստովանութիւնս ընդունելի է յեկեղեցիս Հայաստանեաց, և յոգիս Կիւրակոսի, և համարձակ արժան է քարոզել զՀոգի 'ի Հօրէ ելեալ, և յՈրդւոյ երևեալ: Զայս պատասխանեցաք թղթոյն արևմտից, և մեք 'ի սոյն հաւատ հաստատեալ կամք շնորհօք Երրորդութեանն սրբոյ, որում փառք յաւիտեանս. ամէն:

## ԽԹ

### ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՒԱՏՈՅ ՈՒՂՂԱՓԱՌԱՑ

Հաւատամք 'ի Հայր և յՈրդի, և 'ի Հոգի սուրբ, երիս անձինս կատարեալս, և մի աստուածութիւն փառաւորեալ, սուրբ և զուգափառ Երրորդութիւն. անսկիզբն և անվախճան, աներբ, անուր, միշտ անկարօտ և բերկրեալ, ամենայնիւ կատարեալ, և 'ի բարւոջ իմացեալ, զոր բնաբար ունի, և աննախաղապէս (տայ) կարօտից, Երրորդութիւն կատարեալ, անաճելի[1] և աննուազ: Անձամբ բաժանեալ, և է զի և անուամբ, և 'ի միութիւն կացեալ, և կայ փառաւորեալ և փառաւորի 'ի բնութեան աստուածութեան, 'ի զօրութեան, 'ի կամսն, յիմաստութեան, 'ի գործն, 'ի մեծութիւն,

[1] ՕՕ. անճառելի:

և մանաւանդ յանհասութեանն և յանասելի ողորմութեանն․

Հայր անծին, Որդի ծնեալ 'ի Հօրէ՝ անախտ և անմարմին, բնութենակից Հօր նախ քան զժամանակս։ Հոգին սուրբ բղխումն 'ի Հօրէ, և երևումն յՈրդւոյ, ոչ ըստ Որդւոյ ծննդեանն, այլ յառաջ եկեալ աղբիւրաբար, ինքեան միայնոյ քննելի օրինակն, և արարածոց անգիտելի․ միշտ ընդ Հօր Որդի և Հոգի։ Հոգին որպէս Հօր՝ նոյնպէս և Որդւոյ, ոչ փոխեալ Հայր յՈրդի կամ Որդի 'ի Հոգի, կամ Հոգին յՈրդի և 'ի Հայր։

Հայր ունելով զանձն և զանուն հայրական, և Որդի ունելով զանձն և որդիական անուն, և Հոգի ունելով զանձն և զանուն հոգիական․ անդրադարձութիւն ոչ ունելով, կամ փոփոխումն անուանցն և անձանցն․ այլ Հայր միշտ Հայր, Որդի միշտ Որդի, և Հոգի միշտ Հոգի․ յոր հաւատամ։ Յայսմանէ և 'ի սիրոյ եկեալ Որդւոյն անձամբ չափ, աւետեօք հրեշտակապետին Գաբրիէլի 'ի կոյսն Մարիամ, որ սուրբ էր հոգւով և մարմնով, և 'ի պատճառս փրկութեան մերոյ մարդացեալ 'ի նմանէ՝ սահմանաւ բնութեանս մերոյ, հոգի, միտք, շունչ, մարմին որ ինչ և է կատարեալն մարդ մեղուցեալ բնութեանս Ադամայ, ուստի Մարիամն էր․ զոր առեալ աստուածագործեաց, առանց շփոթման և այլայլման, անքննին և անճառելի խառնմամբն, և եղև յերկուց կատարեալ բնութեանց՝ յաստուածայնոյն և 'ի մարդկայնոյն՝ մի անձնաւորութիւն կատարեալ, անայլայլելի և անբաժանելի բնութեամբ․ ոչ փոխելով մարդկային թանձր և յօդական բնութիւնս՝ յանյօդ և պարզական աստուածութեանն բնութիւն, զիւրն ոչ կորուսանելով․ և ոչ պարզ և անմարմնական բնութիւնն Աստուծոյ՝ խառնելով ընդ բնութեան մարմնոյ՝ վրիպեաց յիւրն յաւէտ պարզութենէն․ թէպէտ և առ յաղագս անքակ միութեան՝ անմարմնոյն մարմնանալ, և բանին թանձրանալ։ Մնաց միածինն մի որդի, մի անձն, մի Քրիստոս, և ճշմարտապէս՝ յերկուց միացեալ՝ մի բնութիւն, մի կամք, մի ախորժակք, մի գործ[1].

1 Կամք և գործք առանձինն ըստ երկաքանչիւր բնութեանց, այլ հաւանութեամբն մի։

մի ծնունդ կուսութեամբ, մի մայր առանց հօր, որ և նախ քան զյաւիտեանս առանց մօր ծնեալ։ Այլ խոստովանիմ զմայրն Անմանուելի՝ Աստուածածին մինչև յաւիտեան, նովին մարմնովն և որ զհետ ծննդեանն։ Զամենայն տնօրինականս խոստովանիմ գործ Աստուծոյ, զխոնարհագոյնս և զբարձրագոյնս, և զկիրսն անբամբասելի՝ որ վասն մեր կրեաց՝ ոչ բաժանեմ, այլ մի յատուկ ասեմ 'ի տէրն իմ. ոչ իմանամ զշփոթումն[1]։ Այլ նոյնպէս զկիրս խաչին խոստովանիմ Աստուծոյ խաչ և մահ. ոչ էական բնութեանն ասեմ մահ կամ 'ի մարմնոյն բաժանումն, այլ զիմ բնութիւնն միացեալ յաստուածութիւնն և աստուածացեալ Աստուած խոստովանիմ. որով մեռաւ անմահն, զբանական հոգին աւանդելով 'ի ձեռս Հօր Աստուծոյ։ Այլ աստուածութիւնն ոչ բաժանեալ 'ի հոգւոյն և 'ի մարմնոյն, միաւորեալ անքակտելի. և ըստ որում և զդժոխս աւերէր հոգւովն և զմահ սպանանէր, և մարմինն լուծանէր զապականութիւն որպէս զԱստուած և զԱստուծոյ մարմին. ընդ ամենայն գերեզմանս արձակելով ճառագայթս, յարուցանելով[2] զբազումս, զխաւլով զսահմանեալ ժամանակն 'ի լանջս երկրի, հզօրագոյն թուովն յառնէր, ոչ միայնաբար ըստ Յովնանու 'ի ձկանէն, այլ լրմամբ հոգւոցն մահակուլ՝ որ յԱդամայ 'ի դժոխս, և յոլովիւք մարմնովք հողացելովք 'ի գերեզմանաց. ելանէր կուսութեամբ անլոյծ կնքօք 'ի գերեզմանէն՝ որպէս յարգանդէն Մարիամու. և վերացեալ մտանէր յերկինս կուսութեամբ անճեղքելիս, որպէս 'ի վերնատունն՝ դրամբք անբացիւք, զի յայտ լիցի եթէ 'ի վեր է քան զբնութիւն մարդոյ։ Զի մարմնոյ բնութիւն՝ մահկանացու, ապականացու և ախտալի է, թէ յատկացի ըստ ինքեան. և ընդ մարմին ոչ կարէ մտանել անծանօթապէս, այլ տէրունականն և տէրն լիով ունելով զճշմարիտն մարդ՝ իւրովն սահմանովն, սակայն շողացեալ և փայլատակեալ աստուածութեամբն ներգործէր զվայելչականն Բանին, զոր շօշափեցին ձեռօք դասք առաքելոց, և տեսին երանելի աչօք զանտեսակն տեսա֊

1 Տպ. Ցուցելու. և նշանէին զիմացուն և զսաստն չփոխումն։

2 ՕՕ. մեր պահպանողք, յաւելուք ըստ տպագրին։

կացեալ։ Գալոց է նովին մարմնով և փառօք Հօր՝ դա-
տել զկենդանիս և զմեռեալս, որոյ թագաւորութեանն
ոչ գոյ վախճան։

Հաւատամ 'ի նոյն Երրորդութենէն եղեալ յոչէից զեղեալքս ամենայն. և զԱդամ պատկերեալ բարւոյն, և յանցանօք լուծեալ 'ի մահ անձնիշխան կամօք, և 'ի նոյն արարչէ վերստին նորոգել տնտեսութեամբ միոյն միածնի, կամօք Հօր և Հոգւոյն։ Հաւատամ զհամօրէն յարութիւն բանականացս՝ որ յԱդամայ, 'ի նոյն զօրութենէ ստեղծողին և նորոգողին։ Հաւատամ յարդար իրաւունս՝ յաւուրն դատաստանին ըստ արժանեաց, և 'ի հատուցումն յաւիտենական տանջանաց և կենաց։

Այս է մերոյս հաւատոյ համառօտ խոստովանութիւն, և ամենայն ուղղափառաց. որով մասնաւորեսցէ զմեզ Տէր 'ի շնորհս ողորմութեան իւրոյ, սովիմբ կեալ յաշխարհի անարատ կենցաղավարութեամբ և բարի գործովք, և այսու դաւանութեամբ գնալ առ Քրիստոս յոյսն ամենեցուն, և մեր վստահութիւն. և արժանի լինել տեսանել համարձակութեամբ զերանելի և զամենասուրբ զԵրրորդութիւնն՝ յերիս անձինս յատկացեալս և 'ի մի աստուածութիւն և տէրութիւն, և 'ի թագաւորութիւն փառաւորեալ. և արժանացուսցէ զմեզ և զամենայն ճշմարիտ հաւատացեալսն անճառ բարեացն և անպատում ուրախութեց, զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զայն պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց։ Արդ զայս դաւանութիւնս յոլով մասն աշխարհիս ունի, և պահէ սրբապէս քաղաքավարութբ՝ զոր պարտ է յամենայն քահանայագործութեան տալ զայս դաւանութիւն մեծի քահանայապետին, և պահանջել յայնցանէ՝ զորս ձեռնադրելն կամին։ Իսկ ապա յանուանէ նզովէ զգայլսն ապականիչ՝ զամենայն հերետիոսականսն՝ հարիւր յիսուն և ինն հերձուած, մինչև ցայսօր ժամանակի, և այլք որք լինին նման սոցա; և դաւանել զամենայն ուղղափառսն զհովիւս եկեղեցւոյն, որք ընդ ճշմարտութիւնն առաջնորդեցին հօտին Քրիստոսի, և յարօտս կենսաբերս մնուցին. և ապա իջանէ Հոգին յայնպիսի սեղանն սրբութեան, և հանգչիցի

կընծայեալն՝ յայն որ գիտէ ճանաչել զաւարտն և զընտանին, որպէս զգիտնական և զիմաստուն հովիւս կացուցանել, որ կարասցէ 'ի կեանս կոչել զարժանիս կենացն, այսինքն առ Աստուած ածել: Զի այս է պարիսպ պահպանութեան խաչիւ և արեամբ գնեալ հաւատացելոց, ոչ միայն 'ի չարեացն 'ի բաց կալ, այլ և բարեացն զհետ երթալ. 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս. ամէն:

Գրեաց և մեծ վարդապետն Սանական, թէ որպէս մարթ է խոստովանել և կամ անել զսուրբ Հոգին 'ի Հօրէ և յՈրդւոյ:

## Ծ.

### ԽՐԱՏ ԴԱՒԱՆՈՒԹԵԱՆ ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ

Հոգւոյն խօսել զՀոգւոյն՝ հոգևորացն է. իսկ եթէ ոք և որ 'ի ձեռն[1] հաստատութեան է յօժար առ 'ի քաղել, ամառան խզուզլին հանդիպիլ սիրելի է, և թէ հաւկի[2]. բայց թէ չնչլիցէ հոգի անօսր Եղլայունին՝ ընթասցի բանն և փառաւորեսցի մի աստուածութիւն յերիս անձինս միմեամբ երևեալ, որպէս լոյս 'ի լուսոյ: Զի թէ արարածականս այս լոյս և հուր՝ ոչ փակի յիւրական ընտանեացն և յայլոց, զիա՞րդ անեղ արարչականն 'ի միմեանց և յարարածս. թէ և մեք ոչ կարեմք գիտել. վասն զի երեաք[3] անձնական բաժինս տալ՝ ոչ զօրէ 'ի յօդ, 'ի հուր, 'ի ջուր և 'ի գինի, վասն նորամասնութեանն: Եւ զի այս հարկելիք թուին և անապուսելիք, ո՞րչափ ևս առաւել միտքն մի ժտեսցի յանեղ, յանարար, յանսահման, միաստական սուրբ Երրորդութիւնն՝ ոչ գոլ որով եղերիցի, կամ տեղի՝ ուր զնիցի, համիմացութեամբ ճանաչիլ. այլ զոր գիրք աստուածաշունչ առթէ եկեղեցւոյ, զոր սկսանելի է, իմացումն իմացական՝ իմացողին՝ որպէս սնունդ ելով և կերակուր ուրեմն մտաց, հրեշտակական էութիւնք՝ և նոցա արարչականք, զի իմանալին իմացութեամբ իմա-

1 ՕՕ. 'ի յօրն:

2 Այսպէս ՕՕ. որ խանդար թուին՝ որպէս և զկնիդ. թէ և հեզինակին կամաւ խրթնաբանեալ է:

3 Տպ. երեք:

ցողապէս իմանայ զիմացական իմացումն: Արդ միտ դիր դու քեզ, ասէ Նախամարգարէն Մովսէս, հայեա յանձն քո. և Փիլոնիոս խրատէ, թէ քոյով երրորդութեամբդ իմա 'ի մարմին քո, որ է հոգի, միտք և բան: Նոյն օրինակ և Պօղոս գրէ. մեզ մի է Հայր, և մի տէր Յիսուս Քրիստոս, և մի սուրբ Հոգի: Իսկ Յովհաննէս Մկրտիչ միութիւն խոստովանի բնութեանն, զՀայր և զՀոգի ազն դնէ, այսինքն' Բան[1], և Որդւոյ ունել ասէ զՀայր և (Հօր) զՈրդի:

Աթանաս' Երեք ենթակայ ասէ, կամ երեք դէմ: Աստուածաբանն Գրիգոր' Երեք անձն կամ Երեք երեսս. կամ որ 'ի քեզ սիրելի է' զայն ասա: Ինքն Աստուած. Որ էնն ասէ. որ է ոչ սկսեալ և ոչ դադարի: Գրիգոր Աստուածաբանն և Բարսեղ և Գրիգոր Նիւսացին. Անծին և ծնեալ, և ելումն. որում հետևի ամենայն ուղղափառ եկեղեցի: Յովհան Ոսկեբերան, Արմատ, բոյս, և բողբոջ: Պօղոս' զՀայր էութիւն ասէ, և զՈրդին նկարագիր, զՀայր լոյս, և զՈրդին ճառագայթ: Աթանաս, զՈրդին նկարագիր ասէ էութեանն Աստուծոյ' Հօր[2], և զՀոգի Որդւոյ. ինքն տէր զՀայր հոգի ասէ: Եւ Լուսաւորիչն Գրիգոր' զՈրդին հոգի ասէ. և ամենայն գիրք աստուածաշունչք զՀոգի հոգի ասէն: Պօղոս, զՀայր աներևոյթ ասէ, և զՈրդի պատկեր աներևութին. յայտ է թէ Հոգին պատկեր է Հօր և Որդւոյ. զի մի է էիցն նկարագիր և պատկեր. ըստ այնմ, թէ Արար Աստուած զմարդն 'ի պատկեր իւր, զի էիցն մի պատկեր է. մին սկզբնատիպ միոյ մարդոյն միոյ բնութեան, և երից անձանց միոյ աստուածութեան. և ամենայն հին և նոր կտակարանք վկայեն: Եւ զի Հայր անսկիզբն և անպատճառ է, ինքն իսկ ասէր ցԱբրահամ. Յիմ Ին[3] երդնում քեզ. և ցՄովսէս, Ես եմ իմ էն. որպէս ասել թէ ոչ յումեքէ: Եւ զի Որդի և Հոգի 'ի Հօրէ, Ովսէէ ասէ. Հոգի իմ և բան 'ի միջի քում. և ինքն տէրն ասէ. Հոգին ուր կամի շնչէ, այլ ոչ գիտես ուստի գայ կամ յո երթայ, նոյնպէս և ամենայն ծնեալն 'ի Հոգւոյն: Սաւն

1 Խառն և խրթին: Ա. Օ. ունի ազգն փոխանակ աղինն:

2 ՕՕ. Հայր:

3 ՕՕ. Իմն:

որոյ և սուրբն Եպիփան Կիպրացին ասէ. Հոգի Հայր, և 'ի նմանէ Որդի և Հոգի. զի Հայր անսկզբնութեան է անուն. և երեք են անսկիզբն 'ի ժամանակէ: Հոգի ասելն՝ անմարմնութեան է նշան. և երեքեան անմարմին. Որդի ասելն՝ գոյացութեան և բնութեան է նշան. և զի երեք գոյացութիւն և մի բնութիւն են, Որդի 'ի Հօրէ ասի, Հայր յՈրդւոյ ոչ ասի, զի սա 'ի նմանէ է, և ոչ նա 'ի սմանէ. և Որդի և Հոգի ասի 'ի Հօրէ, ոմն ծննդեամբ, և ոմն ելողութեամբ: Որդի բղխումն ասի, և Հոգի բղխումն: Որդի ել ասի 'ի Հօրէ. ասի և Հոգի ել 'ի Հօրէ. Հայր հոգի ասի, բայց որդի չասի. Հոգի՝ ոչ հայր ասի և ոչ որդի: Որդի 'ի Հօրէ, և Հոգի 'ի Հօրէ և յՈրդւոյ. Հայր արմատ, Որդին բոյս, Հոգին 'ի յարմատոյն և 'ի բուսէն բողբոջ: Հոգին շունչ, Որդին բերան, Հայր գոյ. Հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նորա: Եւ թէ Առաքումն քո դրախտ նռնենեաց. և թէ Փչեաց յերեսս նոցա և ասէ. Առէք զՀոգին սուրբ: Հայր անձն, Որդին գոյացութիւն, Հոգին բազուկ, և 'ի բազկէն մատն. Եւ մատամբն Աստուծոյ հանեմ զդեւս:

Որդի 'ի Հօրէ և Հոգի 'ի նոցունց, ասէ սուրբն Եպիփան: Որդի 'ի Հօրէ ելանէ, և Հոգի 'ի յՈրդւոյ և 'ի Հօրէ ել. Որդի 'ի Հօրէ առնու. նմանապէս և Հոգի յՈրդւոյ առնու: Ասէ ինքն տէրն. Յիմէ անտի առնու և ուսուցէ ձեզ. և Որդի 'ի Հոգւոյն առնու, ըստ այնմ, թէ Որ 'ի նմայն ծնեալ է՝ 'ի Հոգւոյն սրբոյ է: Երեք արեգակն. լոյս է ամենայնիւ, միօրինակ անճառ, անհաս և անձև, անորակ, անքանակ, անսահման: Բայց մին որ զմեր բնութիւնս էառ՝ Բանն՝ մերովս երևի, և նովաւ ճանաչի Հայր և Հոգի. Որդի ծնեալ ասի, որ թարգմանի յումեքէ ունել. և՝ ել ասի, որ թարգմանի ոչ զումեք ունել. զի ոչ ունի զանձն Հօր, և ոչ զանձն Հոգւոյ, այլ զիւր որդիականն. Հոգի ել ասի 'ի Հօրէ և յՈրդւոյ, զի ոչ ունի զանձն Հօր և զանձն Որդւոյ, այլ զիւր հոգիական անձն: Այս երեք անուն հաւասար՝ նշան երից անձանցն, ոչ մի միոյ վերոյ, և ոչ մի՝ միոյ ներքոյ, այլ հաւասար միմեանց ամենայնիւ. ոչ

բնութեան նշան երիցն [1], մի լիցի ումեք իմանալ այնպէս, այլ նշան երից անձանց և մի բնութեան. ոմն Հայր՝ զի ոչ յայլմէ հօրէ, և ոմն Որդի՝ զի 'ի Հօրէ, և ոմն Հոգի՝ զի 'ի Հօրէ և յՈրդւոյ:

Հայր անծին ասի, զի ոչ յումեքէ է. և Որդի ծընեալ, զի 'ի Հօրէ. Հոգի ոչ ասի Որդի կամ ծնեալ, զի մի երկու եղբարք թուեսցին, և ոչ երկուորի [2] ընդ Որդւոյ, զի մի դուստր կարծիցի, և ոչ Որդւոյ միայն, զի մի թոռն համարիցի: Դու ընդէ՞ր ծանրանաս ով իմաստուն և Ճշմարիտ հաւատացեալ, երկու պատՃառ իմանալ: Նարսեղ հարցանէր զեղբայր իւր զԳրիգոր. Ո՞ ինչ է սկիզբն սկզբանն. և նա ասէ. Առաջինն պատՃառ երկրորդ պատՃառին: Ով սիրելի, ո՞ւմ այլ ումեք լիցէ պատՃառ Հայր և Որդի, եթէ ոչ Հոգւոյ իւրոյ: Գրիգոր աստուածաբանն զՊղատոնի բանն առնու, որ գրեալ է, Որպէս խառնարանն յեղեալ զեղեալ. զխառնն և զեղեալ ասելն՝ խօսէ: Նայց զառաջինն և զերկրորդ պատՃառ ասելն՝ հաւանի. դու ընդէ՞ր ըմբոստանաս խօստովանողդ զերկու պատՃառն. զի ոչ եթէ անուանքս և կարգս զանազանէ զմի բնութիւնն. այլ և այլ նշանակ է անձանց երիցն 'ի մի բնութիւն. զի սահման և կարգ խօստովանութեան հաւատոյ՝ անխառնակ և անշփոթ պահեսցէ. մի աստուածութիւն, որ զամենայն ըստ կարգի և սահմանաւ յօրինեալ է, զի մի 'ի միտս խօստովանողին խառնակութիւն և շփոթումն անկցի: Քեզ ասեմ որ լողդ ես. զիա՞րդ քո միտքդ 'ի քեզ կայ, և յայլում միտք ծնանի: Եթէ զայս իմանաս ո՛չ ընդէ՞ր քննես վասն Աստուծոյ, և ընդդիմանաս գրոց. եթէ զլոյսդ՝ որ 'ի խելս քո ծագէ, և զհանՃար՝ որ յերի կայ [3] բանիդ, և զզղխումն սրտիդ՝ ոչ կարես տեսանել, և զոլորեալն 'ի ձայնդ, Աստուծոյ հակառակ և գրոց՝ մի ջանար իմանալ ինչ: Դու դարձեալ ասեմ. բանդ քո (եթէ) 'ի մտացդ է առանց հոգւոյդ, անհոգի է քո բանդ, և թէ 'ի հոգւոյդ է առանց մտաց, անմիտ է քո բանդ. ապա թէ 'ի հոգւոյդ և 'ի մտացդ՝ հոգևոր և մտաւոր է քո բանդ, որպէս և է. ապա թէ չնչաւոր

1 Տպ. Ուբնու նշա երիցութեան:   որդէ:
2 Ըստ Տպ. — ՕՕ. մեր. երկու   3 ՕՕ. յերիկան:

իմացիւք է քո բանդ՝ վայրապար է ։ Զ Աստուծոյ բնութեանն միութիւն և զանձին բաժանումն՝ մարմնական օրինակաւ մի՛ տեսաներ, զի մի՛ գայթակղեսցիս ։

Հոգին՝ եթէ 'ի Հօրէ միայն ասիցես ել և բղխումն, անբան է Հոգին, և եթէ յՈրդւոյ միայն ասիցես, օտար սկիզբն է. իսկ թէ 'ի Հօրէ և յՈրդւոյ՝ ճշմարիտ է, որպէս և է ։ Նա զոր օրինակ հայրութիւնն Աստուծոյ ոչ է մարմնական, և ոչ որդիութիւն, նոյնպէս և ոչ ելողութիւն ։ Նաւ է գաւառի[1] սովորութիւն, այս անուն յայս բանէ 'ի դուրս ելն ողջ, 'ի յայս իրացս բաժանեցաւ ողջ, ոչ յիւրմէն 'ի տեղն մնաց և ոչ յայլոց 'ի հետ եբեր, և ոչ յայլոց կտրեաց, և ոչ յայլոց հատաւ. թէպէտ ողջ ասա, թէպէտ յստակ ասա, թէպէտ պարզ ասա ։ Այսպէս Հոգի 'ի Հօրէ և յՈրդւոյ. ոչ ինքն պակասէ ինչ, և ոչ 'ի նոցանէ հատած ։ Ի կատարեալ Աստուած Հայր, ըի կատարեալ Աստուած Որդի, ըի կատարեալ Աստուած Հոգի սուրբ. մի աստուածութիւն կատարեալ, յերիս անձինս, հաւասար ամենայն ամենայնիւ ։ Այս է խոստովանութիւն ուղղափառ հաւատոյ ։ Սուրբն Դիոնեսիոս զելողական անունն 'ի վերայ Երրորդութեան հաւասար դնէ, Հօր և Որդւոյ և Հոգւոյ, այսպէս ասելով. Ելողական անունն իմաստացուցիչ. և որ յայս ոճիս է. և դարձեալ Իմաստացչութիւն, զօրացչութիւն, կենդանացչութիւն, և որ այլ ըստ այսմ ։

Դարձեալ աղաչեմ զքեզ, մի կարծեր զԱստուծոյ անունն ըստ բնութեան, այլ ըստ խնամոցն որ առ մեզ. ապա թէ ոչ՝ լոյս ասի Աստուած և կեանք. զի՞նչ կամիս ասել. այսպիսի՞ լոյս և կեանք՝ որպէս և մեք տեսանեմք և կեամք. կամ զքո հոգւոյդ անունն և զէութիւնն կարե՞ս գիտել. այս խոստումն հանդերձելոցն է, յորժամ յայտնի այն՝ զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ, և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց ։ Աստ մի խնդրեր աւելի՝ զի մի յամենէն անկանիցիս ։

1 ՕՕ. ղաւառի ։ — Տպ. գաւառի սովորութեանն ասէն ։

# ԾԱ.

## ՎԱՍՆ ՎԱԽՃԱՆԻ ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՎԱՆԱԿԱՆԻՆ

Աստուածահաճոյ և մեծ վարդապետն Վանական հասեալ 'ի բարիոք ծերութիւն, ալեօրեալ և լի աւուրբք, ըստ օրինակի նահապետին Աբրահամու՝ առ Տէր փոխեցաւ, զընթացսն կատարեալ և զհաւատս պահեալ ուղղափառ խոստովանութեամբ՝ որ 'ի սուրբ Երրորդութիւնն և 'ի տնօրէնութիւնն Քրիստոսի. 'ի տղայական տիոցն աստուածագործ ծառայութեամբ կացեալ. բազում քրտունս և աշխատութիւնս ցուցեալ 'ի բան վարդապետական, և բազում որդիս 'ի փառս ածեալ, և ազգի ազգի ճգնութիւնս կրեալ և սպանեալ զանդամս երկրաւորս, ըստ խրատու առաքելոյն, և ըզմարմինն 'ի խաչ հանեալ կարեօք և ցանկութեամբք հանդերձ: Օրինակ էր սուրբն Աստուծոյ՝ սրաթռիչ թռչնոյն մեղուի, որ թռչելով 'ի վերայ բազում և ազգի ազգի ծաղկանց, ժողովէ 'ի նոցանէ զպիտանին և զօգտակարն՝ 'ի պէտս իւրեանց և 'ի կերակուր, և 'ի բժշկութիւն թագաւորաց և ռամկաց. նոյնպէս և սա յանձն իւր հաւաքեալ զամենայն սրբոց զվարս և զառաքինութիւնս, և նոքօք արկանէր զգործ խորսխին՝ 'ի պէտս անձին իւրոյ և յայլոց օգուտ: Քանզի ստացեալ ունէր զարդարութիւնն Աբէլի, և զգեղեցկութիւնն Սեթայ, և զյոյսն Ենովսայ, և զհաւատսն Ենովքայ, զկատարելութիւնն Նոյի, զհաւատն և զգործն Աբրահամու և զհնազանդութիւնն Սահակայ, զաստուածատեսութիւնն Իսրայէլի, զողջախոհութիւնն Յովսէփու, և զհամբերութիւնն Յոբայ, զհեզութիւնն Մովսէսի, զնախանձն Փենեհեզի, զկուսութիւնն Յեսուայ, զանմեղութիւնն յիստակմտութեանն Սամուէլի, և ըզխոնարհութիւն սրտին Դաւթի, և զիմաստութիւնն Սողոմոնի, զհամարձակութիւն Եսայեայ, և զվրէժխնդրութիւնն Եղիայի, և զախտակցութիւնն Երեմիայի. ըստ Դանիէլի և Եզեկիէլի 'ի գերութիւն երթեալ ընդ ժողովրդեանն Աստուծոյ. ըստ Զօրաբաբէլի և Յեսուայ՝ նորոգօղ լեալ տաճարի Աստուծոյ.

ըստ Պտղոմեայ բազում գրեանս հաւաքեալ յազգաց և լեզուաց. Յովհաննու նման յանապատի բնակեալ, և Տեառն հրամանաւ զապաշխարութիւն քարոզեալ, 'ի հին և 'ի նոր կտակարանս վայելեալ. Պետրոսի համ-գոյն զտէրն որդի Աստուծոյ դաւանեալ և գլուխ եկեղեցւոյ լեալ: Ընդ որդւոյն Որոտման զհոգևորն որսացեալ և աստուածաբանեալ. ընդ Պօղոսի յընդհանուր սերմանեալ զկենաց բանն, և գրով հաստատեալ. ընդ վարդապետս եկեղեցւոյ հանդիսացեալ և զգայլսն վանեալ, կիսոց կաթն ջամբեալ, և կատարելոցն զհաստատուն կերակուրն:

Արդ նա որ զայս ամենայն բարիս ստացեալ ունէր յանձին, ինքն առնէր և այլոց ուսուցանէր, առ տէր փոխեցաւ, զբնութեան զպարտսն հատուցեալ: Իսկ եղև վաղճան նորա այսպիսի օրինակաւ 'ի վանսն՝ զոր իւր իսկ էր շինեալ, որ կոչի Խորանաշատ, և վասն յոլով եկեղեցեացն որ 'ի նմա՝ ընկալաւ զանունն, որ կայ հանդէպ Երզնկայնից բերդին և 'ի թիկանց Դարդմանոյ. առնէր նա շինուածս երևելիս. գաւիթ շինելով 'ի կոփածոյ վիմաց, 'ի դուռն մեծ եկեղեցւոյն, զոր իւր իսկ շինեալ էր. և զբան վարդապետութեան ուսուցանէր այնոցիկ՝ որ ժողովեալ էին առ նա յամենայն գաւառաց. յաւուրս աղուհացիցն հիւանդացաւ նա հիւանդութիւն՝ որ և մեռաւ իսկ. և նախ քան զաւանդել սուրբ հոգւոյն 'ի ձեռս Աստուծոյ ըստ գրեցելումն, կոչեցեալ զեղբարսն՝ քաղցր և ախորժ բանիւ մխիթարէր զնոսա, աղաչէր հաստատուն կալ 'ի կարգս և 'ի կրօնս ուղղափառութեան և աստուածպաշտութեան: Իսկ ապա քաղցր հնչմամբ մաքուր հոգին արձակեցաւ 'ի կապանաց մարմնոյն, յարեգ ամսոյ տասն, ըստ նոր եղանակի Ճշմարտութեան[1], և յութևտասն մարտի ըստ Հռոմայեցւոց, երկու օրով յառաջ քան զգարնանամուտ, յաւուր շաբաթու. յորում աւուր յիշատակ էր Կիւրղի Երուսաղեմայ հայրապետին, որ զընթերցուածսն կարգեաց[2], և զԿոչման գիրսն գրեաց. և վկայութիւն

1 Այսինքն ըստ տոմարին Ճըշմարտելոյ 'ի Սարկաւագայ:

2 Վասն պատարագի ընթերցուածոցն առէ: — Միւս գիրքն են Կոչումն ընծայութեան հրաւիրելոցն 'ի մկրտութիւն:

սրբոյն Օրէնդի[1] և վեց եղբարց իւրոց, որք նահատակեցան 'ի Մաքսիմիանոսէ ամբարշտէ. նոցին վարուցն լեալ հետևող, վասն այնորիկ և յիշատակի նոցունց արժանացաւ: Այլ ժողովեցան անթիւ բազմութիւնք 'ի թաղումն նորա, և մեծաւ սգով և տրտմութեամբ ողբային յոյժ, զի զրկեցան 'ի լուսաւոր վարդապետութենէ երանելւոյն և 'ի հոգեշահ բանիցն: Այլ տարեալ թաղեցին զնա 'ի գլուխ վանիցն, յարևելից կուսէ, մօտ 'ի փոքրագոյն եկեղեցին, ուր էին գերեզմանքն աղքատաց. զի ինքն այսպէս հրամայեաց: Անդ էր և եպիսկոպոսն գաւառին տէր Սարգիս բազում վարդապետօք և երիցամբք. չոգաւ և կաթողիկոսն Աղուանից տէր Ներսէս, և եպիսկոպոսն տէր Յովհաննէս, յետ միոյ աւուր յիշատակի նորա, ողբացեալ և լացեալ յոյժ 'ի վերայ գերեզմանի նորա, և մխիթարեալ զեղբարս որ անդ՝ դարձան յիւրաքանչիւր տեղիս: Այլ կալաւ զառաջնորդութիւն վանիցն եղբօրորդի նորա Պօղոս քահանայ, և զվարդապետական ուսումն՝ Գրիգորիս վարդապետ՝ նորին աշակերտ և ազգական: Այլ այս եղև յեօթն հարիւր թուին: Արդ աղօթիւք նոցա տացէ Աստուած խաղաղութիւն աշխարհի և մեզ մասն 'ի յարութեան նորա և 'ի պսակին:

## ԾԲ

### ՎԱՍՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԳԱՌՆԵՑՒՈՅՆ

Այր ոմն առաքինի և զարմանալի վարուք, գործող պատուիրանաց Աստուծոյ և լծաբարձ 'ի մանկութենէ, արժանացեալ քահանայական պատուոյ, կուսակրօն, Յովհաննէս անուն, 'ի գիւղաքաղաքէն Գառնոյ, ուր զարմանալի սարաւոյթն է Տրդատայ[2], 'ի սուրբ ուխտէն Այրիվանից: Սա 'ի մանկագոյն տիոցն արհամարհեաց զամենայն ինչս կենցաղոյս՝ լքեալ զազգս և ընտունս, յանապատ տեղիս բնակէր, սիրէր առանձին լի-

1 Ի նմին աւուր, 18 մարտի, տօնին և սուրբքս ըստ Յայսմաւուրաց:

2 Ի յետնոց Թագաւորաց Տրդատայ կոչեցեալ, և հռչակեալ Խոսրովակերտոյ՝ 'ի Խորենացւոյն. որոյ յարդ երևին մնացուածք կործանեալք:

նել և անզբաղապէս խօսել ընդ Աստուծոյ. տուեալ զինքն ազգի ազգի ճգնութեան, պահոց և աղօթից, գետնատարած անկողնոք և անհանգիստ աշխատութեամբ, շրջելով տեղւոջէ 'ի տեղի, և լուսաւորելով զպատահեալսն: Տուաւ նմա և շնորհք բժշկութեանց, զի միայն ձեռն դնելով բժշկէր զբազում ախտաժէտս: Խնդրէին 'ի նմանէ և գիր՝ պահապան անձանց իւրեանց[1], և նա անյապաղ տայր ամենայն խնդրողաց. և զայս ոչ միայն հաւատացեալքն առնէին, այլ և բազումք յանհաւատից. և նա գրելով զանուն սրբոյ Երրորդութեան և խորհրդական բանս աղօթից՝ տայր նոցա. և նոքա առեալ հաւատով կապէին յանձինս իւրեանց:

Վասն սորա բազումք բազում ինչ պատմէին. բայց առաւել՝ հարազատն մեր և սքանչելին Վարդան վարդապետն, որոյ բանքն արժանի էին ընդ միմեանս. զի մեք մարմնով զնա[2] ոչ տեսաք վասն հեռաւորութեանն: Նա 'ի մխիթարութիւն մեզ պատմեաց ինչ 'ի վարուց նորա մասնաւոր, և ասաց[3], թէ ինքն իսկ Յովհաննէս ասաց մեզ, թէ Զօգայ ես 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ՝ երկրպագել տնօրինական տեղեաց, և յամեցի անդ աւուրս, իջեալ կալեալ 'ի սուրբ Յակոբն. և 'ի գիշերի միում կանխեալ նախ քան զհարկանել ժամուն ազդարարին՝ որ յաղօթսն զարթուցանէր զամենեսեան. և մինչդեռ աղօթէի 'ի սուրբ եկեղեցին՝ վարդապետն որ իշխան էր սուրբ Յակոբայ, կոչեաց զիս և ասէ. Եկ լուր զարմանալի իրս, զոր պատմէ քահանայս իմ մանկագոյն. և իբրև չոգայ առ նա, կոչեաց զերէցն, որ ետես զտեսիլն զարմանալի, և ասէ. Արդ ասա զոր յառաջագոյն պատմեցերն ինձ՝ զի լուիցէ և սա: Եւ երէցն սկսաւ պատմել, թէ Նախ քան զգալդ ձեր յեկեղեցին՝ ես էի յաղօթս 'ի սուրբ վերնատունն. և յանկարծակի նկարեալ պատկերն Գաբրիէլի հրեշտակապետի՝ որ կայ հանդէպ ամենասրբուհւոյ Աստուածածնին, բարբառեցաւ և ասէ. Ուրախ լեր բերկրեալ տէր ընդ քեզ, օրհնեալ ես դու 'ի կանայս, և

1 Միամտութեամբ արդեօք նա գործէր և սա գրէ. որպէս և զյետագայ պատմութիւնքն:

2 Վասն Յովհաննու ասէ: Իսկ Վարդան՝ պատմիչն է:

3 Զայսոսիկ պատմէր Վարդան և Հեթմոյ Թագաւորի. պատմեն և Յայսմաւուրք:

օրհնեալ է պտուղ որովայնի քո։ Սկսան և ամենայն որբոցն նկարեալ պատկերքն զնոյն բարբառել ցմեծ ժամն. և իմ զարմացեալ փառս ետու Աստուծոյ, և քննեալ տոմարական արուեստիւ՝ գտի զի երեսուն էր այն օր արեգ ամսոյ և եօթն ապրիլի և եօթն և տասն նիսան ամսոյ։ Սկսայ այս տեսիլ և ցուցմունք հրաշիցն՝ Հայոց անսուտ տօնին, որ ասեմք զաւետիք սուրբ Կուսին յերեսուն արեգի և յեօթն ապրիլի, և ոչ որպէս հակառակին այլազգիքն, և մանաւանդ Յոյնք, ասելով՝ քսան և հինգ մարտի ամսոյ՝ անխորհուրդ։ Զայս պատմեաց ճշմարտախօս այրն Աստուծոյ 'ի հաստատութիւն ուղղափառ հաւատոյս։

Դարձեալ միւս ևս սմին հանգոյն զոր պատմեաց սուրբ այրն այն Յովհաննէս. Ես էի ասէ 'ի կողմանս Յորդանան գետոյն աղօթելով 'ի տեղւոջ մկրտութեան Տեառն, և սրբոյն Յովհաննու կարապետին. եկին առ իս արք երեք, տաճիկ տոհմաւ, և խնդրէին զկնիք սուրբ մկրտութեան. և ես յապաղէի տալ յայլում աւուր, և կամ թէ յայլոց առցեն՝ զի տեսանէի զնոսա արս խուժադուժս, և համարէի կեղծաւորեալ. և որ աւագն էր 'ի նոցանէ՝ պատմեաց ինձ, և ասէ. Մեք 'ի Զանգխանայ[1] եմք 'ի քաղաքէն Պարսից, եմք մուղրի[2] դենիւ. շինեցաք մեք մինարա մի մեծ և գեղեցիկ, և պատրաստեցաք որ ինչ պէտք էին նուակատեաց, և ելի ես 'ի ծայրն զմպէթին ըստ դենին Տաճկաց՝ տալ զ....... ձայնն. և ահա տեսի ես յարևելից կուսէ զերկինս բացեալ, և զվայրն լի անբաւ լուսով, և թագաւոր մի ահեղ և զարմանալի՝ յաթոռ փառաց նստեալ. և շուրջ զնովաւ բազմութիւնք լուսեղինացն՝ որք օրհնէին զնա անճառելի ձայնիւ. և գային առ նա յերկրպագութիւն ամենայն ազգք քրիստոնէից, իւրաքանչիւր առաջնորդօք ուսմանն, որք զարդարեալ էին երևելի փառօք. և յորժամ երկրպագէին նմա՝ ընդունէր զողջոյնն։ Ի վերջոյ եկն այլ ազգ մի՝ որ կարի առաւել էին փառօք քան զառաջինսն. և առաջնորդն նոցա կարի զարմանալի. և յորժամ եկին և երկիր պագին թագաւորին, նա յա-

1 Զէնճեան. 'ի հարաւային սահմանածայր Ատրպատականի։

2 مقرى, կարդացող կամ ուսուցիչ։

ըեալ յաղթութիւն ընդ առաջ նոցա, և համբուրեաց զնա. և մեծարեաց քան զամենայն ազգսն. և մինչ ես զարմացեալ էի հիացմամբ և ապշեալ, եկն առ իս 'ի վեր այս աւագ որդիս իմ, և ասէ. Ընդէ՞ր յամեցեր, զի քեզ միայն ամենայն ժողովուրդն. հայեցայ և սա առաւել ևս, և ետես զնոյն տեսիլ, և եկաց յիմարեալ: Այս իբրև կարի յամեցաք, նեղեցաւ ամբոխն ընդ յամելն մեր. եկն եւ այս կրսեր որդիս իմ, և մեղադրեր մեզ վասն յամելոյն մեր. և քանզի անցեալ էր տեսիլն 'ի գալ սորա, և պատմեցաք սմա զպատճառս յամելոյն և զիրս տեսլեանն, և իսկոյն կամեցաք 'ի բարձանց անտի քարոզել զՔրիստոս Ճշմարիտ Աստուած, և զմեզ քրիստոնեայս նորա: Սա արգել զմեզ և ասէ, որովհետև այդպէս է՝ իմաստութեամբ գործեսցուք. թէ այժմ մեք քարոզեմք զՔրիստոս, իսկոյն սպանանեն զմեզ ամբոխն Տաճկաց, և դնեն բարուրս, թէ վասն յանցանաց իրիք սպանաք և ոչ գիտէ զմեզ. այլ երթիցուք տացուք նոցա զկերակուրս, զոր պատրաստեցաք, և ապա երթիցուք մեք 'ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ, և անդ լիցուք կատարեալ քրիստոնեայք՝ 'ի ձեռն կնքոյ աւազանին, և մանաւանդ յայնց քրիստոնէից՝ զոր դուք ասէք՝ եթէ խնդութեամբ ընկալաւ զնոսա Թագաւորն: Եւ նշանակեցաւ մեզ 'ի տեսլեանն, եթէ ազգն այն՝ Հայոց էր, որք միաձայն հաւին Թադէոսի և Բարթողիմէոսի և Գրիգորի Լուսաւորչի: Եւ մեր ունկնդիր եղեալ բանից սորա՝ իջաք առ նոսա, ոչ ինչ պատմեալ ումեք, թողաք զամենայն զգոյս մեր զշարժուն և զանշարժուն, և եկաք յԵրուսաղէմ. աղաչեմք զԱստուած պատահիլ մեզ այն ազգին, որ փառօքն էին 'ի տեսլեանն. և եցոյց Աստուած մեզ զքեզ, և զնոյն տեսիլն տեսաք 'ի վերայ քո: Արդ աղաչեմ, զքեզ տուր մեզ զկնիքն Քրիստոսի, և արա զմեզ կատարեալ ծառայս Աստուծոյ քո: Եւ իմ տեսեալ զյօժարութիւնս նոցա, և թէ 'ի տեառնէ է կոչումն՝ մկրտեցի զնոսա 'ի սուրբ գետն Յորդանան, յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, և հաղորդեցի զնոսա 'ի սուրբ պատուական մարմնոյ և արեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. և ողջունեալ զմեզ ելին 'ի քաղաքէն՝ գնալ 'ի մեծն Հռոմ, 'ի տեսութիւն գերեզմանի սուրբ առա-

քելոցն Պետրոսի և Պօղոսի, 'ի փառս Քրիստոսի Աստուծոյ:

Ասէր և զայս նոյն օքանչելին Յովհաննէս, եթէ առք քառասուն Հայ ազգաց չոգան յանապատն Սինա, 'ի լեառն ուր երևեցաւ Աստուած Մովսէսի (և ետ զտախտակսն քարեղէն՝ յոր գրեալ էին տասն պատգամքն, երկիր պագանել Աստուծոյ) և տեսանել զսուրբ տեղիսն. և էր 'ի ստորոտ լերինն վանք մի Հոռոմ ազգաց խստակրօն վարուք, անդ օթեցան. և մինչ կամէին ելանել 'ի լեառն, պատուիրեցին նոցա բնակիչք վանացն և ասեն. զգիշերն մի ագանիք անդ, քանզի ահագին արհաւիրք երևին, այլ և կորուստ բազմաց պատահեալ է: Իսկ նոքա ելին համարձակութեամբ, ոչ ինչ կերակուրս բարձեալ ընդ իւրեանս, և յամեցին անդ աւուրս. և զարմացեալ էին բնակիչք վանացն թէ զինչ եղեն. զի ընդ այլ՝ անց ոչ կայր, և համարէին թէ կորեան յարհաւրաց անտի: Իսկ նոքա յետ կատարելոյ զպաշտօնն իւրեանց, իջին 'ի լեռնէ անտի, փառաւորեալ և շնորհալի երեսօք. և էին քառասուն և երկու. և զարմացեալ բնակիչք վանացն ելին ընդ առաջ նոցա ջահիւք և լապտերօք, և մեծաւ պատուով տարեալ հանգուցին, և զարմանային՝ զի յորժամ ելին 'ի լեառն քառասուն էին, և իբրև իջին՝ քառասուն և երկու. զի գիտէին եթէ այլ ոք ոչ չոգաւ 'ի վեր բայց 'ի նոցունց. և իբրև եղին սեղան առ 'ի կերակուր՝ յարեան արքն այն երկու փառաւորք՝ որք աւելի էին քան զքառասունսն, պաշտել զնոսա 'ի սեղանսն, և ոչ տային թոյլ վանաց արանցն ծառայել, այլ ասէին, մեր սովորութիւն է զեղբարս մեր մեզ պաշտել: Եւ իբրև կերան որ ինչ պատրաստ էր, ողջունեալ զնոսա եղեն աներևոյթ. որք էին Մովսէս և Եղիա. և ահիւ մեծաւ ըմբռնեալ բնակիչք վանացն՝ պատուէին զնոսա իբրև զհրեշտակս. և յուղարկեցին մեծաւ պատուով: Զայս պատմէր սրբասէր այրն Յովհաննէս 'ի դէմս այլոց, վասն անձին խոնարհութեանն. զի մի գիտասցեն՝ թէ և ինքն ընդ նոսա էր:

Յետ այսորիկ շրջեալ նա ընդ բազում գաւառս և ընդ քաղաքս, եհաս 'ի քաղաքն Կողոնիա. և բազումք 'ի Թուրքաց և 'ի Տաճկաց գային առ նա, և մկրտէին

վասն սքանչելի վարուց նորա և բժշկութեանցն զոր առնէր։ Ապա նախանձեցան ընդ նա Պարսիկքն, և իշխան քաղաքին Կողոնիայ ըմբռնեաց զնա և զերեց մի, և կուտեալ փայտ չոր՝ եդեալ զնոսա 'ի միջի վառեաց հրով. և լայր երեքն որ ընդ նմա, և նա քաջալերէր զնա և ասէր. եթէ Մի երկնչիր, կարող է ապրեցուցանել զմեզ Աստուած 'ի հրոյս, որպէս զերիս մանկունս։ Եւ մինչդեռ բորբոքէր բոցն՝ մանուկ իշխանին անկաւ ընդ պարիսպն բերդին, և յարեաւ անվնաս. և 'ի հարցանելն, թէ Որպէս կաս կենդանի, պատասխանի ետ թէ Այրն այն զոր ընկեցէք 'ի հուրն՝ նա եբարձ զիս ձեռօք իւրովք, և ոչ ետ ինձ անկանել յերկիր։ Եւ առժամայն առաքեաց իշխանն, և հրամայեաց հանել զնոսա 'ի հրոյն. և թոյլ ետ գնալ ուր և կամեսցի։ Եւ նորա շրջեալ ընդ բազում գաւառս, գնաց 'ի Հռոմկլայն առ մեծ կաթուղիկոսն Հայոց տէր Կոստանդին, և նա ուրախութեամբ ընկալաւ զնա մեծաւ պատուով, և ոչ ետ թոյլ երթալ այլ ուրեք. և անդ եկաց մինչև փոխեցաւ 'ի Քրիստոս, և թաղեցաւ 'ի նմին[1]. զընթացսն իւր կատարեալ, զհաւատսն պահեալ, եհաս անթառամ պսակին և անվախճան կենացն։ Աղօթք նորա մեզ 'ի սատարութիւն և 'ի թողութիւն մեղաց. և յիշատակ նորա ընդ սուրբս ամենայն 'ի Քրիստոս Յիսուս, 'ի տէր մեր, որում փառք յաւիտեանս. ամէն։

## ԾԳ

### ՎԱՍՆ ՍԱՐԴԱՒԻՆ ՈՐԴՒՈՅ ԲԱԹՈՒԻՆ

Մեծ զօրավարն Բաթու՝ որ 'ի կողմանս հիւսիսոյ առեալ իւր բնակութիւն, առ ափն ծովուն Կասբից, և Աթլ[2] գետոյն մեծի՝ որ ոչ գտանի հանգոյն նմա 'ի վերայ երկրի, քանզի ծովօրէն ընթանայ վասն հարթայատակութեան երկրին 'ի մեծ և 'ի լայնանիստ դաշտին Խփչախաց. զետեղէր նա և բազում և անթուելի զօրքն[3] որ ընդ նմա. քանզի խորանօք բնակէին, և [illegible]

1 Հռոմկլայն։

2 Իթիլ կամ Վոլկա ։

3 OO · [illegible] ։

չուելն՝ զխորանան սայլիւք տանէին, բազում եզինս և ձիս լծեալ 'ի սայլն ։ Սա զօրացաւ յոյժ և մեծացաւ քան զամենեսին, և հնազանդեաց զտիեզերս, և 'ի հարկի կացոյց զաշխարհս ամենայն. այլ և իւր ազգայինքն՝ զնա քան զամենեսին մեծ ունէին. և որ թագաւորն էր 'ի նոցունց՝ զոր ղան կոչէին, հրամանաւ նորա նստէր յաթոռն ։ Զի եղև մեռանել Գիուգ ղանին, և 'ի միմեանս անկեալ ազգատոհմ նորին, թէ ով ոք նստցի յաթոռն, և ամենեքեան զնա արժանացուցանէին նստել, և կամ զով և կամեսցի նա՝ այն լիցի թագաւոր. և կոչեցին զնա 'ի կողմանցն հիւսիսոյ գալ յաշխարհն իւրեանց, և թագաւորել 'ի վերայ ամենից. և չոգաւ նա հաստատեալ զթագաւորութիւնն, և եթող զլուխ զօրացն զորդին իւր՝ որում անուն էր Սարդախ. և ինքն երթեալ ոչ նստաւ յաթոռ թագաւորութեան, այլ զայլ ոմն կարգեաց յազգայնոցն, որում անուն էր Մանգու. և ինքն դարձաւ առ զօրս իւր ։ Իսկ յազգականացն ոմանք տհաճ եղեն ընդ գործն. զի ակն ունէին կամ ինքեան թագաւորել և կամ թագաւորեցուցանել զորդին Գիուգ ղանին, որում անուն էր Գօճա ղան. բայց յերեսս ոչ իշխեցին բերել զիրս անհաճութեանն ։ Իսկ յորժամ դարձաւ նա առ զօրս իւր՝ նոքա սկսան ցուցանել իրս ապստամբութեան առ Մանկու ղանն, և սկսան խռովել. և լուեալ Բաթու՝ հրամայեաց կոտորել զբազումս յազգականացն և 'ի մեծամեծաց, ընդ որս և զմեծ ոմն գլխաւոր՝ որում անուն էր Իլչի-Գաթա[1]. որ հրաման առեալ էր 'ի Գիուգ ղանէն զօրավար լինել զօրուն Թաթար՝ որ յարևելս և յաշխարհս Հայոց, փոխանակ Բաչու-Նուինին. և մինչդեռ 'ի Ճանապարհի էր յաշխարհին Պարսից՝ եհաս նմա համբաւ չար մահու Գիուգ ղանին, և անդէն զետեղ առեալ մնայր, թէ ով առնու զաթոռն թագաւորութեան ։ Զսմանէ ամբաստան եղեն առ Բաթու գլխաւորք զօրուն որ յարևելս. զի ոչ կամէին զնորա իշխելն 'ի վերայ ինքեանց, զի այր մեծամիտ էր. և ասեն թէ և սա ևս յանհնազանդիցն է Մանկու ղանին, և հրամայեաց առ ինքն ածել. զոր ըմբռնեալ տարան

1 Իլչիգադայ, կողմնակալ Պարսից ։

կապանօք, և եսպան չարապէս։ Ապա սկսան երթալ առ նա Թագաւորք և թագաւորազունք և իշխանք և վաճառականք, և ամենայն վշտատեալք որք զրկեալ էին 'ի հայրենեաց. և նա արդար դատաստանաւ տայր զիւրաքանչիւր զաւառսն և զհայրենիս և զիշխանութիւնս՝ ամենայն ումեք երթողացն առ նա, և գիրս նշանաւորս. և ոչ ոք իշխէր ընդդէմ դառնալ հրամանաց նորա։

Սորա էր որդի մի որում անուն էր Սարդախ, զոր վերագոյն յիշեցաք. որ սնաւ քրիստոնեայ դայեկօք, և 'ի չափ հասեալ հաւատաց 'ի Քրիստոս և մկրտեցաւ յԱսորուց՝ որք սնուցին զնա[1]։ Սա բազում դիւրութիւն արար եկեղեցեաց և քրիստոնէից, և կամաւ հօր իւրոյ գրեաց գիր ազատութեան քահանայից և եկեղեցւոյ. և առաքեաց ամենայն կողմանց սպառնալիս և մահ, եթէ ոք հարկ առնու յեկեղեցւոյ կամ 'ի պաշտօնէից նորա, զինչ ազգ և իցեն, այլ և զՏաճկաց մզկիթն և զնորին սպասաւորաց։ Աստուստ այս համարձակութիւն առեալ չոգան առ նա վարդապետք, եպիսկոպոսք և երիցունք. և նա սիրով ընդունէր զամենեսին և կատարէր զխնդրուածս նոցա, և ինքն երկիւղածութեամբ և աստուածապաշտութեամբ կայր հանապազ, եկեղեցի խորանեայ ընդ իւր շրջեցուցանելով և զաստուածային խորհուրդն անպակաս կատարելով։ Ընդ որս չոգաւ առ նա և մեծ իշխանն Խաչենոյ և կողմանցն Արցախոյ՝ Հասան, զոր Ջալալն կոչէին գգուանօք, այր աստուածապաշտ և երկիւղած և պարկեշտ, Հայ ազգաւ. և նա սիրով և մեծարանօք ընկալաւ զնա և զորս ընդ նմայն էին, Գրիգոր իշխանն՝ զոր սովորութեամբ Տղայն կոչէին, և էր ծեր յայնժամ. և զԳրեսում իշխանն՝ պարկեշտ պատանի, և զՄարկոս վարդապետն, և զեպիսկոպոսն Գրիգոր. և տարեալ առ հայրն իւր մեծապատիւ[2], և ետ 'ի նա զհայրենիս իւր զՉարաբերդն[3] և զԱկանա և զԿարկառ, զոր հանեալ էին յառաջագոյն 'ի նմանէ ազգն Թուրքաց և Սչրաց։

1 Այս կարծիք են և նոցին իսկ մահմետական պատմչաց։ Գտանի և գիր Խննովկենտեայ պապի առ Սարդաք գրեալ յամի 1254։

2 Սարդաք առ Բաթու հայր իւր։

3 Այժմս Չլբերդ, որ և Ճառաբերդ, 'ի Խաչէն, ուր և այլ յիշեալքդ։

Առ և գիր ազատութեան կաթուղիկոսին Աղուանից՝ տէր Ներսէսի, և ամենայն գնդից նորա և ստացուածոց, զի ազատ և անհարկ լիցին, և համարձակ շրջեսցի 'ի վիճակս իւրոյ իշխանութեանն, և ամենայն ուրեք, և մի ոք դիմադարձ լիցի առաջեալցն 'ի նմանէ։ Նա և եկն Ջալալն ուրախութեամբ 'ի տուն իւր. բայց զկնի աւուրց նեղելով 'ի հարկապահանջաց և յԱրղունէն, գնաց առ Մանգու ղանն։ Եւ թագաւորեաց Մանկու ղանն յեօթն հարիւր թուին Հայոց։

## ԾԴ

### ՎԱՍՆ ՄԱՐԱԽԻՆ ՈՐ ԵԿԵՐ ԶԱՇԽԱՐՀՍ ԱՄԵՆԱՅՆ

Յեօթն հարիւր և մի թուին Հայոց եկն մարախ սաստիկ այնքան՝ մինչ զի 'ի վերանալն ստուեր գործէր և նուաղէր լոյս արեգական. և եկեալ 'ի կողմանցն Պարսից եկեր զաշխարհս Հայոց, ոչ միայն զբոյս դալարոյ՝ այլ և զհող երկրի, և զաղբս լափէր. և մտանէր 'ի տունս ընդ երդս և ընդ դրունս, թէ պատահէր 'ի բաց. և զահի հարաւ երկիր, և եղև սղութիւն հացի. և հասեալ 'ի ձմերան եղանակ՝ արկ ձիւս յերկիր, և մեռան և նեխեցաւ երկիր 'ի հոտոյն. և 'ի գալ գարնան յեօթնհարիւր և երկու թուին՝ բուսոյց երկիր զձագս մարախոյն յոյժ թանձրութեամբ, մինչ զի ծածկեցաւ հող և քարինք երկրի, և 'ի ժամ երեկոյին կուտէին 'ի վերայ միմեանց բլրաձև, և սկսան ուտել զդալարի և զխոտ և զհող, և խորհեցան մարդիկ թողուլ զբնակութիւնս իւրեանց և երթալ յօտարութիւն, ուր և գտցեն կերակուր. և զի յառաջագոյն կերեալ էր զշրջակայ գաւառսն՝ սկսեալ 'ի Սպանիոյ[1], և Ասիոյ և 'ի Պարսից և 'ի Միջագետաց, վասն այնորիկ տարակուսեալք՝ ոչ գիտէին զինչ գործեսցեն։ Սկսան այնուհետև ապաւինիլ յամենակարող ձեռն և 'ի բազուկն՝ որ յոչէն գոյացոյց զարարածս և ողորմութեամբ իւրով խնամէ զարարածս, որոյ՝ և անհնարինքն հնարաւորք։

1 Ոչ կարծեմ զիբերիականն Սպանիա Եւրոպիոյ ասել, այլ զո՞ր աշխարհ։

են, և արտասուօք և ուխտիւք հայցէին 'ի նմանէ բառնալ զպատուհասն յաշխարհէ։ Իսկ ողորմածն Աստուած խիստ վիրացն եւ սպեղանիս արագ, և որ եհարն նոյն և բժշկեաց. քանզի եկին բազմութիւնք մանր հաւուց պիսակաց, զոր վասն բազմութեանն տարմ անուանեն սովորաբար, և կարգ կալեալ եղերեալ[1] առ հասարակ սպառեաց, և եկեր զամենայն բազմութիւն մարախոյ. այնքան զի և մի ոչ երեւիւր. և անդ էր տեսանել զամենայն բերան 'ի գոհութիւն Աստուծոյ և ամենայն միտք 'ի զարմացման։ Բայց վասն հաւուցս զրոյց սքանչելի է, ասեն թէ 'ի կողմանս Պարսից աշխարհին՝ որ կոչի Կրման[2], է ջուր ինչ, զոր երթեալ առնուն յայն ջրէն 'ի շիշս ապակիս, և բերեն յանյետս[3] դառնալի, և զջուրն յերկիր ոչ դնեն. այլ կապեն 'ի ձողս և ցցեն. և անդ է զաղաղըք հաւուցն զհետ ջրոյն, որ տանին հաւքըն ըստ թուոյ խնդրողին. և այսպէս գան հաւքն, և կորուսանեն զմարախս։ Եւ մեք հաւատամք զամենայն գործ 'ի խնամոցն Աստուծոյ արարեալ, որ ըստ մեղաց աշխարհի թոյլ տայ գալ պատուհասին, և դարձեալ բժշկէ ողորմութեամբ իւրով՝ որպէս և կամի. որպէս և այս պատուհաս մարախին՝ եւ զայս հաւքս դեղ և սպեղանի։

## ԾԵ

### ՎԱՍՆ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒՆ ՈՐ ԵՂԵՒ ՀՐԱՄԱՆԱՒ ՄԱՆԳՈՒ ՂԱՆԻՆ

Արդ յեօթնհարիւր և երեք թուին Հայոց առաքեաց Մանգու ղանն և մեծ զօրավարն Բաթու՝ այր մի ոստիկան, Արղուն անուն, որ 'ի Գիւուգ ղանէն առեալ էր հրաման վերակացութեան հարկացն արքունի 'ի հնազանդեալ աշխարհացն. և միւս ևս այր գլխաւոր 'ի տանէ Բաթուին, որում անուն էր Թուրա Աղա[4], հանդերձ այլօք բազմօք՝ որ ընդ նոսա, աշխարհագիր առնել յամենայն ազգս՝ որ ընդ ձեռամբ նոցա էին հը-

1 Տպ. կարգ կալեալ յեղերացն :
2 Կրման աշխարհ յեզերս Պարսկային ծովուն : Այսպիսի ինչ ասեն և այժմ զմերոյ Հայաստանաշխարհիս զաղբերէ Ս. Յակովբայ որ 'ի Մասիս :
3 ՕՕ. յանէտս :
4 Ա. Թուրաղանայ :

դուստր Մարզպանայ, քոյր Աշխան–պէկին և Գորիգորոյ. մինչև բերան նմա ինչք 'ի տանէ իւրմէ՝ 'ի պէտս ընծայից և պատարագաց, զոր առաքեաց հայր նորա իշխանաց իշխանն Կոստանդին, յայնժամ ծեր գոլով, և որդիք նորա Լևոն և Թորոս՝ զոր եԹող փոխանորդ իւր. զի փոխեալ էր առ Քրիստոս բարեպաշտ Թագուհին նորա Զապէլ անուն, որ Թարգմանի Եղիսաբէթ, այս է Աստուծոյ եօԹներեկ[1]. զի արդարև ըստ անուանն և հանգիստ էր նա կամացն Աստուծոյ, բարեգործ, ողորմած և աղքատասէր, դուստր մեծ Թագաւորին Լևոնի՝ առաջին պսակաւորին։ Իսկ իբրև գիտաց մեծ կաԹուղիկոսն Կոստանդին՝ եԹէ գնաց նա խաղաղուԹեամբ, և դադարեալ է 'ի մեծն Հայք, առաքեաց զմեծ վարդապետն Յակոբ՝[2] զայր բանաւոր և իմաստուն, զոր առաքեալ էին յառաջագոյն վասն սիրոյ և միաբանուԹեան՝ առ Թագաւորն Յունաց Յովհաննէս[3] որ ունէր զկողմանս Ասիոյ, և մեծացեալ էր յաւուրսն, և առ պատրիարքն նոցուն, երԹեալ իմաստախօս բանիւք աստուածային գրոց՝ ընդդիմացան հարցաքննուԹեան ժողովոյն Յունաց, որ յաղագս մի բնուԹիւն ասելոյ 'ի Քրիստոս բամբասէին զմեզ Եւտիքեանս լինել. և նա խօսեալ բանիւք եցոյց գրովք յերկուց միացեալ զՔրիստոս՝ Աստուած և մարդ կատարեալ երկոքումբ, անճառ միաւորուԹեամբ, զաստուածուԹիւն ոչ կորուսեալ և զմարդկուԹիւն ոչ շփոԹեալ 'ի մի բնուԹիւն փառաւորեալ, գործելով աստուածաբար և մարդկապէս։ Այնպէս և որ վասն սուրբ–աստուածին էին բանք, զոր- մեք ասեմք 'ի դէմս Որդւոյ, ըստ Յովհաննու աւետարանչին վկայուԹեան, և որ այլ գայԹակղուԹիւնք կային առ նոսա, սակս դաւանուԹեան մերոյ, զամենայն աստուածիմաստ բանիւք և գրոց վըկայուԹեամբ հաստատեալ՝ շինեաց զմիտս նոցա 'ի սէր և 'ի միաբանուԹիւն ընդ ազգս մեր, և դարձաւ 'ի նոցանէ պատուով։ Իսկ զեպիսկոպոսն տէր Ստեփաննոս[4].

1 Եբրայականէն Թարգմանէ, Հանգիստ։ յորմէ և առ մեզ եօԹներորդ օրն և եօԹնեակն, շաբաԹ (սաբաԹ)։

2 Գուցէ անուանեալն Սանցի 'ի կաԹողիկոսէն։

3 Նախայիշեալն Լասկարիս։

4 Իմա առաքեալ ընդ Յակոբայ։

եկն և Մխիթար վարդապետն, որ լինէր 'ի Սկևռայն, գնացեալ անդ 'ի կողմանց[1] արևելից, և Նարսեղ քահանայ որ դեսպան էր Նաթուլին՝ ընդ նմա իսկ եկեալ էր. և Թորոս քահանայ կուսակրօն, և Կարապետ որ դրան երէց էր արքային, հեղ բարուք և գիտնական. այլ և իշխանք յոլովք: Զորս ընդ իւր առեալ արքային՝ չոգաւ ընդ աշխարհս Աղուանից, և ընդ դուռն Դարբանդայ՝ որ է պահակն Ճորայ, առ Բաթուն և առ Սարթախն, որդի (նորա), որ էր քրիստոնեայ հաւատով. և մեծարեալ 'ի նոցունց բազում պատուասիրութեամբ, ապա առաքեցին առ ղանն Մանգու՝ ընդ երկայնաձիգ Ճանապարհն, յայնկոյս ծովուն Կասբից. և ելեալք 'ի նմանէ 'ի վեց մարերի ամսոյ, և յերեքտասան մայիսի անցեալ ընդ Եյեխ գետն[2] եկին յԱրն[3], որ է մէջ Ճանապարհին՝ ընդ Բաթուն և ընդ Մանգու ղանն. և անցեալ ընդ Երթիժ[4] գետ՝ մտին յաշխարհ Նայիմանին[5]. և եկեալ 'ի Ղարախըտայն[6] և անցեալ 'ի Թաթարիստան[7] 'ի չորս հուի ամսոյ, և յերեքտասան սեպտեմբերի՝ 'ի տօնի նաւակատեաց խաչի, տեսին զՄանգու ղանն երևելի փառօք նստեալ, և մատուցեալ զընծայս՝ մեծարեցաւ անուննն 'ի նմանէ ըստ արժանւոյն. և կացեալ յօրդուն[8] աւուրս յիսուն, և առեալ նմա հրովարտակ նշանաւոր, զի մի ոք իշխեսցէ նեղել զնոսա, և զաշխարհս նորա. և ետ գիր ազատութեան եկեղեցեաց ընդ ամենայն տեղիս: Նա և ել 'ի նմանէ յաւուրն յիսներորդի 'ի քսան և երեք սահմի և 'ի մի նոյեմբերի. և յերեսուն օրն հասին 'ի Պումղուրն[9], և եկեալ 'ի Պերպալեխն և 'ի Պեշպալեխն[10], և յաւաղուտ երկիրն[11],

1 ՕՕ. Ի կողմանս:

2 Եայիգ, Yaïk, Iaïk որ Թափի յունչ արևելից հիւսիսոյ ծովուն Կազբից, և արդ կոչի Ուրալ:

3 Անծանօթ և անստոյգ անուն:

4 Որ խառնի յՕպի և Թափին 'ի հիւսիսային Ովկիանոս:

5 Մեծ տոհմն Թաթարաց, 'ի սահմանս Ալթայի լերանց:

6 ՕՕ. Խորախտայն: Այն է Գարա-Խիդան, աշխարհ ընդարձակ ընդ մէջ Թուրքաստանի, անապատին Քօպեայ և Դիպեթայ. այժմ Փոքր Պուխարա:

7 Որ յելից և հիւսիսոյ Գարա-Խիդայի, ուր էր Գարագորում գահ մեծի ղանին:

8 Այսինքն 'ի բանակին:

9 Թուի 'ի հարաւոյ լերանց Գարագորումայ յանապատին Քօպեայ կամ Կոպեայ:

10 Պերպալեխն անծանօթ. իսկ Պեշպալեխն՝ Պիշպալըք՝ քաղաք էր Ույղուր Թուրքաց և յաճախ կոչէր Իշըլ:

11 Վերջնեալ մեծ անապատն է՝ Կոպի:

տուն իշխանին Բրդին 'ի գիւղն Մարդենիս[1], ուր թողեալ էր զաղխ իւր և զկարասի, և մնայր գալստեան Բարսղի քահանայի՝ զոր յուղարկեալ էր առ Բաթուն վերստին, զի ցուցցէ նմա զգիրսն և զհրաման Մանգու ղանին, զի և նա ըստ նմին օրինակի գրեսցէ հրամանս։ Ապա եկին առ նա վարդապետք իւր, Յակոբ՝ զոր եթող աստէն 'ի պէտս գործոյ եկեղեցւոյ, և Մխիթար՝ զոր դարձոյց 'ի Բաթուէն, մինչև երթեալ էր առ Մանգու ղան. այլ և եպիսկոպոսք և քահանայք և իշխանք քրիստոնէից՝ որք գային առ նա՝ սիրով ընդունէր զամենեսին. զի այր քաղցր էր և իմաստուն և գիտնաւոր գրովք. և տայր պարգևս, և ուրախ արձակէր զամենեսին. տայր պարգևս և հանդերձս քահանայականս 'ի զարդ եկեղեցեաց, զի յոյժ սիրող էր պատարագի և եկեղեցւոյ. և ընդունէր զամենայն ազգաց քրիստոնեայս, և աղաչէր սիրով կալ առ միմեանս, իբրև զեղբարս և զանդամս Քրիստոսի. որպէս պատուիրեաց Տէր, թէ յայսմ ծանիցեն թէ իմ աշակերտք էք՝ եթէ սիրէք զմիմեանս։

Բազում իրս զարմանալիս և անծանօթս պատմէր մեզ զբարբարոս ազգաց՝ զոր տեսեալ էր և լուեալ։ Ասէր, թէ կայ աշխարհ մի անդր քան զԽատայիքն[2]. որ կանայքն են 'ի ձև մարդոյ՝ բանականք, և արքն 'ի կերպարանս շանց, և են անբանք և մեծք և մազեղք. և ոչ ումեք թողուն մտանել յաշխարհս իւրեանց՝ շունքըն. և որսան որս շունք՝ և այնու կերակրին շունք և կանայքն. և 'ի խառնակել շանց ընդ կանանցն՝ արուքն շանց կերպն ծնանին և էգքն կանանց։

Կայ և կղզի մի աւազուտ՝ յորում բուսանի ծառօրէն ոսկր ինչ պատուական, զոր ձկնատամն կոչեն. և 'ի հատանելն՝ այլ բուսանի 'ի տեղին, ըստ նմանութեան եղջերաց։ Կայ և աշխարհ բազում կռապաշտից, որ պաշտեն կուռս կաւեղէն մեծ յոյժ, անուն Շակմոնիա[3], և ասեն զԱստուած երեք հազար քառասուն ամաց. և կայ ևս երեսուն և հինգ դուման ամս, որ է

1 Յարագածոտն գաւառի Արարատայ։

2 Կաթայի կամ Խութայի կոչէին արևմտեան հիւսիսային կամ համօրէն Չինք, 'ի գրչաց միջին դարուց։

3 Վ. 159։

մին դուման տեան հագար և քառասուն ամաց. և ապա հանեն զնա յաստուածութենէն: Այլ միւս ևս ոմն՝ որում անուն էր Մազրին[1], տարարեալ են և նմա պատկերս կաւեղէնս անհնարին մեծութեամբ[2] գեղեցիկ տաճարի. և ազգն են ամենայն հանդերձ կանամբք և մանկտովք քուրմք, և անուանին Տոյինք, գերծանք հերօք և մօրուօք. ունին և փիլոն դեղին ըստ նմանութեան քրիստոնէից, բայց զլանջօքն ունին և ոչ զթիկամբք. և են պարկեշտ 'ի կերակուրս և յամուսնութիւնս. առնուն կին 'ի քսան ամին, և մինչև յերեսուն ամին շաբաթն երկիցս անգամ մերձենան 'ի նոսա, և մինչ 'ի քառասուն՝ յամսեան երեք հետ. և յորժամ անցանէ յիսուն ամն՝ այլ ոչ մօտին 'ի նա:

Բազում և այլ ինչ պատմէր Թադէոսին իմաստասէր 'ի խժական ազգացն, զոր թողաք մեք, զի մի յաւելորդ համարեսցի: Յութ ամին այս եհաս յերկիրս Հայոց յետ ելանելոյ 'ի Մանկու ղանէն. և էր թուին Հայոց եօթն հարիւր և չորս:

## ԾԷ

### ՎԱՍՆ ԿՈՏՈՐԱԾԻՆ ՅԵՐԿՐԻՆ ՀՈՌՈՄՈՑ

Արդ 'ի սկսանել թուին Հայոց եօթն հարիւր և հինգ՝ մեռաւ Բաթու զօրապետն հիւսիսոյ, և որդին նորա Սարգախն 'ի ճանապարհին էր, զի երթայր առ Մանգու ղանն. և ոչ դարձաւ 'ի տուն իւր թաղել ըզհայրն իւր, այլ գնաց զառաջին եդեալ ճանապարհս իւր. ընդ որ յոյժ ուրախացեալ Մանգու ղանն՝ ել ընդ առաջ նորա, և մեծարեաց զնա 'ի պատիւ յոյժ մեծ. և ետ նմա զիշխանութիւն հօրն իւրոյ իշխել ամենայն զօրացն, այլ և ամենայն հնազանդելոց իշխանութեան նորա, և երկրորդ իւր կոչիլ, և տալ հրաման տիրաբար, և յուղարկեաց զնա 'ի տուն իւր: Ընդ նմա էր և բարեպաշտ իշխանն Խաչենոյ Ջալալն, որ երթեալ էր ցուցանել զաղէտս իւր՝ տեառն տիեզերաց, զոր կրեաց նա յԱրղուն ոստիկանէն. որ հազիւ զերծաւ 'ի մա-

1 Վ. 189:

2 Տպ. 'ի Գեղջեցին պաճարի:

հրաման է 'ի սպառելոյ Տաճկաց . և ետ նմա գիր՝ իշխանութեան իւրոյ տիրել անփոփոխաբար և ոչ երկնչել յումեքէ . զի սիրէր զնա Սարգաւան վասն քրիստոնէութեանն, զի և նա քրիստոնեայ էր : Իբրև[1] եհաս յիշխանութիւն իւր Սարգաւան երևելի փառօք, ազգականքն իւր տաճկահաւատ Բարաքայն և Բարքաշայն՝ ետուն նմա մահադեղ և լուծին զնա 'ի կենացս, և մեծ տրտմութիւն եղև ամենայն քրիստոնէիցն, այլ և գըլխովին իսկ Մանգու ղանին, և եղբօր իւրոյ Հօլաւուին, որ տիրէր ամենայն կողմանցն արևելից : Բայց մինչև եղեալ էին այսպիսի իրք, մեծն 'ի զօրավարս՝ զանաճեն Հօլաւու՝ հրաման ետ ամենայն թաթար զօրուն՝ որ յարևելս, որոց գլխաւորն էր Բաչու-նուին, ամենայն ախիւք իւրեանց և ընչիւք՝ թողուլ զերկիրն կալուածոյ բնակութեան իւրեանց՝ զՄուղան և զաշխարհն Աղուանից, Հայոց և Վրաց, և երթալ (յերկիրն) Հոռոմոց . զի ինքն նստցի փոխանակ նոցա 'ի բարի երկիրն . զի յոյժ բազմութեամբ եկեալ էր նա . մինչ զի ասեն թէ ամիս մի հազիւ բովանդակեցաւ զօր նորա անցանել ընդ մեծ գետն Ջահուն : Այլ և ամենք յազգականաց նորա 'ի կողմանց Բաթուի և Սարղախին եկին անցին ընդ դուռն Դարբանդայ յայնկոյս՝ բազում և անթիւ զօրօք, արք մեծամեծք և գլխաւորք իշխանութեամբ . որոց անուանքն էին՝ Բալախա, Տուտհար, Ղուլի, զոր մեք իսկ տեսաք, Թոռունք Չընկըզ ղանին[2], զոր և աստուածորդիս ասէին . որք հարթեցին դիւրացուցին զամենայն անցս ճանապարհին՝ ընդ որ անցանէին, զի սայլիւք իսկ գային, և բազում տառապանս հասուցանէին ամենայն աշխարհաց հարկապահանջութեամբ և յափշտակութեամբ, ուտելով և ըմպելով անյագաբար, և 'ի դըրունս մահու հասուցին զամենայն ազգս : Այլ և միւս ընդ այլ բազումն նոր եղաւ յԱրղունէն՝ մալի և խափչուրի[3] . եղաւ հրաման 'ի Հօլաւուէն պահանջման հարկի, զոր թաղարն[4] ասեն . յամենայն գլխոյ որ մտեալ

1 ՕՕ . էւ :

2 Թոռունք և Թոռնորդիք Ճինչեզայ որդւոյ Ճէնկիզխանի :

3 Տպ . Փոխչուրի : — Թուի անուանահարկ, որպէս և մալն . պատմիչք Թաթարաց քոփչուր կոչէին ըզհարիւրորդ անասնոց, այսինքն զմի 'ի հարիւրոցն առնուլ :

4 ՕՕ . Խաւրղան : Թաղարն հարկ՝ բազում ուրեք նշանակի յարձանս Անւոյ և այլուր, առանձնակ և զույգ՝ որպէս Եղլն-խաղար, Կոչի-խաղար :

էր 'ի գլուխ արքունի՝ պահանջէին հարիւր լիտր ցորեան, յիսուն լիտր գինի, երկու լիտր բրինձ և ծնծատ[1] ե-րեք տապրակ, երկու չուան, մի ապխտակ[2], մինետ, մինալ, Թող զայլ կաշառս. և 'ի քսան անասնոյն մի անասուն և քսան սպիտակ. և որ ոչ գոյր՝ զուստերս և զդստերս առնուին ընդ պահանջմանն. և այսպէս նեղեցաւ և տա-ռապեցաւ երկիրն ամենայն: Իսկ Թաթար զօրքն Թէ-պէտ դժուարեցան Թողուլ զկալուածոյ երկիրն իւ-րեանց, յակամայ Թողին յահէ նորա, զի յոյժ երկըն-չէին 'ի նմանէ՝ որպէս 'ի ղանէն, և գնացին յաշխարհն Հոռոմոց: (Այս սուլտանն Հոռոմոց) ել ընդդէմ նոցա պատերազմաւ, և ոչ կարաց ընդդիմանալ, այլ փախըս-տական անկաւ նա յԱլայիա[3] կղզին. և նոքա 'ի սուր սուսերի մաշեցին զամենայն գաւառս իշխանութեան նորա, մինչև 'ի ծովն Ովկիանու և Պոնտոսի, կոտորե-լով զնոսա, և յափշտակելով. կոտորեցին զԿարնոյ քա-ղաք և զԵրզնկայն և զՍեւաստ, զԿեսարիա և զԿօնն, և որ շուրջ զնոքօք գաւառք. և զաղխս իւրեանց դարձու-ցին յետս, գնալ յիջևանս իւրեանց՝ հրամանաւ Հօ-լաւուին, և ինքեանք ասպատակ շրջեալ ընդ կողմանս կողմանս: Գնաց ընդ նոսա և Թագաւորն Հեթում, որ եկեալ էր 'ի Մանգու ղանէն և 'ի Բաթուէն և Սար-դախէն և 'ի Հօլաւուէն. և էր առ[4] Բաչու-Նուինն, որ բազում զօրօք առաքեաց զնա յերկիր իւր 'ի Կիլի-կիա, 'ի քաղաքն Սիս. և բազում ընծայիւք և զօրօք ապատաւորութիւն կատարէր Բաչու-Նուինի[5] և զօրացն՝ որ ընդ նմա, մինչև զի Թուղթ գոհութեան և գովու-Թեան գրեալ առ Հօլաւուն վասն նորա: Իսկ մեծն Հօլաւու՝ զի այր պատերազմող էր, ժողովեաց զամե-նայն բազմութիւն զօրացն և գնաց յերկիրն Մուլհե-տաց, յԱլամուդ[6], և կալաւ զնա. զի 'ի բազում ա-մաց պաշարեալ էր զնա զօրն արքունի. զի որդիք Ալադը-նին սպանին զհայրն իւրեանց, և ինքեանք եկին առ Հօլաւուն. և նա հրամանեաց քակել զամենայն բերդո-

1 Թուրք հաւկախառն կամ յար-դախառն գարի կամ այլ ընդեղէն:

2 Արծաթի դահեկան ժամա-նակին:

3 Թուրք Ալայա կամ Կորակե-սիոն ըստ հնոյ, հրուանդան և ա-մուր խարակք յեզեր Պամփիւլիոյ:

4 ՕՕ. Էառ:

5 ՕՕ. Բաչունոյ:

6 Վ. 97. 149:

րայն ամսոյ՝ որ կային յՄլահիդն։ Եւ ինքն պատուէր հրամանի ետ ամենայն զօրացն և ամենայն հնազանդելոց ընդ ձեռամբ նոցա՝ գումարել 'ի միասին 'ի վերայ մեծ քաղաքին և իշխանութեանն՝ որ կոչի Բաղդատ, այս է միջոց Պարսից և Ասորւոց, զի դեռ չև ևս էին առեալ զնա. և խալիֆայն որ նստէր 'ի Մըսր՝ էր յազգէն Մահմետի. զի խալիֆայն յետամնաց¹ ասի, որում հնազանդեալ էին ամենայն տաճկահաւատքն և սուլտանքն որ յազգէն Թուրքաց և Քրդաց և Պարսից և Ելիմացւոց, և այլոց ազգաց. և նա (էր) գլխաւոր հրամանատու իշխանութեան նոցա². և նոքա դաշամբք հնազանդէին և պատուէին զնա, որպէս զազգակից և զհամազգի օրէնսդրին իւրեանց, առաջին . . . . . ցուցչին։ Գնացին յայսօղալան³ և այլ մեծամեծ գլխաւորք կողմանցն Խաթունին՝ Գուլն և Խալաղայն և Տուտհարն⁴ և Գատաղանն. զի ամենեքեան պատուէին զՀօլաւուն որպէս զղանն, հնազանդէին նմա և երկընչէին 'ի նմանէ։

## ԾԸ

### ՎԱՍՆ ԱՒԵՐԱԾՈՅՆ ԲԱՂԴԱՏԱՅ

Մեծն 'ի թագաւորս երկրի և տիեզերակալ Մանկու ղանն յեօթնհարիւր և եօթն թուին Հայոց՝ զօր գումարեաց անթիւ և անհամար, և գնաց 'ի հեռաւոր աշխարհն ընդ կողմանս արևելից հարաւոյ, 'ի վերայ ազգին որ կոչի Նանգաս⁵, զի ապստամբք էին 'ի նմանէ, և ոչ տային նմա հարկս՝ իբրև զայլ աշխարհս, զի էին արք պատերազմողք և ամրացեալք աշխարհաւ, և կռապաշտք, և ունէին զծերս իւրեանց և զպառաւունս, զի ժողովէին ցեղքն ամենայն՝ որդիք և թոռունք և թոռնիայք, և զծերացեալ ծնողս իւրեանց մորթէին ընդ բերանն, և հանեալ զմիսն և զոսկերսն եփէին և

1 Իբրև յաջորդ կամ տեղակալ։

2 ՕՕ. Նոքա։

3 Թուի՝ Նուղարն 'ի պաշարումն։

4 Վերոյիշեալքն (218)։

5 Նանքեաս ըստ Թաթարաց, որ է հարաւային Չինաստան, ուր և մեծ թագաւորութիւն էր յայնժամ Սունկ կոչեցեալ։

ուտելին առանց մնացուածի, և զմորթն հանեալ տիկ՝ առնուլին և մէջն լնուլին գինի, և ընդ առնացի անդա_մըն ըմպէին ամենեքեան՝ որ յազգէն էին և ոչ օտա_րացեալք, իբր թէ 'ի նմանէն սերեալք. և նոցա սեփա_կան է զայն ուտել և ըմպել, և զոսկերն գագաթան պատեալ ոսկով՝ նովաւ ըմպէին զբովանդակ տարին։ Զօգաւ 'ի վերայ նոցա 'ի պատերազմի՝ ղանն Մանգու, և կոտորեաց և հնազանդեցոյց զօրեղապէս. և 'ի դառ_նալն 'ի տուն՝ կալաւ զնա ցաւ մահու և մեռաւ. և կա_լաւ զաթոռ նորա եղբայր իւր Բերկէ–բուղայն[1]։ Իսկ մեծն Հուլաւու եղբայր նորուն և գլխաւոր 'ի նմանէն կարգեալ 'ի վերայ զօրուն որ յարևելս, հրաման ետ ամենայն հնազանդելոց իւրոց առ հասարակ՝ գնալ 'ի վերայ մայրաքաղաքին Տաճկաց՝ Պաղտատայ, որ էր նիստ արքայութեան Տաճկաց, և զթագաւորն որ նըս_տէր 'ի նմա՝ ոչ կոչէին սուլտան կամ մելիք, որպէս սո_վոր են զայլսն անուանել, որ 'ի Թուրքաց կամ 'ի Պար_սից և 'ի Արդացն էին բռնացեալք, այլ Խալիֆա ա_նուանէին, այսինքն յետամնաց 'ի Մահմէտէ. 'ի վե_րայ նորա խաղաց մեծն Հուլաւու ամենայն բազմու_թեամբ, ամենայն ազգօք հնազանդելովք, յեղանակս աշնան և ձմերան՝ վասն սաստիկ տօթոյ երկրին։ Եւ նախ քան զերթալն իւր՝ հրաման ետ Բաչու–նուինին զօրացն՝ որ ընդ նմա էին յաշխարհն Հոռոմոց՝ գնալ և անցանել զմեծ գետն Տիգրիս, յորոյ վերայ շինեալ է Պաղտատ քաղաք, զի մի ոք փախիցէ 'ի քաղաքէն նա_ւովք՝ երթեալ մտանել 'ի Կատիսբոն[2] կամ 'ի Պաս_րայ ամրագոյն. և նոցա անյապաղ արարեալ զհրամայ_եալս՝ կապեցին կամուրջս նաւեկայ՝ 'ի վերայ գետոյն մե_ծի, և ընկեցին ցանցս ամուրս հանդերձ երկաթի կե_ռօք[3] և շամփրօք 'ի մէջ գետոյն և յատակն, զի մի ոք լողալով զերծանիցի. և հեռի 'ի քաղաքէն՝ զի մի գի_տասցեն։ Իսկ խալիֆայն Մուսդասար՝[4] որ նստէր 'ի նմա, հպարտացեալ և յանձնապաստան, առաքեաց զօր

1 ՕՕ. Ալղուղայն. զոր նուա_ճեաց միւս եղբայրն Ղուպիլայի ղան։

2 Տիզբոն, Կտեսիփոն կոչե_ցեալ 'ի Յունաց, աթոռ Սասա_նեանց։

3 ՕՕ. կռօք։

4 Խալիֆայն կոչէր Մոստասին կամ Մոստաղէմ որդի Մոստան_սէրայ։

բազում 'ի վերայ այնոցիկ՝ որ պահէին զգետն, 'ի ձեռն առն միոյ գլխաւորի, որում անուն էր Պուզար[1], ոստիկան տան նորա. որ երթեալ յաղթեաց զառաջինսն, և կոտորեաց 'ի Թաթարէն զօրս իբրև երեք հազար. և յերեկոյին հասեալ նստաւ ուտել և ըմպել անհոգութեամբ. և առաքեաց աւետաւորս առ խալիֆայն, թէ հարի զնոսա, սակաւ մնաց, և զնոսա սպառեմ 'ի վաղիւն:

Իսկ զօրն խորամանկ և բազմահնար Թաթարին, զգիշերն ամենայն սպառազինեալք և կազմեալք՝ պատեցին շուրջանակի զբանակն Տաճկաց, ընդ որս էր և Օպքարէ իշխանն՝ որդի Շահնշահի. և ընդ լուսանալ առաւօտուն՝ սուր 'ի գործ եդեալ առ հասարակ կոտորեցին զամենեսեան և զետամբն արարին, և ոչ ոք մնաց 'ի նոցանէ ապրեալ, բայց 'ի սակաւուց: Ի նմին առաւօտու և մեծն Հոլաւու պատեաց զքաղաքն Պաղտատ շուրջանակի, տուեալ ամենայնի գիրկ մի 'ի պարսպէն փլուցանելոյ, և պահել զզգուշութեամբ, զի մի ոք փախիցէ. և զքաղքն Պաօշ և զայլս առաքեաց դեսպանս առ խալիֆայն՝ գալ նմա 'ի հնազանդութիւն և հարկել զանին: Իսկ նա խստութեամբ ետ պատասխանի և անարգանօք, գրեալ զանձն Ջիհանգիր[2], և տէր ծովու և ցամաքի, պարծելով 'ի դրօշն Մահմէտի, զի աստ է անէր. և թէ շարժեմ զնա՝ առ հասարակ կորնչիս դու և տիեզերք, և դու շուն մի ես Թուրք, ասէ, ես զիա՞րդ տաց քեզ հարկս և հնազանդեցայց: Իսկ Հոլաւուն ոչ ըմբոստացաւ վասն անարգանացն և ոչ գրեաց ինչ մեծաբանութիւնս, այլ միայն զայս ասաց. Աստուած գիտէ զինչ առնէ: Եւ հրամայեաց ետ և փլուցին զպարիսպն առ հասարակ. և ասաց դարձեալ շինել և պահել զզգուշութեամբ, և այնպէս արարին. և լի էր քաղաքն զօրօք և ամբոխիւ, և զեօթն օր կացին 'ի վերայ պարսպին, և ոչ ոք նետաձիգ եղև 'ի նոսա, կամ սուր 'ի գործ էարկ, ոչ 'ի քաղաքէն և ոչ 'ի Թաթար զօրաց, և յետ եօթն աւուր սկսան քաղաքացիքն խնդրել զխաղաղութիւն, և ելանէին առ նա սիրով և հնա-

1 Որ է փէշքար پیشکار այսինքն քարտուղար, զի զայս անուն կրէր յայնժամ մեծ հզօր- բալեալ տէրութեան խալիֆայէն:

2 OO. Ջէհանկիր. Ջիհանկիր جهانكير այսինքն աշխարհակալ:

զանգուածեամբ, և հրամայեաց Ջօլաւուն այնպէս առնել. և ելանէին ընդ գրունս քաղաքին անթիւ բազմութեամբ եւ և ելս առնելով զմիմեամբք, թէ ո՞ յառաջ հասցէ առ նա. և նա զեկեալսն բաժանէր զօրացն և հրամայէր հեռացուցանել 'ի քաղաքէն, և կոտորել 'ի ծածուկ, զի մի գիտասցեն այլքն. և կոտորէին զամենեսեան: Եւ յետ չորրորդ աւուրն ել և խալիֆայն երկու որդւովք և ամենայն մեծամեծօք, և բազում ոսկի և արծաթ և ականս պատուականս և մեծագին հանդերձս բարձեալ ընդ իւր, 'ի պէտս պատարագաց Ջօլաւուին և մեծամեծացն. և նա զառաջինն մեծարեաց զնա, մեղադրելով ընդ յամելն և ոչ գալ առ նա վաղվաղակի. ապա եհարց զնա. Զի՞նչ ես դու՝ Աստուած ես թէ մարդ. և նա ասաց. Մարդ և ծառայ Աստուծոյ: Ասէ Ջօլաւուն. Ապա Աստուած ասա՞ց քեզ անարգել զիս, և շուն կոչել և ոչ տալ շանս Աստուծոյ կերակուր և ըմպելի: Արդ 'ի քաղցնուլդ՝ շունս Աստուծոյ կերիցէ զքեզ. և սպան զնա ձեռօք իւրովք [1]. այդ ասէ պատիւ քեզ՝ զի Ես սպանի զքեզ, և ոչ ետու այլ ումեք սպանանել. և զմի որդի խալիֆային հրամայեաց որդւոյ իւրում սպանանել, և զմիւս որդին տալ գետոյն Տիգրիսի սալաւաթ [2], զի ոչ մեղաւ մեզ ասէ, այլ գործակից մեզ եղև 'ի կոտորել զանզգամս. և ասաց. Այս այրս բազում արիւն ետ հեղուլ հպարտութեամբ, երթիցէ տացէ պատասխանի Աստուծոյ, և մեք անպարտ լիցուք. կոտորեաց և զայլ մեծամեծսն:

Եւ ապա հրամայեաց զօրացն՝ որ պահէին զպարիսպն՝ իջանել կոտորել զբնակիչս քաղաքին 'ի մեծաց մինչև 'ի փոքունս. և նոցա զկարգ առեալ ըստ օրինակի ոձոյ արտոյ՝ կոտորեցին անթիւ և անհամար բազմութիւն արանց և կանանց և տղայոց. և զաւուրս քառասուն ոչ դադարեաց սուրն 'ի գործոյ, և վաստակեցան ձեռք իւրեանց, և զայլս 'ի վարձու ունէին, և կոտորէին անխնայ: Բայց կին Ջօլաւուին աւագ խաթունն քրիստոնեայ էր, որ կոչէր Տօխուզ Խաթուն. սա խնդրեաց զքրիստոնեայսն՝ որք էին 'ի Պաղտատ, նեստորական աղան-

1 Ոչ Թուխ տայց. այլով օրինակաւ ետ սպանանել զնա, մինչ ինքն Հալաւու մեկնեալ իւնէր 'ի քաղաքէն:

2 Սալաւաթ صلاوات աղերս, կամ նուէր:

դով և թէ յայլ ազգաց, և եթող զնոսա ընչիւք և ըստացուածովք. զի խնդրեաց յաւնէն իւրմէ՝ ոչ սպանանել զնոսա: Այլ լցան ոսկւով և արծաթով և մեծագին հանդերձիւ. զի էր քաղաքն յոյժ փարթամ, որ ոչ գտանիւր նման նմա 'ի վերայ երկրի. և ինքն Հուլաւու կալաւ իւր բաժին զգանձն խալիֆին, և եբարձ 'ի նմանէ երեքհազար և վեցհարիւր բեռինս ուղտուց. և ձիոյ և ջորւոյ և իշուց ոչ գոյր թիւ. և զայլ տունսն լի գանձիւք՝ կնքեաց մատանեաւ իւրով, և եթող պահապանս, զի ոչ կարաց բառնալ զամենայն, որ անչափ էր բազմութեամբ. զի հինգհարիւր և հնգետասան[1] ամ էր յորմէհետէ շինեցաւ քաղաքն 'ի Ջափրէ իսմայէլականէ, 'ի հարիւր իննսուն և չորս թուին Հայոց, 'ի վերայ Տիգրիս գետոյն, 'ի վեր քան զ[illegible]ատիսբոն, հեռի 'ի Բաբելոնէ, հինգ աւուր ճանապարհաւ. և զամենայն (ժամանակն զոր) կացեալ էր 'ի թագաւորութեան իբրև անյագ տզրուկ կըլեալ զամենայն տիեզերս, և այժմ 'ի բաց փոխեաց յեօթն հարիւր և եօթն թուականիս Հայոց, տալով զվրէժս արեանց զոր եհեղ, և չարեացն զոր գործեաց, յորժամ լցաւ չափ մեղաց իւրոց առաջի ամենագիտին Աստուծոյ, որ հատուցանէ արդար իրաւամբք անաչառ և ստուգութեամբ. և դադարեաց գոռ և . . . . . . թագաւորութիւնն Տաճկաց, որ և տևեաց ամս վեց հարիւր քառասուն և եօթն[2]. և առաւ Բաղդատ յառաջնումն աւուր աղուհացից յերկուշաբաթի օրն, նաւասարդի քսան[3], ըստ շրջագայութեանս: Այլ զայս ամենայն պատմեաց մեզ իշխանն Հասան՝ զոր Պռօշն անուանէին, որդին Վասակայ բարեպաշտի, որդւոյ Հաղբակայ, եղբայր Պապաքին և Մ`կդեմայ, հայր Մ`կդեմայ և Պապաքին և Հասանայ և Վասակայ, որ ականատես և ականջալուր էր իրացս:

1 Եթէ 'ի ՃՂԴ (745) թուին շինեցաւ և յ'ՉԷ (1258) աւերեցաւ՝ 513 կամ 514 ամք լինէին և ոչ 515. բայց 'ի յիշեալ թուականի շինութեանդ (745) և ոչ իսկ գահակալեալ էր Ջափրայ (Ճեաֆար): Տ. Վ. 150:

2 Ի հիճրէթի թուականէն (621) սկսեալ լինին 637 և ոչ 647 ամք: Բայց հեղինակդ հաշուէ յերևելոյն Մահմէտի և ստոյն ամաւ յառաջ քան զփախուստն:

3 Որ է 4 փետրուարի 1258 ամին. թէպէտ և մասն մի քաղաքին աւերեալ և բանադնացութիւնք լինէին, այլ աւուրբք ինչ յետոյ եղև առումն նորին և մուտն թաթարաց:

## ԾԹ

### ՎԱՍՆ ԱՒԵՐԱԾԻՆ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ ՔԱՂԱՔԻՆ

Արդ 'ի նոյն (ամի) աւերելոյն Բաղդատայ՝ մեծն Հուլաւու 'ի գալ գարնան ժամանակին զօր գումարեաց և ետ 'ի ձեռն որդւոյն կրտսերին, որոյ անուն էր Յխասմութ[1], և զմեծ վերակացու տանն. իւրոյ զԽլիգինուինն[2] առաքեաց ընդ նմա, գնալ 'ի կողմանս Եփրատ գետոյն՝ զբոսանաց աղագաւ, յառ յաւար և 'ի հնազանդեցուցանել զկողմանսն զայնոսիկ: Եւ մինչ դեռ անցանէին ընդ քաղաքն Մարտիրոսաց՝ որ կոչի Մուֆարղին, կոչեցին զնոսա 'ի հնազանդութիւն, տալ զօրս և հարկս, և կալ անհօգութեամբ. և սուլտանն որ 'ի նմա էր՝ յազգէն Եղլեանց՝ ոչ առ յանձն. այլ զօր ժողովեալ ել զկնի նոցա և սպան զոմանս 'ի նոցանէ, և եմուտ ինքն 'ի քաղաքն և ամրացաւ յերեսաց Թաթար զօրուն. և նոցա թողեալ զօրս Թաթար 'ի վերայ քաղաքին՝ ինքեանք չոգան մինչ 'ի գետն Եփրատ 'ի կողմանս Միջագետաց՝ և առին յաւար, և դարձան յաւելին 'ի զօրսն՝ որ պահէին զքաղաքն Մարտիրոսաց. և եկեալ առ Հուլաւուն՝ պատմեցին զոր ինչ արարին, և զապստամբութիւն քաղաքին. և նա յղեաց զօր բազում 'ի վերայ քաղաքին. և գլխաւորս կացոյց 'ի վերայ զօրացն՝ զՂաղատա զոմն, որ զօրավար էր յառաջ եկեալ Թաթար զօրուն, և քրիստոնէից՝ զիշխանն Պռօշ, զոր Հասան կոչէին, այր քաջ և անուանի. երթալ պաշարել զքաղաքն յամենայն կողմանց և ոչ տալ թոյլ մտողի և ելողի: Եւ երթեալ նոցա հզօրեղապէս մարտնչէին, եդեալ բաբանս և փիլիկուանս. հատին և զջուրն որ մտանէր 'ի քաղաքն. նոյնպէս և քաղաքացիքն կռուէին ընդ նոսա զօրեղապէս, և զբազում Թաթարս սպանին և զքրիստոնեայս որ ընդ նոսա: Եւ այսպէս զամս երկուս և աւելի կրեալ զպաշարումն, և սաստկացաւ սովն 'ի քաղաքին. և կերան ըզ-

1 Վ. 130:
2 Ի պատմութեան Թաթարաց յիշէ Մոնղայի-Նոյին օգնական Իշմութայ:

սուրբ և զանսուրբ կերակուրս . և ապա սկսան զմար-
դիկ ուտել՝ առ 'ի չգոյէ կերակրոյն, զի զօրաւորքն զտ-
կարքն ուտէին . և յորժամ սպառեցան աղքատքն՝ դար-
ձան 'ի միմեանս . հարք զորդիս ուտէին, և կանայք ըզ-
դստերս, և ոչ գթային 'ի ծնունդս որովայնի իւրեանց .
և ուրացան սիրելիք զսիրելիս և բարեկամք զծանօթս .
և այնպէս պակասեաց կերակուրն՝ զի մին լիտր մարդոյ
միոյն վաճառէին եօթանասուն դահեկան . և ամենևին
սպառեցաւ մարգ և կերակուր ։ Ոչ միայն սոցա, այլ և
բազմաց այլոց գաւառաց եհաս վտանգ . զի աշխարհ՝ որ
հնազանդեալ էին Թաթարին՝ նեղեցան 'ի հարկապա-
հանջութեանց և 'ի բռնակալութեանց, որք տանէին
զկերակուր և զըմպելի պաշարողաց քաղաքին, և յօ-
լովք մեռանէին 'ի սաստիկ ցրտոյ ձեանն՝ որ ունէր զե-
րինս յեղանակս ձմեռնայինս ։ Այլ և ամիրապոյն եր-
կիրն Սամոյ՝ եկին 'ի հնազանդութիւն ծառայութեան
Թաթարին, ապաւինեալք յիշխանն Սադուն, յորդի
Շէրպարըքին, 'ի Թոռն Սադունին ., քրիստոնեայ
հաւատով, և (եկն) մեծ պատուով առ Հոլաւուն . զի
այր անձնեայ և քաջամարտիկ էր, մինչ զի ընդ առա-
ջին ախոյանիցն կարգեալ էր զնա Հոլաւուն ։ Սմա ետ
զգաւառն Սամոյ, զոր յետոյ առեցին երդմամբն, և կո-
տորեցին զբազումս 'ի նոցանէ ։ Իսկ յորժամ Թափուր
եղև քաղաքն 'ի մարդկանէ, վասն սաստիկ սովուն, ա-
ռին զքաղաքն, և կոտորեցին զորս գտին ներգևեալս 'ի
սաստիկ սովոյն . այլ և զսուլտանն և զեղբայրն ածին
կենդանի առ Հոլաւուն, և նա հրամայեաց սպանանել
զնոսա սրով . և իբրև չարժանիս կենաց և զարեանպարտս
ամենայն բազմութեան՝ որք կոտորեցան 'ի պատճառս
նորա . բայց զեկեղեցիս ոչ քակեցին, և ոչ զանթիւ
նշխարս սրբոց՝ զոր ժողովեաց սուրբն Մարութա յա-
մենայն ազգաց և եդ անդ . զի քրիստոնեայքն որ 'ի զօ-
րուն՝ ծանուցին Թաթարին զպատիւ նոցա . այլ և ին-
քեանք պատմէին բազում տեսիլս զսրբոցն, 'ի վերայ
պարսպին լոյս սաստիկ ծագեալ և արս լուսատեսիլս
երևեալ ։ Այս առաւ քաղաքն յեօթնհարիւր և ինն
թուին Հայոց, 'ի մեծ պահս քառասնորդացն աղու-
հացիցն ։

# Կ

## ՎԱՍՆ ՈՐ ԻՆՉ ԳՈՐԾԵՑԱՒ Ի ԿՈՂՄԱՆՍ ՄԻՋԱԳԵՏԱՑ ԵՒ Ի ԽՈՐԻՆ ԱՍՈՐԻՈՑ

Դարձեալ մեծն Հօլաւու ժողովեաց զբազմութիւն զօրաց իւրոց և չոգաւ յԱսորիս, 'ի Հալապ և 'ի Դմշկ, սփռեալ 'ի կողմանս՝ 'ի Խառան, յՍուհա, յԱմիթ, և յայլ գաւառսն ասպատակեալ. և ինքն նստաւ 'ի վերայ Հալպայ, պատերազմել ընդ նմա: Եւ սուլտանն որ 'ի նմա՝ էր Յուսուփ յազգէ Սալահատնին՝ որ աւերեաց զԵրուսաղէմ, և դիմեցաւ նմա, և ոչ եկն 'ի հնազանդութիւն, այլ փակեաց զդրունս քաղաքին ընդդէմ նորա և կռուէր զօրութեամբ. և մեծն Հօլաւու պաշարեաց զքաղաքն յամենայն կողմանց. և յետ յոլով աւուրց կալաւ զնա բռնութեամբ, և սկսան կոտորել զքաղաքն. ապա սուլտանն և որք ընդ նմա մեծամեծք՝ որ ամրացեալք էին 'ի բերդն, սկսան աղաչել զնա և գալ 'ի հնազանդութիւն նմա: Եւ յանձն առ և հրամայեաց դադարել 'ի կոտորելոյ զքաղաքն. և հնազանդեալ և հարկս եդեալ գնացին 'ի Դմիշկ. և նոքա բազում պատարագօք և մեծամեծ ծախիւք ելին ընդ առաջ նորա, և նա սիրով ընկալաւ զնոսա, յիւր անունն գրաւեալ կալաւ զՀամն և զՀամս, և այլ բազում քաղաքս: Առաքեաց զօրս 'ի վերայ ամուր քաղաքին Մէրտինայ, որք հազիւ կարացին առնուլ զնա յետ բազում աւուրց. կոտորեցին և զբազում յելուզակս մնասիչս ամենայն ազգաց և Ճանապարհորդաց, զորս Պաճարիս[1] անուանէին՝ Քուրք ազգաւ, ամրացեալք 'ի թաւ մայրիս և 'ի դժուարին վայրս ամրոցացն, անթիւ բազմութիւնք, ոչ ումեք հնազանդ, ժողովածու յամենայն կողմանց, արք սրիկայք և ապականիչք, և մանաւանդ քրիստոնէից. զբազումս կոտորեցին 'ի նոցունց և զևս բազմագոյնս գերեցին. և թողեալ 'ի զօրացն

1 Թուին նախահարք այժմեան խաճար տոհմի Թագաւորաց Պարսից, և առ ժամանակօք հեղինակիս ծանօթագոյն բնակութեան վայր խաճարաց էր 'ի Մազանդարան, ուր և աւազակացն ամուր ապաստանարանք:

իբրև քսան հազար արս կողմնապահս, և ինքն դարձաւ ձմերել 'ի դաշտն Հեմիանայ։

Իսկ սուլտանն Մորայ ժողովեալ զօրս բազում՝ եկն 'ի վերայ կողմնապահաց Թաթար զօրուն. որոց գլխաւորն էր այր մի Պիլթբուղա անուն, հաւատով քրիստոնեայ, Նայիման ազգաւ, մեծաւ պատուով. որ ել 'ի պատերազմ ընդդէմ սուլտանին, և քաջապէս մարտուցեալ կոտորեցաւ ամենայն զօրօքն որ ընդ իւր. զի յոյժ բազումք էին Եգիպտացիքն. և կռուեցան 'ի Թաթարական լերինն. կային ընդ Պիլթբուղային 'ի պատերազմի անդ յոլովք 'ի Հայոց և Վրաց, որք ընդ նմա կոտորեցան. և եղև այս յեօթն հարիւր և ինն թուին Հայոց։

## ԿԱ.

### ՎԱՍՆ ՄԱՀՈՒԱՆ ԲԱՐԵՊԱՇՏ ԻՇԽԱՆԻՆ ՋԱԼԱԼԻՆ

Իսկ թագաւորն Վրաց Դաւիթ՝ որդի Լաշային որ կայր 'ի հնազանդութեան Թաթարին, նեղեցաւ և ձանձրացաւ 'ի բազում հարկապահանջութեանցն որ նեղէին զնա, և զամենայն իշխանս և զամենայն աշխարհս, անհնարին ծանրութիւնս, զոր ոչ կարէին բառնալ. եթող նա զքաղաքն իւր զՏփխիս, և զաթոռն և զամենայն զոր ինչ ունէր, և փախեաւ 'ի խորին Ափխազս, և յամուրսն Սուանեթոյ. ընդ նմա և այլ մեծամեծք, իշխանք գաւառաց, նեղեալք և տառապեալք, ծախեալք և զրաւ եդեալք զքաղաքս և զգաւառս, և ոչ կարացեալք յագեցուցանել զանյագս՝ ըստ նմանութեան չար տզրկաց։ Եւ այնպէս տագնապաւ փախեաւ, զի զկին իւր զԳոնցա թագուհի և զնորածնունդ որդին իւր զԴեմետր՝ ոչ կարաց ընդ իւր տանել, բայց միայն զԳէորգէ զանդրանիկն։ Իսկ մեծ ոստիկանն Արղուն՝ զօր բազում գումարեալ և գնաց 'ի վերայ թագաւորին Դաւթի, զի ըմբռնեսցէ զնա. և իբրև ոչ կարաց ժամանել նմա՝ զբազում գաւառս Վրաց կոտորեաց և գերեաց անխնայապէս. այլ և զգերեզմանատունս թագաւորաց Վրաց՝ զԳելաթ[1] սաստկապէս

1 Վ. 120։

կոտորեաց և քանդեաց, և զկաթուղիկոսարանն զՄծղոր՝[1] նոյնպէս կոտորեաց անողորմաբար։ Բայց յանկարծակի եկին գունդ մի հեծելոց 'ի Վրաց և ցուցին մեծ քաջութիւնս, զի զբազումս կոտորեցին 'ի զօրաց Արղունին՝ իբրև հուր ընդ եղէգն ընթացեալ, և ինքեանք գնացին ողջանդամ. և էին արք իբրև չորեք հարիւր. և երկուցեալ Արղունին՝ ոչ իշխէր այնպէս համարձակ խուզել զվայրսն[2]։

Ապա դարձաւ առ Հօլաւուն, և նիւթեաց 'ի սրտի իւրում չարութիւն, և 'ի կալանս արար զԹագուհին Վրաց՝ զԳոնցայն, և զդուստր նորա՝ զԽոշաքն, և զիշխանն մեծ զՇահնշահ, և զՋալալ-Հասան՝ զտէրն Խաչենոյ, և զայլ բազումս՝ պատճառանօք պարտուց և հարկի. յորոց բազում գանձս առեալ՝ հազիւ զերծան 'ի մահուանէ։ Իսկ զբարեպաշտ և զառաքինի իշխանն Ջալալ նեղէր անհնարին կտտանօք, բազում հարկս պահանջելով 'ի նմանէ առաւել քան զկարն. և եդեալ փայտ 'ի պարանոց նորա և երկաթս յոտսն. և զայս առնէր նմա վասն առաւել քրիստոնէութեանն, զի թշնամիք էին նմա ամենայն տաճկահաւատք, և յորդորէին զԱրղունն 'ի սպանութիւն նորա, զի ասէին սա առաւել թշնամի է դենիս մերոյ և օրինաց. զի և Արղունն ևս տաճկակրօնք էր. և առեալ տարաւ զնա 'ի Ղազուինն։ Իսկ նա գոհութեամբ տանէր ամենայնի, զի յոյժ տեղեակ էր Աստուածային գրոց, պահօղ և աղօթական, և պարկեշտ 'ի կերակուր և յըմպելիս. և ցանկայր մարտիրոսական մահուան։ Իսկ դուստր Ջալալին Ռուզուքան՝ որ կին լեալ էր Բուրա-Նուինին, որդւոյ Չարմաղունին, առաջին գլխաւորին Թաթարին, գնաց առ Թօխուզ[3] խաթունն՝ կին Հօլաւունին, զի թափեսցէ զհայր իւր 'ի ձեռաց Արղունին. և գիտացեալ անօրէն ոստիկանին՝ առաքեաց վաղվաղակի դահիճս՝ և 'ի գիշերի ետ սպանանել զարդար և զսուրբ այրն Աստուծոյ. և երթեալ անօրէն դահճացն՝ անդամ անդամ յօշեցին զնա, ըստ նմանութեան սուրբ վըկային Յակովկայ. (Նորին չարչարանացն հաղորդեալ)

1 Ի հիւսիսոյ Ախալցխէ քաղաքի։

2 ՕՕ. պէրսյ։

3 Տողուզ խաթուն կոչէ Վարդան. 160։

և նորին պսակացն արժանացեալ (լիցի) 'ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ։

Այսպէս կատարեցաւ այրն անարատ և աստուածապաշտ, զընթացսն կատարեալ և զհաւատսն պահեալ յեօթն հարիւր և տասն՛ թուին Հայոց. և առաքեաց որդի նորա Աթապէկ արս հաւատարիմս, և ետ գողանալ զնշխարս հօրն իւրոյ, զի ընկեցեալ կայր 'ի Ջրհոր մի ցամաք. զի Պարսիկն որ 'ի տան իւրում ունէր զնա 'ի կապանս՝ տեսեալ նշանս աստուածայինս 'ի վերայ նորա՝ խնամ արկեալ ընկէց զնշխարսն 'ի Ջրհորն, զի յետ աւուրց թաղեսցէ զնա պատուով. նա եցոյց խնդրողաց զմարմինն և պատմեաց զսքանչելի երևումն. և նոցա ժողովեալ խնդութեամբ և բարձեալ տարան զնա 'ի տուն իւր, և 'ի վանքն Գանձասար թաղեցին զնա 'ի գերեզմանս հարց իւրոց. այլ և բերողք նշխարացն տեսին զնոյն տեսիլ լուսոյն 'ի վերայ նշխարացն։ Եւ կալաւ զիշխանութիւն նորա Աթապէկն՝ որդի նորա հրամանաւ Հօլաւուին և Արղունին, այր սրբասնունդ և պարկեշտ և խոնարհամիտ և աղօթական, որպէս զմի 'ի սուրբ միայնակեցացն. զի ծնօղք նորա այնպէս սնուցին զնա։

Սպան Հօլաւուն զիշխանն Զաքարէ՝ զորդին Հասանշահի, բարուրս եդեալ 'ի վերայ նորա։ Յայնմ ամի փոխեցաւ առ Քրիստոս մարդասէր և հեզ կաթուղիկոսն Աղուանից տէր Ներսէս, կալեալ զկաթողիկոսութիւնն ամս քսան և եօթն, և յաջորդեաց զաթոռն տէր Ստեփաննոս մանուկ տիովք։

## ԿԲ

### ՎԱՍՆ ՄԱՀՈՒԱՆ ԻՇԽԱՆԻՆ ՀԱՍԱՆՇԱՀԻ ԵՒ ՈՐԴՒՈՑ ՆՈՐԱ ԶԱՔԱՐԷԻ

Մեծ իշխանն Հասանշահ որդի Զաքարէ, ետ զիշխանութիւնն յաւագ որդին իւր Զաքարէ, զի որդիք բազում էին նորա, Զաքարէ, Աւագ Սարգիս, Արտաշիր և Իւանէ, և ինքն խնամէր զտունն իւր. և Զաքարէ ընդ Թաթար զօրուն երթայր 'ի գործ պատերազմի, և արիութիւն և քաջութիւն ցուցեալ մեծարեալ լինէր 'ի մե-

ծէն Հօլաւուէն, և յԱրղուն ոստիկանէն։ Դէպ եղև զի Արղունն զօրօք բազմօք էր 'ի կողմանս Վրաց, ընդ նմա էր և Զաքարէ, և գաղտ յԱրղունէն և յայլ զօրացն գնաց Զաքարէ 'ի տեսութիւն կնոջ իւրոյ՝ որ էր առ հօր իւրում Սարգսի իշխանին Ուխտեաց[1], որ ապստամբ էր ընդ թագաւորին Վրաց Դաւթի. և իմացեալ Արղունին ազդ առնէ Հօլաւուին, և նա առ ինքն հրամայեաց տանել կապանօք. և այլ բարուրս կուտեաց 'ի վերայ նորա. և հրամայեաց սպանանել զնա և անդամ անդամ յօշել, և արկանել շանց. և յորժամ լուաւ զգոյժն հայր նորա Շահնշահ, 'ի գիւղն Օձուն, 'ի նեղասրտութիւն անկեալ 'ի տրտմութենէն մեռաւ. և տարեալ թաղեցին զնա 'ի Քոբայրն, զոր առ կինն նորա 'ի Հայոց։

## ԿԳ

### ՎԱՍՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՄԵԾԻ ՈՐ ԵՂԵՒ ԸՆԴ ՄԻՄԵԱՆՍ ՀՕԼԱՒՈՒՆԻ ԵՒ ԲԵՐՔԱՅԻՆ

Աշխարհակալք և մեծ զօրավարքն որ կային յարևելս և 'ի հիւսիս, ազգականք էին ղանին Մանկուի որ մեռաւ յետ պատերազմին Լենգնանայ[2]. և երկու եղբարք նորա հակառակէին ընդ միմեանս վասն թագաւորութեանն, Արիքբուղայն և Ղուպիլայն. և յաղթեաց Ղուպիլայն կոտորելով և սպառելով զզօրսն Արիքբուղային և փախստական հանելով զնա յաշխարհէն և ինքն թագաւորելով. և Հօլաւուն եղբայր էր նոցունց և Մանգու ղանին, օգնէր նա Ղուպիլային. և Բերքայն՝ որ 'ի կողմանս հիւսիսոյ՝ օգնէր Արիքբուղային. և միւս ևս ազգական նոցին՝ այլ զօրագլուխ՝ որդի Չաղադա ղանին[3] անդրանիկ որդւոյն Չանկզղանին, Ալղու անուն, նա պատերազմէր ընդ Բերքային, թէ նոցուն խրատու կոտորեաց Մանկու ղանն զազգս նորա. և առաքեաց առ Հօլաւուն օգնել նմա յայսմ կողմանէ ընդ դուռն Դարբանդայ։ Իսկ մեծն Հօլաւու զմե-

1 Այժմ Օլթի գաւառ։
2 Տես յէջ 220։
3 ՕՕ. Չաղանղատայն։

ծամեծս և զփառաւորագոյն իշխանսն հանգոյն ինքեան՝ որ կային ընդ նմա 'ի կողմանցն Բաթուին և Բերքային, զՂուլն, զԲալախայն, զՏուտհարն, զՄեղանն՝ զորդի Ղուլին, զՂատաղանն, և զայլս բազումս, հանդերձ զօրօք իւրեանց կոտորեաց յանխնայ անողորմաբար, զծերս և զտղայս, և ապառեաց զնոսա կոտորմամբ սրոյ, զի առ նմա կային, և խառն էին ընդ միմեանս իշխանութեամբ. և սակաւք 'ի նոցանէ մազապուրծ զերծեալք՝ առանց կանանց և մանկանց և ընչից, գնային փախստական առ Բերքայն և առ այլ ազգականսն. և լուեալ զայն Բերքային ժողովեաց զօրս անթիւս և անհամարս, առնուլ զվրէժս արեան ազգականացն 'ի Հօլաւուէն:

Իսկ մեծն Հօլաւու նոյնպէս ժողովեաց զզօրս իւր բազմաձեռն, և արար երիս առաջս. զմինն ետ 'ի ձեռս որդւոյն՝ Աբաղա ղանին[1], գումարեաց ընդ նմա և զոստիկանն Արղուն, և առաքեաց 'ի Խորասան օգնել Ալղուին յայնմ կողմանէ. և զմի բաժինն գումարեաց 'ի դուռն Ալանաց, և զայլ զօրս ընդ իւր առեալ գնաց եմուտ 'ի ներքս քան զդուռն Դարբանդայ. զի այս երկու մուտք են՝ յԱլանս և 'ի Դարբանդ. և աւերելով զմասն բաժնի Բերքային՝ եհաս մինչ 'ի գետն մեծ և անհուն՝ յասպնջական յոլովից գետոց՝ զոր կոչեն Իդիլ, որ ծովօրէն ընթանայ, և մտանէ 'ի ծովն Կասբից: Եւ ել ընդդէմ նորա Բերքայն հզօր ձեռամբ, և եղև խառնուրդ պատերազմին առ մեծի գետոյն, և բազումք անկան յերկոցունց (կողմանց), և առաւել 'ի կողմանէ Հօլաւուին. զի պաղեցան 'ի սաստկութենէ ձեանն և ցրտին, և բազումք գետամոյն եղեն: Եւ ապա դարձաւ Հօլաւուն և եկն ել 'ի դուրս քան զդուռն Դարբանդայ: Եւ մի ոմն 'ի զօրագլխացն Հօլաւուին՝ այր քաջ և պատերազմող՝ զօրօք իւրովք՝ Սիրամոն անուն, որդի Չարմաղունին՝ առաջին գլխաւորին Թաթարին, ընդդէմ կացեալ զօրացն Բերքային՝ յետս նահանջեաց. և 'ի նա պատսպարեցան փախուցեալքն և ապրեցան մեղմով ընդդէմ կալով: Ել և նա 'ի դուրս քան զԴարբանդ, և կացուցին պահակս 'ի դուռն Դարբան-

1 OO · Աբաղանին:

դայ, և ինքեանք եկին 'ի դաշտն Մուղան 'ի ձմերոց ։ Այս այսպէս զամս հինգ պատերազմեալք ընդ միմեանս սկսեալք յեօթն հարիւր և տասն Թուականէն մինչ յեօթն հարիւր և հնգետասան Թուին Հայոց, յամենայն ամի զօր ժողովելով, և ընդ միմեանս բախելով յեղանակս ձմեռնային, զի յամառնայինն ոչ կարէին վասն տօթոյն և գետայարոյց լինելոյն ։

Յաւուրս յայսոսիկ սկսաւ մեծն Հօլաւու շինել քաղաք բազմատար և բազմամարդ 'ի դաշտին Պռանոյ, և եդ հարկս 'ի վերայ ամենայն հնազանդելոցն՝ բազմութիւն փայտից բերել յամենայն կողմանց 'ի պէտս շինուածոյ տանց և ապարանից քաղաքին, զոր շինէր 'ի տեղի հովոցացն[1] իւրոց յաւուրս ամարանոյ, և տառապէին մարդ և անասուն 'ի խիստ և 'ի դառն վերակացուացն՝ որ դառնագոյնք էին քան զՓարաւոնին 'ի վերայ որդւոցն Իսրայելի. քանզի լուծ հարիւր եզանց լըծէին 'ի փայտ մի յամենայն կողմանց, և ոչ կարէին շարժել՝ վասն մեծութեան և հաստութեան փայտիցն, և հեռաւորութեան և դժուարութեան ճանապարհին, ընդ գետս և ընդ լերինս. և յանխնայ հարկանելոյ՝ մեռանէին մարդիկ և անասունք ։ Նաև և տունս մեծամեծս կռոցն շինեաց, անդ գումարեալ զամենայն արուեստաւորս քարանց և փայտից և նկարուց. զի ազգ մի զոր Տոյինքն ասէին՝ դիւթք, և կախարդն՝ որ տայ խօսել ձիոց և ուղտուց և Թաղեայ պատկերաց՝ դիւական արուեստիւ. և են ամենայն քուրմք գերծեալ գըլուխք և մօրուօք, և ունին փիլոն դեղին զկրծովք, և պաշտեն զամենայն ինչ, և առաւել զՇակմունիա և ըզՄադրին[2], նոքա խաբեցին զնա, և ասեն պահել զնա անմահ. և 'ի բանն իւրեանց կայր և շարժէր և հեծնոյր, տուեալ զինքն ամենեւին կամաց նոցա, և խոնարհեալ երկրպագէր գլխաւորին նոցա յոլով անգամ յաւուրն, և ուտէր 'ի նուիրական սեղանոյն 'ի տան կռոցն, և առաւել մեծարէին[3] քան զամենեսին զնոսա. վասն որոյ զտաճար կռոց նոցա առաւել մեծարգի յարդարէ ։ Իսկ աւագն կանանց նորա քրիստոնեայ էր, Տօխուզ

1 ՕՕ. հովոցացն ։ 218 ։
2 Զորոց աստ և յառաջին, յէջ 3 Տպ. մեծարէր ։

խաթուն, թէպէտ բազում անգամ յանդիմանէր, ոչ կարաց զերծուցանել զնա 'ի դիւթաց. այլ ինքն աստուածպաշտութեամբ կեցեալ ձեռնտու եւ օգնական էր քրիստոնէից։

Յաւէ. յեօթն հարիւր եւ 'ի չորեքտասան թուին նշան երեւեցաւ յերկնից. աստղ մի երեւեալ յերկինս գալով 'ի կողմանս հիւսիսոյ, յարեւելս եւ 'ի հարաւ. եւ երկայն ճառագայթ լուսոյ սիւնաձեւ երեւէին առաջի նորա. բայց աստղն նուազ երեւէր եւ երագ ընթանայր, եւ երեւէր իբրեւ ամիս մի եւ այլ ոչ եւս, իբրեւ զաստղն գիսաւոր՝ որ ընդ ժամանակս ժամանակս երեւի՝ ընթանալով յարեւմտից 'ի հիւսիս. այլ սա ընդերկայնաձիգ շառաւիղօք, եւ որ քան զօր աճէին շառաւեղքն մինչեւ կորեաւ։ Յայս ինկոյն վախճանեցաւ Հօլաւուն, եւ կինն իւր Տօխուզ խաթունն. եւ կալաւ զտեղի նորա որդի իւր Ապաղայն յեօթն հարիւր եւ 'ի չորեքտասան թուին. եւ սա կին զդուստր Հոռոմոց թագաւորին՝ որում անուն էր Դեսպինա[1] խաթուն, որ եկն երեւելի փառօք. եւ պատրիարգն Անտիոքու եւ այլ եպիսկոպոսունք ընդ նմա. զոր եբեր տէրն Մարգիս Սղնկային եպիսկոպոսն, եւ Ռէներ[2] վարդապետն. եւ մկրտեալ զԱպաղա-ղանն՝ ետուն նմա զաղջիկն կին։ Յայս Նորա զօր գումարեալ բազում յոյժ՝ գնաց ընդդէմ՝ տալ պատերազմ[3] զօրաց Բերքային, որք եկին ընդ դուռն Դարբանդայ, եւ հարին զբանակս իւրեանց առ ափն գետոյն[4]. եւ կալան սոքա աստի եւ նոքա անտի, ամրացուցեալ զեզրն գետոյն ցանկովք խորագունիւք[5]։

1 Վ. 161։
2 Ոչ յիշէ այլուր վարդապետդ։
3 Տպ. ընդդէմ էալ պատերազմաւ։
4 Տպ. Կուր գետոյ։ Վարդան Հէկ- բար կոչէ զգետդ։
5 ՕՕ. եւ խոր փոսիւք կամ խորափոսիւք։ Տպագրին. եւ փոսիւք խորագունիւք։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՄԻՒՍ ԵՒՍ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

### ՍՔԱՆՉԵԼԻ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՄԽԻԹԱՐԱՅ[1]

Յետ շինելոյ զմբեթայարկ երկնանման (եկեղեցւոյն) սխրալի տեսողաց, զոր անուանեն Ս. Աստուածածին, շինեաց մեծ վարդապետն Մխիթար զեկեղեցին. 'ի ՌԽԵ թուին կամեցաւ գնալ յերկրպագութիւն մարմնաւոր տնօրէնութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, և լուսաբուխ գերեզմանին։ Եւ ունէր սա միաբանս բազումս. և մտեալ 'ի տաճար սուրբ Աստուածածնին՝ և անկեալ 'ի վերայ երեսաց իւրոց, և աղօթիւք յանձնեաց զմիաբանսն իւր 'ի Ս. Աստուածածինն, ասելով. Ո՛վ Տիրամայր, 'ի քեզ յանձն առնեմ զսոսա. դու հոգա և պատրաստեա ըղպէտս հոգւոյ և մարմնոյ սոցա։ Եւ ինքն յուղի անկեալ գնաց զփափագելի ճանապարհն իւր. և գնացեալ կատարեաց զուխտն իւր, և դարձաւ յետս։

Եւ եկեալ յերկիրն Գնեղամայ 'ի յեզր ծովակին՝ մերձ 'ի Սևան կղզին. և լուեալ միաբանաց վանիցն իւր որ 'ի Գետկայ՝ զգալուստ սուրբ վարդապետին, և գնացին ընդ առաջ նորա հանդերձ սուրբ ուխտիւն 'ի նոյն տեղին, մերձ 'ի կղզին Սևանայ. և համբուրեալ զնոսա 'ի համբոյր սրբութեան, յետ ողջունելոյ զնոսա և հարցանելոյ զկենցաղավարութենէ նոցա։ Եւ նոքա ար-

1 Տես 'ի վերջ կոյս յառաջաբանի մատենիս վասն այսր պատմութեան։

տատուալից հառաչմամբ ձայն բարձեալ ասէր. Հայր հոգւոր, զիա՞րդ հարցանես զորպէսն մեր. և յետ գնալոյն քո անկաւ սով սաստիկ 'ի վանս մեր, և մեռաւ երկրորդ մասն միաբանիցս: Այլ իբրև լուաւ սուրբ վարդապետն Մխիթար զբօթն զայն, և ինքն ձայնակից եղեալ նոցա լացին մինչև ցմեծ ժամս: Այլ յետ լալոյն և կոծոյն հեռացեալ 'ի նոցանէ իբրև զքարընկէց մի, և ծունկս 'ի գետնի եդեալ և անկեալ 'ի վերայ երեսաց իւրոց դէպ յարևելս, և աղօթեաց այսպէս. Ով տէր իմ Յիսուս Քրիստոս որդիդ Մարիամու, Աստուած արդար դատաւոր, խնդրեմ 'ի հեշտալուր տեառնէդ իմէ, զի այժմ լուիցես ձայնի պաղատանաց իմոց, և արասցես զդատաստանս իմ և ծնողի քո Ա. Աստուածածնին, որ ծնաւ զԱստուածդ մարդացեալ: Զի եթէ տացէ ոք մարդ զինչ իւր 'ի պահեստ և աւանդ այլ մարդոյ՝ աշխարհի օրինակաւ՝ պահէն զնա, և տան զայն որ տուեալն է զաւանդն և պահեստն. ապա եթէ աշխարհական ոք պահէ զաւանդն և տայ ցտուօղն, պարտ էր և մեզն[1] քո այնպէս առնել: Տէր իմ Յիսուս Քրիստոս, և ես յորժամ կամէի գնալ յերկրպագութիւն սուրբ գերեզմանի քո, զմիաբանս իմ յանձնեցի ծնողին քո Ա. Աստուածածնին. և նա ոչ է տարեալ խընամ մայրական գթով, այլ և անտես է արարեալ. և մեռեալ է միաբանիցն բազում: Զայս և այլ սոյին նմանս աղօթէր արտասուալից: Այլ սուրբ ուխտն անդէն կացեալ լային:

Այլ յետ աղօթից և արտասուելոյ վարդապետին և միաբանիցն, յառաջ կացեալ գլխաւոր արանցն՝ անկանէին յոտս վարդապետին Մխիթարայ, և ասէին. Հայր սուրբ, մի այսուհետև հոգալ վասն մեռելոցն, այլ խընդրեա 'ի սուրբ և յարժանաւոր աղօթսդ քո յԱստուծոյ, զի տայցէ առատութիւն աշխարհի. զի դեռ ևս սաստիկ է սովն 'ի վերայ երկրի ըստ մարգարէին Դաւթի, զոր ասէ. Կոչեաց զսով յերկիր, և զամենայն զօրութիւն հացի եբեկ: Այլ ապա պատասխանեալ վարդապետին ասաց մինչդեռ 'ի յաղօթսն էր. Որդեակք իմ, թէպէտ ժամանակ մի անտես արար զմեզ Ա. Աս-

1 Օ. զմայրն:

տուածածինն, այլ ոչ անտես առնէ զմեզ Տէր, և յաւիտեան պահէ ոխս. այլ ունի գութ մայրական, և ոչ անտես առնէ զերկիւղածս իւր. դուք ևս պաղատեցէք առ մայրն ողորմութեան, զի նա աղօթեսցէ առ որդին իւր միածին. զի նա յոյժ լսէ ծնողին իւրոյ։

Եւ զայս ասացեալ վարդապետն եւ յաղօթիցն. և առեալ զմիաբանսն և ուղղեցին զերեսս իւրեանց և հաստատեցին գնալ զառաջիկայ զճանապարհն իւր՝ դէպ 'ի լեառն որ հանդէպ երեւաց իւրեանց էր. և եկեալ հասին 'ի գլուխ լերինն՝[1] որ մէջն է երկուց աշխարհացն՝ Գեղամայ և Կայանու, և կամէին անցանել յերկիրն Կայանու առ վանս իւրեանց 'ի Նորս–Գետիկ։ Եւ զայն որ 'ի վերոյ յիշեցաք զասացեալն 'ի սուրբ վարդապետէն՝ զոր ասաց, միաբան աղաչեցէք զսուրբ Աստուածածինն, զի նա մայր է ողորմութեան, և ճշմարիտ ոչ անտես առնէ զաղաչանս վարդապետին և միաբանիցն. և լուաւ Աստուած աղօթից նոցա բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին այսպէս։

Եւ 'ի հասանել նոցա 'ի գլուխ լերինն, դարձեալ հեռացաւ 'ի նոցանէ վարդապետն Մխիթար և կացեալ յաղօթս. և 'ի յաղօթելն նորա յանկարծակի հասանեն փայեակք[2] երկու, և տան ողջոյն վարդապետին և ասեն. Հրամայեա տէր հօգևոր, կոչէ զքեզ սոսկալի թագաւորն մեր։ Եւ ասէ վարդապետն. Որդեակք, յո՞ր թագաւորէ առաքեցայք կամ ուստի՞ եկիք։ Եւ ասեն փայեակքն՝ զոր աշխարհական բառն չեւեր[2] ասեն. վարդապետ, յետս հայեաց և տես զզարմանալի զօրս թագաւորին մերոյ, որ իջեալ կայ 'ի դաշտ անդր։ Եւ յետս հայեցեալ վարդապետին 'ի յերեսս դաշտին՝ մերձ 'ի գեօղն Ճապոտիկ, զոր աշխարհական բառն Չիբուկլու[3] ասեն, (ետես) 'ի ներքոյ գիւղին մերձ 'ի ծովն կոյս, վրանս բազումս իբրև զաստեղս երկնից և զօրս անթիւս որպէս զաւազ առ ափն ծովու. և հիացեալ զարմանայր ընդ միտս իւր և ասէր. Ով որդեակք, այժմ յանցանել իմում անդէն ոչ զոք տեսի. ահա երևի տե-

1 Այժմ կոչի Էշէկ–մէյտան։
2 Սուրհանդակք։
3 Յարդ այսպէս կոչի և չէն կայ 'ի բարձրաւանդակի հիւսիսային լեռնապարու ծովուն Գեղամայ, 'ի 6575 ոտս բարձու յերեսաց Պոնտոս ծովու։



[illegible] որպէս երկնային և ոչ երկրաւոր։ Եւ ինքն յարուցեալ յաղօթիցն՝ անցեալ գնայ զհետ եկեղցոյն, և հասանէ 'ի մէջ զօրացն և վրանացն. Թէպէտ վրանք բազումք էին գեղեցկատեսք, բայց վրանն այն որ Թագաւորին՝ էր զմբեթաւորեալ երկնանման, և լոյս ցալանայր 'ի նմանէ. և ոչ կարէր 'ի նա հայել աչք հողեղէն։ Եւ վարդապետն իբրև ետես զտեսիլն զարմանալի և ապշեցաւ, որպէս Պօղոս յափշտակեալն յերրորդ երկինս. և զոր աչքն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, այնպէս ետես վարդապետն Մխիթար վասն պայծառ տեսութեանն. և յառաջ մտեալ 'ի ներս վրանին, ետես գոյնզգոյն երանգօք զարդարեալ և սիւնս քառասուն և չորս լուսատեսիլք և պաղպաջունք. և ետես երկուս աթոռս ոսկետեսակս ակամբ շափիւղայիւ զարդարեալ. ետես Թագաւոր մի նստեալ 'ի վերայ միոյ աթոռոյն, և կին մի նստեալ 'ի վերայ միւս աթոռոյն, և կինն էր մայր Թագաւորին։ Եւ վարդապետն անկեալ 'ի վերայ երեսաց իւրոց և երկիր եպագ Թագաւորին և մօրն, և եկաց 'ի վերայ ոտից իւրոց։ Եւ Թագաւորն սիրով ընկալաւ զերկրպագութիւն և զողջոյն վարդապետին և քաղցրութեամբ հարցանէր զորպիսութենէ նորա։ Եւ յետ բազում խօսիցն հարցանէր Թագաւորն ցվարդապետն. Ճանաչե՞ս զիս և զմայրս իմ։ Եւ վարդապետն լցեալ Հոգւով սրբով և մարգարէական հոգւով ճանաչեաց որ Թագաւորն այն տէրն մեր Յիսուս Քրիստոս էր, և մայրն իւր տիրամայր Ս. Աստուածածինն։ Եւ անդէն վարդապետն Մխիթար գոչեաց լալագին աչօք և ասաց. Տէր իմ Յիսուս Քրիստոս, աջ բազուկ Հօր Աստուծոյ, որդի կուսին Մարիամու, որ ծնաւ զԱստուածդ մարդացեալ. դաւանիմ զքեզ որպէս Պետրոս որդի Աստուծոյ և ծնեալ 'ի սուրբ Աստուածածնէդ, որ նստեալ կայ ընդ աջմէ Որդւոյդ Միածնիդ. եկիր յաշխարհս վասն Ադամայ նախահօրն, խաչեցար և թաղեցար, և զմարմինդ թողեր 'ի խաչին և հոգւովդ իջեր 'ի դժոխս, և ազատեցեր զԱդամ, և զծնունդ նորա, և հաներ 'ի կայանս հոգւոցն[1]. և մարմնովդ միաւորեցար ընդ աս-

1 Ուր կայն Քրիստոս յերկինս՝ անդր և զսուրբսն գիտեմք հանեալ։

տուածութեան հօր քում՝ զոր ունէիր յառաջ քան զլինելն աշխարհի. այլ և գալոց ես միւսանգամ 'ի դատել զկենդանիս և զմեռեալս, որ և յարութիւն ամենայն մարդկան. հաւատամ և երկիր պագանեմ քեզ: Եւ յետ բազում անգամ խօսելոյ վարդապետին Մխիթարայ ընդ երկնաւոր Թագաւորին և առնելոյ պատասխանի, և անդրէն դարձեալ ասաց Թագաւորն. Վարդապետ, այսօր զի՞նչ դատ ունէիր զմօրէ իմէ զսուրբ կուսէս: Եւ ասաց վարդապետն. Տէր իմ Յիսուս Քրիստոս, այս է դատն իմ զսուրբ Աստուածածնէդ, որ 'ի գնալն իմ յերկրպագութիւն լուսաբաշխ գերեզմանի քո, յանձնեցի զմիաբանքս իմ առ սուրբ Աստուածածինդ և մայրդ ողորմութե՛, և ոչ է ողորմեալ միաբան եղբարցն, և մեռեալ (են) 'ի նոցանէ բազումք. և այս է դատն իմ առ հեշտալուր Տէրդ իմ և արդար դատաւորդ:

Եւ Թագաւորն ողորմած լուաւ զպաղատանս ծառային, և զկամս երկիւղածին կատարեաց, ըստ մարգարէին որ ասէ. Զկամս երկիւղածաց իւրոց առնէ Տէր, աղօթից նոցա լսէ և կեցուցանէ զնոսա: Եւ այնպէս լուաւ զպաղատանս սուրբ վարդապետին, և ետ լիութիւն ամօյն այսպէս: Եւ փայեակն կանգնեալ կայր առաջի Թագաւորին, և ետ փայեկին այն Թագաւորն փոքրիկ սկուտեղ երեք նշխարաւ, և փոքրիկ սկաւառակ մի լի բաժակաւ, և առաքեաց վարդապետին: Եւ առեալ վարդապետն զնոսա 'ի ձեռն իւր, և հրամայեաց Թագաւորն վարդապետին ըմպել զբաժակն. և ասաց Թագաւորն իւր սուրբ բերանովն. Լուր Մխիթար և ասեմ զպատճառ սկուտեղիդ և նշխարացդ և բաժակիդ և սկաւառակիդ. և ուր և հասանեն դոքա՝ ոչ լինի սով երկրին այն, և ոչ մորեախ և ոչ թրթուր և ոչ ժանկ, և ոչ մինինայ, և ոչ դալուկ, և ոչ ջորեակ, և ոչ մուկն, և ոչ կարկուտ, և ոչ մահ, և ոչ գերութիւն. և եղիցին նոքա առատութիւն և փարթամութիւն երկրի և առողջութիւն ամենայն ցաւոց. և ուր և հասանեն դոքա, և ոչ միայն դոքա, այլ և նշխար ոսկերաց քոց: Եւ աստ կրկին անգամ հրամայեաց Թագաւորն ըմպել զբաժակն. և երեսս յետս դարձուցեալ՝ զգուշութեամբ ըմբեաց. և այնու կոչեցաւ[1] Գոշ անուն նորա: Եւ

1 Օ. խոշխոյ:

յետս դարձաւ եթէ տացէ զսկաւառակն 'ի փայտակն. յայնժամ ոչ գոյր ետես. և եղև տեսիլն այն ամենայն աներևոյթ: Յայնժամ զահի հարեալ զարմացաւ, և հիացեալ փառս ետ Աստուծոյ՝ զպարգևս այսպիսի տը-ւողին: Այլ ապա առեալ զսրբութիւնն իւր 'ի ձեռս իւր, և կազմեաց զսկաւառակն սուրբ նշան ձեռօք իւ-րովք. և գնաց անտի 'ի լեառն առ աշակերտսն իւր. և գեռ ևս աղօթէին նոքա անդ 'ի գլուխ լերինն; և ա-ւետիս մատուցանէր նոցա, և պատմէր զսքանչելի տե-սիլն և ցուցանէր զսրբութիւնն. և նոցա եկեալ համ-բուրէին և գոհանային զՏեառնէ, որ ոչ անտես արար զաղաչանս իւրեանց:

Այլ սակաւիկ մի յառաջ գնացեալ՝ ետես սքանչելի վարդապետն յաշակերտաց իւրոց զոմն Պօղոս անուն վախճանեալ. և ասաց նոցա, Որդեակք իմ, եկայք տես-ցուք զհրաշս սուրբ նշանին. և եդ զսուրբ նշանն 'ի վե-րայ պարանոցի մեռելոյն. և ինքեանց կացեալ յաղօթս արտասուելով առ Տէր. և լուաւ Աստուած աղօթից նոցա և յարեաւ մեռեալն աղօթիւք և զօրութեամբ սուրբ նշանին: Այլ եկեալ նոցա ցնծութեամբ և ուրա-խութեամբ օրհնելով զԱստուած 'ի վանս իւրեանց 'ի նորս Գետիկ. և տարեալ զսուրբ նշանն վարդապետն Մխիթար եդ 'ի շտեմարանն անտես յամենեցուն. և ա-ռեալ զմիաբանսն իւր եմուտ 'ի տաճար սուրբ Աստուա-ծածնին, և յերեկորեայ հսկումն կատարեալ մինչև ցառաւօտն: Այլ լուեալ աշխարհաց զայնքան սքանչե-լիսն և ընթացեալ երիվարօք անդր հասանէին 'ի տե-սութիւն սրբութեանցն և յողջոյն սուրբ վարդապե-տին: Այլ ասաց վարդապետն, Որդեակք, պատրաստե-ցէք նշխարս վասն պատարագի. և ասեն. Հայր հո-գևոր, ուստի պատրաստեսցուք, ոչ գոյ նաշիհ: Այլ ա-պա պատարագեաց զմի 'ի նշխարացն զոր առեալ էր 'ի Տեառնէ, և զմինն 'ի նշխարաց կտակ արարեալ զի ընդ ինքեան թաղեսցի. և զմիւսն հանդերձ սկուտեղամբն եդ 'ի կապարեայ սնտուկս և ամփոփեաց յեկեղեցին: Այլ ինքն սկսաւ մատուցանել զպատարագն. և յետ արձակմանն պատարագին ասաց. Որդեակք, պատրաս-տեցէք ճաշ ժողովրդեանդ. և ասեն. Վարդապետ, յայլում ժամու ոչ կարացաք գտանել ալիւր վասն նըշ-

խարաց, և այժմ ուստի՞ պատրաստեսցուք այդքան ժողովրդեանդ կերակուր: Եւ ասաց. Որդեակք, ոչ կամիմ արձակել զնոսա նօթիս, գուցէ նքթիցին 'ի ճանապարհին. մի՛ երկմտութեամբ և մի՛ թերի, այլ հաւատով գնացէք 'ի դուռն շտեմարանին և տեսէք զըսքանչելիս սուրբ նշանին. զոր ինքն հոգւոյ ակամբ տեսանէր: Եւ գնացեալ 'ի դուռն շտեմարանին, և տեսին զի լցեալ էր ալիւրով և ամենայն բարութեամբ. և սուրբ նշանն բազմեալ 'ի վերայ տանեացն. և հիացեալ փառս ետուն Աստուծոյ: Եւ առեալ զսուրբ նըշանն 'ի ձեռս իւր օրհնեաց զժողովուրդն՝ սուրբ վարդապետն Գոշ. և եօթն ամ սով եղև, 'ի շտեմարանաց նորա կերակրեցաւ երկիրն՝ մինչև եղև լիութիւն:

Եւ ես Կիրակոս Պատմագիր՝ բանի սպասաւոր և աշակերտ սուրբ վարդապետին Մխիթարայ, որ մականուամբ Գոշ կոչիւր, ականջօք իմով լուայ և աչօք տեսի զայսքան սքանչելիս. և ձեռօք իմով գրեցի զատ 'ի պատմութեանց իմոց, և եդի ընդ սուրբ նշանին. և յատուկ կայ գրեալ ընդ սկուտեղին՝ որ ամփոփեցաւ 'ի տաճարի սուրբ Աստուածածնին: Եւ Քրիստոսի փառք յաւիտեանս. ամէն:

---

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ *

---



* Համառօտագր. նշանակեն, բ. երրորդ. գ. գիւղ. լ. լեառն. Թգ. Թագաւոր. կթ. կաթուղիկոս. ս. սուրբ. ք. քաղաք. գւ. գաւառ. վք. վարդապետ. * ծանօթութիւնք։

*

